# ՊԱՏՄԱԳԻՐՔ ՀԱՅՈՑ

Ի ԼՈՅՍ ԱԾԵԱԼ

ԲԱՂԴԱՏՈՒԹԵԱՄԲ ՁԵՌԱԳՐԱՑ

Ի ՁԵՌՆ

ԲԱՆԱՍԻՐԱՑ ՀԱՅՈՑ



ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ· ԳԻՐՔ ՉՈՐՐՈՐԴ·

## ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ

ՂԱԶԱՐԱՅ ՓԱՐՊԵՑԻՈՅ

Łazaray Pʻarpecʻwoy

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

ԵՒ

## ԹՈՒՂԹ ԱՌ ՎԱՀԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

Acheté à Tiflis le 15 VIIème 1934 à 4 roubles
Saïd Nafisy

ԱՇԽԱՏՈՒԹԵԱՄԲ

Գ. ՏԷՐ-ՄԿՐՏՉԵԱՆ ԵՒ ՍՏ. ՄԱԼԽԱՍԵԱՆ

ՏՓՂԻՍ
ԱՐԱԴԱՏԻԳ ՄՆԱՑԱԿԱՆ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆՑԻ
1904

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ղազար Փարպեցին ծնած է Այրարատեան դաշտի Փարպի գիւղում, որ ընկնում է Վաղարշապատից դէպի հիւսիս-արեւմուտք եւ շէն է մինչեւ այսօր: Նրա ծննդեան եւ մահուան ստոյգ թուականները չեն հասել մեզ: Հաւանական հաշիւներով՝ ծնած պէտք է լինի 440—443 թուականներին [1]), իսկ վախճանած՝ վեցերորդ դարում: Ժողովրդական աւանդութիւնը իբրեւ Ղազարի թաղման տեղ ցոյց է տալիս Լազրէվան գիւղը, Փարպիից դէպի արեւելք կէս ժամ հեռաւորութեամբ, որի մօտ եղած հին եկեղեցին իբրեւ թէ շինուած է եղել յանուն Ղազարի եւ գերեզմանն էլ ամփոփուած նոյն եկեղեցու հարաւային աւանդատան մէջ [2]):

Մանկութեան հասակում Ղազարը սնուել ու դաստիարակուել է Վրաստանում, Վահան Մամիկոնեանի մօտ՝ Ձուիկի խնամքով, լինելով սննդակից ու խաղակից Վահան Մամիկոնեանին ու նրա եղբայրներին: Վրաստանում Ձուիկը, Հմայեակ Մամիկոնեանի այրին, իր չորս որբ զաւակներով պատսպարան էր գտել իր Անուշ-Վռամ քրոջ մօտ, որ Վրաց Աշուշայ բդեշխի կինն էր, եւ նէնց այս Աշուշայի մեծ ջանքերով ու աղաչանքով էր, որ Յազկերտ Բ. թագաւորը համաձայնեց Մամիկոնեան փոքրիկ նէտերին, Վահանին ու եղբայրներին, կեանքը շնորհել, որոնք Վասակ իշխանի ձեռքով բռնուած տարուած էին Պարսկաստան եւ Պարսից օրէնքով, իբրեւ ապստամբի որդիք՝ պէտք է սպանուէին: Այս փոքրիկ իշխանազունների հետ անա սնւում ու դաստիարակւում էր Ղազարը: Այնուհետեւ նա աշակերտում է երեւելի Աղան Արծրունուն, որից եւ կրօնաւորութեան ձեռնադրութիւն է ստանում: Հայաստանում ուսումն աւարտելուց յետոյ, նա ուսուցիչների հրամանով ուղարկւում է Բիւզանդիոն. այստեղ մի քանի տարի մնալուց յետոյ վերադառնում է հայրենիք եւ Վահան Մամիկոնեանի ապստամբութեան տարիներում ապրում է Շիրակում, Կամսարական իշխանների մօտ: Այստեղից նա, մօտ քառասուն տարեկան հասակում, գնում է Սիւնիք, ուր երկու տարի ճգնողական կեանք է վարում, մինչեւ որ Վահան Մամիկոնեանը, արդէն Հայոց սպարապետ ու մարզպան դարձած՝ փնտռում է իր մանկութեան ընկեր Ղազարին եւ Սիւնիքից բերում է իր մօտ:

Այս ժամանակ, մօտաւորապէս 485—6 թուականներին, Ղազարի համար սկսւում է նոր գործունէութիւն: Վահան Մամիկոնեանը Վաղարշապատում նորոգելով Կաթողիկէ եկեղեցին եւ միաբանութիւն հաստատելով՝ նրա վանահայր է նշանակում Ղազարին: Նա օգտուելով մարզպանի հովանաւորութեամբ, նրա եղբայրների ու Կամսարական իշխանների առատ բարեկամութեամբ, շնորհիւ եւ իր բնածին ընդունակութիւններին՝ շատ շուտով պայծառացնում է վանքը եւ իր ազդու քարոզներով ժողովրդի հոգեւորներին ու համակրութեանն արժանանում: Բայց այստեղ նա հանդիպում է եւ զօրեղ հակառակորդների: Դեռ վանահայր չնշանակուած՝ բարձրաստիճան հոգեւորականներ, նոյն-իսկ կաշառք առաջարկելով Վահանին, ձգտում էին ձեռք բերել Կաթողիկէի վանահայրութեան արդիւնաւոր պաշտօնը. բայց երբ նրանց ցանկութիւնը չէ կատարւում, եւ այս պաշտօնին արժանանում է Ղազարը՝ նրանք այնուհետեւ իրանց բոլոր ջանքն ու ամէն կարելի ու անկարելի միջոցներ գործ են դնում՝ Ղազարին մարզպանի աչքից ձգելու եւ վանքից հալածելու համար: Երկու նպատակին էլ հասնում են՝ վերջապէս նախանձորդները. մի անգամ յարձակւում են զօրքով վանքի վրայ, եւ Ղազարը հազիւ կարողանում է գլուխը ողջ պրծացնել եւ, երեւի Վահան Մամիկոնեանին պաշտպանելու հնարաւորութիւն էլ չունենալով՝ փախչում է Ամիդ

[1]) *Գր. Խալաթեանց, «Ղազար Փարպեցի եւ գործք նորին», եր. 5—7.*

[2]) *Յովհ. եպս. Շահխաթունեանց, «Ստորագրութիւն Կաթողիկէ Էջմիածնի եւ հինգ գաւառացն», հտ. Բ, եր. 74.*

քաղաքը (այժմեան Դիարբէքիր)։ Այստեղից նա գրում է Վահան Մամիկոնեանին իր Թուղթը, որի մէջ պաշտպանում է իրան՝ բռնաւոր աբեղաների մեղադրութիւնների դէմ եւ բաց է անում սրանց դիմակը։ Թուղթը բերում ու Վահանին է յանձնում Համազասպ Մամիկոնեան «մեծ նախարարը», որ եւ պատճառ է լինում Ղազարի վերադարձին։ Հաւանական է, որ այս վերադարձից յետոյ Վահան Մամիկոնեանը, վանահայրութեան փոխարէն, առաջարկում է Ղազարին մի ուրիշ՝ ամեն տեսակէտից աւելի օգտակար գործ—գրել Հայոց Պատմութիւնը։

***

Ղազար իր Պատմութիւնը կոչում է Երրորդ պատմութիւն, առաջին համարելով Ագաթանգեղոսին եւ երկրորդ՝ Փաւստոսին։ Իբրեւ Փաւստոսին յաջորդող՝ նա սկսում է պատմել Հայոց գործերը այն տեղից՝ ուստեղ կանգ էր առել Փաւստոսը, այսինքն Արշակունեաց թագաւորութեան երկու մասի բաժանումից, որ տեղի ունեցաւ 384 թուին, եւ շարունակում է մինչեւ 486 թուականը, որ Վահանի մարզպան ընտրուելու տարին է։ Պատմութիւնը երեք մեծ բաժանում ունի. առաջինում զետեղուած է պատմական նիւթը Արշակունեաց թագաւորութեան բաժանումից մինչեւ Ս. Սահակի ու Մեսրոպ-Մաշտոցի մահը (439). երկրորդում զետեղուած է առաջին կրօնական պատերազմը իր նախընթաց եւ հետեւորդ պարագաներով (440—461). Երրորդում զետեղուած է երկրորդ կրօնական պատերազմը, աւելի ճիշտ ասած՝ Վահան Մամիկոնեանի կենսագրութիւնը, որ այդ պատերազմի եթէ ոչ հեղինակը, բայց հոգին, պարագլուխն ու յաջողութեամբ վերջացնողն է։ Պատմութիւնը վերջանում է Յոհան կաթողիկոսի ատենաբանութեամբ, որը նա խօսում է Վաղարշապատի եկեղեցում, Վահան Մամիկոնեանի մարզպան նստելու առիթով կատարուած մաղթանքի ժամանակ։

Ղազարի այս գործը թանկագին աղբիւր է մեր հինգերորդ դարի պատմութեան համար։ Առաջին մասը համեմատաբար քիչ բան ունի նա, որ մեզ ծանօթ չլինէր ուրիշ աղբիւրներից, բացի Այրարատեան դաշտի գեղեցիկ ու հետաքրքրական նկարագրութիւնից եւ Ս. Սահակի Տեսիլքից [1]։

Երկրորդ մասը հետաքրքրական է ոչ միայն բազմաթիւ մանր ու խոշոր պարագաներով Վարդանի եւ նրա առաջնորդութեամբ մղուած պատերազմի մասին, որոնցով փոփոխակի լրանում են Եղիշէի եւ Ղազարի նկարագրած տեղեկութիւնները այս պատերազմի մասին, այլ եւ աւելի անկողմնակալ վերաբերմունքով, որի շնորհիւ գործող պատմական անձնաւորութիւնները աւելի ճիշտ կերպով են լուսաւորւում՝ քան կարելի էր միայն Եղիշէի աղբիւրով։

Երրորդ մասը, որ միակ աղբիւր է մեր մօտ 25-ամեայ պատմութեան՝ փայլեցնում է Ղազարի ոգին ու հայեացքները ամբողջ մեծութեամբ։ Մի կողմ թողնենք զուտ պատմական նկարը Վահան Մամիկոնեանի եւ Կամսարական եղբայրների վերաբերութեամբ, որ բնական եւ հասկանալի է դառնում՝ երբ աչքի առաջ ունենանք հեղինակի բարեկամական մտերիմ կապը այս հերոսների հետ, սրանց բարձր դիրքը եւ մանաւանդ այն հանգամանքը, որ Ղազարը գրում է հենց Վահան Մամիկոնեանի առաջարկութեամբ, այսինքն, նրա դարերի համակրութեամբ՝ ի պաշտօնէ պէտք է նա ներբողողը լինի։—Այս մասում առաւելապէս երեւում է Փարպեցին իբրեւ առաջամիտ, լայն աշխարհայեացքի տէր, լուսաւորուած ու քաղաքագէտ մարդ։ Այն էջերը, որտեղ նա բացատրում է ուրացութեան սկսեալ կործանիչ, անբարոյականացնող հետեւանքները. այն պայմանները, որ Վահանը առաջարկում է Նիխորին, որոնց հիման վրայ միայն կարող են իրանք նուաճել Պարսիկներին՝ արժանի են ներկայ դարի լուսաւորուած քաղաքագէտի գրչին.—կարծես քաներորդ դարում ապրող ու գիտող մարդ լինի հեղինակը։ Դժուար է աւելի նուրբ ու համոզիչ կերպով բացատրել, թէ ո՛րքան վնասակար էր այն ուղղութիւնը՝ երբ պաշտօն ու պատիւ տանում էին հաւատուրացները, իսկ իրանց կրօնին հաւատարիմ մնացողները նախատուած ու արհամարհուած էին, եւ թէ ի՛նչպէս այս շահադիտական հաւատափոխութիւնը հովանաւորելով՝ հետզհետէ երեւան եկան ու տիրապետեցին բոլոր ստոր բնազդները, իսկ առաքինութիւնն ու քաջութիւնը վերացան Հայոց աշխարհից։

***

Ղ. Փարպեցու երկրորդ աշխատութիւնը նրա Թուղթն է առ Վահան Մամիկոնեան, որի մէջ, ինչպէս ասացինք, իրան պաշտ-

[1]) *Այս տեսիլքի մասին տես Գր. Խալաթեանց, «Ղազար Փարպեցի», եր. 120—127)։*

պահում է ստախօս աբեղաների մեղադրութիւնից: Թուղթը կարեւոր է՝ իբրեւ աղբիւր, որից բացառապէս տեղեկութիւն ենք ստանում Ղազարի կեանքի ու գործունէութեան, մասամբ եւ Վահանի մասին. կարեւոր է եւ այն, թէպէտեւ կցկտուր տեղեկութիւններով, որ հաղորդում է մի քանի նշանաւոր հեղինակների մասին: Բայց Թղթի գլխաւոր նշանակութիւնը նրանումն է, որ նա մեզ գաղափար է տալիս հինգերորդ դարի երկրորդ կէսում Հայաստանում հոգեւորականութեան ու գրական շրջանի մէջ գոյութիւն ունեցող կուսակցութիւնների, նրանց փոխադարձ մեղադրանքների եւ միմեանց դէմ գործածած զէնքերի մասին: Տեսնում ենք, որ այստեղ կռիւ է մղւում երկու ուղղութեան, թերեւս՝ Ասորական եւ Յունական դպրոցների մէջ, որոնցից առաջինը մարմնացնում է հինը, աւանդականը, իսկ երկրորդը՝ նորը, առաջադիմականը: Յունական դպրոցի ներկայացուցիչները աւելի մեծ գիտութեամբ, լայն աշխարհայեացքով, նորամուծութիւններով լեզուի մէջ, ազատ մտածողութեամբ, (գուցէ եւ աւելի ազատ նիստ ու կացով), իրանց դէմ գրգռեցին մնացած հոգեւորականութեան հոծ բազմութիւնը, որ այդ նորելուկներից վտանգ էր սպասում ոչ միայն իր միանգամ ընդ միշտ հաստատուած անշարժ հասկացողութիւններին ու բարքերին, այլ եւ հաւանօրէն իր շահերին: Ուրեմն Ղազարի Թուղթը մի փոքրիկ պատկեր է այն մեծ, յաւիտենական կռուի, որ բոլոր դարերում եւ բոլոր աշխարհներում մղուել է հնի եւ նորի մէջ: Ղազարը ինքը՝ մղուած կռուի մէջ զոհուողներից մէկն է, եւ այս պատճառով այնքան դառն են հնչում նրա խօսքերը, որ ուղղուած են հակառակորդների դէմ, ինչպէս դառն են եւ նրա միւս զինակցի ու զոհակցի՝ Մ. Խորենացու նոյնպիսի հակառակորդների հասցէին ուղղած ծանր խօսքերը (Բ, ղբ, եւ Ողբ):

***

Ղազարի Պատմութիւնը մինչեւ այժմ երեք տպագրութիւն է ունեցել, երեքն էլ Վենետիկում, Մխիթարեանների ձեռքով, 1763-ին, 1873-ին եւ 1891-ին: Ա. տպագրի մէջ ոչ մի տեղեկութիւն չկայ, թէ ի՛նչ ձեռագրից է կատարուել: Հրատարակիչները բաւականանում են յայտնելով, թէ «յամենայնի զգուշացեալ զհետ գնալ հաւատարմութեամբ օրինակին. թէպէտ եւ ուրեք ուրեք ոչ պակասին վրիպակք բառից եւ թերութիւնք եւ այլայլութիւնք ասացուածոց. այլ զի չունէր ինչ բաժանումն ի գլխակարգութիւնս կամ ի գիրս, ի դէպ համարեցաք ի բացատրութիւն ընթերցողին ուրոյն ի լուսանցսն անդ դնել խորագիր երեւելի դիպուածոց»:

Երկրորդ տպագրութեան Ազդ՚ում հրատարակիչները յայտնում են, թէ առաջին տպագրութիւնից յետոյ ուրիշ ձեռագրի չեն հանդիպել, ուստի հարկադրուած են եղել առաջին տպագրութիւնը վերցնել իբրեւ բնագիր, քիչ տեղերում, որտեղ յայտնի վրիպակ էր նկատւում՝ ուղղագրութիւններ անելով, եւ ամբողջ պատմութիւնը երեք դրուագի բաժանելով, համաձայն գրքի էական մասերին, պահպանելով հեղինակի գործածած դրուագ բառը: Նոյնպէս որ ամբողջ նիւթը բաժանել են հարիւր գլխի, սակայն առանց վերնագրերի: Միայն Ս. Սահակի Տեսիլքի եւ մեկնութեան մէջ փոփոխութիւններ են մտցրել՝ համաձայն ճառընտիրներում եղած հնագոյն օրինակներին:

Երրորդ տպագրութիւնը արտատպութիւն է երկրորդից, որովհետեւ դարձեալ նոր բնագիր չէ յայտնուել. միայն Պատմութեան սկզբում խօսքի հատուածները նոր, աւելի յարմար դասաւորութեամբ են տպել [1]):

***

Ղազար Փարպեցու Թուղթը նոյնպէս երեք տպագրութիւն է ունեցել մինչեւ այժմ, 1853-ին Մոսկվայում, Մ. Էմինի ձեռքով, եւ 1873-ին ու 1891-ին Վենետիկում, Մխիթարեանների ձեռքով, Պատմութեան հետ միասին:

Առաջին տպագրութեան Յառաջաբանից (30—31) երեւում է, որ այս Թուղթը առաջին անգամ նկատել են Յովհաննէս արքեպիսկոպոս Շահխաթունեան եւ Մսեր վարդապետ Ջմիւռնացի Էջմիածնում, 1829 թուին, Փարպեցու Պատմութեան ձեռագրի յետեւը, մինչ աշխատում էին Էջմիածնի մատենադարանը կարգի դնելու: Երկուսն էլ մի-մի օրինակ արտագրում են այս Թղթից իրանց համար, եւ վերջը երկուսն էլ իրանց արտագրութիւնները զիջանում են Մ. Էմինին, որ եւ նրանց համեմատութեամբ կատարում է իր տպագրութիւնը:

Երկրորդ տպագրութեան իբրեւ նախագաղափար ծառայել է այս առաջին տպա-

---

[1]) *Տես այս հրատարակութեան մէջ եր. 7. ծան. 7.*

գրութիւնը. միայն որովհետեւ ձեռագրի մէջ թղթերի յետ- եւ- առաջ- դասաւորութեան պատճառով շատ աղաւաղութիւններ էին առաջ եկել (ինչպէս մնացել էր եւ առաջին տպագրութեան մէջ), ուստի հրատարակիչը ուշադիր քննութեամբ՝ յետ ու առաջ դրուած ու աղաւաղուած հատուածները դասաւորել է նոյն իրանց տեղում [1]). մի տեղում միայն չէ յաջողել ուղղել աղաւաղութիւնը [2]), եւ ենթադրում է, թէ խօսքի պակասորդ կայ այնտեղ:

Երրորդ տպագրութիւնը արտատպութիւն է երկրորդից: Մենք չնկատեցինք եւ այն նոր դասաւորութիւնը, որը, ինչպէս յայտնում են՝ մտցրել են հրատարակիչները եւ Թղթի մէջ:

***

Աւելորդ չենք համարում մի քանի խօսքով բնորոշել այս տպագրութիւնների արժէքը: Պատմութեան առաջին տպագրութիւնը կատարուած է մի օրինակից՝ որի ո՛չ թուականը եւ ոչ որեւէ հանգամանքը չեն տուել հրատարակիչները: Բայց քանի որ, ինչպէս քիչ յետոյ կտեսնենք, այժմ յայտնի է, թէ ի՛նչ աղբիւրից է բղխել այդ օրինակը՝ կարող ենք ասել, որ բաւական հաւատարիմ է եղել այդ տպագրութիւնը: Դժբախտաբար ոչ մի հաշիւ չեն տուել հրատարակիչները, թէ իրանք որեւէ փոփոխութիւն բնագրի մէջ մտցրե՞լ են թէ ոչ. ուստի եւ մենք չենք կարող ասել, թէ աղբիւր ձեռագրի եւ առաջին տպագրի մէջ նկատուած փոփոխութիւնները արդեօք հրատարակիչների՞ն են պատկանում, թէ նրանց ձեռքում եղած օրինակին. նոյնպէս չգիտենք, թէ աղբիւր-ձեռագրի ակնյայտնի տառասխալները եւ ուղղագրական խոտորումները արդէն նրանց օրինակո՞ւմն են եղել գրուած, թէ հէնց հրատարակիչների ձեռքով:

Երկրորդ տպագրութիւնը անհամեմատ մեծ առաւելութիւններ ունի՝ առաջինի համեմատութեամբ. բազմաթիւ աղաւաղութիւններ են ուղղուած այստեղ. կէտադրութիւնը բաւական ճշտուած, որի շնորհիւ հասկանալի են դարձել մի քանի հատուածներ՝ որոնք առաջին տպագրութեան մէջ, սխալ կէտադրութեան պատճառով, չէին հասկացւում կամ սխալ էին հասկացւում: Տեսիլքի եւ նրա մեկնութեան բնագիրը վերականգնուած է ուրիշ ձեռագիրների համեմատութեամբ: Բնագիրը բաժանուած է երեք մասի եւ հարիւր գլխի: Պէտք է միայն ափսոսալ, որ հրատարակիչը աւելորդ է համարել իր ուղղագրութիւնների ամենամեծ մասի համար հաշիւ տալ կարդացողին. քիչ տեղ միայն նշանակել է, թէ Ա. տպագիրն այսինչ ընթերցուածքն է ունեցել, որ ինքը ուղղագրել է այսպէս: Այս տպագրութեան ուղղագրութիւնների քանակութիւնը եւ ինչութիւնը պարզ երեւում է ներկայ տպագրութեան ծանօթութիւններից:

Երրորդ տպագրութիւնը, բացառութեամբ Պատմութեան Առաջաբանի մէջ աղաւաղուած հատուածների բաւական յաջող դասաւորութեան՝ մնացածում՝ վերին աստիճանի անխնամ արտատպութիւն է երկրորդից: Ոչ միայն չէ լրացրել Բ. տպագրից դուրս ընկած մի քանի մանր պարբերութիւններ, այլ իր կողմից էլ դարձեալ նոր պարբերութիւններ է բաց թողել. տառասխալները այնքան շատ են, որ կարծես առանց սրբագրութեան է կատարուել տպագրութիւնը. յատուկ անունների ցանկը թերի, ցուցմունքների մէջ անթիւ անճշտութիւններ: Այս տպագրութիւնը ուրեմն զգալի յետադիմութիւն է՝ Բ. տպագրի համեմատութեամբ:

Թղթի առաջին տպագրութիւնը հաւատարիմ արտատպութիւն է երկու օրինակներից, շատ աննշան շեղումներով, որոնց մասին հաշիւ է տալիս հրատարակիչը: Բայց վերը յիշուած՝ թղթերի սխալ դասաւորութեան պատճառով աղբիւր-ձեռագրի մէջ՝ այս տպագրութիւնը շատ պակասաւոր է: Երկրորդ տպագրութիւնը յաջողութեամբ վերականգնել է աղաւաղութիւնները, խախկան տեղերում զետեղելով սխալ դասաւորուած հատուածները: Սրանից դուրս՝ Թղթի երկրորդ եւ երրորդ տպագրութիւնների մասին նոյնը պէտք է ասել՝ ինչ որ ասացինք Պատմութեան Բ. եւ Գ. տպագրութիւնների մասին:

***

Գալով այն բնագիրներին, որոնցից կատարուել են այս տպագրութիւնները՝ տեսնում ենք, որ Պատմութեան տպագրութիւններին հիմք կազմել է մի օրինակ, որի ո՛չ տարին եւ ոչ ուրիշ որեւէ հանգամանք մեզ յայտնի չէ. իսկ Թղթի տպագրութեան հիմք կազմել են այն երկու օրինակները, որ արտագրուել են Էջմիածնի ձեռագրից, որի թուականը եւ ուրիշ հանգամանքները դարձեալ յայտնուած չեն:—Ներկայումս,

[1]) *Տես եր. 194, ծան. 11.*

[2]) *Տես եր. 197, ծան. 5.*

շնորհիւ Գ. Տէր-Մկրտչեանի հետազօտութիւններին [1]), կարելի է ոչ միայն այս տեղեկութիւնները ունենալ, այլ եւ որոշել այդ օրինակների ծննդաբանական կապը՝ մեզ յայտնի՝ գոյութիւն ունեցող ձեռագիրների հետ:

Ա. Էջմիածնի մատենադարանում երկու ձեռագիր կան Ղազարի Պատմութեան. առաջինը № 611 (նախկին № 2463), իսկ երկրորդը՝ № 1688,1 = Կարինեան ցուց. № 1646, 1: Առաջին ձեռագիրը «կաշեկազմ է, կոկուած դեղնաւուն թղթի վրայ գրուած, բոլորագիր, ընտիր գրչութիւն. սկզբում ունի մի մանրանկարեալ թերթ երկաթագիր (առեստանից). դիրքը 19×25 հարիւրամետր: Այս ստուար ձեռագիրը հաւաքածոյ է Պատմութեանց: Բովանդակութիւնն է՝ Ագաթանգեղոսի պատմութիւն, Դաշանց թուղթ, Մեծին Ներսիսի վարքը, Պատմութիւն Մովսիսի Խորենացւոյ, Պատմութիւն Եղիշէի, Պատմութիւն Ղազարայ Փարպեցւոյ. Թուղթ Ղազարայ առ Վահան Մամիկոնեան, Պատմութիւն Սեբէոսի, Պատմութիւն վարուց եւ մահուան սրբոյն Մեսրոպայ Կորեան: Այս վերջին երկուսը վերնագիր չունին:... Սոյն ձեռագիրն ունի եւ մի քանի պատկեր եւ բազմաթիւ զարդեր յուսանցքում եւ գլխակարգութեանց սկըզբին» («Արարատ», 1891, եր. 148):

Յիշատակարաններ շատ ունի ձեռագիրը. բերում ենք ամենակարեւորները:

«Դաշանց թղթի վերջում կայ հետեւեալ յիշատակարանը. «Արդ՝ ես Վարդան վարդապետ Բաղիշեցիս ցանկացայ բարի աւուրցն որ մինչ արծարծէր շնորհք Հոգւոյն սրբոյ յարժանաւորս իւր. սիրոյ նոցին եւ աղօթիցն տենչացայ: Եւ ետու գրել զպատմութիւն սուրբ կաթուղիկոսացն եւ թագաւորացն, զի աղօթիւք նոցա ողորմեսցի Քրիստոս Աստուած մեզ եւ մերոցս ամենայնի, հօրս իմոյ Եղիային եւ մօրս Ղարիպին եւ եղբարցս Խաչատուրին եւ Խօշխադամարին եւ զաւակաց նոցին: Եւ ես առաւել հոգեւոր հօրս իմոյ եւ ուսուցչի՝ Խաչատուր մեծիմաստուն եւ փիլիսոփայ վարդապետի՝ Խաչատուր Բաղիշեցւոյն, որ յայսմ ամի որ զգիրս ետու գրել՝ Ժ. ամսու յունաց փոխեալ է առ Տէր: Եւ նորաբողբոջ հոգեւոր որդւոցս իմ՝ Աբրահամ վարդապետի Համթեցոյն եւ Սարգիս փոքր պատանեկին եւ միաբան եղբարցն ամենեցուն, որ կան ի սուրբ ուխտս Յովհաննու Մկրտչի, ի ծառայութիւն սուրբ խորանացս եւ ի սպասաւորութիւն մեզ, որ մականուամբ Ամրդօլու վանք ասի: Արդ՝ աղաչեմ զձեզ, ո՛վ հարք մեր եւ եղբարք, որք ընթեռնուք եւ հոգեւոր բանս օգտիք ի սուրբ գրոցս, բոլոր հաւատով աստուած ողորմի ասացէք ինձ Վարդան վարդապետիս եւ գծագրողի սորա հոգեւոր որդւոյ իմոյ տէր Պօղոս երիցու Գալլուցոյ եւ դուք յիշողքդ յիշեալ լիջիք առաջի Քրիստոսի, ամէն: Գրեցաւ ի Ռ. եւ ի Ճ. եւ ի ԻԱ. թվին (1121=1672»)...

Եղիշէի Պատմութիւնից եւ հետաքրքրական ընդարձակ յիշատակարանից յետոյ, որ Գ. Տէր-Մկրտչեանի կարծիքով հնագոյն ձեռագրից արտագրուել է այս ձեռագրի մէջ՝ «գրչութիւնը փոխւում է, թէպէտ շարունակւում է մնալ բոլորագիր, բայց աւելի անվարժ եւ տգեղ»:

Ձեռագրի այս երկրորդ մասի (Փարպեցւոյ Պատմութիւն եւ Թուղթ, Սեբէոս, Կորիւն) գրիչն է Գրիգոր երէց, որի գլխաւոր յիշատակարանը, Ղ. Փարպեցու Թղթի վերջում, հետեւեալն է.

«Այո՛ սուրբ վարդապետ զոր ինչ ասացեր ճշմարիտ է, զի եւ այժմ նոյնպէս եղեւ եւ յինէ հանապազ: Ով սուրբ ընթերցաւղք եւ եղբարք, զիրքս հին էր եւ աւրինակս: Յունան վարդապետն կարդացեալ էր զաւրինակն եւ նորոգեալ եւ զպակասութիւն թղթոցն որ պակասէ ոչ էր գտեալ, եւ ես ոչ կարացի գտանել. աղաչեմ զամենեսեան, եթէ գտցի զիրս այս ուրեք, գրեսջիք զպակասումն թղթոյս եւ դիք ի սմայ: Նախ զսկիզբն գրոցս, եւ ապա յերիս տեղիս թուղթ մի անկեալ կայ: Եւ եթէ սխալ գտջիք ի սմա՝ թողութիւն խնդրեցէք ինձ ի Քրիստոսէ յանցանաց իմոց եւ ծնողաց իմոց ամէն: Ազգիս մերոյ եւ յառաջագոյն նախնեաց սրբոց որ երկրորդեցի զգիրքս վասն յիշողութեան սրբոցն ի պարծանս մեր, եւ անարբոցն յորդորումն բռնաւորութեան եւ յամօթ յաւիտենից: Քաջքն զօրացին ի Քրիստոս, եւ տկարամիտքն կորանային: Եւ որք լսենն աւաղեսցեն զազգիս մերոյ զտառապանս:—Աւարտեցաւ զիրքս Ղազարու վարդապետի Փարպեցւոյ ձեռամբ բազմամեղ եւ անարժան գրչի Գրիգոր երիցու, ի հայրէ սրբազան եւ քաջ վարդապետին Վարդան դիտապետի: Արդ աղաչեմ զըն-

[1]) *«Խորենացու Պատմութեան ուսումնասիրութիւն», Դ, «Արարատ» 1891, եր. 147—155, եւ «Ղազար Փարպեցու ձեռագրերը», «Արարատ» 1901, եր. 542—549:*

բերգողին յիշեսջիք [1]) ի մաքուր յաղօթս ձեր եւ մեղաց թողութիւն շնորհեսցէ մեղաւորիս: Եւ որ առատն է ի բարին՝ պարգեւեսցէ ձեզ եւ մեզ զերկնից արքայութիւնն: Եւ Քրիստոսի մարդասիրին փառք յաւիտեանս ամէն»: (Միւս համառօտ յիշատակարանները բերուած են ներկայ հրատարակութեան մէջ, ծանօթութիւնների տակ):

Այս ձեռագիրը Գ. Տ.-Մկրտչեանը «Ղազար Փարպեցու ձեռագրերը» հետազօտութեան մէջ կոչել է B (= Բաղիշեան): Ներկայ հրատարակութեան մէջ կոչել ենք Ձ. (=Ձեռագիր):

Պատմութեան Երկրորդ ձեռագրի մասին, որ Գ. Տէր-Մկրտչեանը նշանակել է E (=Էջմիածնական) տառով, (այս հրատարակութեան մէջ Բ2.)՝ հետեւեալ տեղեկութիւնն է տալիս: «Կաշեկազմ, 23×15, թուղթ, նոտր: Բովանդակութիւնն է՝ էջ 3ա—156ա Ղազարի Պատմութիւնը, էջ 156բ—167բ դատարկ, երեւի Ղազարի Թուղթը գրելու համար, էջ 168ա—183բ Կորիւն: E-ի վերնագիրն է՝ «Պատմութիւն Ղազարու Փարպեցւոյ» եւն. (տես այս հրատարակութեան մէջ եր. 1, ծանօթ. 1): «Ուրիշ յիշատակարան չկայ»:

***

Երկու ձեռագիրների մէջ եղած ծննդաբանական կապը այսպէս է որոշում Գ. Տէր-Մկրտչեանը. «E-ն պարզորոշ վկայում է, որ գրուած է Էջմիածնում 1774 թուին արքագիր օրինակից, «ի արքագիր օրինակէ», այսինքն՝ մաքուր, գեղեցիկ օրինակից: B-ն իսկապէս բաւական սիրուն բոլորգիր գրչութիւն է, կոկ փայլուն թղթի վրայ, գեղեցիկ կաշեկազմ, լուսանցքներում զանազան զարդերով, մանաւանդ Ձ.-ի Ա մասը, եւ մի քանի պատկերներով: Բացի B-ից Էջմիածնում՝ ինչպէս այժմ, ամենայն հաւանականութեամբ նաեւ 1774-ին՝ Փարպեցու ուրիշ Ձ. չկար, ուրեմն եւ B-ն միակ օրինակն էր, որից կարող էր արտագրուիլ E-ն: B-ն թէեւ չէ մտած Կարինեանի ցուցակի մէջ, բայց... 1829-ին արդէն շատոնց Էջմիածնում էր:

«E-ն մի բաւական անխնամ ընդօրինակութիւն է B-ից: Տեղ տեղ B-ն թռչում է բառեր, երբեմն ամբողջ նախադասութիւններ, բաց է թողնում մի տառ կամ մի նախդիր, տառադարձ է անում եւ այլ այսպիսի մանր տարբերութիւններ. բայց չունի որեւէ աւելի բառ կամ նախադասութիւն, որ չգտնուէր B-ի մէջ եւ ստիպէր մեզ B-ից տարբեր մի ուրիշ գաղափար օրինակ ենթադրել, որից արտագրուած լինէր E-ն»:

Այս հիման վրայ Գ. Տէր-Մկրտչեան եզրակացնում է, որ E-ն, (կամ մեր Բ2.) արտագրուած է B-ից (մեր Ձ.-ից): Այս նոյն եզրակացութեանը եկանք՝ Գ. Տէր-Մկրտչեանի հետ միասին նորից համեմատելով այս երկու ձեռագիրներից շատ տեղեր: —Այսքան միայն հարկաւոր է աւելացնել ի լրումն վերը բերուած տեղեկութիւններին, որ Բ. ձեռագիրը շատ տեղ լուսանցքներում ունի ուղղագրութիւններ եւ բնագրին վերաբերեալ բացատրութիւններ, որոնք, ինչպէս ուշադիր քննութիւնը ցոյց տուեց՝ ոչ թէ նախնական որեւէ ձեռագրի օգնութեամբ են գրուած, այլ ձեռագրի գրութեան ժամանակից յետոյ որեւէ բանասէր ընթերցողի կամ ընթերցողների կարծիքներն ու ենթադրութիւններն են, բնագրագիտական տեսակէտից՝ անկարեւոր:

Բայց կայ մի նշանաւոր տարբերութիւն B-ի եւ E-ի մէջ: Խօսքը դարձեալ տալիս ենք Գ. Տէր-Մկրտչեանին. «E-ն . . . ունի միայն մի մեծ հատուած, որ չկայ B-ում, բայց այդ հատուածն էլ ընդմիջարկութիւն է E-ի մէջ...: Այդ հատուածը Խորենացու շատ ծանօթ մի կտորն է, բայց առնուած ոչ ուղղակի Խորենացու որեւէ ձեռագրից, այլ ինչպէս իմ մանրամասն խուզարկութիւններս ինձ համոզեցին՝ Խորենացու 1695 թուի («Ամստէրդամի») հրատարակութիւնից, այդ հրատարակութեան բոլոր մանր եւ խոշոր տարբերութիւններով, որով նորից անհնարին է դառնում Փարպեցու ուրիշ՝ մեզ ծանօթ՝ մի Ձ. ենթադրել, որից արած լինէր E-ն իր ընդօրինակութիւնը»: (Այնուհետեւ Գ. Տէր-Մկրտչեանը բերում է ընդմիջարկուած հատուածը [1]) ըստ B-ի, 1695 թուի Խորենացու տպագրի, E-ի եւ Վենետիկեան Առաջին տպագրութեան, որից յետոյ շարունակում է). «Բաղէշի ձեռագիրն (=B) ուրեմն չունի Խորենացու «տեղեկացեալ գիտացին» մեծ հատուածը, այլ միայն ամփոփատաբար շարունակում է՝ «ընկալեալ զնշանագիրսն ի Հաբէլէ ուրախ լինէին: Եւ այսպէս դիպեալ զիւտի

---

[1]) *«Արարատ», անդ, եր. 154: Յիշատակարանի վերջին խօսքերը բերում ենք բուն ձեռագրից:*

[1]) *Տես ներկայ հրատարակութեան մէջ, եր 15, ծան. 3:*

նշանագրացն՝ ձեռն ի գործ արկանէր եռանեյլին Մաշթոց»: Այս տողերն ունի B-ն էջի մէջ տեղում՝ առանց որեւէ թերութեան նշանի, առանց իմաստի խեղաթիւրման կամ բառերի այլնատման... E-ի գրիչը [1]), որ ծանօթ էր Խորենացուն՝ լրացնում է Փարպեցու պատմութիւնը մի այնպիսի Խորենացուց, որի մէջ օտար յատուկ անունների մէջ փիւր'երը ֆէի էին փոխուած: Եւ այդպիսի միակ Խորենացին է 1695-ի տպագիրը (եւ կամ սրա ճշգրիտ արտատպութիւնը 1752-ին Վենետիկում):... Այսպիսով ուրեմն՝ մենք գիտենք, որ 1774 թուին ընդմիջարկուել է Ղազարը E ձեռագրում, որ ընդմիջարկուած հատուածը առնուած է *տպագիր* Խորենացուց»...:

Երկու ձեռագիրների մէջ եղած այս յարաբերութիւնը որոշելուց յետոյ՝ դառնանք Վենետիկի Ա. տպագրութեան օրինակին, որի հիման վրայ, ինչպէս տեսանք՝ կատարուել են եւ յաջորդ երկու տպագրութիւնները:

Խօսքը դարձեալ տանք Գ. Տէր-Մկրտչեանին, որ առաջին եւ միակն է զբաղուել այս հարցով եւ հիմնաւոր եզրակացութեան յանգել: «E-ի բոլոր մանր տարբերութիւններն ճշտութեամբ կրկնւում են Վենետիկի Ա. հրատարակութեան մէջ, մի քանի ակներեւ սխալների կամ պակասաւոր բառերի ուղղագրութեամբ, որով անպայման ապացուցւում է, որ Վենետիկի օրինակը (կամ օրինակները) ծագում է անմիջապէս E-ից [2]): Այստեղ աւելորդ ենք համարում երկար օրինակներ բերել այդ մանր տարբերութեանց. ընթերցողին մնում է հաւատալ մեր հաւաստիացմանը, մինչեւ որ լոյս տեսնի Փարպեցու մի նոր քննադատական հրատարակութիւն B-ի, E-ի եւ W-ի (=(Թղթի Վիեննայի ձեռագրի) բաղդատութեամբ: E-ն եւ նրա հետ միասին Վենետիկեան հրատարակութիւնները ունին միայն մի մեծ հատուած, որ չկայ B-ում, բայց այդ հատուածն էլ ընդմիջարկութիւն է E-ի մէջ, որից եւ անցած է Վենետիկի Ձ.-ին... E-ն տառացի ճշտութեամբ արտագրում է (Խորենացու Ամստերդամի տպագրութիւնից) «Եպիֆանոս, Եպիփանիո, Հռոֆանոս, Հռոֆանոսի, սիլլաբայիցն», իւր կողմից շատ բնական մի քանի ուղղագրական տարբերութիւններ մտցնելով անգիտակցաբար՝ «յառաջագոյն, անունն, գրչութե (փոխանակ՝ գրչութբ, *երկուսի մէջ էլ պատուով գրուած*), ինչպէս որ B-ից արտագրուած հատուածներում էլ անուշադրութեամբ գրում է՝ «հատանէր» (=հատուցանէր), «կարգագրութեան» (=կարգադրութեան) եւն: Վենետիկի Ա. հրատարակութիւնը տառացի ճշտութեամբ արտագրում է E-ից, վերականգնելով փիւր'երը եւ ուղղելով՝ ըստ Փարպեցու՝ սիլլաբայիցն=սիղոբայիցն»:

Այս եզրակացութիւնը լիովին արդարանում է եւ ներկայ հրատարակութեամբ, որի ծանօթութիւնների մէջ շատ աչքի է ընկնում Ձ-ի (=B) եւ Ատ-ի (=Վենետիկեան Ա. տպագրութեան) զուգութիւնը: Ատ. ոչ մի աւելի բառ կամ նախադասութիւն կամ ուղիղ ընթերցուածք չէ տալիս (բացի տառասխալների ուղղութիւնից եւ ուղղագրական ձեւերից, որոնք բնականաբար կարող էին կատարուել երկրորդ ձեռագրից (=E-ից) արտագրողի կամ հրատարակիչների ձեռքով: Բայց ունի, Ձ-ի համեմատութեամբ, պակաս հատուածներ, ունի եւ աղաւաղութիւններ, որոնք չկան Ձ-ում, այլ կան ԲՁ-ում, որի միջոցաւ եւ անցել են Ա. տպագրի օրինակին: Եթէ ներկայ հրատարակութեան մէջ բերած լինէինք եւ ԲՁ-ի ընթերցուածքները՝ զուգութիւնը ԲՁ-ի եւ Ատ-ի մէջ անհամեմատ աւելի յաճախ կնկատուէր:

Այսպէս ուրեմն՝ Վենետիկեան Ա. տպագիրը, ուրեմն եւ Բ. ու Գ. տպագրութիւնները բղխում են էջմիածնի երկրորդ Ձեռագրից (=E), որ «անխնամ» արտագրութիւն է Ա. Ձեռագրից (=B):

***

Ղազար Փարպեցու Թղթի ձեռագիր մի հատ կայ ներկայումս յայտնի—այդ մեր գործածած Ձ-ն է (=B). սրանից ընդօրինակուած երկրորդ ձեռագրի (E-ի) մէջ բաց տեղ է թողած՝ Թուղթը արտագրելու համար, բայց չէ արտագրուած: Կայ մի ուրիշ օրինակ այս Թղթին՝ Վիեննայի Մխիթարեանների մատենադարանում (№ 257, I, ըստ Գ. Տէր-Մկրտչեանի՝ W=Վ.), որ ինչպէս Հ. Տաշեան յայտնում է (Ցուցակ ձեռագրաց)՝ նոր ժամանակի ընդօրինակութիւն է, ԺԹ դարի, թէեւ գրիչը անյայտ:

Թղթի Ա. տպագրութիւնը, ինչպէս առա-

[1]) *«Ամենայն հաւանականութեամբ այդ անանուն գրիչը Օշականցի Ղուկիանոս դպիրն է, որի գրչութեամբ ուրիշ ձեռագրեր էլ կան Մայր Աթոռի Մատենադարանում»:*

[2]) *Յօդուածում տպագրուած է՝* B-*ից, որ անկասկած տպագրական վրիպակ է:*

ցին, կատարուած է երկու օրինակներից, որոնք արտագրուած են եղել Էջմիածնի ձեռագրից Մսեր մագիստրոսի եւ Յովհաննէս եպիսկոպոս Շահխաթունեանցի ձեռքով, 1829-ին: Այս թուին, ինչպէս ասում է Գ. Տէր-Մկրտչեան, Էջմիածնում կա՛ր B ձեռագիրը, բայց չկար Փարպեցու Թղթի ուրիշ ձեռագիր. ուրեմն բնականապէս հետեւցնում է, որ Ա. տպագրութեան, ապա ուրեմն եւ յաջորդ երկու տպագրութիւնների աղբիւրը մեր Զ-ն է (B), միջնորդութեամբ յիշեալ երկու նոր ընդօրինակութիւնների: Բայց այստեղ հանդիպում ենք երկու դժուարութիւնների: Առաջին՝ որ այդ երկու ընդօրինակութիւնները բաւական թւով մեծ եւ փոքր տարբերութիւններ ունին Զ-ից: Թողնելով ուրիշ մասերը, որոնք կարող էին առաջ եկած լինել եւ հրատարակչի անուշադրութիւնից կամ յետեւեալ տպագրութիւնից՝ բերենք յատկապէս մի քանի օրինակ, որոնք Ա. տպագրութեան ծանօթութիւնների մէջ նշանակուած են՝ իբրեւ բնագիր օրինակների ընթերցուածներ. *խոստցան* (փոխանակ Զեռագրի «խոստցաւ» ընթերցուածքին. տես ներկայ հրատարակութեան մէջ եր. 187, տ. 10). *հաւատաց* (=հաւատոց, եր. 187, տ. 14). *զորոց եւ ... յիշէ* (=զորոց եւ Պօղոս—պետերից ուղղած յինս—յիշէ, եր. 191, տ. 24). *որ բողոքեն ցանկ* (=որ բողոքէն ցանկ, եր. 193, տ. 31). *չզոյր ինձ* (=չզոյր ինչ, եր. 196, տ. 30). *ըստ ձայնի* (=ըստ ձայնին, եր. 202, տ. 9). «տեղեկացեալք» բառից յետոյ (եր. 202, տ. 9) Ա. տպ. դնում է ծանօթութիւն. «որպէս յօրինակին մեր՝ նոյն եւ *ի բուն գրչագիրն երկու թերթ* պակասեն աստէն». այն-ինչ Զ. այս տեղում ունի ծանօթութիւն. «*մի* թուղթ յայս տեղացս է պակաս»: Միւս կողմից նկատում ենք, որ յիշեալ երկու օրինակները բոլորովին իրար նման են: Վերյիշեալ տարբերութիւնները «երկուսին օրինակներն» ունին, եւ չկայ այնպիսի ուղղագրական տարբերութիւն, որ նշանակուած լինէր միայն մի օրինակի համաձայն: Վերջին երեւոյթը բացատրելու համար՝ անհրաժեշտ է ենթադրել, որ Մ. Էմինի ձեռքին եղած երկու օրինակները արտագրուած են մէկը միւսից, եւ ոչ թէ միմեանցից անկախ՝ բուն ձեռագրից, ինչպէս հաւատացնում է հրատարակչի խօսքերից: Իսկ առաջին երեւոյթը, այսինքն, Զեռագրի եւ այս ընդօրինակութիւնների մէջ եղած զանազանութիւնները բացատրելու համար—քանի որ բազմատեսակ եւ բազմաթիւ ապացոյցներ կան, որ այս ընդօրինակութիւնները առաջ են եկել Զ-ից (B-ից)—պէտք է ենթադրել, որ առաջին ընդօրինակութիւնը (Մսերի) շատ անփոյթ է եղել կատարուած, հակառակ Մ. Էմինի համոզման, թէ «մեծաւ զգուշութեամբ ընդօրինակեալ՝ տարաւ ընդ իւր ի Քիշնեւ»:

Յամենայն դէպս՝ նոյն համարելով Գ. Տէր-Մկրտչեանի եզրակացութիւնը, թէ «Էմինի հրատարակութիւնը ծագում է B-ից»՝ պէտք է աւելացնենք, որ այդ հրատարակութիւնը, Զ-ի համեմատութեամբ, շատ աղճատուած է, օրինակների վատ ընդօրինակութեան, զուգէ եւ հրատարակչի անուշադրութեան պատճառով:

Աւելի կնճռոտ է Վիեննայի օրինակի յարաբերութեան խնդիրը Զ-ի հետ [1]):

Այս օրինակը մի ինքնուրոյն տետրակ է եղել, նօսրգրածն, որ 1867 թուից յետոյ մտել է Վիեննայի ձեռագիրների հաւաքման մէջ եւ ուրիշ տետրերի հետ միասին ամփոփուած է մի կազմի մէջ: Այս ժողովածուի մէջ Թուղթը բռնում է առաջին տեղը, գրաւելով 5ա—9բ թերթերը: Յիշատակարանն է. «Աւարտեցաւ գիրս այս Ղազարու վարդապետի Փարպեցւոյ ձեռամբ բազմամեղ եւ անարժան Գրիգորի երիցու ի հարկէ արքայական եւ քաջ վարդապետին Վարդանայ դիտապետի: Արդ օրինակեցաք զիրս այս ի թուին Հայոց ՌՂԱ (=1642) ի Բաղէշ, ի վանսն Յովհաննու Կարապետի»: (Տաշեան, Ցուցակ Ձեռ.): Օրինակը շատ թերի է: Նրա մէջ պակասում են Թղթի Յառաջաբանը (ներկայ հրատարակութեան մէջ եր. 185, 186). *«Երկուցն միայնոյ դեռ—եւ արդ զի՞նչ եւս ասեմ»* (եր. 188, տ. 28—եր. 189, տ. 3). *«Այլ եւ չպահեցողութեամբ—զմաղզըն եւ զբազումողորմն»* (եր. 189, տ. 10—25). *«Եւ ընդունելին զեղին եւ—բունեցոց յինքեանս չար գործոցն»* (եր. 190, տ. 4—6). *«Թող թէ եւ առ այլում զայսպիսիս չշնչել բանս»* (եր. 190, տ. 8—9). *«Խօսել առ նախանձու զանարժանս-եւ զոյն ի պատճառս ստեն-չից»* (եր. 190, տ. 14—եր. 191, տ. 5). *«Զատ աշխատութիւն համարիմ եւ աւե-լորդս»* (եր. 191, տ. 14—15). *«Այլ սակաւ*

---

[1]) *Իմ խնդրի համաձայն, Հ. Տաշեանի յանձնարարութեամբ, Հ. Պիկզիկեանը ինձ ուղարկեց այս օրինակի մանրամասն համեմատութիւնը՝ Գ. տպագրի վրայ կատարուած. որի համար խորին շնորհակալութիւնս եմ յայտնում:*

բանիւք—յարքայութեանն Քրիստոսի» (եր. 191, տ. 16—22). «Այլ առեալ զմեղսն—չղիցի ողորմութեան» (եր. 191, տ. 29—եր. 192, տ. 3). «Բայց իմ ընդ կարի—եւ յայտնի են ամենայն ուղղափառ ժողովրդոց» (եր. 192, տ. 10—34). «Բայց եւ թէեւ գիտէի—զործոց իշխանութեան եւ ոչ երբէք» (եր. 193, տ. 14—23). «Եւ ոչ պարծեալ—կարէի ումեք հաճոյ լինել» (եր. 193, տ. 32—եր. 196, տ. 5). «Եւ դու, տէր, զայս—եւ ծախողաց եւ մթերից տեղւոյն» (եր. 196, տ. 29—եր. 197, տ. 25). «Որոց հետամտեալ այնուհետեւ—վայ վայ, տեսին աչք մեր» (եր. 198, տ. 14—24). «Մի զուգէ զգացեալ ուրուք—զդժոխս ժառանգեցուցանէ (եր. 198, 34—եր. 200, տ. 30). —Այսինքն ամբողջ Թղթի աւելի քան մի երրորդը: Բացի սրանից այս օրինակը, Զ.-ի համեմատութեամբ, որ արդէն աղաւաղուած է թղթերի յետ- եւ առաջ-դասաւորութեամբ, Թղթի միջի մասերում ունի հատուածների առանձին դասաւորութիւն [1]), որ անյարմար է եւ աւելի աղճատում բնագիրը [2]): Ընթերցուածների կողմից էլ այս օրինակը, Զ.-ի համեմատութեամբ, աստիկ աղճատուած է. բաւականանամ մի քանի օրինակներ բերելով Թղթի սկզբից եւ վերջից. «զայս անուանադրեալ» (փոխանակ՝ զորս, տես եր. 187, տ. 6). «զկեալ զիս» (=զիմ, եր. 187, տ. 19). «զիս աշխարհս վարդապետաց» (=զիս ընդ վարդապետաց, եր. 187, տ. 20). «հարց եկեալ» (=յայց, եր. 188, տ. 3). «եւ ոչ օտար» (=եւ ոչ իբրեւ օտար, եր. 188, տ. 4). «անզգագոյնք (=առագագոյնք, եր. 188, տ. 10). «ըստ խրատուն հոգեւորութեամբն (=հոգեւորութեանն, եր. 188, տ. 13). «զձեռնամուտ առաքինոյն» (=զկրօնաւոր, եր. 203, տ. 11). «ի կորուստ զտանել» (=ի կորուստէն, եր, 203, տ. 31). «յԱստուծոյ փառաբանութեան» (=փառաւորութեան, եր. 203, տ. 33). «զերի փոխարէնս» (=զբարի, եր. 204, տ. 1):

***

Այս անզուգութիւնների հետ նկատւում է մեծ զուգութիւն Զ.-ի եւ Վ. օրինակի մէջ. զուգութիւն՝ մանր ուղղագրական ընթերցուածների, միատեսակ աղաւաղութիւնների, միատեսակ ուղղագրութիւնների մէջ: Օրինակները շատ շատ են. այստեղ բերենք միայն մի քանի բնորոշ օրինակներ, մանրամասնութիւնների համար հրաւիրելով ընթերցողին համեմատել այս հրատարակութեան ծանօթութիւնները:

Զ. եւ Վ. միանման ունին «տէր Ներսէսն եւ Հրաս» (եր. 188. տ. 1). «ընդ առ ի քէն տեառնն եւ այլոց» (եր. 188, տ. 22. ԲԳ. տպագիրները չունին «տեառնն»). «եւ իմոյ չմարթացեալ» (եր. 198, տ. 13,=եւ իմ ոչ մարթացեալ). «ողջ լեր» (եր. 198, տ. 33). «անարատ եւ անյամենեցունց արգելի» (եր. 202, տ. 16). «միւս եւս թարգմանին» (եր. 202, տ. 18). «սրում ընդ ձայնի խորհրդոյն» (Վ. խորհրդոցն. եր. 202, տ. 24. ՏՏ. ունին ընդ ձարի). «յերանելւոյ «Աշանայ» (եր. 202, տ. 27) են: Այս զուգութիւնների վրայ աւելացնենք եւ այս կարեւոր համաձայնութիւնները. թէ՛ Զ. եւ թէ Վ. միատեսակ բաց են թողնում հատուածը փիլիսոփոս Մովսէսից յետոյ (եր. 202, տ. 9), եւ միատեսակ, միեւնոյն ուղղագրութեամբ ունին ծանօթութիւն. «մի բանք յայս տեղացս է պակաս». երկուսն էլ ունին տառացի նոյնութեամբ միեւնոյն յիշատակարանի խօսքերը. «Աւարտեցաւ գիրքս այս Ղազարու վարդապետի Փարպեցւոյ ձեռամբ բազմամեղ եւ անարժան Գրիգորի երիցու ի հարկէ սրբազան եւ քաջ վարդապետին Վարդանայ դիտապետի»: Յիշելու է եւ այն, որ Վ.-ն չունի ոչ մի աւել տող՝ որ չլինէր Զ.-ում. չունի ոչ մի ուղղագրական յատկութիւն՝ որ չարդարանար Զ.-ով կամ օրինակողի անուշադրութեամբ կամ սրբագրութեամբ:

Բոլոր այս համաձայնութիւնները կշռելով՝ մենք գալիս ենք այն եզրակացութեան, որ Վ. օրինակը ծագում է անմիջապէս Զ.-ից (B-ից), եւ արտագրուած է այն ժամանակ, երբ Զ.-ում նոր գրչով արդէն դրուած է եղել ծանօթութիւն, թէ «Այս է սկիզբն Թղթոյն Ղազարու Փարպեցւոյ (համեմատել մեր հրատ. մէջ եր. 186, ծան. տ. 32, եւ եր. 187, ծան. տ. 1), ուրեմն 1829 թուականից յետոյ: Բայց այս արտագրութիւնը չափազանց թերի է եւ սխալաշատ, ինչպէս տեսանք, եւ յիշատակարանում ունի վկայութիւն, թէ նրա բնագիրը արտագրուած է Բաղէշում 1642-ին. այն-ինչ Զ. այն մասը, որ պարունակում է Ղ. Փարպեցու Պատմութիւնը եւ Թուղթը՝ արտագրուած է Բաղէշում 1672-ից յետոյ: Այս վկայութիւնը յայտնապէս հակասում է մեր եզրակացութեան. բայց այս հակասութիւնը, ինչպէս

[1]) Տես եր. 194, ծան. 11, Վ.

[2]) Տես այս մասին Հ. Տաշեանի կարծիքը, Ցուցակ Ձեռ., եր. 657, կէ 2.

***

Այս բաղդատութիւնների մատակարարած ընթերցուածների օգնութեամբ կազմել եմ ներկայ հրատարակութեան բնագիրը, որի ժամանակ ղեկավարուել եմ հետեւեալ սկզբունքներով.—

Պահպանել եմ ԲԳ. տպագրի (ինչպէս՝ Բ-ի, որովհետեւ Գ. տպագիրը ոչ մի ինքնուրոյնութիւն չունի, այլ պարզ արտատպութիւն է Բ-ից) բաժանումը երեք դրուագի եւ հարիւր գլուխի: Դրուագների բաժանումը, ինչպէս նկատել է եւ Բ. տպագրի հրատարակիչը՝ արդարանում է թէ՛ Պատմութեան նիւթով եւ թէ Նոյն-ինքն հեղինակի վկայութեամբ (եր. 38, 107): Իսկ գլուխների բաժանումն արդարանում է Ձեռագրերով, որոնք ունին այդպիսի բաժանում, նոր գլխի հատուածը դնելով եւ երբեմն՝ գլուխների վերնագրերը: Բայց որովհետեւ ձեռագրերում այս գլխակարգութիւնը սկզբից մինչեւ վերջը չէր շարունակւում, եւ միւս կողմից՝ ԲԳs. գլխակարգութեամբ արդէն բազմաթիւ ցուցմունքներ են եղած գրականութեան մէջ՝ ուստի յարմար համարեցի հետեւել այս՝ արդէն մի անգամ հաստատուած գլխակարգութեան (բացի մի տեղից Պատմութեան Յառաջաբանում, որտեղ հատուածների պատկանողութիւնը փոփոխելու պահանջ կար եւ գլխակարգութիւնը փոխել). թէպէտ տեղ-տեղ ցանկալի էր այլ կերպ անել այդ գլխակարգութիւնը:

Պարապողների դիւրութեան համար՝ յարմար համարեցի բնագրից առաջ դնել գլուխների համառօտ բովանդակութիւնը— Յանկ գլխոց, երբեմն հետեւելով Ա. տպագրին, երբեմն նորանից անկախ:

Ընթերցուածների մէջ ընտրութիւն անելիս, երբ իմ կարծիքով Ձ.-ի եւ ՏՏ.-ի տարբեր ընթերցուածները հաւասար արժանիք են ունեցել՝ առաւելութիւնը տուել եմ Ձ.-ի ընթերցուածին. իսկ երբ ՏՏ. (յատկապէս Բ. տպագիրը եւ նորա հետեւողութեամբ Գ.-ը), ունեցել են յաւագոյն ընթերցուածներ՝ սրանց եմ տեղ տուել բնագրի մէջ, թէեւ յաճախ գիտակցելով, որ այդ յաւագոյն ընթերցուածները ոչ թէ յաւագոյն բնագրից են ծագում, այլ ուշեայն ուղղագրութիւն են Բ.-ի հրատարակչի կողմից: ԲԳ. տպագրին առաւելապէս հետեւել եմ Ս. Սահակի տեսիլքի եւ մեկնութեան մէջ, քանի որ, ինչպէս յայտնում է Բ.-ի Ազդը՝ դրա համար համեմատութեան են առնուած եւ հատընտիրներ, որոնց մի քանի ձեռագրի բաղդատութեամբ է կազմուած այդ մասի բնագիրը Բ. (եւ Գ.) տպագրի մէջ: Սակայն խուսափել եմ մեր բնագրի մէջ մտցնելու խօսքի զարդերը, չափազանցութիւնները, որոնք յետագայ ձեռագրերի բարդումներն են նախնական աւելի պարզ բնագրի վրայ, ինչպէս յատուկ է վարքագրական բովանդակութեամբ գրուածքներին:

Երրորդ լծորդութեան անորոշ դերբայի վերջաւորութիւնները միշտ դրել եմ *ել*, փոխանակ *իլ*'ի, ինչպէս յաճախ պատահում էր թէ՛ Ձ.-ում եւ թէ ՏՏ.-ում. այն պատճառով, որ Ձ.-ի մէջ *իլ*'ով գրութիւնը սկզբնական չէ եղել, այլ *ի*'ն գրուած է քերուածքի վրայ, ինչպէս նշանակուած է ծանօթութիւնների մէջ. նոյն-իսկ երբեմն նշմարւում է քերուած սկզբնական *ե*'ը: Այս հանգամանքը ինձ իրաւունք տուեց վերականգնել նախնական եւ ընտիր ուղղագրութիւնը: Նոյնպէս եմ վարուել եւ երրորդ լծորդութեան բայերի անց. անկատար եղ. Գ. դէմքի *իւր* վերջաւորութեան նկատմամբ, փոխելով ընտրելագոյն *եր* ձեւին:

Որքան ձեռնհաս եմ եղել՝ օգտուել եմ այն ուղղագրութիւններից, որոնք կային նախորդ տպագրութիւնների մէջ կամ առաջարկուած էին բանասէրներից զանազան գրուածքներում (մանաւանդ Նորայր Բիւզանդացուց): Այս ուղղագրութիւններից որոնք որ աներկբայելի են թուել ինձ՝ մտցրել եմ բնագրի մէջ, իսկ երկբայելիները՝ ծանօթութիւնների մէջ: Բոլոր դէպքերում յիշել եմ ուղղագրութիւնների հեղինակներին: Իսկ այն ուղղագրութիւնները, թէ՛ բնագրի մէջ մտցրած եւ թէ ծանօթութիւնների մէջ առաջարկուած, որոնց հեղինակները չեն նշանակուած՝ պատկանում են ինձ:

Էջմիածնում, «Պատմագրքի» աշխատակիցների ժողովում կայացած որոշման համաձայն՝ ծանօթութիւնների մէջ (յրի) չեմ նշանակել այն տարբեր ընթերցուածները, որոնք վերաբերում են *օ* կամ *աւ*, *օ* կամ *ո*, *ւ*'ով կամ առանց *ւ*'ի, *յ*'ով կամ առանց *յ*'ի (բառի վերջում) ուղղագրութիւններին. (օր. Պօղոս-Պաւղոս, փրկող-փրկօղ, երանելոյ-երանելւոյ, նոմա-նոմայ), նոյնպէս եւ գլխաւոր յօդերը: Առաջին չորս ուղղագրական ձեւերից ընդունել եմ այժմ սովորական դարձած ուղղագրութիւնները, որոնց մեծ մասամբ համապատասխան է եւ Ձ.-ի ուղղագրութիւնը. իսկ գլխաւոր յօդերի վերաբերմամբ առաւելապէս հետեւել եմ Ձ.-ին, իսկ երբեմն ՏՏ.-ին:

Ծանօթութիւնների մէջ չեմ նշանակել

նաև Տպագիրների անճշտութեան տպագրական վրիպակները, որոնք մեծ մասամբ պատահում են Գ. տպագրի մէջ և փոքր մասամբ Ա.-ի և Բ.-ի մէջ:

Սուրբ գրքից բերուած հատուածների տեղերը նշանակելիս՝ ընդհանրապէս զանց եմ արել նշանակել այն հատուածների տեղերը, որոնք բնագրում չեն բերուած իբրև վկայութիւն, այլ ինչպէս խօսողի սեփական խօսքերը. օրինակ՝ եր. 67, տ. 21—23, եր. 99, տ. 34, եր. 118, տ. 15, 16 ևն:

***

## ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

### Ա. Թարգմանութիւններ.

1. Ֆրանսերէն լեզուով ամփոփական թարգմանութիւն Պատմութեան, Լանգլուայի ժողովածուի մէջ, Բ. հտ., Ս. Ղեսարեանի ձեռքով կատարուած:
2. Մասնական թարգմանութիւն, պարզեալ ֆրանսերէն լեզուով, Գ. Գայարանիի, «Abrégé de la vie politique et guerrière du prince Vahan, Պարիզ, 1843.
3. Աշխարհաբար թարգմանութիւն, միայն Պատմութեան, Միհրան քահանայ Տէր-Պետրոսեանի, Աղեքսանդրոպոլ 1895.
4. Աշխարհաբար թարգմանութիւն, միայն Թղթի, Մ. Նալբանդեանի, հրատարակութիւն Մ. Տէր-Գրիգորեանցի, Պետերբուրգ, 1868.

### Բ. Ուսումնասիրութիւններ.

1. Մ. Էմին, Թղթի Ա. տպագրութեան Յառաջաբանում, Մոսկվա, 1853.
2. Մ. Նալբանդեան, Թղթի թարգմանութեան Յառաջաբանում.
3. Գր. Խալաթեանց, «Ղազար Փարպեցի և գործք նորին», Մոսկուա, 1883.
4. Նորայր Բիւզանդացի, Հայկական բառաքննութեան մէջ, եր. 79—85, Կ. Պոլիս, 1880, և Քննասէրի մէջ, Բ. պրակ, եր. 16—58. Ստոկհոլմ, 1887.
5. Իս. Յարութիւնեան, «Հայոց գիրը», եր. 203—235, Թիֆլիս, 1892.
6. Գր. Տէր-Պօղոսեան, «Եղիշէի Պատմութեան աղբիւրը», «Հանդ. ամսօրեայ, 1895, եր. 20, 58, 110.
7. Գր. Տէր-Պօղոսեան, «Նկատողութիւններ Եղիշէի Պատմութեան վերաբերեալ», «Հանդ. ամսօրեայ 1896, եր. 129, 168, 197, 302.
8. Հ. Վարդ. Հացունի, «Խորհրդածութիւնք Եղիշէի Պատմութեան վրայ», Վենետիկ, 1896, (արտատպուած «Բազմավէպից»):
9. Գ. Տէր-Մկրտչեան, «Ղազար Փարպեցու ձեռագրերը», «Արարատ», 1901, Նոյ. Դեկտ., եր. 542—549.
10. Ստ. Մալխասեանց, «Ուղղագրութիւններ Ղազար Փարպեցու Պատմութեան և Թղթի. «Հանդէս Հայագիտութեան», 1903, Բ. հտր. Բ տետր:

---

*Բացատրութիւն համառօտագրութիւնների և նշանների:*

Ձ.—Ձեռագիր Էջմիածնի մատենադարանի, № 611 Կէարգ. ցուց.=նոյն № 2463.

ԲՁ.=Ձեռագիր Էջմիածնի մատենադարանի, № 1688, I=նոյն № 1646, I.

Վ.—Վիեննայի Մխիթարեանների օրինակ Թղթի.

Ճառ.—Ճառընտիր Էջմիածնի մատենադարանի № 936.3=նոյն № 916.3.

Ատ.=Առաջին տպագիր Պատմութեան, Վենետիկ 1793.

Ատ.—Առաջին տպագիր Թղթի, Մոսկվա, 1853.

Բ, Գտ.=Երկրորդ և Երրորդ տպագիր Պատմութեան և Թղթի, Վենետիկ, 1873, 1891.

( )—փակագիծ գործ է ածուած՝ որոշելու համար իմ աւելացրած բառերը, որոնք չկան Ձ.-ում.

[ ]—Անկիւնաւոր գործ է ածուած՝ որոշելու համար այն բառերը, որոնք կան Ձ.-ում, բայց ես համարել եմ ընդմիջարկութիւն.

*—աստղ գործ է ածուած կասկածելի ուղղագրական ձեւ ունեցող բառերի առաջ, ցոյց տալու համար, որ այդ ձեւը տպագրական վրիպակ չէ:

' կամ ' , նշանների մէջ են դրուած այն բառերը կամ հատուածները, որոնց վերաբերում է ծանօթութիւնը:

*Ստ. Մալխասեանց*

# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ

ԻԵ. Զչարիլ Յազկերտի ընդ պատասխանին և զիշխանսն Հայոց ի դուռն կոչել։ Անուանք իշխանացն որք չոգան ի դուռն։
ԻԶ. Պատուհասելն Յազկերտի բանիւ զաւագանին երեցունց աշխարհաց։ Պատասխանի զօրավարին Հայոց Վարդանայ։
ԻԷ. Խորհուրդ իշխանացն յաղագս պատճառանօք յանձնառութեան օրինաց մոգութեան։
ԻԸ. Յանձնառութիւն օրինացն մոգութեան և երկդիմի խոստումն Վարդանայ։
ԻԹ. Դարձ տանուտերացն Հայոց յաշխարհն իւրեանց։
Լ. Մեկնումն Վարդանայ ի նախարարացն և դիմել յաշխարհն Յունաց։
ԼԱ. Դառնալն Վարդանայ անդրէն ի Հայս։
ԼԲ. Ժողով իշխանացն և ուխտ և երդումն։
ԼԳ. Թուղթք Վասակայ ի խնդիր օգնականութեան ընդդէմ Պարսից։
ԼԴ. Դիմելն Վարդանայ յԱղուանս ընդդէմ Պարսից։
ԼԵ. Կռիւն յԱղուանս և յաղթութիւն Հայոց։
ԼԶ. Նենգութիւն Վասակայ և դառնալն Վարդանայ ի Հայս։
ԼԷ. Գալ զօրուն Պարսից ի պատերազմ։
ԼԸ. Դիմելն Վարդանայ ընդդէմ Պարսից։ Բանք Ղեւոնդի և Վարդանայ ի գիշերին։
ԼԹ. Կազմութիւն ճակատուն։ Պատերազմն և անուանք նահատակացն, որ անկան ի նմին։
Խ. Ապաշաւելն Յազկերտի և զՄուշկան յետս կոչել։ Ատրորմիզդ մարզպան։
ԽԱ. Հալածել Ատրորմզդի զփախստեայսն Հայոց և մահ Հմայեկայ։
ԽԲ. Վարումն կապանօք ի Պարսիկս՝ իշխանացն և քահանայից։ Հանդիպումն Վասակայ և քահանայիցն զճանապարհայն։
ԽԳ. Հարցափորձ և պատասխանիք Սամուէլի երիցու և Աբրահամայ սարկաւագի։
ԽԴ. Հարցափորձ և պատասխանիք Ղեւոնդի և ընկերաց նորին։
ԽԵ. Հարցափորձ նախարարացն առաջի Յազկերտի և պատասխանատուութիւն Արշաւրի Կամսարականի, յորում զվնաս ապստամբութեանն արկանէ զՎասակաւ։
ԽԶ. Պատուհաս Վասակայ և մահ նորա յաշխարհին Պարսից։
ԽԷ. Անուանք քահանայիցն և նախարարաց, որք տուան ի կապանս։
ԽԸ. Պարտումն Յազկերտի ի պատերազմին որ ընդ Քուշանս։
ԽԹ. Վկայութիւն մահուամբ Թաթկայ եպիսկոպոսին Բասենոյ։
Ծ. Հրաման սպանանելոյ զքահանայսն և պատուէր զգուշութեան։
ԾԱ. Բանք մխիթարութեան Ղեւոնդի առ նախարարսն, որք մնալոց էին անդէն ի կապանս։
ԾԲ. Լուծանել զքահանայսն ի շղթայից։
ԾԳ. Պատուէր զգուշութեան Վեհդենշապհոյ առ արս շահաստանին։ Հրաժեշտ քահանայիցն ի նախարարացն։
ԾԴ. Զու Վեհդենշապհոյ հանդերձ քահանայիւքն։ Յաղագս Խուժկին։
ԾԵ. Ատեան դատաստանի. ամբաստանութիւն, և պատասխանի Յովսեփայ կաթողիկոսին։

ԴՐՈՒԱԳ Գ.

Ձ. Դիմել Հազարաւուխտոյ ի Վիրս, թողեալ ի Հայս զօրավար զՇապուհ։ Բանագնացութիւնք Շապհոյ ընդ Կամսարականացն վասն կանանցն։

ՁԱ. Որսալ Շապհոյ զՎահան։ Քաջութեան գործ Խուրսայ։

ՁԲ. Անարգել Վահանայ զՊարսիկս ի դակշի՝ ի գիշերի։

ՁԳ. Յանկարծակի յարձակումն Շապհոյ ի վերայ Վահանայ և աներկիւղ խիզախելն Վահանայ սակաւ արամբք ընդդէմ բազմութեան զօրուն Պարսից։ Մահն Գդիհոնի Սիւնւոյ։

ՁԴ. Խոկմունք Շապհոյ, անարգելոյ յառնէն Վահանայ։

ՁԵ. Գալ գուժկանի ի Պարսից և զՇապուհ ի դուռն կոչել։

ՁԶ. Զուել Շապհոյ ի դուռն և Վահանայ ի Դուին։

ՁԷ. Դառնալ Հազարաւուխտոյ ի դուռն և զՎաղարշ թագաւորեցուցանել։

ՁԸ. Առեան արքունի, յորում պարսաւ անհաւան բարուցն Պերոզի. և յաղագս ապստամբութեանն Հայոց և գործոց Վահանայ։

ՁԹ. Գալ Նիխորոյ ի Հայս՝ առ ի նուաճել զՎահան սիրով խաղաղութեամբ։ Երեքին խնդիրք Վահանայ։

Ղ. Հաճել Նիխորոյ ընդ խնդիրս Վահանայ և զնա առ ինքն կոչել։

ՂԱ. Երթ Վահանայ առ Նիխոր և ատենաբանութիւն Նիխորոյ։

ՂԲ. Ատենաբանութիւն Վահանայ ի պատասխանի բանիցն Նիխորոյ։

ՂԳ. Խրախճանք. բերկրումն ուխտապահացն և ի կոր կործանումն ուրացելոցն։

ՂԴ. Յանձնառութիւն պայմանացն Վահանայ և դառնալ Նիխորոյ յաշխարհն Պարսից և Վահանայ ի Դուին։—Անցանելն ընդ հունն Երասխայ։ Առաքել Վահանայ զայրեձին Հայոց ի դուռն։

ՂԵ. Երթալն Վահանայ ի դուռն հանդերձ այրեձիով Հայոց. ատենաբանութիւն Վահանայ առաջի Վաղարշու և աւագանւոյն Պարսից։

ՁԶ. Տալ Վաղարշու զտէրութիւնն Մամիկոնէից և զսպարապետութիւնն Հայոց՝ Վահանայ և պարգևել Կամսարականացն զտէրութիւն նոցա։

ՂԷ. Դարձ Վահանայ ի Հայս և ցնծութիւն Հայոց։

ՂԸ. Գալն Անդեկանայ մարզպանութեամբ ի Հայս և դարձեալ ի Պարսիկս՝ վկայել առաջի Արեաց զբարեմասնութեանց Վահանայ։

ՂԹ. Կարգումն Վահանայ մարզպան ի վերայ աշխարհիս Հայոց։

Ճ. Ատենաբանութիւն Յովհաննու կաթողիկոսի։

ԹՈՒՂԹ ՂԱԶԱՐԱՑ ՓԱՐՊԵՑՒՈՅ

Յառաջաբան Թղթոյն եր. 185։
Թուղթն եր. 187։

# ՂԱԶԱՐԱՅ ՓԱՐՊԵՑՒՈՅ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

*Ա. Սկիզբն առաջին գրոց պատմութեանն Հայոց, որում սկիզբն արարեալ պատմեաց սուրբ այրն երանելի Ագաթանգեղոս, սկսեալ ի մահուն Արտաւանայ յԱրտաշրէ յորդւոյ Սասանայ բռնաւոր Ստահրացւոյն. և զդարձ աշխարհիս Հայոց յանգիտութենէ կռապաշտութեան յաստուածգիտութեան ճշմարտութիւն ի ձեռն սրբոյ նահատակին Գրիգորիսի. յորոյ անուն և զգիրսն անուանեալ կոչեն Գրիգորիսի։ Երկրորդ գրոց սկիզբն արարեալ պատմելոյ ի կարգէ առաջին գրոցն՝ գիրս բազմախռովս աշխարհիս Հայոց, զբարեաց և զչարեաց, զվարս և զգործ զարանց սրբոց և զպղծոց, զժամանակի պատերազմաց և զխաղաղութեան։ Պատմեալ զայս ամենայն Փաւստոս ումն Բուզանդացի, մինչև ցԹագաւորութիւնն Արշակայ (որդւոյ Պապայ, որդւոյ Արշակայ,) որդւոյ Տիրանայ. առ որով Թագաւորութեամբ բաժանեալ աշխարհս Հայոց՝ պատառեցաւ յերկուս ծուէնս, ըստ օրինակի հնացեալ ձորձոյ։ Եւ աւարտեալ աստանօր զբան պատմութեան իւրոյ՝ միացուցեալ հանգոյց. զոր անուանեալ կոչեն զանուն գրոցն Հայոց պատմութիւն։*

1 ԲԶ. ունի այսպիսի վերնագիր. Պատմութիւն Ղազարու Փարպեցւոյ, զոր արարեալ է վասն անցից Հայաստան աշխարհին, առ ժամանակօք եղանելե և սուրբ հայրապետացն մերոց և Թարգմանչացն Սահակայ և Մեսրոպայ մինչև ցոր մարզպանութեան Վահանայ Մամիկոնեայ։ Առաջադրեցեալ է սորագիր օրինակն, ի սուրբ աթոռս Էջմիածին։ Հրամանաւ գերընտիր գահակալի սորին, Տեառն Սիմէոնի Երևանցւոյ կաթուղիկոսի. ի թուոջ Փրկչին ՌՉԿԴ, իսկ ի մեր թուականիս ՌՄԺԳ։ Զ. (նոր գրչով) եւ Ա8. ունին այսպիսի վերնագիր. Պատմագրութիւն Ղազարայ Փարպեցւոյ։ Արարեալ է խնդրոյ զօրավարին հայոց, և մարզպանին անուանի Վահանայ Մամիկոնեայ։ Վերնագրից յետոյ Ա8. դնում է Նախերգանք. ԲԳ8. դնում են Յառաջաբան

4 88. չիք սկսեալ։ Զ. սկսել

5 Զ. նախ գրուած է մահն, յետոյ ուղղած այսպէս

5 Զ. յԱրտաշրէ յորդւոյ Սասանայ ունի յաւելցնում

5 Զ. նախ ստարհացւոյն, յետոյ ուղղած այսպ.

13 ԶԱ8. չիք որդւոյ Պապայ, որդւոյ Արշակայ։ Այսպ. բաց ուղղագր. ԲԳ8.

Երրորդ Պատմութիւնս այս ի կարգէ նորին գրոց շարագրեալ տկարութեամբս մերում. յոր հարկաւորեալ հրամանաւ իշխանաց և բանիւ սուրբ վարդապետաց՝ տուաք զանձինս յայսպիսի գործ կարևոր, չիշխեցեալ ընդդիմանալ. յիշելով ի սուրբ Գրոց զսպառնալիսն անհնազանդից որդւոցն և զորս գրէ ներողութիւն հնազանդից և հաւանելոց. կարգել մի ըստ միոջէ զիրս և զգործս, զբազմայեղանակ դիպմունս Հայաստան աշխարհիս, բաժանմանց յերկուս թագաւորութիւնս. և ի վիճակէ բաժնոյ անօրինացն արանց քաջաց, ի տոհմէ Նախարարացն Հայոց, տալ զանձինս անհամարս ի նահատակութիւնս ի վերայ ուխտին սրբոյ եկեղեցւոյ, և կիսոց համբերել կապանաց և բանդից վասն երկնաւոր յուսոյն բազմաժամանակ տևողութեամբ. հեղուլ և քահանայից ընտրելոց Աստուծոյ և ճշմարտապէս հովուաց զարիւն ի պարանոցաց իւրեանց ի վերայ ընտրեալ բանաւոր հօտին Քրիստոսի. և ոմանց յընկերակցաց Նախարարացն և յայլ ազատ մարդկանէ՝ դառնալ յետս յուխտէ սրբութեանն և անշէջ յաւիտենից հրոյն լինել լուցկիք, պատրաստելոյն սատանայի և նորին արբանեկացն: Եւ գրել զայս ամենայն մինչև ցօր սկզբան մարզպանութեանն Հայոց Վահանայ Մամիկոնէից տեառն և մեծի զօրավարին Հայոց և մարզպանի. և դադարեալ հանգուցից յայնմ տեղւոջ զբան վաստակոց պատմութեանցս այսոցիկ:

Բ. Ընդ բազում ճառս մատենից առաջնոցն պատմագրացն Հայոց անցի. յորոց ըստ յերկար ընթերցողութեան գտի ի նոցանէ զժամանակաց և զդարուց աշխարհիս Հայոց բազմադիմի յեղափոխութիւնս, յստոյգ և յանսխալ կարգաւորութենէ Առաջին գրոցն, զոր յարմարապէս պատմեալ ծանոյց մեզ երանելին Ագաթանգեղոս, այր բանիբուն գիտութեամբ և լի ամենայն հրահանգիւ, ստուգաբան ի կարգադրութիւն ճառից և յարմարագիր ի պատմութիւնս ասացուածի իւրոյ: Սա զնուազումն թագաւորութեան Արշակունւոյն Արտաւանայ և զզօրանալն Ստահրացւոյն Արտաշրի որդւոյ Սասանայ՝ ստուգապէս յօրինուածով կարգեալ դրոշմեաց. զքինախնդրութիւնն Խոսրովու և զտարակուսանս գոռոզացեալ Ստահրացւոյն. զխորհուրդն և զխոստմունսն զտողի հնարս յաղագս մահուն Խոսրովու. զխորամանկութեանն զմտածութիւնն Անակայ և զսպանումըն ի նմանէ զնորուն Խոսրովու՝ նենգաւոր խաբէութեամբ. զմատնումն յայնմհետէ զաշխարհիս Հայոց ի ձեռս թագաւորութեան օտարի. զփախուցանել դայեկացն զորդիս Խոսրովու յօտարութիւն առ ի յապրումն. զհսկայաբար միւսանգամ զդարձն Տրդատայ և զյաղթող մարտիւ ունելն զիւրոյին զնախնեացն քաջաբար զթագաւորութիւնն. զդիմելն առ նա սրբոյն Գրիգորի՝ զհեշտ պաշտաման տենչիւ, զնահատակութիւն

1 ՏՏ. շարադրեալ
4 Առակ. ԺԳ, 1. Եփես. Զ, 1—3. Կողոս. Գ, 20 ևւն
8 ՁԱՏ. օրէնացն
9 ՏՏ. սուրբ
10 Զ. համբերեալ
12 Զ. հովուց
15 Զ. պատրաստելոյն
18 Զ. յանկուցից
22 Զ. ստոյգ.
26 Զ. զնուազումն
27 Զ. այսպ. և յետոյ ստահրացւոյն
30 Զ. զխոստումն
32 ԲԳՏ. չիք զնորուն
33 ԶՏՏ. զաշխարհս: Այսպ. ըստ Նոր. Բիւզ.
35 ՏՏ. զյաղթող: Զ. Խառն ո և օ գրուցիւն
36 ՏՏ. զդիմելն ի նմա— Զ. նախ զդիմել նմա, յետոյ ուղղած զդիմելն ի նմա: Այսպ. ըստ Ճառ.
37 Զ. նախ տենչի, ապա ուղղած այսպ.: Թերևս ըստ հեշտ պաշտաման տենչէ

նորին սրբոյն, և թէ որպէս տարաւ անպատումն և անբաւ բազում չարչարանացն. զառաւելապէս օգնականութիւնն Քրիստոսի, որ ցուցաւ ի վերայ սրբոյն, ի հիացումն դեռևս մոլորեալ մարդկան. զհամբերութիւն տևողութեանն այնչափ ամս ի վիրապին, ըստ կանխագէտ տնտեսութեանն վերնոյն, որ պահէր զնահատակն ի գործն Հայոց. զեկս սուրբ կուսանացն ի Հռովմայեցւոց քաղաքէն, և զհեղումն մարտիրոսական արեանն ի Վաղարշապատ քաղաքի, յոռոգումն դալարութեան զօսացելոց դիոց մարդկան. զելն սրբոյն Գրիգորի ի խոր վիրապէն, և զհանումն Հայաստան աշխարհիս ի խաւարէ անգիտութեանն յաստուածային արքայութեանն լոյս. զյորդորումն յայնմհետէ վարդապետութեան կենաց աշխարհիս Հայոց. զկտակս մկրտութեան լուսոյ, զոր Փրկիչն Քրիստոս ի ձեռն մեծի Նահատակին Գրիգորի, բարեխօսութեամբ և սուրբ կուսանացն, ծաւալեցոյց յաշխարհիս մերում. զշինութիւն եկեղեցեաց, զպայծառութիւն քահանայից, զխումբս բազմամբոխ ժողովրդոց ի տօնս Փրկչին և ի ժողովմունս յիշատակաց սրբոց։ Զայս ամենայն, ևս առաւել քան զսոյն գիտութիւն, յիւրում հաստատուն և անսխալ կարգադրութիւնսն պատմեաց մեզ երանելի այրն Աստուծոյ սուրբն Ագաթանգեղոս։

Գ. Իսկ զհետ սորա, ըստ այլայլման իրաց և ժամանակաց և դիպելոյ աշխարհիս Հայոց բազմամբոխ դարուց, երբեմն խաղաղութեան և երբեմն սաստիկ և անբաւ շփոթմանց, միաբանութեան առ միմեանս և երկպառակութեամբ ճեղքելոյ ի միմեանց՝ կալ ոմանց ըստ աստուածային հրամանատուութեան ի հնազանդութիւն բնիկ իւրեանց Արշակունի թագաւորացն, և այլոց ծառայել կամաւ օտար թագաւորացն՝ ի կորուստ անձանց և աշխարհիս. որք ի միաբանելն տեսանէին զԱստուծոյ օգնականութիւնն յանձինս և յաշխարհս, և ի քակտելն և ի պառակտելն՝ զվնաս և զկորուստ յանձինս և յաշխարհս։

Որում երկրորդ գրոցն անուանեն զոմն պատմագիր, կոչեցեալ Փաւստոս Բուզանդացի. և վասն զի կարգելոցն առ ի նմանէ ի տեղիս ուրեք կարծեցին ոմանք բանք ինչ ոչ յարմարք և դիպողք, որպէս առաջնոյն ճշգրտաբանութիւն, Ագաթանգեղոսն կոչեցելոյ՝ յերկուացեալ հարկաւորին չասել զայնպիսի անպատշաճ կարգումն բիւզանդացւոյ ուսելոյ։ Քանզի Բիւզանդիոս այս փոքրիկ քաղաքիկ էր, յառաջագոյն շինեալ յառնէ ումեմնէ Բիւզաս անուն կոչեցելոյ, մերձակայ Թրակացւոց սահմանակցութեանն. զոր և ի գալն աստուածակամ հրամանով սրբոյն Կոստանդիանոսի ի վերայ անթիւ բազմութեանն Գթաց ի պատերազմ, և առ եզերբն Դեկովբ գ՚ետոյ արարեալ զիւր զօրու բանակատեղս, որ և

8 Թէրեւս ոգւոց (ոգւոյ)
11 Թէրեւս յաշխարհիս (Ն. Բ.)
11 Թէրեւս զկտակս (Ն. Բ.)
12 ՏՏ. բարեխօսութեամբն եւ սուրբ
15 ՉԱՏ. ի ժողովումս
17 ՏՏ. կարգաւորութիւնն
18 ՏՏ. չիք սուրբն
23 Չ. հրամանատութեան
26 Չ. նախ երեւի ի քակտելն և ի պառակտելն. ապա ջնջված է՝ եւ վրայ գրուած են ի՛ եւ: ՏՏ. ի քակտելն և ի պառակտելն
27 Ն. Բ. այստեղ նկրագրում է պակասորդ
29 ՏՏ. Փաւստոս
29 Չ. առ ի նմանէն
31 ՏՏ. ճշմարտութիւն
32 Չ. նախ բուզանդացւոյ, յետոյ ուղղված այսպէս.
36 Չ. զգոյ
37 ԲԳՏ. որ աստուածային. Թէրեւս ուր և (Ն. Բ.)

*աստուածային տնօրէնութեանն լինէր արժանի, օրինակեալ նմա յայտնապէս յերկնից աստեղեայ լուսատեսիլ նշան կենսատու խաչին, բերելով շուրջ զինքեամբ ճառագայթից նշանագիրս, թէ «այսու յաղթեսցես»։ և նորա զարթուցեալ՝ յուսով երևեցելոյ նմա սուրբ նշանին օգնականութեան յաղթեալ վանէր զթշնամեացն բանակն, և խնդիր փութապէս գիտէր այսմ հոգացեալ՝ ճեպով զիւր մայրն զերանելին Հեղինէ յԵրուսաղէմ առաքէր։ Եւ թէ որպէս անդ ի ձեռն ջերմ խնդրոյ սրբոյ մարդոյն յայտնեցաւ կենաց փայտն՝ գիտէ ամենայն անձն, ի նորին գրոց տեղեկացեալ զգիւտ փրկութեան մերոյ։*

*Եւ ինքն թագաւորն եկեալ ի յառաջագրեալ քաղաքիկն, որ անուանեալ կոչէր Բիւզանդիոս, և տեսեալ զսքանչելատեսիլ զամրութիւն տեղւոյն, թէպէտ և ծանրագոյն և բազում աշխատութիւն ի տեղւոջն ցուցանիւր՝ ոչ ինչ վեհերէր վասն օգտակարութեան կղզւոյն. վասն զի շրջափակեալ յամենայն կողմանց՝ ծովածիր էր տեղին, բայց խուն ինչ ցամաքայատակ ճանապարհ, առանց շրջագայութեանց ջրոցն, որ եւանէր յարևմուտս կոյս քաղաքին։ Վաղվաղակի զձեռն ի գործ արկեալ՝ տայր հրաման հարթել զբարձրաբերձ զբլուրսն, որ ի ներքս ի կղզւոջն էին, և շինեալ քաղաք մեծապայծառ, զոր ըստ իւրում անուանակոչութեանն Կոստանդնուպօլիս անուանէր, որ թարգմանի հայերէն՝ Կոստանդիանոսի քաղաք. զոր ոմանք ըստ հռովմայեցի բարբառոյն Պաղատն ասեն, որ թարգմանի արքունի։ Իսկ որ յառաջագոյն շինեալ Բիւզանդիոսն էր՝ է թաղ մի յեզեր նորին քաղաքի, որ մինչև ցայսօր նորին անուամբ կոչի Բիւզանդիոս։ Եւ յանմահատէ վտակք գիտութեան, որպէս ի թագաւորանիստ վայրի, յորդեալ բղխեն ի քաղաքէն. որպէս և յամենայն կողմանց յաշխարհէն Յունաց քաջ ուսեալքն անդ փութան հանդիսանալ, և մինչև ցայսօր առաւելեալ տարածին յամենայն կողմանս նորա իմաստութեան վտակք։*

*Արդ յայնպիսումն քաղաքի և ի մէջ այնչափ բազմութեանն ուսելոյ վարժեալ այրն Փաւստոս այնպիսի ինչ արդեօք անհաճոյս լռոզաց բանս կարգէ՞ր ի պատմութեան իւրում։ Քա՛ւ և մի՛ լիցի։ Ուստի և անհաւատալի իմում տկարամտութեանս կարծեցեալ գործն՝ ասեմ, թէ գուցէ այլ ոք յանդուգն և անհրահանգ բանիւ լրբաբար ձեռն արկեալ յիւրն՝ գրեաց զինչ պէտս ըստ կամի. և կամ զի ուրուք անկարեալ դիպողս՝ այլաբանեալ վնասեաց, և անուամբ Փաւստոսին զիւրոյ յանգգնութեանն սխալանս համարեցաւ ծածկել. և այն յայտնի ցուցանի ամենայն հայեցողաց. քանզի են ոմանք ի Յոյնս, այլ մանաւանդ*

2 Չ. աստեղա լուսատեսիկ
4 Ա. և յուսով
4 Չ. օգնականութեամբ
5 Ն. Բ. այստեղ եկիպադրում է պակասորդ
6 Չ. այսմ առնել ձեռով։ Բեբեա առնել հոգացեալ՝ ձեպով
11 Չ. բուզանդիոս
17 Չ. որ ի ներքս։ ԱԲ. որք ի ներքս։ Գ. որք ի ներքոյ
19 Չ. կոստանդինուպօլիս
20 Ա. հռօմայեցի
20 Չ. բարբառոյն
20 Գ. պալատն
21 Չ. թարգմանի
22 ՏՏ. չիք է
29 Ա. Փոստոս
32 Չ. յանդուգն
33 Չ. և կամ զուրուքն նկարեալ։ Գ. անկարացեալ
34 Չ. այլաբանեալս
34 ՉԱ. փոստոսին
35 Չ. սխալանս
36 ՉԱ. հայեցողաց
36 Չ. քանզի են ոմանք

առաւել յԱսորիս, բազումք սպրդեցին գալ յայսպիսի յայրատութիւնս. արք տգէտք և յանդգունք գրեցին յինքեանց ճառս ընդունայնս և անպիտանարանս և խառնեալ եդին ի դիրս գիտուն լսողաց. այլ ընտրող մտաց ճանաչի յայտնապէս գիտնոցն բանք և անմտացն շաղփաղփութիւնք։

Դ. Որում արթնամիտ խորհրդականութեամբ ուշադրեալ այսմ ամենայնի մտաւոր և քաջ այրն Վահան տէրն Մամիկոնէից, զօրավարն Հայոց և մարզպանն, որ բազում և անհամար ուղղութեանց աշխարհիս Հայոց ի ժամանակս իշխանութեան իւրոյ եղև արարող, անձամբ և զայլս յորդորելով զբազումս։ Սա որպէս և այլ ամենայն բարւոյ իրօք հոգացեալ զՀայաստան աշխարհի իրս՝ առաւել ևս զայս ի դէպ և պատշաճ համարեցաւ. ի մնացեալ տեղւոյ պատմութեան Երկրորդ գրոցն աճեցուցանել յառաջ և գրել յայնմհետէ զեղեալս յաշխարհիս Հայոց։ Բազում զգուշութեամբ գրել և կարգել մի ըստ միոջէ զամենայն զհոգևորացն զառաքինութիւնս և զարանց քաջաց զլաւութիւնն։ Որպէս զի զհոգևորացն զբարի վարսն լուեալ բազմութեան ժողովրդոցն՝ նմանողք լինել ցանկասցին մարդիկ ճգնութեանց նոցա, և քաջքն լսելով զայլոց զգործն յառաջագոյն քաջացելոցն՝ յաւելեալ յանձանց քաջութիւն՝ անուանի յիշատակ թողցեն զկնի իւրեանց՝ անձանց և ազգի։ Իսկ ծոյլքն և վատքն հայելով յանձինս և լսելով զայլոց զպարսաւանս՝ ի բարի նախանձն կրթեալք ջանասցին լաւանալ։

Ըստ այսմ օրինակի զգուշացեալ ստիպեցուցանէ զմեզ տէրն Մամիկոնէից Վահան, զօրավարն Հայոց և մարզպան. որոյ հասեալ հրաման առ իս Ղազար Փարպեցի. որ և սնեալ և ուսեալ առ ոտս առաքինակրօն երանելւոյն Աղանայ, որ էր ազգաւ ի հոյակապ և յականաւոր տոհմէն Արծրունեաց, որդի Վասակայ, եղբօր Տաճատայ և Գուռգէի։ Որ մինչդեռ էր ի տիս մանկութեանն, և այն ինչ դեռ տէգ մուրուացն ի վերայ գեղեցկատեսիլ վարդափթիթ ծնօտիցն բուսանէր՝ ի բաց ընկեցեալ արհամարհէր զամենայն վայելս անցաւոր կենցաղոյս, և զերկնաթռիչ զճանապարհէն յաւիտենից բարութեանցն ընտրեալ հետևիւր, կեցեալ յանապատս ընդ արս ընտիրս ի ճգնութիւնս մեծամեծս։ Զորոյ և ոչ բաւական ոք է բանիւ բովանդակել զանբաւ վարուցն զառն նահատակութիւնն. այլ այսքան միայն ասացեալ մնացուսցուք զբանս, որպէս թէ պատճառանօք գոլով ի մարմնի՝ տքնութեամբ և պահօք և անդադար աղօթիւք զցայգ և զցերեկ միշտ հոգևոր անսպառ վաստակօք զանմարմնոցն զվերին զօրացն բերէր յանձին զքաղաքավարութիւն. որ ոչ երբէք ի կեանս իւրում ընտրեաց ժամ աղօթից. այլ զտիւ և զգիշեր անհանգիստ նմա ժամ աղօթից էր։ Եւ կեցեալ այսպէս, մինչև առաւելեալ ծաղկէր հեր գլխոյն սպիտակն քան զխարտէշն, և կատարեալ զընթացս նահատակութեան իւրոյ՝ հանգչէր։ Եւ եդեալ ի մատրանն ի Հաղամակերտի. որոյ յիշատակարանն ընդ անուանս վկայիցն

3 Զ. ընդրող։ ԱՑ. ընտրօղ
4 Զ. գիտնոյն
18 ՑՑ. չիք յաւելեալ յանձանց քաջութիւն
29 ՑՑ. չիք անցաւոր
30 Թերևս զճանապարհն (Ն. Բ.)
31 ԶԱՑ. և ճգնութիւնս
39 Զ. քան զհարտէշն կատարեալ
41 ՐՑ. ի յաղամակերտ։ ԲԳՑ. ի յԱղամակերտ

սրբոց պատմեալ քարոզի մինչև ցայսօր և յաւիտեան անուն սրբոյն՝ յամենայն եկեղեցիս Հայաստանեայց աշխարհիս, Վրաց և Աղուանից։

Եւ արդ՝ այսպէս հարկաւորեալ բռնադատեաց զտկարութիւնս մեր տէրն Մամիկոնէից Վահան, սպարապետն Հայոց և մարզպան, զձեռն արկանել ի գործ, որ ի վեր քան զկար գիտութեան մերոյ էր, քանզի էր քան զբան....

....և պարտեալ եռանդեանն չարութիւնն՝ անդէն և անդ դադարեալ ցածնուն։ Այսպէս և բան հզօրին Աստուծոյ վճարէ զամենայն զոր կամի. ցասուցեալ ըստ չարի մեր գործոց՝ խրատէ ողոքեալ. զբարի դարձ տեսանելով՝ ողորմի փութով։

Ն. Եւ արդ՝ յահագին այսպիսի մահուս զերծեալ անձինք շահաժողով ընչասիրացն և հասեալք եւեթ խնդրոյն տենչիցն, որում ուշ արարեալ բաղձան, մոռացեալ զվիշտսն՝ բերկրեալ օգտիւքն զուարճանան։ Իսկ ո՞րչափ ևս առաւել զտանիցին զանձուն յաւիտենից ժառանգաւորք՝ որք և զյօրինուածս բանից ստուգապատում կարգեալ պատմագրեսցին, չառնել մարդահաճութեան բանից յաւելուածս, ի ցրումն ոսկերաց, ըստ ասացածի սաղմոսերգին. այլ զգուշական երկիւղին ընդ բազմաց լայնածաւալս գիտնական բանի նաւեցին անվթար, ի սուրբ Հոգւոյն շնորհսն յուսով ապաւինեալք. ունելով փոխանակ փայտաման տախտակացն՝ զհիմն ուղղափառ հաւատոյ, և փոխանակ ի նմա բազմայարմար կազմութեանն հնարիցն՝ զերրեակ ինքնութեանն միութիւն զանբաժան սուրբ Երրորդութեանն։ Եւ զի նաւացն տախտակք առանց բազմաց սատարելոյ չհնարին լինել յանօթ պիտանացու, քանի՞ ևս առաւել այսպիսի մեծ և հոգևոր գործոյ ձեռնարկութիւն, ուր բազում կարևոր պէտք էին առաքինի արանց օգնականութեան։ Զի ոչ փոքր ինչ կասկած է՝ անեբ-կիւղ այսպէս ումեք տալ զանձն յայսպիսի վտանգս, ուր պիտոյ են յարմարութիւնք բանից, որոշեալ կարգադրութիւնք ըստ հրամանի կանոնեալ գիտութեանն, բերել պատկանելով ստուգապրութիւն անպարսաւ յականջս իմաստասէր լսողաց. չյաւելուլ զանհեթեթսն՝ յընդունայն աճմունս բանից. չնուազեցուցանել զեղեալսն և կարճակտուր պատմել բանիւք անփութութեամբ. այլ զբնաւն ողջախոհ զգուշութեամբ բերել ի յայտնութիւն։ Եւ վասն զի են աստ պէտք բազում երկիւղագին

2 Զ. Հայաստանեաց
4 Ա8. չիք և
4 Ա8. զձեռն արկել։ ԲԳ8. ձեռնարկել Զ. զձեռն արկեալ։ Այսպ. բաց ձառ.
5 ՏՏ. քանզի ոչ էր քան զբան։ Այսպէս բաց Զ. եւ ձառ.
6 Այստեղ խօսքի պակասորդ կայ (ինչպէս բնագրում է եւ Ն. Բ.), որ նկատւում է եւ նախընթաց բառերի աղաւաղութիւնից։ Պակասած մասում երեւի Ղ. Փարպեցին, նկատելով Ագաթանգեղոսի յառաջաբանին՝ նմանեցնում է մատենագրի վիճակը ծովային վտանգների վտանգալից վիճակին
7 Զ. նախ պատեալ, յետոյ ուղղած այսպ.
7 Զ. չարութիւնն ունի յուսանցքում նոր գրչով
9 ՏՏ. դարձեալ
11 Զ. նախ մահ, յետոյ ջնջւած եւ գրուած այսպ.
17 ՏՏ. տացուածի
17 Սաղմ. ՃԲ, 6
17 Զ. երկիւղին
18 «Թուի պիտոյ լայնածաւալ ծովու» (Ծան. Գ8.)
18 Զ. նաւեցեն
21 ՏՏ. բաց անբաժան։ — Զ. զանբաժին
24 Զ. նախ պէտք էին, ապա ուղղած այսպ.
25 Զ. օգնականութիւն
26 Գ8. ուրուք տալ

պատրաստութեան՝ արդ նպաստեալ իմում տկար խորհրդոյս՝ աղաչեմ, սատարեցէք ամենայն աղօթասէր անձինք, ձերովք առ Աստուած խնդրուածովք օգնականութեամբքն։ Որովք արդարապատումն ճշգրտաբանեալ զեղեալ ի վեր քան զիս գործոյս հարկաւորութիւն՝ ըստ յորձանս մեծապատումն ծաւալացս նաւեալ մտաւոր ստուգաբանութեամբ՝ հասից բարեխօսութեամբ սրբոց յանալէկոծ և յապահով նաւահանգիստն։

Օրհնեալ է Աստուած։

1 Ն. Բ. պատրաստութեան'ից յետոյ ներադրում է պակասորդ

1 Զ. որք նուաստեալք։ Աց. որք նպաստեալք։ Այսպ. բաց ԲԳց.

7 Ղ. Փարպեցու յառաջաբանը, նախնական ձեռագրի մէջ թղթերի տեղափոխութեան եւ թերութեան պատճառով, աղաւաղուած է: Վենետիկի Գց. բաւական յաջողութեամբ վերականգնել է աղաւաղութիւնը՝ զանազան հատուածներ յետ եւ յառաջ դասաւորելով: Եղել են եւ ուրիշ մասնական փորձեր: Մենք հետեւեցինք Ներսէս Բիւզանդացու առաջարկած դասաւորութեան («Լումայ», 1896, Բ. եր. 309—319), որ առ այժմ ամենից հաւանականն է եւ յաջողը: Ն. Բ. այս յառաջաբանում չորս տեղում պակասորդ է ցենում: (Տես ծանօթ. եր. 3. տող. 27, եր. 4 ց. 5, եր. 6. ց. 6, եր. 7. ց. 1): Մենք անպայման պակասորդ ենք նկատում միայն երրորդ տեղում, ինչպէս բացատրած ենք ծանօթութեան մէջ:

Մեր ընդունած դասաւորութեան հետ համեմատելու համար՝ դնում ենք Զ.-ի դասաւորութիւնը (որին համեմատ են եւ ԱԲց.), եւ Գ.-ի դասաւորութիւնը:

ԶԱԲց. 1. «Սկիզբն առաջին գրոյ պատմութեանն»... — ... «և երկպառակութեամբ ձնգրելոյ ի միմեանց» (եր. 1. ց. 3—եր. 3 ց. 22). 2. «Բազումք սպրդեցին զայլ յայսպիսի յայրատութիւնս»... — ... «նմանողք լինել ցանկացողին մարդիկ ձգնութեանց նոցա» (եր. 5. ց. 1—եր. 5. ց. 17). 3. «Եւ պարտեալ եռանդեանն չարութեանն»...—... «պէտք էին առաքինի արանց օգնականութեան» եր. 6. ց. 7—եր. 6. ց. 25). 4. «Կալ ոմանց ըստ աստուածայինն հրամանատուութեանն»...—... «քանզի են ոմանք ի յոյնս, այլ մանաւանդ յասորիս» (եր. 3. ց. 22 —եր. 5. ց. 1). 5. «Եւ քաջքն լսելով զայլոցն զգործսն»...— ... «քանզի էր քան զքան» եր. 5. ց. 17— եր. 6. ց. 6). 6. «զի ոչ փոքր ինչ կասկած է»...—...«յանալէկոծ և յապահով նաւահանգիստն։ Օրհնեալ է Աստուած» (եր. 6. ց. 25—եր. 7. ց. 8).

Գց. 1. Սկիզբն առաջին գրոյ պատմութեանն» ...—... «այլն Աստուծոյ սուրբն Ագաթանգեղոս» եր. 1. ց. 3—եր. 3. ց. 18). 2. «Որում երկրորդ գրոցն անուանեն»...— ... «այլ մանաւանդ յասորիս» (եր. 3. ց. 28— եր. 5. ց. 1). 3. «Իսկ զհետ սորա բատ» ...—... «և երկպառակութեամբ ձնգրելոյ միմեանց (եր. 3. ց. 19—22). 4. «Բազումք սպրդեցին զայլ յայսպիսի յայրատութիւնս» ...—... «ցանկացեն մարդիկ ձգնութեանց նոցա» (եր. 5. ց. 1—եր. 5. ց. 17). 5 «և պարտեալ եռանդեանն չարութեանն»... —... «պէտք էին առաքինի արանց օգնականութեան» (եր. 6. ց. 7 —եր. 6. ց. 25). 6. «Կալ ոմանց ըստ աստուածայինն հրամանատուութեան» ...—... «զվնաս և զկորուստ յանձինս և յաշխարհս» (եր 3. ց. 22—27). 7. «Եւ քաջքն լսելով զայլոց զգործսն» ...— «քանզի էր քան զքան» (եր. 5. ց. 17—եր. 6. ց. 6). 8. «Զի ոչ փոքր ինչ կասկած է» ... — ... «յանալէկոծ և յապահով նաւահանգիստն։ Օրհնեալ է Աստուած» (եր. 6. ց. 25—եր. 7. ց. 8).

# ԴՐՈՒԱԳ Ա.

*Ձ. Եւ ի բաժանելն զթագաւորութիւն Արշակունւոյն յերկուս, առ ի հնազանդեցուցանել զկողմն արեւմտից աշխարհիս Հայոց՝ թագաւորին Յունաց ընդ իշխանութեամբ իւրոյ տէրութեանն, և զկողմն արևելից խոնարհեցուցանելով դառն և ընաւոր ծառայութեամբ՝ արքային Պարսից՝ երթեալ այնուհետև նախարարքն Հայոց ի վիճակէ մասին արքային Պարսից՝ խնդրէին իւրեանց թագաւոր ըստ րնիկ նախնի կարգին յազգէն Արշակունեաց։ Եւ արքային Պարսից Շապհոյ կատարեալ զհայցուածս նոցա՝ շնորհէր նոցա թագաւոր Խոսրով անուն յազգէն Արշակունեաց։*

*Քանզի նախգոյն թագաւորն Հայոց Արշակ ունէր միահեծան զթագաւորութիւնն ի վերայ ամենայն աշխարհիս Հայոց։ Իբրև ետես, թէ խախտեալ քայքայեալ մատնեցաւ ի բաժանումն մեծ իշխանութիւն թագաւորութեան ազգին իւրեանց՝ մեծաւ տրտմութեամբ խռովեալ տարակուսէր յանձն իւր. տեսանէր նախ զանկանելն ընդ լծով ծառայութեան երկուց թագաւորաց զաշխարհս Հայոց. և դարձեալ՝ զմեծ մասն, զլաւն և զպիտանին և զարգաւանդն աշխարհիս Հայոց ունել ի բաժին արքային Պարսից. քանզի թէպէտև հասեալ բազում գաւառք այլ ի ժառանգութիւն մասին թագաւորին Յունաց՝ սակայն համեմատէին այն միայն Այրարատեան գաւառին։ Խորհուրդ բաղմածուփ հանդերձ իւրովք սիրելեօք ի մէջ առեալ թագաւորն Արշակ՝ մտայոյզ լինէր ի սիրտ իւր ասելով. «Թէպէտ երբէք մինչև ցայժմ կամ հակառակութեամբ կամ սիրով եղեալք մեք ընդ միմեանս՝ զգայացուցեալ էր մեր նոցա գործով պատերազմի, որպէս և պարտ էր ճանաչել տան զփորձ միւսոյ ևս լաւագունի քան զինքն. և թէ խոնարհեալ դիպէաք ի սէր առ միմեանս՝ սակայն եղբայր լինէաք հաշուեալ նոցա, պատուով և պահակցութեամբ ըստ կրսերագոյն մասին, և ոչ ընաւ անկեալք ի բաժին՝ զանուն ծառայութեան ստացեալ կրէաք յանձինս։ Իսկ այժմ, յաղագս ցասուցանելոյ մեր և մերոց առաջնոցն զերկայնամիտ և զքաղցր Աստուած՝ մատնեալ անկաք ի ստրկութիւն, և խոնարհեալք յանարգու-*

1 ՋԱՑ. չիք Դրուագ Ա.
2 ԲՋ. լուսանցքում գլխ. Ա.
2 Ձ. Նախ՝ բաժանելն. Եւր գրչով աւելացրած է
6 Ձ. և նախարարքն
8 Ձ. կարգէն
11 ԲՋ. որ նախգոյն
13 ՏՏ. և քայքայեալ
15 Ձ. զանգանելն
20 Ձ. Նախ Այրարատեան. ապա ուղղ. այսպ.
22 ԲԳՑ. այսպէս եւ յետոյ մինչ երբէք
23 Ձ. զգայացուցեալ

*թիւն՝ անողորմութեամբ գտեալք ի բաժանումն. այլ և զգեղեցիկ տեղիս հանգստի մերոյ և բնակութեան տեսաք ժառանգեալ ամբարհաւաճ և անաստուած ազգին Պարսկաց։ Վասն որոյ ընտրելագոյն լիցի ինձ թողուլ զանձկալի և զամենատենչ վայրս երկրիս Այրարատոյ, զբնիկ և զսեպհական տեղիս նախնեաց իմոց, և գնալ զկնի աղքատութեան և կեալ բաղձալի կարօտանօք՝ քան թէ սիրել զկենցաղս աշխարհիս, զոր իբրև թողլոց եմք ակամայ. և ընտրել զբնակութիւն մասին այսորիկ՝ քան բնակել անարգանօք ի մէջ անօրինաց և կեալ միշտ ցաւօք մտաց զյերկար և կամ զկարճ կեանս անյայտ կենցաղոյս, և վախճանել անարգութեամբ, ըստ որում ոչ արժանի թագաւորական պատուոյ և շքեղութեան»։*

*Է. Եւ խորհելով զայս ամենայն Արշակ թագաւորն ի միտս իւր՝ լքեալ մերժեալ թողոյր զբարի և զբնիկ ժառանգութիւն նախնեաց իւրոց, զգաւառն Այրարատու, զհոյակապն և զհռչակաւորն և զականաւորն. զամենաբոյսն, զամենաբուղխն, զամենալին, զամենագիւտն ի շահս և ի դարմանս մարդկային պիտոյիցս կենաց և վայելչութեան և սթափութեան. զդաշտս մեծատարածս և որսալիցս. զլերինս շուրջանակի գեղեցկանիստս և պարարտարօտս, զհոծեալս էրէովքն կճղակաբաժնիւք և որոճայնովքն, և այլովք ևս բազմօք ընդ նոսին։ Յորոց ի վերուստ ի կատարացն Ջրոց հոսմունք, անկարօտ ոռոգման արբուցանելով զդաշտս՝ մատակարարէ անբաւ բազմութեամբ յոստանն, կանամբք, արամբք և ընտանեօք, զանպակասութիւն հացի և գինւոյ, զանուշահոտ զմեղրահամ քաղցրութիւն բանջարացն և զզանազանումն իւղարուղխ սերմանցն։ Իսկ ի լանջակողմանսն կամ ի սարահարթ տեղիս սփռեալ, յոր դիպեցուցեալ զհայեցած նորոգատեսիլ մարդոց՝ հանդերձս ինչ և ոչ ծաղկաբոյս գոյնս կարծեցուցանեն սփռեալքս պարարտաբոյսք և պարարտ արօտք պարարտահամք. որոց թանձրախիտ աճմունք խոտոցն զանթիւ արօտականս ընդանի իշանց և զանհամբոյր բոյլս վայրենի էրէոցն յագեցուցեալ՝ թանձրաթաղանթս, առոգագաւակս, սնքացեալս գիրութեամբ զբնաւ մարմինն ցուցանեն։ Իսկ սասակաբուրումն անուշահոտ ծաղկանցն, որ զարանցն քաջաց որսասէր նետողացն և զհօտարած բացօթէգացն, ընձեռելով առողջութիւն՝ զօրացուցանեն զզգայութիւն խելացն և նորոգեն։ Անդ գտանին և ազգի ազգի արմատք բուսոց ի պէտս օգտակարութեան դեղոց, ըստ ճարտարագէտ ճանաչողութեան սուսպահմուտ բժշկացն յօրինուածոցն, երագահաս*

1 ՏՏ. տեղի
2 Չ. նախ ի հանգստի, այս առաջին ի՛ն ջնջած
4 ՏՏ. չիք երկրիս
4 Չ. այստեղ եւ յետոյ ա-րայրատոյ, արայրատ
5 Չ. սեփական
10 ՏՏ. ըստ որում որ ոչ արժանի։ Չ. ըստ որ ոչ արժանի. որ՛ի վերևից գրուած որում
14 Չ. զյականաւորն
15 Չ. զամենաբուխն։ ԲՏ. զամենաբուղմն։ ԳՏ. զամենաբուղխն
20 ՉԱՏ. ի կատարածն։ Այսպ. բաց ԲԳՏ. ուղղագրութեան
22 Չ. արամբ և ընտանեօք
22 Չ. զանուշահոտ։ Բուրի զանուշահամ
23 Չ. և զանազանութիւն իւղարուղխ
24 ՏՏ. չիք սփռեալ
25 Չ. զոր
26 Չ. ծաղկաբոյսս
27 ՏՏ. պարարտարօտք
28 Չ. արօտական ընդանի իշխանց։ ԳՏ. ընդունի
29 Չ. յագեցուցեալ
29 Չ. առուագաւակս
30 Չ. զսաստկաբուրումն
32 Չ. զհօտարածէ
32 ԲԳՏ. բացօթևգացն
33 Չ. զզգայութիւն

նխտահալած սպեղանիք, և կամ արբմամբ՝ յերկարելոյն ի ցաւս պատահացուցանենն առողջութիւն։

Իսկ դաշտացն ամենալրութիւն զկամս աշխատասիրացն կորզելով յինքեանց իբրև բանիւ, և առլցեալ որ զինչ և է բարով՝ ևս առաւել փութանակի զդարձն առ ինքեանս հրաւիրեն միանգամայն։ Որք ոչ միայն երևելութեամբն ցուցանեն, վերաբերեալ զշահաւորութիւն օգտից մարդկան, այլ առաւել յորդորախոյզ աշխատողացն՝ զառ ընդ երկրաւ ծածկեալ օգուտս ուսուցանեն, գանձել անձանց շահս և զվայելս այսր աշխարհիս ի մեծութիւն թագաւորաց և ի հաստատութիւն հարկահանաց, զոսկի և զպղինձ և զերկաթ և զպատուական քարինս. զոր ընկալեալ արուեստող ձեռաց՝ զարդարեն զթագաւորս մեծատեսիլ զարդեօքն յօրինուածովքն, զոր ի խոյրսն և ի թագսն և ի հանդերձսն յուսկէհուռս պաճուճեալս ընդելուզանենն։ Այլ և մածմամբ ջրոց՝ համածին անուշութիւնս մատուցանենն կերողացն զխորտկացն որոշութիւնս։ Նաև զարմատս եղէգնասեր բուսոցն ոչ ընդունայն սնուցանէ յինքեան ամենարագձ դաշտն Այրարատոյ, այլ և ի նմանէ ծնեալ որդունս, ի զարդ կարմրատեսիլ գունոց, ընծայէ օգտասիրացն շահս և շքեղութիւնս։ Ուս և գետոցն գնացք բազմակերպ ձկամբք մեծամեծօք և փոքումբք, զանազանեալ համովք և այլ և այլ տեսովք՝ ուրախացուցեալ լցուցանէ զշնորհս ընչից և յագուրդ որովայնից ժրացելոյն և անվեհեր ջանացողացն։

Սնուցանէ յինքեան երկիրն ջրովք *արուեստիւք և զառաւելութիւն հաւուցն յուրախութիւն և ի սթափումն որսատենչ ազատացն. զկրկջաձայն քաղցրաձայն առապարասէր վիմասոյզ սորամուտ երամս կաքաւացն և սալամրացն, և կամ զեղէգնաբնակ թփամուտ մացառադօղ պարարտամարմին զանուշահամ ազգ աքարացն վայրենեաց. այլ և զջրասուզակ մամռախնդիր *խօզակեր մեծանձունք և յաղթամարմինք հաւքն*, փորն և թանձրն և սագն, և կամ այլ բազում և անհամար ցամաքայնոցն և ջրայնոցն ջոկք թռչնոցն։ Իսկ թակարդացն շրջափակութեամբք, երագազիւքն և գահողովքն, ելեալ ի յորս գունդք նախարարացն որդւովքն ազատացն. ուր ոմանք զհետ ցռուցն և այծեմանցն արշաւելով՝ զխիզախական զաղեղնաձայնն ևեթ բարբառոյցին. և այլք զհետ բուլից եղջերուացն և եղանց ձիարձակ եղեալ՝ զգործ կորովաձիգ արանցն ցուցանեն. և կէսք սուսերօք իբրև զմենամարտիկս՝ զսատակմանդամ երամս վարազացն գլորեցուցեալ սպանանեն։ Եւ շատք ի մանր մանկանց նախարարաց որդւոցն դաստիարակօք և ծառայիւք զայլ և այլ

1 Զ. որբմամբ
3 Զ. զդաշտայն
4 Զ. յինքեանցս
8 ՏՏ. զշահս
11 Զ. մեծատեսիլս
13 ՏՏ. ոսկէհուռս
14 ՏՏ. չիք կերողացն
15 Զ. եղէգնասէր
16 Զ. դաշն
17 Զ. ընձայէ
18 Զ. ձկամբք
19 Զ. համովք... տեսովք և բազ ազինք
19 ԶՍՏ. ուրախացեալ
23 Զ. սորամուտ երամով
24 Զ. զեղէքնաբնակ
25 ՑՏ. ազարացն
26 Զ. զջրա ուզակր
26 ԶՍՏ. մամռախնդիր
26 Զ. մեծայանձունք
28 Զ. ջոկ
28 ՑԳՏ. թակարթացն
28 Զ. շրջափակութեամբք
31 ՏՏ. զխիզախականն և զաղեղնայենն և եթ բարբառեցին։ Զ. ըզխիզախական զաղեղնաձայնն և եղ բարբառեցին
32 Թերևս կորովաձիգ մատանցն
33 Զ. զսատկանդամ

սեռս ի թռչնոցն որսացեալ բազմայիւք՝ դարձեալ բերիցեն ի յաճումն ընթրեացն ուրախութեան. և այսպէս առլցեալք իւրաքանչիւր ոբսով՝ դնան ուրախացեալք։

Որոց դէտ ակն կալեալ ըստ հանապազօրեայ սովորութեան՝ Ջրայոյգ Ջրածուփ ձկնորսացն մանկունք, ընթացեալք ի յառաջս Նախարարազունդ որերոյն՝ ձկունս ի յորսոյ և բազմազան վայրենի հաւուց ձագս և կամ ձուս ի կղզեաց գետոյն բերեալ մատուցանեն ընծայս իշխանացն։ Յորոց ընկալեալ մասն ինչ Նախարարացն ըստ կամի՝ պարգևեն և նոքա ի յիւրեանց բերոցն ըստ առաւելապէս բաւականի ընծայաւորացն. և հասեալք լի ամենայն բարութեամբ յիւրաքանչիւր յապարանս՝ շնորհեն և անպարապիցն մնացելոցն ի տան՝ զամբիծսն, առաւելապէս և առ օտարսն։ Եւ տեսանել է յամենեցուն ընթրիս, որպէս և շեղջակոյտս ինչ ի վերայ միմեանց, զէրէոցն բազմութիւն և զնոցուն գլխոց կարգմանց զառաջադրութիւն. յորոց ուրախացեալ բերկրին ձկնակերացն և մսակերացն անձինք. առաւել քան զխորտկաց անուշութեամբ՝ հոգևոր ճաշակօք, սաղմոսիւք և մարգարէական երգօք օրհնելով զպարգևատուն Քրիստոս և զտուիչ և զլցուցիչ ամենայն բարութեանց։

Ը. Եւ արդ՝ զայսպիսի զըղձակերտ գաւառ, զչնաշխարհիկ և զամենալի ըստ տուչութեան ամենախնամ արարչին Աստուծոյ, զԱյրարատեան գաւառ, որ է գլուխ աշխարհիս Հայոց, զգաւառն համբաւատենչ, զգաւառն ամենալի, որ բերէ յինքեան զօրինակ լիութեան, ըստ բանի Գրոյն, զերկրին Եգիպտացւոց և զդրախտին Աստուծոյ, և զընիկ սեպհական կալուածի ազգին Արշակունեաց զքաղաքն Վաղարշապատ, զընակութիւն ոստանի Արշակունի թագաւորացն, զբարձրաբերձ շինուածս անթիւ ապարանացն, զանյագ զամենալի դաշտացն զբերկրումն, զհրեշտակացոյց հիմնարկութիւնն սրբոյ տանն Աստուծոյ, մեծի եկեղեցւոյն կաթողիկէի, և զայնց վկայարանաց ճգնազգեցիկ երանելի կուսանացն. որոց գտեալք անարժան՝ ազգն Արշակունեաց յաղագս անարժան գործոց իւրեանց, ըստ բանի սրբոյ առն Աստուծոյ Ներսէսի՝ գտան եղեալք ընկեցիկք յերեսաց Աստուծոյ. մատնեցան ի բաժանումն թագաւորին Պարսից և Յունաց, որոց վիճակեալ երկոցունց զմեծ զաշխարհս Հայոց՝ բաժանեալ ծառայեցուցին։

Յաղագս որոյ յուղի անկեալ գնայր յԱյրարատեան գաւառէն որպէս ի գերութիւն Արշակ թագաւորն Հայոց. լաւ համարեցաւ երթալ զհետ սուղ սակաւ բաժնի յերկրին հաւատացեալ, և կալ ի հնազանդութիւն Յունաց թագաւորին, քան թէ կալ ի փափուկ գաւառի այսպիսի վայելչութեանց, և տեսանել հանապազօր զայպանումն հաւատոց, զթըշնամանս սուրբ եկեղեցւոյ, զնախատինս, զոր կրելոց էին պաշտօնեայք

2 Ձ. ուրախութեամբ
4 Ձ. Ջրայոյլ
5 Ձ. մանգունք
5 ՖՖ. ի յառաջ
6 Ձ. ի յորս
6 ՖՖ. չիք կամ
8 Ած. և նոցա
12 Ձ. չիք է
14 Ձ. որոց
17 Ձ. աւելցնում է. միայն ու. բերան
18 Ձ. չնաշխարհիկ
21 Գs. բերէ յերեան
21 Ձ. զըստ բանի
23 ՁՖՖ. սեփհական
24 Ձ. զբարձրբերձ
25 Ձ. զդաշտացն բերկրումն
26 Ձ. հիմն արկութիւնն
27 ՖՖ. չիք կաթողիկէի։ Ձ. կաթաղիկէէ

սատուածային ուխտին յանօրինաց մոգուցն, զԹեԹեւուԹիւն իւրոյ ազգին և զԹագաւորուԹեան՝ յամբարհաւաճ իշխանացն Պարսից տէրուԹեանն. ընտրելագոյն հաշուեալ անցուցանել զնուազ և զԹուով ժամանակ կենցաղոյս այսորիկ քրիստոնէուԹեամբ ի խաղաղուԹեան, քան Թէ սուտ փառօք որպէս զարհամարհոտ կեցեալ սատ և վրիպեալ *յաւիտենից կենացս՝ մատնիլ յայրումն անշէջ հրոյն յաւիտենից: Եւ խորհելով զայս ամենայն՝ յանկարծակի ի միտս իւր լքեալ տարակուսեալ զբարի ժառանգուԹենէ զնախնեացն իւրոց՝ գնայր ի ծառայուԹիւն Թագաւորին Յունաց:

Թ. Իսկ յետ ժամանակի ինչ անցելոյ՝ բերեալ ատելուԹիւն նախարարացն Հայոց, որ ընդ Պարսից իշխանուԹեամբն էին, ընդ Թագաւորին իւրեանց Խոսրովու, — վասն երԹալոյ տակաւին ի նուազումն Թագաւորութեան յազգէն Արշակունեաց, յաղագս առաւելեալ ի նոսա գործոց իւրեանց չարաց, ըստ բանից սուրբ քահանայապետիցն առաջնոց և այլոց ևս բազում առաքինի արանց, որք անլուր բերանով բողոք բարձեալ յանդիմանէին զանարժան գործս նոցա և զմատնումն ընդ լծով խիստ և անօրէն ծառայուԹեանն Պարսից, և նախագոյն բարբառէին, — երԹեալ այնուհետև առնէին բանսարկուԹիւնս առ Շապուհ արքայն Պարսից, եԹէ «Խոսրով զինքն կարծեցուցանէ քեզ սիրելի և հնազանդ, և այս ամենայն ցուցականուԹիւն նորա առ քեզ՝ ստուԹեամբ և ոչ ստուգուԹեամբ. վասն զի գաղտ ուխտ իւր և խորհուրդ ընդ Թագաւորին Յունաց է, և միշտ հրովարտակօք և երԹեւեկ պատգամաւորօք խօսի ընդ նմա ի խաղաղուԹիւն: Բայց դուք որպէս իմանայք հաստուցանել նմա ըստ նորա խարէուԹեանն՝ զայն դուք ոչ իշխէք»: Եւ կարծէին բանսարկուքն ըստ իւրեանց անմիտ խորհրդոցն՝ կորուսանել զնա, և անձանց և աշխարհի բարւոյ իմիք շինուԹեան լինել պատճառ. և ոչ գիտէին, եԹէ տակաւին ի մաշումն և ի չար ծառայուԹիւն վասն մեղաց իւրեանց մատնեալ լինին յԱստուծոյ:

Իսկ զայն լուեալ խնդուԹեամբ և ախորժակ ունկնդրուԹեամբ Շապհոյ արքային Պարսից՝ հրաման տայր վաղվաղակի հրովարտակաւ զԽոսրով ի դուռն կոչել. և նորա չզգացեալ զբանսարկուԹիւն իշխանացն Հայոց՝ վաղվաղակի որպէս առ իւր իշխան և բարեկամ ի դուռն հասանէր: Եւ Շապհոյ Թշնամանեալ զնա պատուհասէր, այլ Թերևս և վասն յօժարուԹեամբ մերժելոյ զնա ի ԹագաւորուԹենէն, և ոչ յանդիման կամեցեալ առնել զնա չարախօսացն՝ վաղվաղակի մերժեալ ընկենոյր զԽոսրով յիշխանուԹենէ իւրոյ ԹագաւորուԹեանն, և ուխտէր՝ այլ ևս ոչ տեսանել զաշխարհն Հայոց, անդէն կալեալ յաշխարհին Պարսից

1 ՏՏ. յիմ մոգուցն
2 Զ. և զԹագաւորու-Թեանց
2 Զ. տէրուԹեանն
7 Աs. լքեալ տարակու-սեալ զբարի ժառան-գուԹիւն: ԲԳs. տարա-կուսեալ, լքեալ....
10 ԲԶ. յուսանցսում Գլխ. Թ.
12 Զ. ի Նուազումն
16 Զ. զմատնումն
17 Զ. նախ պարսից, նախա-գոյն. այսպ ուղղուած պարսից, Նախագոյն
19 Զ. պարսից և խոսրով
31 Զ. Հայոց իշխանացն
32 ՏՏ. առ իւր իշխանս և բարեկամս
35 Զ. յուսանցսում նոյն գրչով. զԽոսրով մեր-ժեալ ի Թագաւորու-Թենէ,
35 Զ. ընկենոյր

պահէր։ Իսկ իբրև մերժեալ լինէր Խոսրով ի թագաւորութենէն՝ խնդրէին Հայք ընդ Շապուհ՝ այլ թագաւոր իւրեանց. և նա հաւանեալ թագաւորեցուցանէր նոցա զՎռամշապուհ զեղբայր նորին Խոսրովու, յազգէն Արշակունեաց. և թագաւորեցուցեալ զՎռամշապուհ՝ արձակէր ի Հայս։

Ժ. Ի ժամանակս սորա թագաւորութեանն տուեալ շնորհ հոգողութեան յամենախնամէն Աստուծոյ առն միում ճշմարտի՝ Մաշտոց անուն կոչեցելոյ, որ էր ի գաւառէն Տարունոյ, ի Հացեկաց գեղջէ, որդի առն, որում անուն էր Վարդան. ի տիս մանկութեան իւրոյ ուսեալ դպրութիւն զյոյն, զինուորեալ ի դուռն Հայոց արքային Խոսրովայ, կարգեալ յերամ մատենագիր արքունի դպրացն. վասն զի ասորի և յոյն գրով վճարէին յայնժամ զգործ թագաւորացն Հայոց՝ արքունի դպիրքն, զվճռոցն և զհրովարտակացն։ Եւ սպասաւորեալ անդ ամս կարգաւորապէս առանց եպերանաց, յետ այնորիկ տենչացեալ կարգի վանականութեան՝ երթայ ի վանս բազմութեան եղբարց, և ընկալեալ զկերպարանս վանականութեան՝ լինէր ընտիր յամենայնի և երևելի. հրաժարէր յամենայն աշխարհազբօս երկրաւոր զբաղմանց։ Ապա յանապատական կրօնս փոխեալ՝ զարմանալի երևէր և հռչակաւոր. և կայր յանապատս ի բազում տեղիս քարանձաւաց, մեծաւ առաքինութեամբ և խստամբեր վարիւք, բազում և այլ սուրբ վարուք կրօնաւորօք և աղօթասէր եղբարբք, մինչև յամս հինգերորդ՝ արքային Հայոց Վռամշապհոյ եղբօր Խոսրովու։ Եւ զայս թէ կամիցի ոք գիտել հաւաստեաւ՝ ի պատմութենէ գրոց առն ցանկալի Կորեան, աշակերտի նորին երանելւոյն Մաշտոցի, կարդացեալ տեղակացի զվարս կենաց նորա և զիւր հայերէն նշանագրացն, թէ երբ կամ ուր և կամ յոյր ուրուք ձեռն գտանէ, թագաւորին Հայոց Վռամշապհոյ ջերմեռանդն խնդրելով. զոր կարգեաց գրելով ճշմարտապէս յառաջագրեալ այրն հոգևոր Կորիւն. ուստի և մեր բազում անգամ կարդալով տեղեկացեալ հաւաստեաւ։

Եւ այսպէս բազմաժամանակեայ մտածութիւնն երանելւոյ առն Մաշտոցի ընկալեալ յամենախնամ մարդասիրէն Աստուծոյ՝ զօրացոյց զնա հոգւով ողորմութեան իւրոյ։ Քանզի հոգացեալ յարաժամ տրտմէր երանելի այրն Մաշտոց, տեսանելով զմեծ ջանն և զառաւելապէս ծախս՝ մանկանցն Հայաստան աշխարհիս. որք բազում թոշակօք և հեռագնաց ճանապարհօք և բազմաժամանակեայ դեգերմամբք մաշէին զաւուրս իւրեանց ի դպրոցս ասորի գիտութեան։ Քանզի պաշտօն եկեղեցւոյ և կարդացմունք գրոց ասորի ուսմամբ վարէին ի վանորայս և յեկեղեցիս հայաստան ժողովրդոցս. յորմէ ոչ ինչ էին կարող լսել և օգտել ժողովուրդքն այսպիսի մեծ աշխարհի, և լինէր պաշտօնէիցն աշխատութիւն և ժողովրդոցն անշահութիւն յանլրութենէ լեզուին ասորւոյ։ Զայս ի բազում

5 Զ. հոգողութեան. երկրորդ ո՛ի վրայ դրուած է
6 ՏՏ. մինչ Մաշթոյ։ Զ. Մաշթոց և Մաշտոց
9 Զ. զինաւորեալ
11 ՏՏ. Թագաւորին
12 Զ. զվճռացն
15 Զ. ընդիր
16 Զ. յանապականն
24 ԲԶ. օգնականութեամբ Թագաւորին
28 Զ. զբազմաժամանակեայ։ Բերեւս զբազմաժամանակեայ մտածութիւնն ... ընկալեալ ամենախնամ մարդասիրէն...
31 ՏՏ. զմեծաջան ծախս
32 Զ. մանկանցն
37 ՏՏ. չիք և լինէր.... անշահութիւն

ժամանակս զմտաւ ածեալ երանելւոյն առն Մաշտոցի, և փղձկացեալ յանձն իւր, մանաւանդ թէ զոր նշանագիրք հայերէն լեզուիս, որով հնար է՝ ինքեան ձայնիւ, և ոչ մուրացածոյ բարբառով, շահել զոգիս արանց և կանանց առ հասարակ յամենայն եկեղեցիս բազմութեանն։ Զօրացեալ ի սուրբ Հոգւոյն յորդորմամբ և եկեալ առ սուրբ կաթողիկոսն Հայոց Սահակ՝ զեկուցանէր նմա զիւրոյ բազմաժամանակեայ մտածութեան զխնդիրն, և ընկալեալ ի նմանէ քաջալերութեան աւետիս, թէ «Զօրացեալ պինդ կաց, առեալ ընդ քեզ և այլ արս օգնականս ի քահանայից՝ զոր ես պատուիրեմ. և ուր տկարանայք ի կարգել զհնգենայսն՝ բերեալ առ իս ուղղեմ զայն. քանզի յոյժ դիւրին է գիւտ իրացդ զոր հայցես։ Բայց նախ արժան է մեզ զգացուցանել Թագաւորին զպէտս այսպիսի մեծ և կարևոր խնդրոյ. վասն որոյ և քան զաւուրս ինչ յառաջ ոչ բազումս, առեալ բանք յեկեղեցւոջ յաղագս կարօտութեան այդպիսի պիտոյից՝ ասացեալ է ուրումն ցարքայ, թէ տեսի նշանագիրս հայերէն առ ումեմն եպիսկոպոսի ի գեօղ միում. և Թագաւորն յիշէր զասացեալսն, քանզի և ինձ նա պատմեաց»։

Եւ մտեալ սրբոյ կաթողիկոսին Հայոց Սահակայ հանդերձ երանելեաւն Մաշտոցիւ առ Թագաւորն Վռամշապուհ և իմացուցեալ նմա զպէտս իրացն՝ յիշեաց և ինքն Թագաւորն զխօսեցեալսն վանականին վասն նորին իրացն ընդ նմա, զոր և նորա պատմեալ ուրախացոյց։ Եւ նոցա լուեալ զայս ի Թագաւորէն՝ փութացուցանէին զնա ասելով, թէ «Ծեպեմ յաղագս մեծ և օգտաբեր աշխարհիս Հայոց գիւտիս այսորիկ՝ ի ժամանակս քո, որ շատ աւելի առ յապայսն բերէ քեզ շահ, յիշատակ անմոռաց և օգուտ երկնաւոր վայելից, քան զիշխանութիւն Թագաւորութեանդ քո, և կամ որպէս յառաջ քան զքեզ նախնիքն քո էին յազգէն Արշակունեաց»։ Եւ Թագաւորին լուեալ զայս և խնդալից եղեալ՝ ետ փառս Աստուծոյ, որ ի ժամանակս Թագաւորութեան նորա զայսպիսի հոգևոր կենաց փափաք ժառանգեաց յաշխարհիս Հայոց։

Վազվաղակի ստիպով առաքեալ դեսպան զՎահրիճ ոմն անուն կոչեցեալ ի ծնողաց իւրոց հանդերձ հրովարտակաւ առ այր մի երէց Հաբէլ անուն, որոյ ասացեալ էր յառաջագոյն ցարքայ, որ և մերձաւոր էր առն բարեպաշտի Դանիէլի եպիսկոպոսի, առ որում նշանագիրքն հայերէն կային։ Եւ երանելւոյն Հաբելի ընկալեալ զհրովարտակն ի Վահրիճէ և լուեալ զիրսն՝ փութանակի հասանէր առ աքանչելի եպիսկոպոսն Դանիէլ։ Եւ նախ անդէն ի նմին Դանիէլէ ինքն տեղեկանայր զկարգ նշանագրացն, և առեալ ի նմանէ առ Թագաւորն և առ սուրբ

4 Զ. առ հասարակ բազմութեանն
7 Զ. զխնդիրսն
14 Զ. ուրումն
15 Զ. նախ եպիսկոպոսի, այս ուղղած այսպ.։ Յետոյ կը յանախ նախ՝ եպիսկոպոս, ուղղած՝ եպիսկոպոս
16 Զ. զասացողսն
17 Զ. կաթողիկոսին։ Ուրիշ ձեռագրում կաթողիկոս, կաթողիկոս, կաթուղիկոս։ ՏՏ. կաթուղիկոսին։ Ուրիշ ձեռագրում յաճախ՝ կաթուղիկոս, սակայ՝ կաթողիկոս
17 Զ. երանելւոյն
18 ԱՏ. իմացեալ
21 Զ. փութանակի ցուցանէին
22 ԲԳՏ. գիտելից
30 ԶԱՏ. երէց
33 ՏՏ. երանելւոյն

հայրապետն Հայոց Սահակ և առ երանելին Մաշտոց հասուցանէր։ Իսկ արքային Հայոց սուրբ կաթողիկոսաւն Սահակաւ և երանելեաւն Մաշտոցիւ ընկալեալ զնշանագիրսն ի Հաբէլէ՝ ուրախ լինէին։

Եւ այսպէս դիպեալ գիւտի նշանագրացն՝ ձեռն ի գործ արկանէր երանելին Մաշտոց, յորդորելով զնա սուրբ հայրապետին Հայոց Սահակայ, դիւրահնար ճանապարհ ցուցանելով կարգադրութեան գրենոյս և հեգենային ուղղաձայնութեան. տալով նմա օգնականս և այլ արս բանիբունս և մտացիս ի քահանայիցն Հայոց, որք էին սակաւ մի և նոքա, որպէս երանելին Մաշտոց, մերձաւորեալք ի յունարէն հեգենայինսն. որում առաջնոյն անուն էր Յոհան՝ ի գաւառէն Եկեղեաց, և երկրորդին Յովսէփ՝ ի Պաղանական տանէն, և երրորդին Տէր՝ ի Խորձենոյ, և չորրորդին Մուշէ՝ ի Տարօնոյ։ Որոց օգնելով զօրէր

1 ՅՏ. հասանէր

2 Չ. արքայն

3 ՅՏ. ուրախ լինէին։ Բայց տեղեկացեալ գիտացին՝ ոչ լինել բաւական այնու նշանագրօք ստոյգ հոլովել զհեգենայ բառից հայկականաց հաղներգաբար, մուրացածին այնուիկ գծագրութեամբ։

Զկնի այսորիկ խնդրին Մեսրովբ իջանէ ի Միջագետս հանդերձ աշակերտօք առ նոյն Դանիէլ, և ոչ աւելի ինչ գտեալ քան զառաջինն՝ անցանէ յԵդեսիա առ Պղատոն ոմն ճարտասան հեթանոս, իշխան դիւանին։ Եւ նորա խնդութեամբ ընկալեալ՝ և զոր ինչ միանգամ ի մտի առնոյր բան հայերէն՝ յինքըն առեալ և շատ ջանացեալ և ոչ օգտեալ, զտգիտութիւն խոստովանեաց հեթանոսն. և զայլ ոմն ասելով յոյժ հասու՝ վարդապետ իւր լեալ յառաջագոյն, և ապա առեալ զճարտարացն գրեան ի նոյն դիւանէն Եդեսիայ՝ և գնացեալ քրիստոնէութեան հաւատոց, որոյ անունն Եպիփանոս. զոր խնդրեալ՝ գտցես, ըստ ցուցանել զփափաքդ քո։ Յայնժամ Մեսրովբայ օգնականութիւն ի Բաբելոնէ եղիսկոպոսէ գտեալ, և անցեալ ընդ Փիւնիկէ՝ ի Սամոս դիմէ։ Քանզի Եպիփանոս վճարելով զկենցաղս՝ թողեալ լինի աշակերտ մի անուանեալ Հռոփանոս, հրաշալի արուեստիւ հելլէն դպրութեան, որ ի Սամոս էր միայնացեալ։ Առ սա երթեալ Մեսրովբայ և յայսմ եւս անշահ մնացեալ, յաղօթս ապաւինի. և տեսանէ ոչ ի քուն երազ և ոչ յարթնութեան տեսիլ, այլ ի սրտին գործարանի երևութացեալ հոգւոյն՝ թաթ ձեռին աջոյ գրելով ի վերայ վիմի, զի որպէս ի ձեան՝ վերջք գծին կուտակեալ ունէր քարն։ Եւ ոչ միայն երեւութացաւ, այլ և հանգամանք ամենեցուն՝ որպէս յաման ինչ ի միտս նորա հաւաքեցաւ։ Եւ յարուցեալ յաղօթիցն՝ հաստեղծ զնշանագիրս մեր հանդերձ Հռոփանոսիւ, կերպաձեւեալ զգիրն առ ձեռն պատրաստ Մեսրովբայ, փոխադրելով զհայերէն աթուաթային ըստ անսայթաքութեան սիղոբայիցն ի հելլենացւոյն։ Եւ այսպէս դիպեալ... Այս ընդարձակ հատուածը («Բայց տեղեկացեալ գիտացին... սիղոբայիցն ի հելլենացւոյն»), որ բացակայում է Խորենացու Պատմութեան մէջ, չնչին ուղղագրական զանազանութիւններով (Խոր. Գ, ծբ. ծգ.), վաղուց կասկածելի էր դարձել՝ իբրեւ Խորենացու Պատմութիւնից մուծուած անհարազատ յաւելուած: Գ. Տէր-Մկրտչեանը ցոյց տուեց, որ այս հատուածը առաջին անգամ մտցրած է Խորենացու Ամստերդամի տպագրութիւնից Բ. ձեռագրի մէջ: (Տես «Արարատ» 1901, Թ. 11—12).

6 ԱՏ. կարգադրութեան

9 Չ. հանի յունարէն ի հեգենայինս, յետոյ ուղղ. այսպ.: ԲԳՏ հեգենային

10 ԱՏ. յօհան

10 Չ. յեկեղեաց

11 Չ. ի պաղատանէն

երանելին Մաշտոց, հանդիպեցուցանէր զհայերէն աթութայսն ըստ կարգման սիլովրայիցն Յունաց, առէպ հարցմամբ և ուսանելով ի սուրբ կաթողիկոսէն Սահակայ զաթութայիցն գաղափար, ըստ անսայթաքութեան յունին։ Վասն զի ոչ լինէին բաւական ի վճարել անսխալ ուղղակի, առանց առաջնորդելոյ նոցա սրբոյ հայրապետին Սահակայ, որ յոյժ առլցեալ անցուցանէր վարժիւք զրազում գիտնովքն Յունաց, եղեալ կատարելապէս հմուտ երգողական տաղիցն և հռետորական յորդասաց յայտնաբանութեան, ևս առաւել տեղեկացեալ փիլիսոփայական արուեստիցն ցուցանիւր։

Կարգեալ այնուհետև, Փրկչին առաջնորդութեամբ, զգիր գրենոյն հայերէնի և հելլենացին ուղղեալ յօրինուածս՝ ցանկային կարգել դպրոցս և ուսուցանել բազմութիւն մանկտւոյ. քանզի ամենայն անձն յորդորեալ փափագէր յուսումն հայերէն գիտութեան, որպէս ի խաւարէն, յասորի տանջանացն, զերծեալք ի լոյս՝ խնդային։ Բայց տարակուսեալք կասէին յանչքութենէ Գրոց սրբոց. քանզի ոչ գոյին դեռ ևս հայերէն լսողութեամբ սուրբ կտակարանք եկեղեցւոյ։ Եւ երանելին Մաշտոց և որ ընդ նմա պատուական քահանայքն էին՝ ոչ զօրէին համարձակել յայսպիսի սաստիկ և կարևոր գործ, թարգմանել գիրս ի յոյն լեզուոյն ի հայ բարբառս. վասն զի ոչ ինչ էին այնպէս տեղեակ գիտնապէս հրահանգի յունարէն ուսմանն։

ԺԱ. Ապա ժողովեալ ամենայն աւագ քահանայք աշխարհին Հայոց հանդերձ երանելեաւն Մաշտոցիւ և ամենայն նախարարօք աշխարհիս Հայոց և մեծամեծ տանուտերօք առ թագաւորն Հայոց Վռամշապուհ, և հանդերձ թագաւորաւն սկսան աղաչել զսուրբ կաթողիկոսն Սահակ, արկանել զանձն յաշխատութիւն հոգևոր և թարգմանել զաստուածաշունչ կտակարանս ի յոյն լեզուոյ ի հայ բարբառս։ Եւ դասք աւագ քահանայիցն ասէին ցսուրբ քահանայապետն, թէ «Մեք որ կամքս առաջի քո, հանդերձ երանելեաւն Մաշտոցիւ, զոր զաբթոյց աստուածայինն շնորհ ի ցանկութիւնս այս՝ կարգել զվաղընջուցն գրեալ շարագիրս տառիցն, զորս ոչ ուրուք էր հոգացեալ արկանել ի կիր, այլ ասորի մեծաջան և անօգուտ ուսմամբքն աշխատեալք յոխորտ. յորոց բազմութիւնք ժողովրդոց ունայնք և թափուրք հրաժարեալք գնային յեկեղեցւոյն. և ուսուցիչքն հանելով յոգւոց և հառաչելով՝ զդժանային զսնոտի ջանն իւրեանց, յորում ոչ զոք յուսումնասէր ժողովելոցն տեսանէին օգտեալ ի վարդապետութենէ հոգևոր խրատուցն, որ է կերակուր և պարարումն իմաստնախնդիր անձանց. մինչև գտաւ գիր և աջողելով Քրիստոսի եկեալ յաճումն տակաւին զօրանայ։ Համայն և զայս վաստակոյս կարգումն քոյին առաքինութեանդ գիտութեամբ եղիցի և կատարեսցի։ Արդ՝

1 Չ. աթութեայն
2 ՉԱՑ. սոլովրայեցն
3 ՏՏ. Իսահակայ։ Թուի ի Սահակայ
7 Չ. հմուտ
11 Չ. հելլենացին
13 ՏՏ. փափաքէր
13 Չ. գիտութեամբ
17 Չ. յուսանցնում յաչսն, խորձէն, յոլովս, մուչէ
18 Չ. այսեղ եւ յետոյ Թարգմանել
22 Չ. այսեղ եւ յետոյ Մաշտոց
29 ՏՏ. յայս
30 Չ. ուրեք
36 ՏՏ. յաջողելով
38 ՏՏ. և քոյին
38 Չ. գիտութիւն
38 Չ. կատարեաց

որպէս և սուրբ նահատակն Քրիստոսի Գրիգորիոս պահեալ ի խոշտանգանսն անվնաս աջով հզօրին՝ ի լուսաւորութիւն գիտութեան աշխարհիս Հայոց տուաւ՝ պահեալ շնորհեցաւ և քեզ, նորին շառաւեղի, վիճակ ժառանգութեան պայծառութեան պաշտամանս այսորիկ, սկիզբն առնել գործոյ մշակութեանս այսմիկ և լինել նմանող սուրբ նախնւոյն քում, որ յանգիտութենէ ի ճշմարիտ աստուածգիտութիւն առաջնորդեաց աշխարհիս Հայոց։ Արդ՝ և դու յանօգուտ մոլորդաբանութենէն ի ստոյգ հոգէշահ և եկեղեցազարդ բանաւորութիւնս առաջնորդեա բազում ժողովրդոց աշխարհիս մեծի, լնուլ զպակասութիւնս զայս, մնացեալ ի սուրբ նախնեացն քոց. զոր պահեաց քեզ Աստուած, զոր ոչ ումեք այլում ի Հայաստան աշխարհիս մարդկան գոյ հնար ձեռն արկանել յայդպիսի գործ մեծ։ Վասն զի և ոչ կարացաք հմուտ լինել և տեղեկանալ այդչափ արուեստաւոր ուսմանցդ, որպէս և քեզ տուաւ զօրութիւն ճարտարութեան ի վերին օգնականութենէն յաղագս քո առաքինասէր և պարկեշտ հոգւոյդ, որ նմանեալ ճշգրտապէս օրինակեցեր ի քեզ զվարս երանելւոյ հօր քո Ներսէսի»։

Եւ լուեալ զայս ամենայն բարեպաշտ կաթողիկոսն Հայոց սուրբն Սահակ ի Թագաւորէն Հայոց Վռամշապհոյ և յերանելւոյն Մաշտոցէ և յամենայն ուխտէ քահանայիցն, եւս առաւել յաւագ տանուտերացն և յամենայն նախարարացն Հայոց՝ զուարճացաւ յոգի իւր, փառաւորելով զՓրկիչն ամենեցուն զտէր Յիսուս Քրիստոս։ Եւ կամաւոր յօժարութեամբ ետ զանձն ի գործ, պանծացեալ յԱստուծոյ գործակցութիւնն, որ ետ նմա զայնպիսի շնորհս առաւելապէս գիտութեան. և անվեհեր ջանալով զցայգ և զցերեկ՝ թարգմանեաց զկտակարանս ամենայն, զխօսեցեալս ճշմարիտ մարգարէիւք սուրբ Հոգւոյն, և հաստատեալ կնքեաց երջանիկ առաքելովքն զնորոց կտակարանացն զլուսաւոր և զկենսատուր քարոզութիւնս նովին Հոգւով։

Եւ տարեալ ի գլուխ սրբոյ հայրապետին Հայոց Սահակայ զգործ մեծ հոգևոր վաստակոյն՝ կարգեցան վաղվաղակի յայնմհետէ դպրոցք հօտին ուսմանց. բազմացան դասք գրչաց, ելևելս առնելով զմիմեամբք. զարդարեցան պաշտամունք սուրբ եկեղեցւոյ. յորդորեցան բազմութիւնք արանց և կանանց ժողովրդոց ի տօնս Փրկչին և ի ժողովս մարտիրոսաց։ Որք շահեալք լի հոգևոր օգտիւ՝ ընթանային խնդալիցք ի հաղորդմանէ մեծի խորհրդոյն, արձակեալք յիւրաքանչիւր ի տունս, մեծամեծք և տղայք, սաղմոսելով և կցորդս ասելով ընդ ամենայն տեղիս, ի հրապարակս և ի փողոցս և առտնին։ Պայծառացան եկեղեցիք. շուք առին վկայարանք սրբոց, միշտ ծաղկելով ի նոյն ուխտ կտակարանաց ընծայիւք. հանապազաբուղխ հոսէին վտակք յաստղացն մեկնութեանց, որք զծածուկս մարգարէից բերելով ի յայտնութիւն՝

1 Աց. և որպէս
1 ՑՑ. խոշտանկանսն
3 ՑՑ. շառաւէղի
16 ՑՑ. երանելոյ
17 Զ. նախ՝ կաթաղիկոսն, յետոյ ուղղած այսպ.: Աց. կաթուղիկոսն
18 Զ. չիք Հայոց
25 ՑՑ. ի սուրբ Հոգւոյն
25 Զ. զհաստատեալս
28 ՑՑ. սուրբ
32 «Թուի ժողովելոց»։ (Ծան. ԲԳց).
33 ՑՑ. որ շահեալք
34 ՑՑ. իւրաքանչիւր
38 Զ. ընձայիւր, հանապազաբուղխ

սեղանս ամենալից հոգևոր խորտկօք զնէին առաջի ամենայն ժողովրդեանն. յորոց ճաշակեալ իմաստախնդիրն մարդոց՝ քաղցրանայ ի քիմս նոցա, ըստ բանի սաղմոսերգին, բանք վարդապետութեան քան զխորիսխ մեղու։ Եւ զի միանգամայն իսկ ասացից ըստ բանի սուրբ մարգարէին Եսայեայ, թէ Լցաւ երկիրս ամենայն Հայոց գիտութեամբ Տեառն ի հոգևոր վտակաց սուրբ հայրապետին Սահակայ, իբրև զջուրս բազումս որ ծածկեն զծովս։ Եւ շնորհիւ ամենախնամ Փրկչին Քրիստոսի կատարեալ այս ամենայն ի ժամանակս Վռամշապհոյ, ըստ յառաջագոյն գրելոց, և լուսաւորեալ աշխարհս Հայոց՝ եկաց յետ այսորիկ թագաւորն Վռամշապուհ ամս բազումս, և հասեալ ի յերկար ծերութիւն՝ վախճանեցաւ յանկողնի իւրում խաղաղական հանգստիւ յաշխարհիս Հայոց։

ԺԲ. Յետ այսորիկ մեռաւ և Շապուհ արքայն Պարսից, և թագաւորեաց Վռամ որդի նորա, որ էր Կրման արքայ. յորմէ խնդրեցին իւրեանց Հայք թագաւոր զնոյն միւսանգամ զԽոսրով զեղբայր Վռամշապհոյ, զոր յառաջնումն բանսարկութեամբ ետուն մերժել զնա Հայք՝ Շապհոյ արքային Պարսից ի թագաւորութենէ Հայոց։ Եւ նորա կատարեալ զխնդիրս նոցա՝ թագաւորեցուցանէր դարձեալ զԽոսրով, զայր յոյժ ծեր։ Եւ եկեալ Խոսրով յաշխարհս Հայոց և կեցեալ ամիսս ութ՝ վախճանէր, առ հարսն յաւելեալ։

Եւ յետ մահուան Վռամայ արքային Պարսից թագաւորէր Յազկերտ եղբայր Վռամայ որդի Շապհոյ ի վերայ աշխարհին Պարսից։ Եւ ոչ կամեցեալ Յազկերտի թագաւորեցուցանել ի վերայ աշխարհիս Հայոց յազգէն Արշակունեաց՝ թագաւորեցուցանէր ի վերայ սոցա զիւր զորդին, որում անուն էր Շապուհ, ըստ անուան հօր իւրոյ. խորհեալ չարաչար իմացմունս առնն ի միտս իւր. առաջին՝ զայս, եթէ աշխարհն Հայոց մեծ է և օգտակար, սահմանակից և դրակից է Յունաց իշխանութեանն, ընդ որոյ ձեռամբ բազումք են հնազանդեալք յազգէն Արշակունեաց. որոց գուցէ գորովեալ առ միմեանս ազգացն, ըստ օրինի եղբարց, որք ընդ մերով և ընդ Յունաց իշխանութեամբն են, և հաւանեալ երբեք սիրով ընդ միմեանս և եկեալք ի միաբանութիւն՝ խօսեսցին ի խաղաղութիւն ընդ թագաւորին Յունաց, և ընդ նորա հնազանդութեամբ յօժարեալք՝ ապստամբեսցին ի մէնջ։ Եւ որպէս կալեալ է զմեզ բազում անգամ յաշխատութեան՝ առաւել ևս յաւելուածով նոցա՝ անհանգիստ առնիցեն զմեզ պատերազմաւ։ Եւ երկրորդ՝ զի յօրինացս մեր օտար են և ատեցողք, և միահաւան ունին զպաշտօն նոցա և զօրէնս։ Արդ՝ ի թագաւորել յազգէս մերմէ ի վերայ աշխարհին Հայոց՝ յամենայն այդպիսի կասկածանաց անհոգացեալ լինի թագաւորութիւնս մեր. և նոքա ցանկ երկիւղիւ և դողութեամբ ծառայեն մեզ և օտարո-

3 Սաղմ. ԺԸ, 11
6 Չ. վտատակոց
7 Ես. ԺԱ, 9
8 Չ. այսպէս եւ յետոյ Վռամշապհոյ
9 ՏՏ. գրեցելոց ... աշխարհս
10 ՏՏ. ամս քսան և մի։ Չ. նախ ամս բազումս, յետոյ [illegible] եւ ուղղ. ամս իա։—Լուսանցքում Վռամշապուհ մեռանի
11 ՉՏՏ. հանդիսիւ։ Այսպ. ըստ Ն. Բ.
15 ԲԳՏ. Խոսրով
18 Չ. յուսանցքում Խոսրով դարձեալ թագաւորէ
28 Չ. ընդ որ
28 Չ. հնազանդեալ
30 ՏՏ. չիք և հաւանեալ... ընդ միմեանս

տիս ինչ և վնասակարս ինչ ոչ խորհին։ Է զի և սովորութիւն առնուն յանկչել յօրէնս մեր, հանապազ խօսիւք ընդ միմեանս և ընդելական բարեկամութեամբ, ի զբօսմունս որսոց և ի խաղս, որ լինին ի միջի նոցա. այլ և ամուսնութեանց տուրևառիւք հաղորդեալք առ միմեանս՝ զատուցեալք այնուհետև որոշին ի սիրոյ նոցա և յօրինացն։

Եւ սորա խորհելով զայս այսպէս՝ չգիտէր զբան սուրբ Հոգւոյն, որ ասէր, թէ «Տէր ճանաչէ զխորհուրդս մարդկան, զի են ընդունայն»։ Որ փութանակի և արդեամբք վճիռ ետուն գրեալքն՝ իրացն եղելոցն. քանզի չև ևս յերկարեալ ի թագաւորութեանն՝ մեռանէր Յազկերտ։ Ի նմին աւուր և զորդի նորին զՇապուհ, զոր ի տեղի Արշակունւոյն թագաւորեցոյց ի վերայ աշխարհիս՝ անդրէն ի դրանն մարդկանէ դաւով յարքունիքն սատակեցին։ Եւ յետ մահուանն Յազկերտի որդւոյ Շապհոյ թագաւորին Պարսից թագաւորեաց Վռամ որդի նորա ի վերայ աշխարհին Արեաց։ Եւ եկեալ իշխանք աշխարհին Հայոց առաջի Վռամայ արքային Պարսից, խնդրեցին իւրեանց թագաւոր յազգէն Արշակունեաց։ Եւ նա թագաւորեցոյց ի վերայ նոցա զԱրտաշէս որդի Վռամշապհոյ, յազգէ թագաւորացն Հայոց։

ԺԳ. Եւ էր Արտաշէս այր մանուկ և իգամոլ, և բազում անառակութեամբ վարէր զթագաւորութիւնն։ Եւ չկարացեալ այսպիսի ՙզեղխ և մոլեկան վարուց թագաւորին Արտաշէսի տանել նախարարքն Հայոց՝ ժողովեցան միահամուռ առ մեծ քահանայապետն Հայոց առ սուրբն Սահակ, որ էր յազգէն Պարթևաց, որդի սրբոյն Ներսէսի, և ասեն ցնա. «Ոչ ևս կարեմք այսպիսի անօրէն և պիղծ գործոց թագաւորին համբերել. վասն զի լաւ համարիմք մեռանել՝ քան եթէ զայսպիսի գործ աղտեղութեան հանապազօր տեսանել և լսել։ Այլ և մեծի պատուական և երկնաւոր խորհրդոյն հաղորդել ոչ կարեմք ի խղճէ մտաց, զոր ամենայն տեսանելով զայսպիսի պղծագործութիւն, և լռել. քանզի ուսեալ եմք ի քէն և ի քոց նախնեացն վարդապետութենէ, թէ ոչ միայն որ գործենն պարտական են, այլ և որ յանձն առնուն։ Արդ՝ քեզ նախ պարտ է այսպիսի անհնարին աղէտից խնդրել հնարս և բառնալ ի միջոյ զայնպիսի ամբարշտեալ թագաւոր, որ այսպէս յայտնի իբրև զանհաւատ արհամարհանօք առ ոտն հարկանէ զսրբութիւնն և աներկիւղ կամակարութեամբ գործէ զաղտեղի գիճութիւնս»։

Եւ լուեալ զայսպիսի բանս սրբոյ քահանայապետին Հայոց Սահակայ ի նախարարացն Հայոց՝ պատասխանի տուեալ ասէ. «Իբրև ոչ եթէ նոր ինչ լսելով այսօր ի ձէնջ, ճանաչեմ զասացեալսդ ձեր. արդ գիտեմ, զի զկծեալ սրտիւք խօսիք զայսպիսի խօսս։ Եւ ինձ անհնար է ասել, եթէ այլաբանք ինչ և ոչ ստուգութեամբ պատմին ասացեալքդ ի ձէնջ. բայց արդ՝ որպիսի հնարիւք ըստ արժանի հոգևոր մարդկան պարտ է զելս իրացդ գտանել՝ զայն արժան է խորհել ամենեցուն և առնել»։

2 Զ. յանկչել
3 ՑՑ. որսոց, ի խաղս
7 Սաղմ. ՂԳ, 11, Ա. Կորնթ. Գ, 20
14 Զ. եկեալք
19 Զ. զխեղճ և զմոլեկան։ ԲԳԵ. զեղխ մոլեկան
26 Զ. խորհրդւոյն
27 ՑՑ. և լսել
28 ՑՑ. ի քո նախնեացն
34 ՑՑ. սուրբ

*Եւ նոցա առ հասարակ պատասխանի տուեալ ասեն ցսուրբ կաթողիկոսն Սահակ, թէ «Մեք և ոչ մի ինչ ելս այլ և հնարս իրացն գտանել կարող եմք, բայց բողոքել թագաւորին Պարսից՝ ի բաց բառնալ ի թագաւորութենէ այտի, որում ինքն իսկ ինքեամբ չեգև արժանի ժառանգելոյ. այլ մեզ քան զայդ ո՛չ իմանալ ինչ է և ոչ առնել։ Այլ զքեզ աղաչեմք միաբանել այսմ խորհրդոյ մեզ. և չէ պարտ այսպիսի անսրբութեանց այլ և պղծութեանց գործոյ թագաւորին հաղորդ լինել»։*

*Իսկ սուրբ հոգևոր կաթողիկոսն Հայոց Սահակ, իբրև լսէր զայս ամենայն ի նախարարացն Հայոց, և ստուգիւ ճանաչէր, եթէ ի նոյն միտս և ի նոյն խորհուրդս հաստատեալ են բովանդակ աւագանի աշխարհին՝ ի մեծ տրտմութիւն և յանմխիթար սուգ ընկղմեալ լինէր. և հեղեալ արտասուաց վտակս առաջի բազմութեան նախարարացն Հայոց՝ հրաժարէր առնել պատասխանի բանիցն մինչև յաւուրս բազումս։ Եւ արգելեալ զինքն ի սենեակ՝ ողբոց միայն և արտասուաց լսէին ձայնս, մերձեալ ի դուրս սենեկին. քանզի տեսանող ակամբ ի զօրութենէ սուրբ Հոգւոյն տեսանէր այրն Աստուծոյ ի սպառ ի սպուռ զկործանումն աշխարհիս Հայոց։ Իսկ յետ բազում աւուրց համարձակեալ ոմանք յեպիսկոպոսաց, որք հանապազ պարապէին առ դուրս սրբոյն,—չկարացեալք և առ վայր մի տևել յառատաբուղխ և ի շնորհալից վարդապետութենէ առնն, որ քաղցր էր ի ճաշակելիս խորհրդոց հոգևոր և իմաստուն լսողաց, ըստ բանի մարգարէին Դաւթի, քան զխորիսխ մեղու,—և այլք ի պատուական երիցանց և ի սարկաւագաց, որք ի նորին ի սուրբ ուխտէ հայրապետին էին, և ոմանք յազատ աւագանւոյն Հայոց՝ համարձակեալ մտանէին ի ներքս և խօսէին ընդ նմա բանիւք ողոքանաց։ Ընդ որս սփոփեալ սակաւ մի սուրբ քահանայապետն՝ ըստ հոգևոր գիտութեան և խրատու, զոր միացեալ ունէր ի յինքեան ի մանկութենէ իւրմէ՝ լռեալ դադարէր առ վայր մի։*

*Իսկ յետ բազում աւուրց դարձեալ ժողովեալ առ նա միաբան ամենայն ազատագունդք աշխարհիս Հայոց, և զնոյն բանս երկրորդեալ առաջի սրբոյ կաթողիկոսին Հայոց՝ խնդրէին ստիպով ի նմանէ և զնորա միաբանութիւնն ընդ ինքեանս։ Իսկ սուրբն իբրև տեսանէր, եթէ ոչ ինչ ամենևիմբ են կասեալք յառաջին կամացն և խորհրդոցն,—վասն զի յաւելուած օր ըստ օրէ աղտեղի գործոց թագաւորին առաւել քան զառաւել աճեցուցանէր ի կորուստ անձին իւրոյ զմիաբանութիւն իշխանացն,— ձայն բարձեալ մեծագոյն ողբալով ասէր ցամենեսեան առ հասարակ. «Եթէ ես, ասէր, եթէ դուք իսկ, որպէս ուսեալք յԱստուծոյ խօսիք հոգևորապէս. և տարեալ վայր մի թերութեան առնն՝ արտասուօք և թախանձեցուցանելով զամենողորմ զՓրկիչն մեր զտէր Յիսուս Քրիստոս՝ յազագս գիւտի կորուսելոյն խնդրեցէք հնարս. զի ըստ աւազանի ծննդեանն,*

4 Աց. այդի
6 Գց. և ոչ պարտ
7 Չ. սրբութեան խորհել զայլ, և պղծութեանց
11 Չ. սուք
15 ՑՑ. և ի զօրութենէ
19 Գց. առ վայր տևել
19 Չ. յառատաբուխ
21 Սաղմ. ԺԸ, 11
22 Գց. ի նորին սուրբ
25 Չ. գիտութեամբ
26 ՉՑՑ. չիք ունէր։ Այսպ. ըստ ճառ.
33 Գց. աղտեղի
34 Չ. զկորուստ
35 Թուի մեծաձայն
39 Չ. նախ խնդրէք, յետոյ վերևից ուղղած այսպ.

թէպէտ մեղաւոր է, սակայն եղբայր և մարմին մեր է. յիշելով զվարդապետութիւն սուրբ առաքելոյն Պօղոսի, զոր աւանդեալ ուսոյց ձեզ հոգևոր հայրն ձեր և քահանայապետն սուրբն Գրիգոր. «Զի եթէ վշտանայ ինչ մի անդամն՝ ասէ, վշտանան ամենայն անդամք ընդ նմա. և եթէ փառաւորի մի անդամն՝ խնդան ամենայն անդամք ընդ նմա»։ Յիշել պարտ է և զմտաւ ածել զվիշտսն և զնեղութիւնս, զբանդսն և զկապանս զսրբոյն Գրիգորի, զպաղատանս և զաղօթս, զոր վասն ամենայն աշխարհիս փրկութեան խնդրեալ յԱստուծոյ եգիտ և զամենեսեան յանհաւատութենէ, շնորհիւ սուրբ Հոգւոյն, հաւատացեալս արար. զդիւաց մոլորութիւնս փախստական արարեալ հալածեաց ի ձէնջ. զճշմարիտ հաւատ սերմանեալ աստուածգիտութեան՝ ի միջի ձերում ծաղկեցոյց։ Եւ ձեզ ըստ նմին օրինակի պարտ է ի վերայ մեղուցեալ անդամոյն խնդրել զողորմութիւն, և ոչ անօրինաց մատնելով՝ ի ծաղր և յայպանումն տալ զսուրբ խորհուրդ հաւատոյս մերոյ։ Յիշեցէք զսուրբ հայրն իմ և զձեր և զվարդապետն, որ և զփոխեալն յանասնական բնութեանն կերպարանս, հառաչանօք և անդադար խնդրուածովք զցայգ և զցերեկ ածեալ ի գութս զամենեցուն արարիչն Քրիստոս՝ ի նոյն հաստատեաց ի մարդկային բնութիւնս։ Եւ դուք աշակերտեալք նորին հոգևոր վարդապետիք միաբանութեամբ առ հասարակ արք և կանայք, ծերք և տղայք զխնդրուածս և զարտասուս ի մէջ առեալ հաշտեցուցէք զամենահնարն Աստուած, որում հնարաւորն է ամենայն, և ոչ ինչ տկարանայ առաջի անհեղ հրամանաց զօրութեան նորա. և նա վճարէ մարդասիրապէս՝ զոր ի յոյժ դժուարինս կարծեցեալ է մեզ. որ և ետ իսկ վճիռ միամիտ և անթերահաւատ խնդրողացն, ասելով անսուտն Աստուած, թէ «Ուր իցեն երկու և երեք ժողովեալ յանուն իմ՝ ամենայն զոր ինչ և խնդրեսցեն ի Հօրէ իմմէ՝ տացի նոցա»։ Իսկ արդ՝ եթէ երկուցն և երիցն աներկմիտ խնդրողացն զամենայն հայցուածսն կատարէ Աստուած, ո՞րչափ ևս առաւել զայսչափ բազմութեան խնդիրսն շնորհէ Աստուած փութով, մանաւանդ թէ անձանձրոյթ ևս լինիցին խնդիրքն և ջերմ հառաչանօք և անթերահաւատ յուսով. զիա՞րդ ոչ առաւել ևս քան զհայցուածսն մեծամեծ իրս վճարիցէ։

«Այլ վասն իմ որ ասէքդ, եթէ միաբանեա՛ ընդ մեզ՝ ինձ քաւ լիցի մատնիչ լինել ճշմարիտ հաւատոյն մերոյ և անհաւատից զիմ հօտի զմոլորեալ ոչխարն մատնել յայպանումն։ Զի թէպէտ և մեղաւոր է, այլ դրոշմեալ է սուրբ աւազանին ծննդեամբ, հմուտ է փրկութեան խնդրոյն, լուեալ է զլուր քարոզութեան Աւետարանին կենաց։ Արդ՝ եթէ էր տանել առ բժիշկ առողջ զվիրաւոր եկեղեցւոյս իմոյ զոչխար՝ փութայի և ոչ յապաղէի. այլ յամենախտալից ատեան մատուցանել զիմ հիւանդա-

1 Ճառ. Թէպէտ և
5 Ա. Կորնթ. ԺԲ, 26
14 Ձ. զհայրն իմ
17 ՁՑՑ. ածեալ ի գթութիւն։ Այսպ. ըստ Ճառ.
17 ԲԳՑ. ամենեցուն արարչին Քրիստոսի
18 Թերևս վարդապետութեան
20 ՑՑ. չիք և զարտասուս
26 Մատթ. ԺԸ, 20
29 ՑՑ. չիք ևս
32 ՁՑՑ. վասն որ ասէքդ։ Այսպ. ըստ Ճառ.
33 Ձ. զհօտի
37 ՑՑ. ոչխար
38 Ձ. Ճառ. յամենախտ, յետոյ աւելացրած ալից։ Ապ. յամենախտալից

ցեալ հոգւոյ որդի ես ոչ երբէք առնում յանձն։ Զի եթէ էր հաւատացեալ թագաւորի առաջի տանել զայսպիսի յանդիմանութիւն՝ թերևս համարձակէի, յուսով գիւտի կորուսելոյն. այլ կշտամբել զհաւատացեալս յաղագս մեղաց առաջի անհաւատիցն՝ ոչ հաւանիմ, որ հանապազ ուսուցիչ լեալ եմ բողոքոյն Պօղոսի, որ ասէ. «Իշխէ՞ ոք ի ձէնջ, եթէ իրք ինչ իցեն ընդ ընկերի իւրում՝ դատել առաջի անօրինաց, և ոչ առաջի սրբոց. եթէ ո՞չ գիտէք, եթէ սուրբք զաշխարհս դատին. և եթէ ձեօք դատի աշխարհ՝ ապա ոչ էք արժանի անարգ ատենից։ Ո՞չ գիտէք, եթէ զհրեշտակս դատիմք, թող թէ զերկրաւորս. զերկրաւոր ատեանս եթէ յանձն առնուք, զանարգս՝ եկեղեցւոյ դատաւոր նստուցանեմք. առ ամօթոյ ձերոյ ասեմ։ Եւ այնպէս, ասէ, ո՞չ ոք գոյ իմաստուն ի ձեզ, որ կարիցէ իրաւունս ընտրել ի մէջ եղբօր իւրոյ. այլ եղբայր ընդ եղբօր դատի, և զայն ի մէջ անհաւատից»։ Եւ արդ՝ որ ուսուցի զբազումս, զանձն իմ ընդէ՞ր ոչ ուսուցից։ Այլ ինձ լաւ լիցի մեռանել, քան եթէ զոք ի հաւատացելոց վասն անարժան գործոյ մատնել անօրինաց։ Զի թէպէտ և իցէ պոռնիկ, այլ զկնիք հօտին Քրիստոսի կրէ յանձին իւրում. գնեալ է մարմնով, այլ ոչ անհաւատ և հեթանոս. գեղխ, այլ ոչ կրակապաշտ. տկարացեալ է ի կանայս, այլ ոչ ծառայէ տարերց. միով ախտանայ ցաւով, այլ ոչ վարակեալ ամենայն ախտիւք իբրև զամբարիշտ։ Եւ զիա՞րդ զսակաւամեղն՝ ամենայնիւ ամբարշտելոցն մատնել խորհիցիմք ի սատակումն։ Քա՛ւ ձեզ, որդիք, մի՛ խորհիք զխորհուրդդ զայդ, և զընիկ զձեր զտեարսդ, որպէս և ոմանք ի ձեր նախնեացն, կորուսանել մի՛ ջանայք»։

Զայս և առաւել ևս քան զսոյն բանս և խրատ բազում արտասուօք և աղերսանօք խօսեցեալ անձանձրոյթ սրբոյ կաթողիկոսին ընդ աւագանւոյն Հայոց՝ ոչ ինչ կարաց զնոսա յառաջին միաբանութենէն և ի խորհրդոյն, զոր հաստատեալ էին ի միտս իւրեանց, ի բաց դարձուցանել։ Քանզի եկեալ հասեալ էր ի վերայ նոցա նզովք սրբոյ առն Աստուծոյ Ներսէսի՝ անկանել նոցա ընդ լծով չար ծառայութեան հեթանոսաց, և ոչ դադարէր մինչև ի գլուխ զգործն հանէր։ Միաբանութեամբ պատասխանի արարեալ ամենեցուն քահանայապետին սրբոյ՝ ասացին, թէ «Փոխանակ զի ոչ լուար բանից մերոց, և ի միաբանութենէ մերմէ զանձն քո ի բաց մերժեցեր՝ գիտասջիր, զի որպէս եղեալ է ի մտի չթագաւորել սմա և այլ ևս ի վերայ մեր՝ խոստանամք չքահանայանալ և ոչ քեզ առ յերկարս ի վերայ աշխարհիս մերում»։ Եւ զայս այսպէս ասացեալ ամենայն աւագաց տանուտերանց աշխարհիս Հայոց առաջի

1 Զ. ճեռուածի վրայ գրուած հոգւոյ որդի
1 ՑՑ. որդի և ոչ երբէք յանձն առնում
2 ԲԳՑ. բաց են թողել «զայսպիսի յանդիմանութիւն... այլ կշտամբել»
9 ԱՑ. դատեմք
9 Զ. նախ թող թէ զերկրաւոր ատեանս, յետոյ լուսանցքում ջնջուած այսպ.
10 Գէտֆ. kr նստուցանէք
13 Ա. Կորնթ. Զ, 1—6
14 Զ. ընդէ՛ր ոչ ուսուցի
17 Զ. գեխղ
21 ՑՑ. չիք խորհիցիմք
22 ՑՑ. չիք զձեր
22 ՑՑ. զձեր նախնեացն
24 ՑՑ. առաւել քան
26 ՑՑ. ի խորհրդոյն
34 Զ. ի վերայ մեր, ստանամք։—ԱՑ. և այլ ևս ի վերայ, խոստանամք ԲԳՑ. և այլ ևս ի վերայ խոստանամք՝
36 Զ. տանուտերաց. վերեւից աւելացրած ն— տանուտերանց

հայրապետին Սահակայ՝ ելին զայրագնեալք ի խրատուէ սրբոյն, և այլ ոչ ևս կամեցան դառնալ առ երանելի քահանայապետն Սահակ. զի էր զնոսա շրջափակեալ և պաշարեալ անիծից երանելւոյ հայրապետին Ներսէսի, ի համօրէն կորստեան խորհուրդս։

Ժ՚Ի. Եւ այնուհետև միաբանեալ գնացին ի դուռնն, և երթեալք անդր յանդիման եղեն արքային Պարսից Վռամայ։ Ընդ որս էր և երէց մի Սուրմակ անուն ի գաւառէն Բզնունեաց, ի գեղջէն որ կոչի Արծկէ, ի տոհմէ քահանայից գաւառին [մեկուսանայր]. որոյ միաբանեալ ընդ նախարարսն Հայոց, ճեղքեալ ի խրատուէ սրբոյ հայրապետին Սահակայ՝ խօսէր բանս անհանճարս և առաւել աղտեղիս քան զամենայն նախարարսն Հայոց զԹագաւորէն Արտաշեսէ առաջի աւագորերոյն Պարսից. շնորհ առնելով նախարարացն Հայոց՝ յաղագս խոստանալոյ նմա ոմանց յաւագանւոյն Հայոց զաթոռ կաթողիկոսութեան աշխարհին Հայոց։ Եւ ծանուցեալ նախագոյն զպատճառս տրտնջոյն իւրեանց Սուրենայ և այլ աւագանւոյն Պարսից. քանզի Սուրէնն պահլաւ՝ էր ի ժամանակին յայնմիկ հազարապետ դրանն արքունի. և հանդերձ նովաւ և այլ մեծամեծօք դրանն հասուցին զբանս ամբաստանութեանն առ Վռամ արքայն Պարսից։

Եւ լուեալ արքային Պարսից այնպիսի բողոք յազատանւոյն՝ ոչ Թոյլ տայր նոցա խօսել առ վայր մի առանց գալոյ ոսոխին ի դուռնն։ Վաղվաղակի դեսպան արարեալ զԹագաւորէն Հայոց զԱրտաշեսէ՝ առ ինքն ճեպով գալ հրամայէր. գալ ընդ նմա գրէր և մեծի քահանայապետին Հայոց Սահակայ։ Եւ եկեալ նոցա ի դուռն՝ հարցանէր նախ առանձին արքայն Պարսից զԹագաւորն Հայոց զԱրտաշէս, եթէ «Զի՞նչ են իրքդ, յաղագս որոյ ամբաստանեն զքէն նախարարքդ Հայոց»։ Եւ նորա պատասխանի տուեալ ասէր, եթէ «Ամենևին ոչ գիտեմ, զի՞նչ խօսին և չարախօսեն դոքա զինէն. այլ որպէս սովոր են ի բնէ Թշնամանել զտեարս իւրեանց՝ ըստ նմին օրինակի և այժմ կամին կատարել զչար կամաց իւրեանց զխնդիրս. քանզի միշտ իշխանափոխք լեալ են և տիրատեացք»։ Եւ Թագաւորն Արեաց Վռամ հրաման տայր՝ միայն ընդ միայն կոչել առ ինքն զսուրբ կաթողիկոսն Հայոց զՍահակ. քանզի մեծարէր զնա, նախ՝ վասն ազգականութեան առնն, և դարձեալ՝ զի առաջի անհաւատիցն յարգոյ և պատուական ցուցանէր զսուրբ ծառայս իւր Աստուած. և հարցեալ զերանելի կաթողիկոսն՝ կամէր լսել ի նմանէ զամենայն բանիցն զչարախօսացն Թագաւորացն Հայոց։ Իսկ նորա պատասխանի արարեալ ասէր, եթէ «Ոչ գիտեմ, զի՞նչ խօսին նոքա զնմանէ. նոքին իսկ ասասցեն, և դուք լուարուք ի նոցանէ. և որպէս ասենն առաջի ձեր՝ յանձինս իւրեանց ընդունին զհատուցումն. զիս ինչ այդպիսի խնդիրս բանից մի՛ հարցանէք. զի ոչ ինչ լսելոց էք յինէն յաղագս չարախօսութեանդ այդորիկ չար ինչ և կամ բարի»։

Ապա կոչէր առ ինքն Թագաւորն Վռամ զՍուրէն *պալհաւն, զիւր

6 ՁԱՑ. էրէց
8 ՁԱՑ. ի գաւառին մե-կուսանայր։ Այսպ. ըստ ԲԳՑ.
14 Ձ. նախգոյն
21 ՑՑ. Արտաշեսէ
22 ՁՑՑ. գալ նմա գրէր։ Այսպ. ըստ Ճառ.
36 Ճառ. սոքա զնմանէ. սոքին իսկ
37 ԱՑ. լուարուք զնոցանէ
38 Ձ. յայդպիսի

զհազարապետն, որ ազգակից և տոհմակից էր մեծի քահանայապետին Սահակայ, որպէս զի միաբանեալ և նա ընդ այլ նախարարսն Հայոց՝ վկայեսցէ չարախօսութեան նոցա, և պատուեալ բազում պարգեւօք և մեծապէս շքեղութեամբ դարձցի յիշխանութիւն կաթողիկոսութեան իւրոյ և յաշխարհ։ Եւ Սուրենայ բերեալ զպատգամն զարքայի առ երանելին Սահակ՝ խոստանայր նմա ըստ ասացածին Վռամայ շքեղութիւն մեծ և օգուտ գտանել ի թագաւորէն։ «Թէ հաւանեալ, ասէ, կամաց նորա, տացես վկայութիւն նախարարացն Հայոց՝ մեծարեալ բազում պատուովք դառնաս յիշխանութիւնդ. ապա եթէ այլազգագոյն ինչ խորհիս յամառեալ՝ և զքո կաթողիկոսական տունդ կորուսանես ի քէն և յիշխանութենէդ զոր ունիս՝ մերժեալ լինիս. և ես վասն զի ազգակից քո եմ՝ և զբարին քո կամիմ, և ոչ թեթեւութեամբ տամ քեզ այսպիսի սիրոյ խրատ»։ Եւ այսպիսի բանիւք ջանայր հաւանեցուցանել զսուրբ հայրապետն զՍահակ. քանզի կամէին բառնալ ի միջոյ զթագաւորութիւնն Հայոց։

Իսկ սուրբն և բնաւ իսկ յանձն ոչ առնոյր այսպիսի բանից՝ տալ վկայութիւն իշխանացն Հայոց. այլ հաստատեալ ի նոյն միտս՝ ասէր, եթէ «Ես զԱրտաշեսի զայդպիսի ինչ զվատթարութիւն ոչ գիտեմ, որով թէ արժան է ի ձէնջ դատելոյ և անարգանաց. զի թէպէտ և ըստ սրբասէր մերոց օրինաց անարգանաց արժանի է և անգոսնելոյ, այլ ըստ հրամանի ձեր աղտեղասէր օրինացդ՝ գովութեան արժանի է և մեծարանաց»։

Եւ լուեալ զայս պատասխանի Սուրենայ ի մեծ հայրապետէն Հայոց Սահակայ յիւրմէ տոհմակցէն, և պատմեալ թագաւորին Արեաց՝ ի ցասումն զայրացման գրգռեալ թագաւորն՝ հրաման տայ այնուհետեւ յանդիման բազմամբոխ ատենին հարցանել զնախարարսն Հայոց և զԱրտաշէս։ Եւ կուտեալ իշխանացն Հայոց բազում աղտեղարանութիւնս և ազգի ազգի խօսս անարժանութեան ի վերայ թագաւորին իւրեանց. քանզի ոչ եթէ ի նմա եղեալ վիրսն խօսէին, այլ ևս յաւելուածովք ըստ օրինի թշնամութեան կուտէին ի վերայ նորա բազում չարս. որ թէպէտ և յուրաստ եղեալ Արտաշեսի, թէ չէ այդպէս՝ ոչ հաւատացին լսողքն, եղեալ զկամս իւրեանց՝ բառնալ ի միջոյ զթագաւորութիւնն յԱրշակունեաց ազգէն։ Մանաւանդ զի լուաւ թագաւորն Արեաց ամենայն աւագանեօք դրանն ի դատախազացն Արտաշեսի, թէ բնաւ զի՞ իսկ ևս պիտոյ է թագաւոր. այլ իշխան պարսիկ ըստ ժամանակի եկեալ վերակացու լիցի մեզ, որ և դիւրաքանչիւր ուրուք ի մէնջ ծանուցեալ զհպատակութիւն և դանհպատակութիւն՝ ցուցցէ ձեզ։

Եւ լուեալ զայս Վռամայ հանդերձ աւագանւով դրանն՝ յոյժ ուրախանայր. և այնուհետեւ հրաման տայր վաղվաղակի ի բաց առնուլ զթագաւորութիւնն յԱրտաշեսէ. ընդ նմին և զտունն կաթողիկոսական ի սրբոյն Սահակայ՝ յարքունիս առնել, փոխանակ զի ոչ միաբանեցաւ տալ

6 ՁՑՑ. ըստ ասածին: Այսպ. ըստ ձեռ.
12 Ձ. Թեթեւութիւն
19 ՁՑՑ. չիք անարգանաց:
25 ՁՑՑ. այնուհետեւ ի բազմամբոխ: Այսպ. ըստ ձեռ.
29 Ձ. ի նմա գեղեալ կրոն
31 ՁԱՑ. անիսիր արտաշէսի եւ արտաշեսի
37 Ձ. ցուցէ

վկայութիւն ընդ նախարարսն Հայոց։ Եւ այսպէս վճարեալ՝ հրաման Պարսից թագաւորին ի գլուխ ելանէր։ Ցայնմհետէ բարձաւ թագաւորութիւն յազգէն Արշակունեաց ի վեցերորդ ամի Արտաշեսի, ըստ բանի երանելւոյ առն Աստուծոյ մեծի քահանայապետին Ներսէսի, և անկաւ աշխարհս Հայոց ընդ լծով ծառայութեան անօրէն իշխանութեան Պարսից։ Եւ առեալ գինս իշխանացն Հայոց ի թագաւորէն Պարսից, ընդ մատնութեանն Արտաշեսի, պատիւս և մեծութիւնս, նման արծաթոյն զոր առին ընդ Յովսեփայ եղբարքն, ընդ մատնութեանն խմայէլացի վաճառականացն, և այսպէս հրաժարեալք ի դրանէ՝ եկին յաշխարհն իւրեանց։

ԺՆ. Եւ տանուտերացն Հայոց, որոց խոստացեալ էր զկաթողիկոսութիւնն Սուրմակայ արծկեցի երիցուն՝ նստուցին զնա յաթոռ կաթողիկոսութեան Հայոց։ Որում, յետ սակաւ ինչ ժամանակի անցելոյ, ընդդիմացեալ ոմանց ի զօրավար իշխանացն Հայոց՝ մերժեալ ընկեցին զնա յիշխանութենէ կաթողիկոսութեանն։ Եւ յայնմհետէ առաքեցաւ նախ ի Վռամայ արքայէն Պարսից յաշխարհս Հայոց մարզպան պարսիկ. և յայնմհետէ եղեն ի սպառ ի սպուռ անկեալք ընդ լծով ծառայութեան անօրէն ազգին Պարսից։ Եւ կատարեալ ել ի գլուխ բանն անիծից մեծի քահանայապետին Ներսէսի, զոր յաղագս առաւելապէս աճեցեալ օր քան զօր ի թագաւորական տոհմին Արշակունեաց գործք անօրէնութեան չարեացն, զոր կամակար համարձակութեամբ միշտ գործէին անամօթեալք։ Մանաւանդ յորժամ ետես սուրբն Ներսէս և զմահն արդար, զոր հասոյցն նենգութեամբ Արշակ ի վերայ Գնելայ եղբօրորդւոյն իւրոյ, և չկարացեալ հանդուրժել այնպիսի անօրէն գործոց սուրբ այրն Աստուծոյ Ներսէս՝ զայրագնեալ սրտիւ, ըստ գրելոցն ի պատմութեան երկրորդումն, ի ճառին հնգետասաներորդի, ասաց, թէ «Փոխանակ զի յաճախեցեր ի չարիս մեծամեծս առաւել քան զհայրն քո Տիրան և քան զայլ նմանիսն քո, որք եղեն չարք և ամբարիշտք յազգէդ Արշակունեաց, և ոչ նմանեալ նախանձեցար լաւացն և առաքինի արանց եղելոց ի տոհմին քում, որոց ժառանգեալ զպատիւ թագաւորութեան հարց իւրեանց՝ առաւել ևս փութացան լինել ժառանգաւորք բարի գործոց արքայութեանն. այլ օր քան զօր աճեցուցեալ ի քեզ առանց պատկառանաց զամենայն պղծագործութիւնս լցեալ կատարեցեր. ի վերայ ամենայնի այդորիկ գտար պատճառ հեղման արդար արեան եղբօրորդւոյն քո Գնելոյ. արդ եղիցիս դու հեղեալ յերկիր իբրև զջուր լուալեաց, և ի լարել աղեղան Բարձրելոյն տկարասջիր։ Եւ կործանումն, որ բերանով մարգարէին ասացաւ՝ հասցէ ի վերայ ձեր, — ըմպել ազգիդ

3 Չ. Ճառ ի կ(?) յերրորդ. յետոյ բիւր (կ?) ջնջած եւ ուղղած ի. գ. երորդ
5 Ճառ. չար ծառայու-թեան
7 ՑՑ. պատիւ
12 Չ. երեցունւ ՑՑ. երեցոյն
18 ՉՑՑ. չիք յետ։ Այսպ. ըստ Ճառ.: Չ. ինչ սակաւ
19 ՑՑ. զոր առաւելապէս Չ. Ճառ զոր յաղագս առաւելապէս. յետոյ ջնջած յաղագս։ Այսպ. ըստ Ճառ.
20 Գkef kr գործոյ
22 ՉՄԲՑ. ետես և սուրբն Ներսէս զմահն։ Այսպ. ըստ Գց.
22 ԲԳՑ. փոխել եւ զմահն անարդար
25 ՑՑ. ըստ գրեցելոց
26 ՑՑ. Ճառին. (չիք ի)
26 Չ. Հնգետասան երկ-րորդի
28 ՑՑ. ամպարիշտք
36 Սաղմ. ՄԷ, 8
37 Չ. ըմբել ազգէտ

Արշակունեաց զյետին բաժակն. արբջիք, արբեսջիք և կործանեսջիք, և այլ մի՛ հաստատեսջիք»։ Հանդերձ և այլ ևս ծանր և ահագին յաւելուածովք, զոր ասացեալ է սրբոյ քահանայապետին ի վերայ ազգին Արշակունեաց։

Խնդրեցին այնուհետև իւրեանց նախարարքն Հայոց յարքունուստ կաթողիկոս, և Թագաւորն Վռամ ետ նոցա զԲրքիշոյ զոմն անուն, այր յազգէ Ասորւոց. որ եկեալ յաշխարհն Հայոց իւրովք գաւառակցօք, որք կէին լոյծ կրօնիւք, եկեալք ընդ նմա յԱսորեստանէ, ըստ սովորութեան իւրեանց աշխարհին՝ տանտիկնօք. և ոչ կէին ըստ սուրբ և ամբիծ կրօնիցն, զոր եդեալ էր և կարգեալ յամենայն եկեղեցիս Հայոց՝ սրբոյ Նահատակին Գրիգորի։ Եւ տաղտկացեալ մեծամեծ տանուտեարքն Հայոց և աւագ սեպուհքն և ամենայն ժողովրդոցն բազմութիւնք ընդ վարս մարդկան, որք եկեալ էին ընդ կաթողիկոսին Բրքիշոյի, որ ոչ հաւասարեալ հանգոյն էին կանոնի և վարդապետութեան հրեշտակակրօն կարգաւորութեամբ սրբոյ Նահատակին Գրիգորի, որով վարժեալ զամենեսեան մնոյց և հաստատեաց ըստ վերին քաղաքավարութեանն։ Առաւել ևս սուգ առեալ հեծէին անմխիթար սքանչելի քահանայք սուրբ եկեղեցւոյ, որ յառաքելանման աջոյ սուրբ հայրապետին Սահակայ ձեռնադրեալք էին։ Եւ չկարացեալք հանդուրժել առ ի յերկարս այսպիսի զեղխ և անարժան կարգի՝ խօսեալ մերժեցին զԲրքիշոյն ի քահանայապետութենէն Հայոց, ծանուցանելով Թագաւորին Վռամայ, եթէ «Ոչ են կարգք սորա և վարք ըստ կարգի մերոյ աշխարհի ուսման. բայց մա՛յլ այր տուր մեզ առաջնորդ ըստ մերում բնիկ կարգիս, որ եղեալ վերակացու՝ կալցի հաստատուն զկարգ սուրբ եկեղեցւոյ»։ Եւ Վռամայ արքային հաւանեալ կամաւ խնդրոյն նոցա՝ տայր նոցա դարձեալ կաթողիկոս այլ ասորի, որում անուն էր Շամուէլ։ Որ եկեալ յաշխարհս Հայոց՝ կայր և նա նոյնպէս ըստ կրօնիցն Բրքիշոյի, և սակաւ ինչ կացեալ ժամանակս՝ վախճանէր յաշխարհիս Հայոց։

ԺԶ. Եւ ապա ժողովեալ աւագ սեպուհեացն և բովանդակ բազմութեան ուխտին եկեղեցւոյ և ժողովրդոց ի միասին արանց և կանանց՝ ողբային զսուրբ և զանարատ և զառաքելաշնորհ վարդապետութիւնն, զոր սերմանեալ աճեցոյց ի նոսա սուրբն Գրիգորիոս և նորին զաւակքն, որք ուսուցին զճշմարիտ և զարդար ուսումն ամենայն լսողաց. զոր ինքեանք, նման երանելի առաքելոցն, ընկալան ոչ ի մարդկանէ և ոչ ի ձեռն մարդոյ, այլ յազդեցութենէ սուրբ Հոգւոյն շնորհաց։ Եւ դարձեալ ժողովեցան միահամուռ, և դիմեալք բուռն հարկանէին զոտից սրբոյ առն Աստուծոյ Սահակայ, աղերս Թախանձանաց և բազմազեղ արտասուս արկեալ առաջի ճշմարիտ քահանայապետին և ասեն. «Մեղաք յերկինս և

2 Փաւստ. Բիւզ. դպր. Դ, գլ. ԺԵ.
6 ՁՑՑ. զԲրքիշոյ զոմն անուն, ասորի յազգէ այր։ Այսպ. ըստ ձառ.: Աց. այսւեղ զԲրգիշոյ։ ձառ. այսւեղ եւ յետոյ զԲաքբիշոյ
9 ՑՑ. սուրբ ամբիծ
10 ՁԱց. եղեալ էին։ Այսպ. ըստ ԲԳց.
17 Ձ. սուք
20 Ձ. գեխ
20 Ձ. զրոքիշոյն
21 Ձ. ծանուցանել
26 ձառ. շամուէլ
28 Ձ. լուսանցքում ունի ապա ժողովեալ
29 Ձ. նախ սեպուհացն, ապա վերևից աւելացրած է—սեպուհեացն
31 Ձ. լուսանցքում ունի ուրիշ գրչով ողբային

առաջի քո. թո՛ղ մեզ մեզուցելոցս և ձևացո՛ զքեզ ըստ օրինակի նախնւոյն քո բարեպաշտի սրբոյն Գրիգորի, որ ոչ յիշեաց զայնչափ տանջանս և զքերանս, զոր անցուցին ընդ նա նախնիքն մեր. այլ նմանեալ Արարչին ամենեցուն՝ հատոյց փոխարէնս բարի փոխանակ չարեացն, զոր հասուցին ի վերայ նորա, և ծանուցեալ եցոյց ամենայն բանիւ հաւանելոց նմա՝ վարս երկնաթռիչս և ճանապարհս աստուածագիւտս. և ուսոյց ամենեցունց ասել հանապազ. «Թո՛ղ մեզ զպարտիս մեր, ըստ մեր թողլոյ մերոց պարտապանաց»։ Արդ՝ որ եղեր դու անդադար վարդապետ մեր՝ զնորին փառաւորութիւն տպաւորեա և դու ի քոյին անձնդ, զնոյն համբերութեան օրինակ, և թո՛ղ մեզ զպարտիս մեր։ Եւ մեք ջանամք և խնդրեմք ի դրանէ՝ հաստատել զքեզ ի բնիկ հայրենի աթոռ կաթողիկոսութեան սուրբ եկեղեցւոյ, յորմէ լուսաւորեալ՝ տեսաք զայն անմատոյց արդարութեան արեգակնն։ Եւ մի՛ խառնեսցի պղտոր ուսումն ընդ յստակ և ականակիտ վարդապետութիւն սրբոյ և առաքելանման հայրապետին Գրիգորի. քանզի ահա դեռ թուլացեալ մեղկի ի լոյծ առաջնորդաց կնիք աւանդոց անարատ քարոզութեան սրբոյն, և ահա կորնչիմք մեք և ծնեալք ի մէնջ զյաւիտենական կորուստ»։

Սոյնպէս և առաւել ևս քան զսոյն բանս աղաչանաց խօսեալ միաբանութեամբ ամենայն բազմութեանն ի բազում աւուրս ընդ սրբոյն ի տուէ և ի գիշերի անդադար՝ ամենևին ոչ կարէին խոնարհեցուցանել զմիտս առնն ճշմարտի ի բանս խանդաղատականս պաղատանաց իւրեանց։ Այլ խաղաղական պատասխանատուութեամբ ասէր ցամենեսեան, թէ «Ես ոչ ուսայ յերկնաւոր Արարչէն և ի վարդապետէն Քրիստոսէ բարկանալ ումեք, որ և ի խաչին յաղագս խաչահանուացն աղաչէր զՀայր՝ չհամարել նոցա զմեղսն. որ և մեզ ցանկ բողոքէ ասելով, «Օրհնեցէք զհալածիչս ձեր, բարի արարէք ատելեաց ձերոց»։ Այլ քահանայանալ ի վերայ տիրանենգ և տիրասպան և մատնիչ ժողովրդոց ոչ կարեմ. քանզի սուրբ Հոգին, որ ծնաւ զմեզ վերստին սուրբ աւազանաւն, ժառանգակից լինել Քրիստոսի՝ նոյն ասաց երկնաքաղաքացի արամբն Պօղոսիւ, թէ «Մի՛ դատիք, զի մի՛ դատապարտեսջիք». և եթէ, «Դուք որ կարողդ էք՝ զտկարութիւն տկարացն բարձէք». և դարձեալ ասէ, թէ «Իմ են վրէժխնդրութիւնք, և ես հատուցից, ասէ Տէր»։ Արդ՝ դուք ձեզէն գիտէք. եղէք վրէժխնդիր թագաւորին ձերոյ գործոց, և դայրացեալք նմա՝ զսուրբ հաւատ ուխտին մերոյ մատնեալ՝ ծաղր եւուք առնել անօրինացն։ Ի՞ւ զիս արդեօք ջանայցէք մխիթարել, և կամ ո՞ւմ թախանձեցուցանէք զիս քահանայանալ, որ զվիրաւոր ոչխար հօտին Քրիստոսի տեսանեմ ոչ պատեալ, և ձիթով և գինւով օծեալ զվէրսն և եդեալ ի վերայ

7 Զ. չիք ասել
9 Զ. նորին փառաւորութեան կամ փառաւորութենէ (անորոշ պատուագրութեամբ)
9 Զ. անձն
15 Զ. թուլացեալ մեղկի լոյծ առաջնորդաց
16 Զ. սրբոցն
18 Զ. այնպէս
22 Զ. պատասխանատուութեամբ
25 Ղուկ. ԻԳ, 34. «Հա՛յր, թո՛ղ դոցա, զի ոչ գիտեն զի՛նչ գործեն».— Գործք Առ. «Տէ՛ր, մի՛ համարիր դոցա զայս մեղս» (ասում է Ստեփաննոս նախավկայ)
26 Մատթ. Ե, 44
30 Մատթ. Է, 1։—Հռովմ. Բ, 1 եւն
31 Հռովմ. ԺԵ, 1
32 Հռովմ. ԺԲ, 19
35 Զ. արդեւք
37 Զ. տեսանեմք

*գրաստու և տարեալ ի պանդոկի. այլ յօշեալ յանխնայ և առաջի գիշակեր գազանաց ընկեցեալ յօգտումն։ Երթայք յինէն ի բաց, և թոյլ տուք ինձ ողբալ զընդհանուր կորուստ աշխարհիս Հայոց, զոր տեսանեմ աչօք մտացս ի զօրութենէ վերին ցուցակութեանն. մի՛ բռնադատէք մխիթարել զիս ի վերայ բեկման ժողովրդեան իմոյ։ Վասն զի զանցս աղէտիս այսորիկ յառաջ քան զձեռնադրելն զիս յեպիսկոպոսութիւն՝ եցոյց ինձ վերին կանխաստացութիւն, գիտելութիւն յանուրջս, ըստ օրինակի մարգարէական տեսլեանն, որ ցուցաւ սուրբ Նահատակին Գրիգորի, գիտելութիւն իրաց առ ի յապայ եղելոցս։ Զոր և ձեզ պատմել այսօր բռնադատիմ առ նեղել սրտի իմոյ, և ցուցանիմ անզգամ որպէս և սուրբ առաքեալն Աստուծոյ Պօղոս, որ յաղագս սուտ առաքելոցն և անօրէն մշակացն՝ գրեաց պարծելով առ Կորնթացիսն զիւր ճգնութեանցն զհանդէսն։ Արդ՝ ունկնդիր լերուք ինձ մտադիւրութեամբ ամենայն բազմութիւնք ժողովրդոց, և պատմեցից ձեզ։*

*ԺԷ. «Յառաջ քան զամս բազումս խորհուրդք անմխիթարք նեղէին զիս, անդադար զմտաւ ածելով և աղաչելով զԲարձրեալն՝ շնորհել ինձ արու որդի, որպէս և Նախնեացն իմոց, որք յառաջ քան զիս էին ամուսնացեալք յաղագս որդէծնութեան։ Եւ արդ՝ վասն զի մատակարարումն հզօրին առ իւրաքանչիւր ոք արդար է և ճանաչող առաւել քան եթէ զոր մեք իմանամք և խորհիմք. և էի ես ի մեծի հինգշաբաթօջն ի դատակի աղուհացիցն ի հսկման, հաղորդեալ ի ժամ երեկոյին պաշտաման՝ սրբոյ և մեղսաքաւիչ խորհրդոյ կենարարին, ճաշակեալ այլ ընաւ աւելի ինչ ոչ՝ բայց հաց և ջուր և աղ, ըստ կանոնելոյ մեծի և սուրբ ժողովոյն երեք հարիւր ութ և տասանցն, որք ի Նիկիացւոց քաղաքին այսպէս կանոնագրեալ հաստատեցին, զորոց կանոնադրութիւն կնքեալ սուրբ Հոգին սահմանեաց։ Եւ կատարեալ կանոն յերկարման առաջին դորողայիցն, և դասք պաշտօնէիցն ընդ նստելն, ծանր նիրհմամբ, ի սաստկութենէ բազմօրեայ տքնութեանցն՝ որպէս կիսամեռք եղեն. որոց զաւուրս քառասնորդացն ուժգին պահօք և անդադար աղօթիւք զցայգ և զցերեկ հանեալ էր. և մանաւանդ ի մեծի շաբաթուն առաւել ես յաւելուածով զնոյնս անճեցուցանել փութային, ուշադրեալք ուրախալից վաստակով հասանել վարձուցն հատուցմանն։ Եւ լոյս ճրագացն և կանթեղացն բորբոքեալ տոչորէր. և ընթերցողն կամաւ յերկարէր զկարդացմունսն, յաղագս սակաւ մի առնլոյ ոգի և բաւելոյ պաշտօնէիցն առաջարկութեան կանոնին. Նոյին և ժողովրդոցն բազմութեան ժողովելոյ ըստ սովորութեանն ի պաշտօն գիշերոյն. քանզի յորդոր կամաւորութեամբն փափաքէր իւրաքանչիւր ոք, այր և կին առ հասարակ, ժամանել արթնութեամբ անձին փրկութեան։ Եւ ես նստէի մերձ առ սեղանն Աստուծոյ ի սուրբ եկեղեցւոջն Վաղարշապատ քաղաքի։*

1 Աց. օչեալ
3 Զ. զընթանուր
10 Զ. առ նեղեալ
17 Զ. չիք որպէս և Նախնեացն իմոց։ Աց. որպէս Նախն...
20 ԶԱց. և ես ի մեծի
22 Զ. կենարար
25 Աց. կանոնագրութիւն
26 Զ. առաջին—ԲԳց. գուբուղայիցն
29 Աց. քառասնեւըորդացն
ԲԳց. քառասնորդացն
38 ԶԱց. չիք մերձ
39 Զ. զկնի Վաղարշապատ քաղաքի ունի որում վայ

*Տեսիլ սրբոյն Սահակայ Պարթեւի, զոր ետես ի Վաղարշապատ քաղաքի, յորժամ նստէր ի սուրբ եկեղեցւոջն ի վերայ բեմբին մերձ ի սեղանն Աստուծոյ ի սուրբ կաթողիկէին։ Արդ՝ գրեսցուք զտեսիլն, որ են բանք Հօր եւ Յիսուսի Քրիստոսի Աստուծոյ եւ Հոգւոյն սրբոյ։*

«Եւ ահա յանկարծակի բացաւ հաստատութիւնն երկնից, ընդ որ ծագեաց լոյսն սաստիկ և ելից զամենայն երկիր։ Եւ կանգնեալ երեւեցաւ ինձ յերկրի բեմբ չորեքկուսի ամպեղէն, որոյ բարձրութիւնն հասանէր մինչև յերկինս, և լայնութիւնն տարածեալ լնոյր զամենայն երկիր։ Եւ ի վերայ բեմբին երեւէր տետրասկեղ յոսկւոյ սրբոյ՝ խորանարդ, ըստ արժանի սպասաւորութեան Տեառն, ծածկեալ յոյժ բարակ կտաւով սպիտակափայլ դունով։ Եւ ի վերայ խորանաձև ծածկութեանն՝ յայտնապէս նշան տէրունական խաչին երեւէր, որոյ երեւելութիւնն ոչ նիւթեղէն, այլ լուսեղէն ցուցանիւր։ Եւ յանկարծակի եղև շնչիւն խաղաղասիգ օդոյ, և բացաւ փեղկ մի ծածկութի կտաւոյն. ընդ որ հայեցեալ տեսի, և ահա կայր ի վերայ բեմբին սեղան չորեքկուսի ականակապ, ի բազմագունի ականց պատուականաց ընդելուզեալ։ Եւ ի վերայ սեղանոյն կայր հաց մի սուրբ և ողկոյզ մի խաղողոյ, ըստ պատուականութեան խորհրդոյ երկնաւոր փրկութեան։ Եւ մերձ ի սուրբ խորհուրդն երեւէր ծառ մի ձիթենի վարսաւոր, պտղալից յոյժ, զորոյ ոչ կարէի առնուլ զչափ բարձրութեանն և զլայնութեանն. որոյ բերն էր բազմապտուղ և առոք, և տեսիլն և գեղեցկութիւն՝ անպատում և սքանչելի։ Եւ որոշեալ չորք ոստք ձիթենւոյն՝ ի խոնարհ կողմ երկրի ձկտեալ մօտէին. որոց երեք ոստք միաչափք և հաւասարակապտուղք երեւէին, և չորրորդն ի նոցանէ որպէս կիսաբաժին և նուաղապտուղ ըստ երկայնաչափութեան երիցն երեւէին։ Եւ պտուղք չորեցունց ոստոցն ոչ ինչ բնաւ էին նմանք և կամ հաւասար պտղաբերութեան պտղաբոյծ առոքութեանն այլ պտղոյ ձիթենւոյն, այլ նուազք առաւել թուով և վտիտք առոքութեամբ, որպէս թէ ծնկեալք էին։

«Եւ ընդ ահեկէ բեմբին տեսի աթոռ մի բարձր չորեքկուսի, ծովագոյն սառնակերպ, և ծածկեալ թանձր կտաւով թխագունիւ։ Եւ վերացեալ կտաւն ի շնչմանէ քաղցր օդոյն եկելոյ՝ տեսի, և ահա սկուտեղ արծաթի մեծ ի վերայ աթոռոյն։ Եւ ի վերայ սկտեղն կայր նափորտ

1 ԲԳՑ. չունին այս վերնագիրը
6 ԲԳՑ. հաստատութիւնն վերին
7 ԲԳՑ. ծագեալ
8 ԲԳՑ. այստեղ եւ յետոյ միշտ բեմ, բեմի...
10 ԱՑ. այստեղ տետրակ սկեղ
12 Զ. ծածկութեան (վրան պատիւ): Գուցէ ծածկութին
14 Զ. խաղաղասիք
15 Զ. ծածկութե (պատուով)
17 ԶԱՑ. չիք պատուականաց
18 Զ. խաղող
18 ԲԳՑ. ըստ պատուական
19 ԲԳՑ. առ սուրբ
21 ՑՑ. լայնութեանն
22 Զ. որոշել
23 ԶԱՑ. միաչափ ձիթենւոյն... ձգեալ
25 Զ. նուաղպատուղ
26 Զ. պտուղ
28 Զ. նուաղ
28 ԲԳՑ. վտիտ
28 Զ. որպէս. (չիք թէ)
29 Զ. ահեկ
29 ԲԳՑ. չիք տեսի
30 Զ. թղխագոյն: ԱՑ. թըխագոյն
31 ԱՑ. և տեսի
31 ԲԳՑ. սկտեղ արծաթի
32 ԶԱՑ. սկուտեղն

*մի բեհեղեայ ծալեալ և եդեալ, և առ նմին գունդ մի ոսկի բոլոր, և մագաղաթ հաստուածաձև չորեքկուսի, գրեալ ի սկզբանն կարգս ինչ սակաւ՝ ոսկէտեսիլ գրով սքանչելապէս, իբր թէ ձեռամբ գրչի ճարտարի. և ի միջոյ կողման մագաղաթին, հեռի յոսկէգիր կարգացն, երևէին այլ կարգք ինչ եղծեալք ճնշագիրք, որոց ոչ ինչ բնաւ երևէր տեսիլ գրոյն և կամ կերպարան։ Եւ հուսկ յեզր մագաղաթին, հեռի ի ճնշագիր կարգացն, դարձեալ տեսանէի այլ ևս կարգ մի և կէս կարգի, գրեալ ոսկէգիր գրով առաւել սքանչելապէս, ըստ տեսոյ առաջին կարգացն գրելոց ի սկզբանն մագաղաթին։ Եւ կիսագիր կարգին մինչև ցմիջոց գրոյն՝ ևս առաւելագոյն էր ոսկւով, և այլն կարմրադեղով էր։ Եւ կային շուրջ զծնօտիւք սկուտեղն անթիւ բազմութիւնք տղայոց արուաց, այլ սակաւ և իգաց. ամենեքեան պայծառացեալք լուսազգեստք էին։ Բայց ճառագայթք փայլատակման պատմուճանաց նոցա՝ էր որ կարմրագոյն արձակէին նշոյլս, և էր որ այլ երփն երփն և գոյնս ազգի ազգիս երևէր։ Եւ դէմք ամենեցուն ի սուրբ սեղանն հայէին, չդարձուցեալ բնաւ ուրեք ղաչս իւրեանց ի խորհրդոյն փրկութեան։*

*«Եւ սկսաւ յանկարծակի սաստկապէս դղրդմամբ շարժել աթոռն։ Եւ զմանկտին, զոր տեսանէի ի տիս տղայութեան՝ առժամայն վաղվաղակի փոփոխեալք ի հասակ երիտասարդութեան՝ կատարեալք լինէին, և եղեալք թևազգեցիկք՝ ի վեր ի սուրբ սեղանն, ու էր ընդելուզեալ ի բազմագունի ականց՝ թռուցեալ բնակէին և զՍուրբ Աստուածն երգէին։ Եւ համբարձեալ սուրբ սեղանն հանդերձ նօքօք ի վեր քան զբարձրութիւն հաստատութեան երկնից՝ ծածկէր։ Եւ այսպէս եղեալ աներևոյթ՝ տեսիլն ամփոփէր. և ես ի մեծ զարհուրումն ընկղմեալափշէի։*

*«Եւ ահա յանկարծակի կերպարան մարդոյ երևէր ինձ յերկնից այր լուսեղէն, որոյ տեսութիւն սաստկութեան լուսոյն մռայլեցուցեալ ծածկէր զարեգականն զլոյս։ Եւ սլացեալ այրն հասանէր ուր եսն էի։ Եւ իմ առաւել ևս հիացմամբ ափշեալ ի փայլակնացայտ երևմանէ առնն՝ անկայ վաղվաղակի դողալով ի վերայ երեսաց իմոց յերկիր. և նորա բուռն հարեալ կանգնեաց զիս և հաստատեալ կացոյց ի վերայ ոտից իմոց, և ասէ ցիս. «Քաջալերեա՛ց, զօրացի՛ր և մի՛ երկնչիր. այլ հաստատեա՛ զսիրտ*

1 Ձ. չիք և եդեալ
2 Ձ. հաստաձև չորեքկուսի գրեալ սկզբանն
3 Ձ. չիք իբր թէ
5 ՁԱՑ. կարգ ինչ
5 Ձ. տեսիլ գրոյն կերպարան։ ԱՑ. գրոցն
6 ԱՑ. մագաղատին
7 ՁԱՑ. չիք գրեալ
7 Ձ. ոսկէգիր գրով առաւելապէս ըստ
9 ԲԳՑ. և ևս առաւելագոյն էր։ Ձ. չիք էր
10 ՏՏ. և այլն (ԱՑ. մինչև) ցկատարումն կարմրադեղով երևէր
11 Ձ. անթիւք տղայոց։ ԲԳՑ. բազմութիւն
12 Ձ. պայծառացեալ
12 ԲԳՑ. լուսազգեցիկք
12 ԲԳՑ. Ճառագայթ փայլման
14 ՁԱՑ. նշոյլք
14 Ձ. գոյն
14 ԲԳՑ. չիք երևէր
16 ԲԳՑ. և ոչ ուրեք
17 Ձ. աթոռոյն։ ԱՑ. աթոռոյն: Այսպ. ըստ ԲԳՑ.
19 ԲԳՑ. փոփոխեալս
20 ԳՑ. որ ընդելուզեալ
21 ԲԳՑ. չիք և զՍուրբ Աստուածն երգէին
23 ՁԱՑ. չիք և այսպէս եղեալ աներևոյթ... ընկղմեալ ափշէի
25 Թուի ուղղելի ի կերպարան մարդոյ
25 Ձ. այլ և լուսեղէն
27 ԲԳՑ. լոյս
27 ԲԳՑ. եսն կայի
29 Ձ. չիք դողալով
29 ՁԱՑ. չիք յերկիր
31 ՁԱՑ. չիք ցիս
31 Ձ. քաջալերեա
31 Ձ. զսիրտ

քո յանուն հզօրին, որ արար զամենայն և եցոյց քեզ զմեծ խորհուրդ յառաջատես արարչութեան իւրոյ»։ Եւ իմ ուշաբերեալ զօրացայ ի բանէ նորա և կանգնեալ կացի ի վերայ ոտից իմոց։ Եւ ասէ ցիս. «Վասն է՞ր ես տրտում, և կամ ընդէ՞ր զբաղմունք ‘Նանրութեան պղտորեն զմիտս քո և զյստակ խորհրդոց քոց։’ Վասն զի անգիտական խորհրդովք յածեցուցեալ զմիտսդ՝ խռովէիր վասն չլինելոյ քեզ արու որդի. որ քաջածանօթ էիր կամաց հզօրին, որ գիտելութեամբ բաշխէ զիւրաքանչիւր օգուտ, և ոչ ղլացութեամբ խափանեալ արգելու յումեքէ զարժանն։ Եւ արդ՝ գթալով ի քեզ Բարձրեալն վասն սիրելոյ զքեզ՝ կամեցաւ հեռացուցանել ի քէն զայդպիսի ընդունայն մտածութիւնս, և մխիթարեաց զքեզ տեսլեամբդ այդուիկ, որ ցուցաւ քեզ յայտնութիւն մեծ, ոչ միայն յառաջիկայս, այլ և առ յապա ամենայն իրաց, որ լինելոց են մինչ ի վախճան աշխարհիս, ծանոյց քեզ և ամենայն հաւատացելոց ի բան նորա, որպէս ճշմարիտ Նախնւոյն քում, առն Աստուծոյ սրբոյն Գրիգորի. իսկ քեզ մինչ ի կատարած աշխարհի որ ինչ միանգամ լինելոց է՝ եցոյց զամենայն։ Եւ արդ՝ լո՛ւր, և պատմեցից քեզ զմեկնութիւն մեծի յայտնութեանդ, որպէս ինձ հրամայեցաւ ի վերին զօրութենէն՝ ծանուցանել քեզ զամենայն. և դու ունկնդիր եղեալ բաղում զգուշութեամբ՝ գրեա ի տախտակս սրտի քո անմոռաց. զոր և ‘ի մագաղաթի դրոշմեալ Թողցես՛ հաւատացեալ ժողովրդոց զգուշութիւն անսխալ մինչև ի վախճան աշխարհի։

*Մեկնութիւն տեսլեան սրբոյն Սահակայ ի հրեշտակէ Աստուծոյ. զոր եցոյց յայտնի ըստ իւրաքանչիւր գլխոց եւ միոյ միոյ տանց, վասն կենաց մարդկան եւ կատարածի աշխարհի։ Տեսիլ սրբոյն Սահակայ։*

«Զբանալ հաստատութեան կրկնից զոր տեսեր և զտարածել լուսոյն սաստիկ ընդ ամենայն երեսս երկրի. քանզի ահա ի գալստենէ կենարարի Որդւոյն Աստուծոյ բացեալ է դուռն շնորհի ողորմութեան նորա առ ամենեսեան, որ սիրեն զնա և պահեն զբան հրամանի նորա, յորս ծագեալ լուսաւորէ լոյս փառաց վարդապետութեան Նորա։ Եւ բեմրն չորեքկուսի կանգնեալ որ երևեցաւ քեզ, բարձր յերկրէ մինչև յերկինս՝ հաւատն ճշմարտութեան է, որով վերանան արդարքն ի

1 ԲԳՑ. զամենայն երևելիս և աներևոյթս և շնորհեալ եցոյց քեզ
3 ՁԱՑ. չիք և կանգնեալ կայէի վերայ ոտից իմոց
4 ՁԱՑ. Նանձրութեան պղտորեն զխորհուրդս քո
6 Զ. որ քաջծանօթ էր
8 ՁԱՑ. չիք խափանեալ
9 ԲԳՑ. դարձուցանել ի քէն զայդպիսի մտածութիւնս
10 Զ. մխիթարեաց տեսլեամբդ *այդուիդ
12 ՁԱՑ. այլ և առ յապա ամենայն լինելոցն։ ԲԳՑ. առ ի յապա... ի վախճան ժամանակի
13 Զ. չիք քեզ և
14 Զ. Ճշմարիտ նախնոյն քո սրբոյն։ ԱՑ. Ճշմարիտ առ նախնոյն
16 ՁԱՑ. չիք մեծի յայտնութեանդ
17 ՁԱՑ. չիք ի վերին զօրութենէն
19 ՁԱՑ. զբով Թողցես
20 Զ. անսխղալ։ ՑՑ. անսղալ
20 ՑՑ. մինչ
20 ԲԳՑ. ի վախճան ժամանակի
22 ԲԳՑ. չունին վերնագիր
26 Զ. բանալ... և տարածեալ լոյսն
27 Զ. գալստեան։ ԱՑ. ի գալստեան
28 ՁԱՑ. կենդանի որդւոյն
29 ՁԱՑ. չիք նորա

ծանրութենէ աշխարհիս կենաց ի թեթեւութիւն երկնից բնակութեանն։ Եւ զի ամպեղէն գունով երեւեցաւ բեմբն՝ վասն զի որ վերացաւ ամպով՝ նոյն գալոց է վերացուցանել ընդ իւր զարդարս, ուր բազում օթեւանք են ի տան արքայութեանն Հօր. զոր և դու տեղեկացեալ ուսար ի սուրբ Հոգւոյն, որ խօսէր ընտիր արամբն Պօղոսիւ, թէ «Ամպովք յափշտակիմք ընդ առաջ Տեառն յօդս»։ Եւ տետրակեղն ոսկի, որ ի վերայ բեմբին, զորով էր արկեալ մաքուր կտաւն բարակ, որով ծածկեալ էր սուրբ սեղանն և որ ի նմա խորհուրդն՝ գիտեա և ծանիր, զի ծածուկ և անյայտ է խորհուրդ աստուածային գիտութեանն, պատուականութեամբ և մաքրութեամբ՝ ըստ պատուականութեան մաքուր ոսկւոյն և լուսափայլ մաքրութեան կտաւոյն. յորոյ վերայ կանգնեալ նշան կենդանացուցիչ խաչին որ երեւէր՝ կենդանացեալ կանգնեցան ամենայն արարածք, գլորեալք մեղօք. և դարձեալ, զի նախ խաչն երեւի ի գալստեանն Քրիստոսի, և ապա յայտնի խորհուրդ դատաստանին և հատուցման ըստ իւրաքանչիւր գործոց։

«Եւ զի եղեալ օդ քաղցրաշունչ, որ երաց զմասն ինչ կտաւոյն՝ ի միտ առ, զի ցուցաւ քեզ ի սուրբ Հոգւոյն քաղցր խաղացմունք, որ յայտնէ սրբոց իւրոց զխորհուրդ ծածկեալ՝ աստուածութեան իւրոյ։ Ընդ որով կայր սեղանն ոսկի ի պատուական ականց ընդելուզեալ—սրբոյ Երրորդութեանն ծանուցանի միասնականութիւն. որ զվարս և զճգնութիւն արդարոցն որպէս զպատուական ականց զանազանումն առ ինքեան տպաւորեալ զուարճացուցանէ, որք զմարմին և զարիւն Փրկչին արժանաւորապէս ճշմարտութեամբ, բազմեալք ընդ նմա, ճաշակեն ի սուրբ սեղանոյն. ըստ երեւելոյ քեզ հացն և ողկոյզն ի վերայ սեղանոյն՝ օրինակ մարմնոյ և արեան կենարար չարչարանացն Տեառն ցուցանի։

«Իսկ երեւումն քեզ սքանչելատեսիլ ձիթենւոյն, որ էր հուպ առ տէրունեան խորհուրդն, բարձր և վարսաւոր բազմաբեր պտղալից՝ զտուրս և զողորմութիւն և զսէր մարդկան որ առ միմեանս՝ եցոյց քեզ։ Քանզի մօտ և առաւել եւս պատուական է աստուածութեանն աղքատսիրութիւն յամենայն բարեգործութիւնս, որով և առաջին արդարքն ընտիրք երեւեցան, Աբրահամ, Իսահակ և Յակոբ. առանց որոյ և կուսանացն արհամարհեալ վաստակք կուսութեան՝ արտաքոյ հարսանեացն

2 Զ. վասն զի վերացաւ ամպով
3 ԲԳՑ. բազում են և անթիւ օթեւանք
4 ԶԱՑ. զոր և քո ուսեալ
5 Զ. չիք ընտիր
5 Զ. ամպովք
6 Ա. Թեսաղ. Դ, 16
7 Զ. զմաքուր կտաւն ըզբարակ։ ԱՑ. և բարակ
10 Զ. չիք մաքուր
10 ԱՑ. լուսափայլութիւն մաքուր կտաւոյն
11 ԱՑ. տեսանէիր կանգնեալ
11 ԶԱՑ. զնշան
12 Զ. խաչին երեւէր կենդանացեալ։ ԱՑ. խաչին որ երեւէր. յոր կենդանացեալ։ ԲԳՑ. խաչին՝ որով երեւէր, կենդանացեալ
17 ԲԳՑ. իմա զի ցուցաւ
17 Զ. սուրբ հոգւոյն
19 ԱՑ. զսրբոյ Երրորդութեանն ծանուցանէ զմիասն...
22 ԲԳՑ. զուարճանայ, որք զճաշակ կենաց զմարմին... արժանապէս
25 ԲԳՑ. չարչարանացն ծանուցաւ
26 Զ. սքանչելի տեսիլ
28 Զ. և զողորմութիւն ամենայն մարդկան։ ԱՑ. և սէր մարդկան
28 ԲԳՑ. եցոյց քեզ ընդ ունողն։ Քանզի մօտ և առաջին և պատուական աստուածութեանն է աղքատսիրութիւն
30 ԶԱՑ. արդարքն Աբրահամ, Իսահակ և յակոբ ընտիր երեւեցան

ընկեցան։ Սովաւ ճանաչի յանձինս մարդկան կնիք քարոզութեանն Քրիստոսի, որ ասացն, թէ «Յայսմ ծանիցեն ամենեքեան թէ իմ աշակերտք էք՝ եթէ սիրիցէք զմիմեանս»․ և մանաւանդ որ առատապէս զուարթամտութեամբ կամաւ կատարեսցէ զսիրոյն պատուիրան, ոչ միայն յաղքատս, այլ և յընկերս և յեզբարս և առ ամենեսեան, որով հաստատի խաղաղութիւն աշխարհիս, և տէրն փառաց բնակէ ի մէջ նոցա, շնորհելով զհանգիստ և ղառատաբերութիւն երկրի, որպէս տեսանէիր բարձր զձիթենին լիապտուղ և վարսաւոր։

«Եւ ստաք չորք ձիթենւոյն, որ ի խոնարհ կողմ երկրի ձգտէին երևելովն, երեք ստաք հաւասարակատեսք չափով, և այն առաւել միաթիւք պտղովք, և չորրորդն ի նոսա, զոր կիսաչափ ըստ հաւասարակութեան երիցն և պակասաւոր ըստ պտղաբերութեանն տեսեր, որոց չորեցունց պտուղքն վտիտք էին և թառամք, և բերքն պակասք և աննմանք քան զայլ ատոքատեսիլ պտուղս ձիթենւոյն՝—արդ ամփոփեմ զունկնդրութիւն մտաց քոց, լուր և ասացից քեզ՝ զոր ինչ սահմանեացն Բարձրեալն. յայսմ հետէ մինչև ի վախճան աշխարհիս՝ երեք տամներեակք ամաց և կէս տամներեկի համառօտեսցի ի վերայ ամենայն աշխարհի, մինչև յերևումն պղծոյն անապատի, զոր Դանիէլ մարգարէի ասացեալ է սուրբ Հոգւոյն. և լինին սոքա յայտնապէս թուով ամք երեք հարիւր յիսուն, ըստ միաղոյգ պտղոց երից ստոցն և կիսոյն։ Եւ զի տեսեր զպտուղ ստոցն թառամս և ծնկեալս և ոչինչ բնաւ նմանս այլ պտղոցն որ ի ձիթենւոջն էին. տես ճշգրտապէս և ծանիր, զի բարձեալ է սէր և արդարութիւն յամենայն մարդոց, որք ստութեամբ և ոչ ստուգութեամբ կարծեցուցանեն զանձինս սիրունս և պատուիրանապահս. և այն յայտնի գրեալ կայ և կնքեալ ի դպրութեան ամենագիտին Աստուծոյ, որ ներէ երկայնմտութեամբ և հատուցանէ անաչառութեամբ։

«Եւ ընդ ահեկէ բեմբին որ ցուցաւ քեզ աթոռ չորեքկուսի ծովագոյն սառնակերպ՝ զնստուածն զահու քահանայութեանն և թագաւորութեանն ցուցանէ, զոր արդարև Բանն Աստուած հաստատէ։ Յորոյ վերայ կայր սկուտեղն արծաթի. քանզի իբրև զարծաթ ընտիր և փորձ լուսափայլ՝ յամենայն ազգս ընդունողաց սփռեալ տարածեցաւ բանն. զոր և սաղմոսերգն վարդապետէ սուրբ Հոգւովն, յասելն, թէ «Բանք Տեառն

1 Չ. յանուանս մարդկան
2 ԲԳՑ. ամենեքեան զձեզ
3 Յովհ. ԺԳ, 34
3 ՉԱՑ. զուարթութեամբ կատարեսցէ
5 ՉԱՑ. և յամենայն որով
6 Չ. բնակեալ
7 ԲԳՑ. և զառատաբար պտղաբերութիւն երկրի… և լիապտուղ
9 ԲԳՑ. ձգտեալ երևելով
10 ՑՑ. և էին առաւել։ «Հին օր. անտառաւեղ» (Ծան. ԲԳՑ.):
11 ԲԳՑ. ղչորրորդն
12 Չ. պակասաւորութեան ըստ պտղ…
12 ԲԳՑ. յորոց
14 ԱՑ. պտուղք
15 ԲԳՑ. չիք քեզ
15 Չ. զոր սահմանեաց
16 ՉԱՑ. երեքտասան երեք ամաց
18 ՉԱՑ. զոր ի Դանիէլէ մարգարէէ։ Թուի մարգարէիւ կամ ի սուրբ Հոգւոյն…
20 Չ. ըստ միազուգ պտղոյ երից ստոցն և պտղոց և կիսոց։ ԱՑ.… երից ստոցն և պտղոց և կիսոյն
23 Չ. մարդոյ
24 ՉԱՑ. սիրուն
25 ՉԱՑ. ի դպրութիւն
28 ՉԱՑ. զնստել քահանայութեան
29 Չ. զարդարև բանն Աստուծոյ։ ԱՑ. զոր արդարև բանն Աստուծոյ
30 ԲԳՑ. սկտեղն
31 Չ. ազգ
32 ՉԱՑ. սաղմոսերգուն
32 Չ. սուրբ հոգւոյն։ ԱՑ. ի սուրբ Հոգւոյն

որպէս զարծաթ ընտրեալ և փորձեալ յերկրէ». և զասելն յերկրէ՝ գիտասցես, եթէ զերևումն Որդւոյն Աստուծոյ մարմնով ի սուրբ կուսէն յայտ առնէ մարգարէն։ Եւ զի երևեցաւ քեզ ծովագոյն սառնանման տեսիլ աթոռոյն՝ նշանակեալ ցուցանէ զծփումն ալէկոծութեան աշխարհիս Հայոց։ Քանզի և թխագոյն թանձր կտաւոցն ծածկումն՝ զօրինակ բերէ զթանձրամած ազոյն, որ ունելոց է զաշխարհս ամենայն. վասն զի տեսիլդ ի վախճան է։ Եւ նափորտն բեհեզեայ, զոր տեսանէիր ծալեալ և եդեալ ի վերայ սկտեղն, և գունդն ոսկի որ կայր մերձ նափորտանն՝ նշանակէ մինն զքահանայութիւնն, և միւսն զթագաւորութիւնն։ Եւ զի ոչ ոք էր արկեալ զիւրեաւ զնափորտն, և ոչ այն ոք էր որ զգունդն ունէր ի ձեռին՝ յայտ առնէ ստուգապէս, զի լռեսցէ մերձ ընդ մերձ թագաւորութիւն յազգէդ Արշակունեաց, և քահանայութիւն ի ցեղէ արժանաւոր քահանայապետին Գրիգորի։

«Եւ մագաղաթն հատուածաձև, որ ցուցաւ քեզ գրեալ ի սկզբանն կարգս ինչ ոսկեղէն գրով՝ զձեռնադրութիւն արանց սրբոց եցոյց քեզ շնորհք Հոգւոյն սրբոյ, որք ի զաւակէ երանելւոյն Գրիգորի յաջորդեսցեն արժանապէս զաթոռ քահանայապետութեան. նոքա են արք ընտիրք, գրեալք ոսկետեսիլ գրով ի դպրութիւն կենաց։ Եւ զի երևեցաւ ի միջոյ կողմն մագաղաթին, հեռի յոսկէգիր կարգացն, կարգք ինչ խանգարեալք և ջնջագիրք՝ գիտեա, զի նստելոց են քահանայապետք ոմանք յաթոռ սրբոյն Գրիգորի, որք ոչ ըստ հրամանի սրբոց առաքելոցն և ոչ ըստ կանոնի սուրբ ժողովոյն երեքհարիւր ութուտասանիցն լինին ձեռնադրեալք յերկնաւոր պատիւ, այլ ըստ փառաց աշխարհիս ձգտին ի պատիւն յանդգնութեամբ, որք են արծաթասէրք առաւել քան աստուածասէրք։ Եւ վասն զի խոտան է քահանայութիւնն և ոչ ըստ հաճոյից Բարձրելոյն՝ ջնջեալ են նոքա ի դպրութենէ երկնից բարութեանն, տալով դատաստան, զհեհեւին այրմամբ, զանձանց և զժողովրդոցն կորստեան։ Եւ այլ կարգն և միւս ևս կէս կարգին, որ երևեցաւ քեզ գրեալ սքանչելապէս ոսկի գրով ի ստորին եզեր մագաղաթին՝ ծանիր հաւաստեաւ, զի մերձ յերևումն պղծոյն անապատի դարձեալ յառնէ թագաւոր յազգէդ Արշակունեաց, և նորոգի աթոռ հայրապետութեան ի շառաւեղէ սրբոյն Գրիգորի։ Եւ վասն զի ոչ էին արհամարհեալք և ընկեցեալք յերկիր ի կոխումն, այլ յայտական երևմամբ կայր գունդն, և ծալեալ պատուականութեամբ ցուցաւ նափորտն, որ ևս առաւել հաս-

1 ՁԱՑ. երբեւ զարծաթ
1 Սաղմ. ԺԱ, 7
2 Ձ. չիք մարմնով
8 ՁԱՑ. ի վերայ սկուտեղէն... կայր ի վերայ նափորտին
14 ՁԱՑ. այսպէս եւ յետոյ մագաղատ
14 Ձ. հատուածեւ։ ԲԳՑ. հատուածաձեւ
16 ՑՑ. երանելոյն
16 ԲԳՑ. յաջորդեն
19 Ձ. կարգ ինչ *հանգարեալք....։ ԱՑ. կարգ ինչ խանգարեալ եւ ջնջագիր
21 ԲԳՑ. որ ոչ... պատուական սուրբ ժողովոյն
22 ԲԳՑ. ութուտասանցն
23 ԲԳՑ. յերկնաւոր պաշտօն
23 Ձ. ձգտին... որք արծաթասէրք առաւել են քան
23 ՁԱՑ. չիք ի պատուին
25 ԲԳՑ. խոտան եւ օտար է քահանայապետութիւնն
25 Ձ. ոչ հանոյից
26 ԲԳՑ. բարութենէն
27 Ձ. դատաստանեաւ
27 ԲԳՑ. ժողովրդեանն
28 ՁԱՑ. կարգ մի եւ կէս կարգին
31 Ձ. յազգէս
32 ՑՑ. ի շառաւիղէ
32 ԲԳՑ. Գրիգորի։ Վասն զի
33 Ձ. կայ գունդն
34 ԲԳՑ. ցուցաւ քեզ նափ..
34 Ձ. չիք հաստատապէս

տատապէս ցուցաւ քեզ. և ծանոյց զայս վերին ազդեցութիւնն սքանչելատեսիլ ոսկէգիր կարգովն և կարգակիսաւն, որ ի ժամանակս գոռոզացելոյ Թշնամւոյն արդարութեան Նստի քահանայապետ արդար, ի ցեղէ սրբոյն Գրիգորի. և քահանայացեալ առաջինն կատարէ զաւուրս իւր, կրեալ ճգնութիւնս բազումս ի սուտ առաքելոց իշխանին կորստեան, և վախճանի խաղաղական հանգստիւ և ոչ սրով։ Եւ միւս զաւակ Ներսէն յաջորդեալ զաթոռ քահանայապետութեանն՝ բազում և ազգի ազգի համբերեալ քերանաց և գանից, սովոյ և հալածանաց և դառն Նեղութեան՝ ժամանակս բազումս՝ յանօրէն իշխանին դահճացն սրով ընկալցի զվճիռ մարտիրոսութեան։ Այն զի ցուցաւ քեզ ի կաքգին մասն մի ի գրելոցն կարմրադեղով՝ ստուգեալ հաւատարմութեամբ դաւանեաց զկատարումն մարտիրոսութեանն, որ դիպելոց է սրբոցն։

«Եւ որ երևեցաւ քեզ բազմութիւնք տղայոց շուրջ կալով ի վերայ արծաթի սկտեղն, զուարթացեր ցնծալից ուրախութեամբ. զի ահա յարգանդէ զաւակիդ, որ տուաւ քեզ յԱրարչէն, ելցեն բազում շառաւեղք, արք ընտիրք զօրութեամբ. ընդ որս միաբանեալ և այլ բազմութիւնք լաւ արանց, յազգէ Նախարարացդ Հայոց. որք զօրացեալք սուրբ բանիւն Աստուծոյ և զյարուցմունս Թագաւորաց և զսպառնալիս իշխանաց առ ոչինչ համարեալ՝ միացուցանեն զանձինս ընդ յոյսն բաղձալի երկնաւոր կոչմանն, չհայելով ի մեծութիւնս սնոտիս և ոչ ի փառս առժամայնս. ընդ որոյ վաճառեալ ոմանց զփառս անեղծին Աստուծոյ, ընդ սնոտի և ապականացու կենաց աշխարհիս՝ ուրացողք լինին. վասն զի մօտ է առ դուրս վաճառ՝ Թուլացելոցն ի կորուստ, և հասեալ կայ հուպ օգնութիւն՝ զօրացելոցն ի փրկութիւն։ Ցորս և դու հայեցեալ տեսեր շուրջ զաստուածային սեղանովն պարելով զտղայսն, չհայելով բնաւ ի սայթաքմունս սնոտի հեթանոսական պաշտամանն. յորոց ոմանք կատարելութեան հասեալք՝ մարտիրոսական պսակին լինին արժանիք։ Եւ այլք յարանց բազմաց, և ոչ միայն յարանց, այլ զտանին և ի կանանց, որք Թէպէտ և ոչ սրով, այլ ի շնորհաց սուրբ Հոգւոյն զօրացեալք՝ բազում բարեգործութեամբք կատարին։ Որպէս երեւէին քեզ լուսափայլ Նշոյլք արձակեալք ի մանկտւոյն. յորոց ոմանց կարմրագոյն փայլմամբ երփն

1 Աց. չիք զայս
2 ՁԱց. կարգակիսովն
3 ՑՑ. Նստցի
3 ԲԳց. ի Ճշմարիտ վինա-կէ ցեղին
4 ՁԱց. կատարէ զկեանս իւր
5 Ձ. կրել
6 ՁԱց. Հանգստեամբ
7 ԲԳց. և բազում... և սովոյ
8 Ձ. և գանից, սովոյ, Նեղութեան։ Աց. և գանից, սովոյ և հալած...
9 ՁԱց. չիք իշխանին
9 ԲԳց. զվախճանն մարտիր..
10 ԲԳց. գրելոցն
13 ՁԱց. բազմութիւն
14 ԲԳց. արծաթ սկտեղն, զուարթատեսկ ցնծալից։ ՁԱց. սկուտեղն
15 ՑՑ. շառաւիղք
16 Ձ. ընդ որ
16 ԲԳց. միաբանեալք
17 Ձ. չիք լաւ արանց
18 Ձ. աստուծոյ, զյարուցմունս
19 Ձ. համարել։ ԲԳց. համարեալ արհամարհեսցեն, միացուցեալ
21 Ձ չիք ոմանց
22 ՁԱց. ուրացող
24 ՁԱց. յորում և դու
24 ԲԳց. հայեցեալ շնորհի ակամբ տեսեր
25 Ձ. չպահելով բնաւ
27 ՁԱց. արժանաւորք
27 Ձ. չիք և այլք յարանց բազմաց, և ոչ միայն յարանց։ Աց. և յայլ արանց բազմ...
29 ՁԱց. զօրացեալ
30 ՁԱց. երևէին
31 ԲԳց. յորոց կարմրագոյն փայլմամբ երփնէբ գոյնըլն։ ՁԱց. յոմանց (չիք յորոց)... երփն երփն Ներկոյն

երփն էր գոյնն՝ զկատարելոցն արեամբ գուշակէ զնահատակութիւն. և զայլոցն պէսպէս ճառագայթիւք ցուցանէր զշողումն՝ որպէս զբազմափայլ գոյնս լուսաւորութեան առաքինի մարդոց. վասն զի բազում և անթիւ են ճգնութիւնք և վաստակք արանց արդարոց։

«Եւ վասն զի շարժեցաւ սաստիկ դղորդմամբ աթոռն զոր տեսեր, և որ երբեմն տղայք քեզ երևէին, յաճումն կատարելութեան բովանդակեալք, յերկրէ յերկինս թռուցեալ համբարձան՝ բովանդակապէս զերկրիս կենցաղս արդարոցն և ի յերկինս զլինելոց նոցա դհրեշտականման փոխումն եցոյց քեզ պարգևատուն բարեաց։ Քանզի իբրև զտղայս կացին յաշխարհիս արդարքն անմեղութեամբ, չդարձուցանելով ուրեք զհայեցուածս մտաց իւրեանց՝ ի զբաղմունս նանրութեան, այլ ուշադրեալք ի հրաւիրումն երկնաւոր կոչմանն ուրախութեան հայրն։ Քանզի բազում և խիստ դղորդմունք յայսմ հետէ լինելոց են յաշխարհիս. յարուցմունք թագաւորաց ի վերայ միմեանց, սովք և սասանութիւնք և բազում նեղութիւնք, որք զգալուստ որդւոյն կորստեան նշանակեն, որ եկեալ նստիցի ըստ գրեցելումն ի տեղւոջն սրբութեան, ցուցանելով զինքն Աստուած. որ հաշի և մաշի ի վերին զօրութենէն. զոր տէր Յիսուս սատակեսցէ հոգւով բերանոյ իւրոյ։ Եւ յայնժամ կատարեալ վարուք առաքինութեամբ թռիցեն արդարքն ի յաւիտենից յարկսն և այնպէս յամենայն ժամ ընդ Տեառն լինիցին։ Եւ ապա յայտնապէս կատարի առ նոսա բանն Տեառն, որ ասէ, թէ «Ուր եմ ես՝ անդ և պաշտօնեայն իմ եղիցի»։ Եւ դու կնքեա՛ զտեսիլդ, որ ցուցաւ քեզ յայտնութիւն ի բարձանց. քանզի ոչ վրիպեսցի այտի բան մի՝ մինչև կատարեսցի ամենայն։

«Եւ ես որպէս ի քնոյ զարթուցեալ ի տեսլենէն, զոր եցոյց ինձ Բարձրեալն որպէս արթնութեամբ յայտնապէս, և ի զարմացման մեծի եղեալ՝ փառաւորեցի զմարդասէրն Աստուած, որ արժանի արար զանարժանութիւնս իմ այսպիսի ահաւոր տեսլեան։ Եւ լռեալ դադարեցի յայտնել զայս ումեք մինչև ցայսօր։ Եւ արդ պատմեցի ձեզ ոչ միայն

1 ԲԳՑ. ցուցանէ զուշակելով։ ՁԱՑ. զկատարելութիւն և զնահատակութիւն
2 ՁԱՑ. ծանուցանէր։ — Զ. զշաւղումն
2 ԲԳՑ. որպէս և զբազմափայլ
3 ՁԱՑ. մարդոյ
3 ԲԳՑ. բազում՝ են և անթիւ ճգնութիւն
4 ԲԳՑ. արդարոց և սրբոց
7 ՁԱՑ. ի յերկինս համբառնային
7 ԲԳՑ. բովանդակապէս քեզ
9 ԲԳՑ. փոփոխումն եցոյց պարգևատուն
10 ԲԳՑ. յաշխարհի կացին արդարքն անմեղութեամբ
10 ԲԳՑ. չդարձուցանելով և ոչ ուրեք
12 ԲԳՑ. երկնաւոր ուրախութեանն և եթ հայրին
13 Զ. բազումև խիստ թագաւոր դղորդմունք։ ՁԱՑ. բազում և խիստ թագաւորք դղորդմունք
15 Զ. նեղութիւնք՝ի փոխանակ ունի ընկղմութիւնք։ —«Հին օր. ընկղմութիւնք»։ (Ծան. ԲԳՑ.)
15 ԲԳՑ. զմտաւոր գալուստ
16 ԲԳՑ. ըստ գրեցելոյն
17 Զ. աստուածս
18 Զ. սատակեսցէ զնոսա
19 ԲԳՑ. թուչին
19 ՁԱՑ. արդարքն յաւիտենից
20 Զ. չիք կատարի
21 ԲԳՑ. բանն տէրունեան բարբառոյն
22 Յովհ. ԺԲ, 26
22 ԲԳՑ. ցուցաւ քեզ թուով յայտնութիւն
23 ՁԱՑ. չիք մի
24 ԲԳՑ. իբրև ի քնոյ
25 ՁԱՑ. որպէս և արթնութեամբ
27 ԲԳՑ. այսպիսի մեծ և ահաւոր տեսչութեան
27 ԲԳՑ. դադարեցի ի յայտնելոյ... մինչև ցայսօր ժամանակի։ ՁԱՑ. զայս յայտնել

առ նեղել սրտիս, այլ և թաքուցանել երկուցեալ. զի մի երբէք իբրև զլացող պատուհասեալ դատեցայց ի ցուցողէ յայտնութեանս այսորիկ. որ և գրով իսկ հրամայեաց ինձ զաւանդս զայս թողուլ աշխարհիս»։

ԺԸ. Եւ լուեալ զայս ամենայն խօսս բազմութեան աւագացն Հայոց, տանուտերացն և սեպհացն և միահամուռ ժողովրդոցն բազմութեան ի սուրբ հայրապետէն Սահակայ՝ յարտասուս հարեալ զարհուրեցան։ Եւ այնուհետև ոչ ոք ինչ իշխէր յաղագս այսպիսի բանից ասել ինչ ընդ սրբոյն և կամ ճառել։

Եւ յայնմ հետէ ամփոփեալ զինքն առաքինւոյն յամենայն աշխարհածուփ զբօսանաց՝ աղօթից միայն պարապէր և վարդապետութեան. վասն զի բազումք յեպիսկոպոսաց և յայլոց պատուական քահանայից ոչ երբէք ժուժէին տևել և մեկուսանալ. ի մշտաբուղխ աղբերէ վարդապետութեան սրբոյն, ուր ուրեք և դիպէր ի տեղիս, ի յօստանի և կամ ի հովս։ Եւ կեցեալ ամս բազումս և հասեալ ի յերկար ծերութիւն՝ վախճանեցաւ խաղաղական հանգստիւ ի գաւառին Բագրևանդայ, ի գիւղն որ անուանեալ կոչի Բլուր, ի սկզբան ամսին երկրորդի Ցաղկերտի որդւոյ Վռամայ թագաւորին Պարսից, յամսեանն Նաւասարդի, որ օր երեսուն էր ամսոյն, յերկրորդ ժամու աւուրն. որ և զօր ծննդեան սրբոյն ի ստոյգ գիտողաց, և ի Պատմութենէ երանելւոյ առն Կորեան՝ հաստատեալ գիտացաք լինել նոյն օր և ծննդեան սրբոյն, ի նմին ամսեան։

Եւ վասն զի ոչ գոյր իւր արու որդի, բայց միայն դուստր մի, զոր էր տուեալ կնութեան Համազասպայ տեառն Մամիկոնէից և Հայոց սպարապետի, որ ծնաւ ի Համազասպայ երիս արու որդիս, զսուրբն Վարդան և զսուրբն Հմայեակ և զերանելին Համազասպեան. որոց ետ և կնքեաց սուրբ այրն Աստուծոյ Սահակ զստացուածս գեօղից իւրոց և ագարակաց, և որ ինչ միանգամ էր իւր՝ ետ նոցա ի ժառանգութիւն և զաւակի նոցա մինչև ցյաւիտեան։ Եւ ամբարձեալ զձեռս իւր՝ օրհնեաց զնոսա օրհնութեամբ բազմաւ, և պատուիրեաց նոցա պահել զվարդապետութիւն պատուիրանի սրբոյն Գրիգորի, զոր ուսոյց և աւանդեաց ճշմարտութեամբ ամենայն աշխարհիս Հայոց, ծառայել և երկիր պագանել միումն միայնոյ ճշմարտին Աստուծոյ, Տեառն մերոյ և Փրկչին Յիսուսի Քրիստոսի։

Որոց առեալ զտենչալի նշխարս սրբոյն, բազմութեամբ քահանայից

1 Զ. մի՛ երբէք զլացող։ ԲԴՑ. չիք երբէք
2 Զ. դատարեցայց
2 ՋԱՑ. չիք այսորիկ
3 ՋԱՑ. հրամայեցաւ ինձ
4 ԲԴՑ. աւագանւոյն
6 ՋԱՑ. ունին. Եւ այնուհետև ոչ ոք (Զ. չիք ոք) իշխէր ինչ յաղագս այսպիսի բանից խօսել ընդնմա։ Այս վերնագիր. Մաշն սահակայ և մեսրոպայ։ Այս կրկնութեամբ. Եւ այնուհետև ոչ ոք ինչ իշխէր յաղագս այսպիսի բանից ևն
9 ՋԱՑ. առաքինոյն
11 ԲԴՑ. ի պատուական
11 ՋԱՑ. և ոչ երբէք։ ԲԴՑ. ոչ երբեք
12 ՁԲԴՑ. ի մշտաբուխ
12 ՋԱՑ. աղբերբ
12 Զ. վարդապետութենէ
13 ԲԴՑ. չիք ի տեղիս
13 ՋԱՑ. ի հովս
14 ԲԴՑ. և կացեալ
15 Զ. ի գիւղն
18 ՑՑ. յերրորդ ժամու։ Զ. այսպէս։ «Հինգ օր. մի յերկրորդ» (Տաճ. ԲԴՑ.)
19 Աց. գիտացողաց
19 ՑՑ. երանելւոյ
20 ՁՑՑ. գրեցաք լինել
20 ԲԴՑ. լինել և նոյն օր ծննդեան
20 Աց. չիք ի նմին ամսեան
21 Զ. չիք և
23 ՋԱՑ. արու երիս
26 ՋԱՑ. միանգամ իւր
33 Զ. սրբոցն
33 ՋԱՑ. բազմութեան

և ազատաց, տարան ի գաւառն Տարօնոյ, ի բնիկ գիւղն իւր սեպհական, յանուանեալն Աշտիշատ. և անդ կազմեալ զհանգստարանն սրբոյն՝ պատեցին զպարկեշտ մարմինն արդարոյն ըստ արժանի կայանից ճշմարտին։ Ուր և շինեալ եկեղեցի մեծապայծառ և վկայարան սրբոց՝ զարդարեցին պատուական և մեծագին սպասուք. հիմնացուցեալ կանգնեցին ի տեղւոջն վանս բազմութեան պաշտօնէից, կարգեալ դարման անպակաս պտղոց ի հանգիստ առաւելեալ եղբայրութեանն. ժողովս տարեորականս աշխարհայորդոր բազմութեամբ հաստատեցին ի տեղւոջն, որ ըստ ժամանակի բազմամբոխ ժողովրդօք կամաւոր յօժարութեամբ ազատք և քահանայք գաւառին, այլ և կարի յոյժ ի հեռաւոր տեղեաց դիմեալք յօր կարգադրութեան նորա կատարեն։ Որ և բազում օգնականութիւնս առողջութեան ըստ իւրաքանչիւր ախտից շահէին ի նշխարաց սրբոյն և ուրախալից սրտիւ դառնային ի բնակութիւն յիւրաքանչիւր։

ԺԹ. Եւ յետ վեց ամսոյ կատարման Նորին տարւոյ հանգստեան սրբոյն Սահակայ՝ վախճանեցաւ երանելին Մաշտոց ի Վաղարշապատ քաղաքի, զոր և Նոր քաղաք անուանեն, յերեքտասաներորդի աւուր ամսոյն մեհեկանի. զոր առեալ իշխանին Ամատունեաց Վահանայ զմարմին առաքինւոյն՝ տարաւ յիւր ի գեօղն, որ անուանեալ կոչի Օշական։ Եւ յոյժ մեծարանօք զդիր երանելւոյն կազմեալ՝ տօն յիշատակի առնեն ամենափոյթ պատուով ամենայն բազմութիւնք ժողովրդոցն Այրարատոյ։

Զորոյ զհետ յաջորդեաց զաթոռ հայրապետութեան աշխարհիս Հայոց, հրամանաւ երանելւոյն Մաշտոցի՝ սուրբն Յովսէփ, որ էր ի գաւառէն Վայոց ձորոյ, ի դեղջէն որում անունն էր Խողոցիմք։ Եւ ի բարեխօսութենէ սուրբ հանգուցելոցն արանց՝ շնորհեցաւ աշխարհիս Հայոց պաշտօն ուղղափառ հաւատոյ, մինչեւ ցամն երկոտասաներորդ Յազկերտի արքային Պարսից որդւոյ Վռամայ։

Վերջ բանիս այս։

---

1 Ձ. գեաւղն
1 ՑՑ. սեփհական
2 ԲԳՑ. հանգստարան
3 ՁԱՑ. կայենից
4 ՁԱՑ. որ և
4 ԲԳՑ. վկայարան սրբոյն
6 Ձ. վանս բազմութեան
6 ԲԳՑ. դարմանս
10 ԲԳՑ. յոյժ հեռաւոր
11 ԲԳՑ. նորա տօնեն
12 ԲԳՑ. շահին
12 Ձ. ի նշխարաց սրբոյն ուրախալից
13 ԲԳՑ. դառնային «Յօր. դառնային» (Ծան. ԲԳՑ.)
13 ԲԳՑ. ի բնակութիւնս իւրաքանչիւր
14 ՁԱՑ. տարոյ
15 ԲԳՑ. Մաշթոց
18 Ձ. առն առաքինւոյն… ի գեաւղն
20 Ձ. արայրատոյ
22 ՑՑ. այսեղ Մաշտոց
23 Ձ. Վայոյ
27 Ձ. օրհնեալ է աստուած։ Վերջք է բանիս այս

# ԴՐՈՒԱԳ Բ.

*Ի. Եւ էր Ցազկերտի արքայի հազարապետ մի Միհրներսեհ անուն, այր չարահնար և դժնամիտ. որոյ արկեալ ի միտս ի շատ ամաց դխորհուրդս անօրէնութեան, ի կործանումն և ի կորուստ թուլամիտ ազգաց. որում դտեալ օժանդակ չար և սադրիչ անօրէն թիւնաւոր բազմաժամանակեայ մտածութեան իւրում՝ այր մի ի տոհմէն Սիւնեաց, որոյ անունն էր Վարազվաղան. որով ըստ նմանութեան սատանայի, որ ի դրախտին օձիւն խաբեաց զնախաստեղծին հաղորդն՝ նոյնպէս և նա նովաւ զիւրոյ դառն կամացն վճարել ջանայր զհաճոյսն։ Եւ էր Վարազվաղանս այս փեսայացեալ իշխանին Սիւնեաց Վասակայ. որ և ըստ համբաւոյ ոմանց՝ ատելութեամբ մեծաւ ասէին զկեալն ընդ միմեանս զՎարաղվաղանայ և զդստեր իշխանին Սիւնեաց. յաղագս որոյ ծանր քինու հայէր հայր աղջկանն ընդ փեսային իւրում և հնարէր սպանմամբ խնդրել զվրէժս թշնամանաց դստերն իւրոյ, մինչև հալածեալ հանէր զնա յաշխարհէս Հայոց։*

*Եւ չարիմացին Վարազվաղանայ գիտացեալ զանհնարին ոխութիւնն Վասակայ, և զի ոչ կարէր հանդուրժել սաստիկ բռնութեան աներոյն, յաղագս հզօրապէս ճոխութեանն, որով վարէր ի ժամանակս իշխանութեան իւրոյ՝ փախուցեալ յերկիրն Պարսից առ Միհրներսեհ հազարապետն Արեաց անկանէր։ Եւ վաղվաղակի խորհուրդ դիւական ի միտս արկեալ՝ առաջնորդ կորստեան աշխարհիս լինէր, ճանաչելով ի նոյն խորհուրդ չարութեան յորդոր և զկամսն Միհրներսեհի. մտածութիւն անօրէն ի միաբանութիւն բանսարկուին ի մէջ առեալ՝ ուրանայր զճշմարտութիւնն և տարերց հաստատելոց յԱրարչէն ի սպասաւորութիւն մարդկան, արեգական և լուսնի՝ երկիր պագանէր. և ճեղքեալ ինքնակամ յօժարութեամբ ի սուրբ և յարդար քարոզութենէն կենաց, զոր նահատակն և առաքեալն Հայոց Գրիգորիոս բազում և մեծամեծ վիշտս կրելով՝ անձանձրոյթ աղօթիւք և անզրաւ խնդրուածովք զցայգ և զցերեկ վարդապետեալ սերմանեալ յամենայն ոգւ, արհամարհեալ մերժէր յինքենէ անօրէնն Վարազվաղան։ Եւ մտեալ ի տուն մոխրանոցին*

1 ՉԱց. չիք դրուագ Բ։ ԲԳց. դրուակ Բ
2 Բց. արքայ
3 Չ. ի միտս շատ ամաց
5 ՉԱց. օժընդակ
13 Չ. աղճկանն
14 ՉՑՑ. խնդրել զվրէժս ի թշնամեաց դստերն
15 Չ. չիք զնա
16 ՉՑՑ. ուրախութիւնն վասակայ
24 Չ. հաստատելոյ
28 Չ. խնդրուածօք
29 ՑՑ. զամենայն ոգի

զկրակն ասաց զօլ աստուած, և ուրացեալ յանքակ և ի միաւնական սուրբ Երրորդութենէն՝ եղև դեղագործ մահու և մատնուակ կորստեան ոգւոց, անօրինաւն Միհրներսեհիւ, ամենայն ակարամիտ անձանց։ Որում այնուհետև եղեալ վարդապետ՝ ուսուցանէր փութապէս ի տուէ և ի գիշերի դառն իշխանն Միհրներսեհ զպիղծ սեպուհն Սիւնեաց զՎարազվաղան, ասելով այսպէս, թէ «Հայեաց մտաց աչօքդ և տես թագաւորութիւն մի այսպիսի, որ ահաւոր է և ի վեր քան զամենայն թագաւորութիւնս, և սաստկութիւն առնեձիոյ և հրահանգի և կամ կազմութիւն զինու, որ սարսեալ դողացուցանէ զամենայն տեսողս և զլսողս, զհնազանդս և զանհնազանդս. ընդ նմին և զօրինացս յայտնապէս ըստ արժանի մեծ թագաւորութեանս զընտրողութիւն, զատոյգն և զվայելուչն։ Քանզի ո՞վ ոք ոչ տեսանէ յամենայն տիեզերս զարեգականն զփառաւորութիւնն, որոյ ճառագայթիւք լուսաւորին ամենայն եղեալք խօսնոց և անասնոց. և կամ զհրոյ օգտակարութիւն, որով կերակրին և վայելեն ամենայն բանաւորքս. և կամ տարերքս և քաղցրախառն օդոյ շնչմունք, որով բոյսք և սերմունք առոքացեալք և հասեալք ի կատարելութիւն՝ մատուցանեն մարդկան զկեալն բարի և զուրախանալն։ Արդ՝ թէպէտ և անհնազանդ են մեզ այնոքիկ, տեսանեն զայս ամենայն և ոչ իմանան, վասն զի ոչ ունին իբրև զմեզ մեծ իմաստս և խոհականութեան խրատս։ Եւ վասն զի չկարացեալ ճանաչել այնպիսեացն զաստուածս և ոչ զօգուտսն, որ յիւրաքանչիւր ումեքէ յաստուածոցն բաշխին ի մարդիկ՝ յայտնի է և ստուգապէս, թէ և աստուածոցն ցասուցեալ՝ չկամեցան զիւրեանց բարութիւնսն, որ ի միոյ միոյ որոշողութեամբ պարգևի յաշխարհս՝ ծանուցանել անմտացն։ Իսկ որք ընդ մերով մեծ իշխանութեամբս հնազանդեալ են ազգք և ընդ ձեռամբ այսպիսի ահեղ և սաստիկ կարգեալք են ընդ թագաւորութեամբ՝ կորնչին զյաւիտենական կորուստն, և մեք մեղադրեալք յաստուածոց՝ պատուհասիցիմք»։

Զորոյ անմիտ վարդապետութիւն զխորամանգ ուսուցչին Միհրներսեհի լուեալ խելացնոր աշակերտ նորա Վարազվաղան՝ չկարաց զգալ յապշութենէ սատանայազէն պղտորեալ մտացն, և առնել անդրէն պատասխանի անզգայեալ վարդապետին, թէ «Աստուած, որ ինքն յինքեան պակաս է և թերակատար, զի՞րդ կարէ տալ այնպիսին այլում զկատարելութեան խնդիրս։ Քանզի զգոյսն իւր ոք կարէ տալ խնդրողին. իսկ որ ինչ իւր ոչ գոյ ուրուք, այլ որպէս մասն ինչ ի բազում մասանց յումեքէ առեալ ունիցի յանձին՝ կարէ տալ յայնմ մասանէ զոր ինչ ունի. իսկ զոր ինքն ոչ ունի՝ յայտնի է թէ և այլում շնորհել զայն ոչ կարէ։ Վասն զի թէ տապացեալ ոք կարօտեսցի զովանալոյ, և մատուցեալ զայն խնդրեսցէ դարձեալ ի ջերմութենէ՝ չպատահէ խնդրոյն. այլ և խնդրողն յոյժ անմիտ ճանաչի յամենեցուն և արժանի ծաղու։ Քանզի և նոյն ինքն խնդրողն հաւաստեաւ գիտէ, թէ որ ինչ ինձ պիտի,

3 Ձ. ոգւոյց անօրինաւն Միհրներսեհի
5 Ձ. պեղծ
9 ՑՑ. լսողս
10 Ձ. յայտնապէսս
13 ԲԳՑ. և անխօսնոյ
20 ՁԱՑ. այսպիսեացն
20 ՑՑ. զօգուտն
27 ՑՑ. յաստուծոյ
29 Ձ. լուսանցում ունի Նորա
39 Ձ. ամենեցունն ԲԳՑ. յամենեցունց

յորմէ կամիմն խնդրել՝ նորա չիք, և ոչ տալ կարէ. և բազում Թախանձանօք և յերկար դեգերմամբ խնդրեսցէ յայնպիսւոյն՝ անմիտ է և լի է ապաշաւուԹեամբ. որպէս Թէ ի ջրոց ոք խնդրիցէ ցամաքուԹիւն, և ի հրոյ հայցիցէ ոք զիճուԹիւն, և կամ զարեգակն աղաչեսցէ ոք յաղագս զովացուցանելոյ, և կամ ի գիշերոյ պահանջեսցէ ոք լոյս։ Այլ զեդեալն ի նոսա յԱստուծոյ մասունս՝ կան և ունին, սահմանեալ զնոյն և մատակարարեալ ըստ իւրաքանչիւր մասին, հարկաւորին անդադար հատուցանել աշխարհի, ոչ իւրեանց կամաւ, այլ ըստ հրամանի Արարչին իւրեանց, որ էն Աստուած ճշմարիտ, արարիչ ամենայն լինելուԹեան ժամանակաց և տարերց, ջերմուԹեան և ցրտուԹեան, ցամաքուԹեան և խոնաւուԹեան, լուսոյ և խաւարի. և ունի յինքեան զամենայն բովանդակապէս. և որք խնդրեն ի նմանէ արժանաւորապէս՝ տայ և լնու զամենայն կատարելապէս ըստ իւրաքանչիւր ուրուք պիտոյից և կամաց»։

Զոր և իւր իսկ ուսեալ զայս ամենայն ի մանկուԹենէ իւրմէ անօրէնն Վարազվաղան՝ քաջ գիտէր. բայց ի նախանձ անօրէնուԹեան ընկղմեալ ընդ անեոյն՝ խորհէր ի միտս իւր այրն աստուածուրաց, սադրելով նմա դիւին, որ միացեալ ներկեալ էր ի սրտի նորա, Թէ «իմաստս այս իմ և ջանս և արարուած՝ երկուց իրաց առիԹ է ինձ բարւոյ. կամ հաւանի աշխարհն Հայոց և ուրանայ՝ մեծաց պարգևաց և պատուոյ արժանի լինիմ յԱրեաց, որպէս հաւատարիմ նախագիտ և օգտացոյց այսպիսի կարևոր և մեծ իրաց. և կամ չհաւանին յանձն առնուլ և ընդդիմանան, (և) չկարացեալ կալ առաջի այսպիսի մեծի ուժոյ՝ կորնչին ամենեւիմբ տամբք և կարասեաւ. կորնչի Թերևս և իմ Թշնամին յիրիս յայսմիկ։ Եւ ես Թէպէտ և ոչ միոյ այլ իմիք չհանդիպիմ բարւոյ՝ սակայն շատ իսկ է ինձ և բաւական լուրն և տես կորստեան Թշնամւոյ իմոյ քան զամենայն օգուտս և մեծուԹիւնս որ են յաշխարհի»։

Եւ զայս ամենայն չար իմացմունս անձին իւրում և զաւակի, իմացեալ Սիւնւոյ սեպհին անօրէնի և տարեալ ի գլուխ՝ չմոռացաւ և աստուածային տեսչուԹիւնն. այլ անտէն իսկ նախ ընկալեալ յարդար դատաստանէն Աստուծոյ զվճիռ հատուցման ըստ արժանի գործոց իւրոց. քանզի տեսիլ նշաւակի եղև ամենայն տոհմին իւրոյ և գաւառին մարդկան։ Վասն զի ի խորհրդակցէն, ի դիւէն իւրմէ, տանջեալ ամս բազումս առաջի ամենեցուն հանապազօր նշաւակօք, զգետնեալ փրփրէր անզգայուԹեամբ, և չկարացեալ ասել, Թէ մեղայ։ Վասն որոյ գտեալ դիւին ամենաԹափուր զայրն ի խնամոց մարդասիրին՝ յետոյ ապա սաստիկ և անհնարին խայտառականօք մինչ ի բազում ժամանակս չարալլուկ կտտանօք զարկուցեալ՝ հեղձոյց։ Որ և զմնացորդս ժահահոտ չարահամ խորտկին իւրոյ եԹող զաւակին իւրում, ըստ գրեցելումն ի վեշտասաներորդումն սաղմոսին. «Յագեցան կերակրօք, ասէ, — որ միւս ևս Թարգմանի՝ խոզենեաւ ասէ, — և Թողին զմնացուածս տղայոց իւրեանց»։ Եւ այսպէս նորա անտէն ընկալեալ զհատուցումն մեղաց իւրոց՝ պահի և

1 ԲԳՑ. և (Թէպէտ) բազում Թախանձանօք
10 ՑՑ. և ցամաքուԹեան
14 ՑՑ. չիք իսկ
14 Զ. ի մանկուԹենէ
22 ՁՑՑ. և ընդդիմանան, չկարացեալ
26 Զ. որ էն
35 ՑՑ. սաստիկ անհնարին
39 ՑՑ. Թարգմանիչ
40 Զ. Թողին զմնացուածս
40 Սաղմ. ԺԶ, 14

անշէջ գեհեննոյն ի տարտարոսին՝ մատնել յաւիտենից և անանց բոցոյն։ Յորոց ձեռն սկիզբն առեալ գայր տակաւ յերևումն՝ կանխաւ տեսութիւն մարգարէական սուրբ Նահատակին Գրիգորի տեսլեանն, որ երևեցաւ նմա յԱստուծոյ. աղբիւրն կենաց, յորում լուացեալ դասք սևագոյն այծեացն, ի սպիտակակիզն գոյն օդեաց դարձեալք՝ արեգակնանման լուսափայլեալք երևէին. յորոց կէսք ի լուացելոցն յետս դարձեալք ընդ կրունկն՝ անցանէին ընդ ջուրն, և փոխեալք ի նմանութենէ սպիտակացեալ գառանցն ի գոյն սևացեալ գայլոցն՝ յարձակէին ի վերայ գառանցն և արեան ճապաղիս հանէին։ Որոց նախ և առաջին յառաջատեսութեանն սրբոյն, ի դառնութենէ ի գայլութիւն փոփոխման՝ այն այր ի տոհմէն Սիւնեաց եղև պատճառ կորստեան բազմաց և կոտորածի աշխարհիս Հայոց։

ԻԱ. Եւ լուեալ զայս ամենայն բանս՝ անօրինին Միհրներսեհի և խնդալից եղեալ, քանզի եգիտ սատար մահաթոյն և գրգռիչ անօրէն իւրում չար մտածութեանն զայրն զդիւազգեաց զՎարազվաղան, մտեալ խնդալից առ Թագաւորն Յազկերտ՝ սկսաւ խօսել ընդ նմա առանձինն և ասէ. «Ոչ միայն զվայելչութենէ շահից, եթէ ո՛րպէս ի դէպ է տերանց օգտել ի ծառայից, զայն ևեթ հոգալ պարտ է տերանց, այլ և յաղագս գիտի ոգւոց արժան է զմտաւ ածել, որով ոգիք ծառայից մի՛ կորիցեն։ Վասն զի որպէս դու վասն քո շահիցն և հարկաց փոյթ յանձին ունիս զի օգտեսցիս՝ նոյնպէս և աստուածք զոգւոցն գիտս ջերմագոյն ևս գրեն և կամին տեսանել։ Եւ աստուածոցն արժանի առնել՝ չկարէ ոք ասել զպարգևս և զպատիւս, որ անպիտւոյն յաստուածոցն մթերեալ պահին. թող թէ որ ոք բազում ոգիս հնարի ի մոլորութենէ ի ճանապարհ ածել և *զանէծս անցուցանել ընդ արդարս.* փառք և շքեղութիւնք որ այնպիսեացն ոգւոցն ընձեռին յաստուածոցն՝ ոչ ոք կարէ բանիւ ասել զայն և պատմել և կամ ընդ գրով բովանդակել։ Արդ՝ քանի՞ աշխարհք են, որում դուք իշխէք աստուածաբար, և զոր սպանանել կամիք իշխէք և զորս կեցուցանել։ Եւ նախ առաջին՝ որպէս Հայոց մեծ աշխարհն պիտոյ է և օգտակար, և առ նմին Վրաց և Աղուանիցն. և միայն օգտիցն ևեթ հայիք, զոր ընդունիք յաշխարհացն. և որ մեծն է և կարևոր՝ յաղագս այնչափ կորուսեալ ոգւոց գիւտի՝ զայն բնաւ և զմտաւ իսկ չածէք և ոչ հոգայք. և զայս ոչ գիտէք, եթէ ընդ ամենայնի այնչափ անձինն համար տալոց էք աստուածոցն։ Զի եթէ հոգայք ընդ այնչափ ոգւոյ փրկութեան՝ գիտացէք, զի աւելի քան զաստի թագաւորութեանդ մեծութիւնդ զոր ունիք, ոգւոցն բարի և մեծութիւն որ լինէր անդ՝ շատ օգուտ էր ձեզ և պիտոյ։ 'Ես առաւել այլ օգուտս մեծամեծս և կարևոր իրս տեսանեմ յիրս յայս Արեաց աշխարհիս։ Վասն զի դուք ինքնին գիտէք և ամենայն Արիք՝ զաշխարհն Հայոց,

2 ՁԱց. երևումն
5 Չ. Քերուածի վրայ գրուած է սպիտակակիզն
5 Չ. լուսանցքում ունի տարբեր գրչով գոյն
7 ՏՏ. ընդ կրունկս
9 Չ. Ճապախս
10 Չ. և ի դառնութենէ,
17 ՏՏ. ի վայելչութենէ
21 Աց. գիւտք
22 Թերեւս եւ խնդրեն
26 Աց. յաստուածոցն
28 ՁԱց. աշխարհ են
29 ՏՏ. կամիք յիշէք
32 ՁԱց. գիւտի ոգւոց
34 ՁԱց. անձինս
37 ՁԱց. եւ առաւել

թէ որպէս մեծ է և պիտանի, և մօտ և սահմանակից է կայսեր իշխանութեանն, և զօրէնս և պաշտօն զնոյն ունի, զի կայսր զիշխանութիւն նոցա ունի։ Եւ եթէ և մերոց օրինաց ընտանեցուցանէք զնոսա, և ընդելնուն, և կարեն ճանաչել, եթէ ցայժմ մոլորեալք էին, և արդ ի ճանապարհ եկեսցեն՝ այնուհետև զձեզ սիրեն և զԱրեաց աշխարհս, և ի կայսերէ և յօրինաց նորա և յաշխարհէն մերժին և հեռանան ի բաց։ Եւ լինի այնուհետև աշխարհն ընդ մեր սերտ սիրով և միաբանութեամբ։ Եւ յորժամ Հայք սերտիւ մեր լինին՝ Վիրք և Աղուանք այնուհետև մեր իսկ են։ Եւ իմ թէպէտ և էր յառաջագոյն հոգացեալ զայսպիսի մեծ իրս և զմտաւ ածեալ ցուցանել ձեզ՝ առաւել.ևս հաստատեալ յառնէն, որ ի Սիւնեաց տոհմէն՝ գիտաց հեռանալ ի մոլար օրինացն զոր ցայժմն ունէր, և ընտրել զճշմարիտ և զհաստատուն օրէնս մեր, զոր կամաւ ևախորժելով յանձն էառ. զոր ի նմանէ աւելագոյն ծանեայ և հաստատեցի զօգուտ զհոգևոր և զմարմնաւոր, որ յիրացս յայսցանէ լինելոց է ձերում թագաւորութեանդ և առ հասարակ ամենայն Արեաց աշխարհիս։ Այլ և որ սերտ սիրով ետ զանձն իւր այրն և ընտրեաց զլաւն՝ արժան է դիպել երևելի փառաց և առաւելապէս պատուոյ քան զամենայն ընկերակիցս իւր և տոհմակիցս, որպէս զի տեսեալ տոհմին նորա և ամենայն Հայոց աւագանւոյն զմեծամեծ բարիս և զշքեղութիւն, որ ի ձէնջ ի վերայ նորա յայտնի լինի, ի նախանձ գրգռեալ և նոքա այսպիսի կենաց և բարւոյ հանդիպել՝ յօժարութեամբ յանձն առնուն զձեր հրաման, և մի զմիով ելևելեալք փութան կատարել զկամս ձեր։ Եւ եթէ այս այսպէս լինի՝ միշտ ի խաղաղութեան և յանհոգութեան կայ թագաւորութիւն Արեաց աշխարհիս. ապա թէ ոչ լինիցի այս այսպէս՝ կասկածեմ յառաջիկայսն, մի՛ գուցէ որում օրինացն են հաստատուն՝ նոցին և ծառայութիւն առնել ցանկան, և լինի ոչ փոքր կասկած Արեաց աշխարհիս յիրացն յայնցանէ»։

Եւ իբրև զայս ամենայն յարմարումն բանից լսէր Յազկերտ արքայն Պարսից ի չարախորհուրդ և ի դժնամիտ հազարապետէն իւրմէ Միհրներսեհէ, հաճեալ ընդ իմաստն և գովեալ՝ յայտնէր մոգուցն և այլ աւագանւոյն Արեաց զբանս ամենայն Միհրներսեհի։ Եւ ամենայն Արեաց առ հասարակ զարմացեալ և գովեալ զխրատն՝ վաղվաղակի կոչէր զմոգսըն, և գրեալ զօրէնս մոգութեանն՝ տայր բերել ի Հայս։ Եւ արարեալ հրովարտակս առ ամենայն Հայոց աւագանին և գրէր այսպէս.—

ԻԲ. «Թագաւորացն առաջնոց, որ նախ քան զիս իմ նախնիքն էին և զայս թագաւորական գահ ունէին, ոչ գիտեմ եթէ յաղագս այլ ինչ մեծ անպարապութեանց, և թէ չխորհելով զայսպիսի ծանր և կարևոր պէտս՝ չհոգացան իրացս։ Իսկ իմ զմտաւ ածեալ, ի մոգուցն և յայլ իմաստուն և յաւագ մարդկանէ Արեաց աշխարհիս տեղեկացեալ, թէ որ միանգամ ընդ իշխանութեամբ մերոյ թագաւորութեանս են, որպէս օտարք և այլ

2 Զ. Եւսի զի կայսեր իշխանութիւն, յետոյ ուղղած այսպ.
5 Զ. զարեաց զաշխարհս
8 Զ. Եւսի սերտիւ, յետոյ ուղղ. այսպ.
13 ԶԱ. յոր ի նմանէ
14 ՏՏ. զօգուտ հոգևոր
21 Զ. Եւսի հանդիպեալ, յետոյ ուղղ. հանդիպել
22 ՏՏ. մի զմիով ելեալք փութով կատարեն
40 Զ. Թագաւորութեամբըս

հպատակութեամբ վայելեմք ի նոցանէ՝ ևս առաւել պարտիմք ընդ փրկութիւն և ընդ գիւտ ամենեցուն հոգւոց հոգալ և գտանել. և եթէ յանկարծ ծուլացեալ գտանիմք յայսպիսի մեծ հոգողութենէ՝ տեղեկացաք յօրինաց մերոց, թէ ծանր պատուհաս կրելոց եմք յաստուածոցն։ Արդ՝ եթէ մեք պատուհասիմք վասն չբողոքելոյ ումեք ի ձէնջ՝ ձեզ առաւել աւելի ևս արժանի է երկնչել, թէ հեղգայք ինչ յիւրաքանչիւր հոգւոյ օգտէ, զի ի մէնջ պատուհասիք և յաստուածոց։ Վասն որոյ և զօրէնս մեր զստոյգ և զարդար գրեցաք և տուաք բերել առ ձեզ. և կամիմք, եթէ որպէս դուք օգտակար աշխարհի էք և մեր սիրելի՝ զմեր արդեօք զարդար և զկշիռ օրէնս ուսանիցիք և ունէիք, և չպաշտէիք զայնպիսի օրէնս, որ ամենեցուն մեզ յայտնի են, թէ սուտ են և անօգուտ։ Արդ՝ լուեալ ձեր զմեր հրամանսդ՝ կամաւ և սիրով յանձն առէք, և բնաւ ամենեւիմբ զմիտս ընդ այլ ինչ մի՛ տանիք։ Այլ և այս կամ եղև մեզ, զի և զկարծեցեալ զձեր օրէնսդ առ մեզ գրել հրամայեցաք ձեզ, եթէ որպէս կորուսեալ էիք մինչև ցայսօր։ Եւ յորժամ դուք իբրև զմեզ ճանաչողք ճշմարիտ մեր օրինացս լինիք՝ Վիրք և Աղուանք ըստ մեր և ձեր կամս չիշխեն ելանել»։

ԻԴ. Եւ ընկալեալ զայսպիսի հրովարտակ ամենայն Հայոց աւագանւոյն և ընթերցեալ զամենայն գրեալսն ի հրովարտակին, և զայն ևս իմացեալ, թէ զօրէնս անօրէնութեան իւրեանց գրով առաքէ առ նոսա, ծանուցեալ և զառ ի ծածուկ նետս թշնամւոյն, զոր ձգէր խորամանկութեամբ յանարատ հօտն Քրիստոսի՝ տրտմեալ առողջախոհուրդ ժողովուրդք սուրբ հօտին Քրիստոսի ի կոր կործանեցան, թէ ընդէ՞ր իսկ բնաւ այնպիսի դառն և լի թիւնօք ծնեալ ի նոցանէ ճառեցան իրքս։ «Մի՞ գուցէ, ասեն, աճեցեալ ի պակասամիտ և ի փառախնդիր անձինս թերահաւատ մարդոց, չարաչար ձգտեալ արմատս՝ կորնչիցին բազումք, վրիպեալք ի ճշմարիտ և յարդար հաւատոցն Քրիստոսի»։

Ժողովեցան այնուհետև ըստ հրամանի տանուտերացն Հայոց սուրբ եպիսկոպոսք ըստ կաւառաց աշխարհին Հայոց, և պատուական երիցունք և վանականք, որք են այսորիկ. *Եւ Յովսէփ, որ թէպէտ և երէց էր ըստ ձեռնադրութեան՝ այլ զկաթողիկոսութեան Հայոց զաթոռն ունէր ի ժամանակին. տէր Անանիա՝ Սիւնեաց եպիսկոպոս, տէր Մուշէ՝ Արծրունեաց եպիսկոպոս, տէր Սահակ՝ Տարօնոյ եպիսկոպոս, սուրբն Սահակ՝ Ռշտունեաց եպիսկոպոս, տէր Մելիտէ՝ Մանձկերտոյ եպիսկոպոս, տէր Եզնիկ՝ Բագրևանդեայ եպիսկոպոս, տէր Սուրմակ՝ Բզնունեաց եպիսկոպոս, տէր Թաթիկ՝ Բասենոյ եպիսկոպոս, տէր Երեմիա՝ Մարդաստանի եպիսկոպոս, տէր Գադ՝ Վանանդեայ եպիսկոպոս, տէր Բասիլ՝ Մոկաց եպիսկոպոս, տէր Եղբայր՝ Անձևացեաց եպիսկոպոս, տէր Տաճատ՝ Տայոց եպիսկոպոս, տէր Քասուն՝ Տայրերունոյ եպիսկոպոս, տէր Զաւէն՝ Մանա-

4 Աս. այսպէս եւ յեսոյ յաստուածոց
9 ՏՏ. աշխարհի էր
10 Զ. զարդարն զկշիռ Թեւնս զմեր արդ և զարդար...
11 Աս. օրէն
13 ՏՏ. կայ մեզ և մեզ։ Զ. կա մեզ և մեզ։ Աշալ. Ուղղեցինք ըստ Ն. Բ., Ք. ՊԱՏՎ., Գ. Տ.-Մ.
14 ՏՏ. զի զկարծեցեալ
14 Զ. գրել հրամայեցաք յորոց հրամայեցաք ձեզ եթէ
24 ԲԳս. ղառն լի
28 Աս. տանուտեարացն
30 ԲԳս. ուղղագրում են սուրբն յովսէփ
39 Զ. տէր զաւ

*նադւոյ եպիսկոպոս, տէր Եղիշէ՝ Ամատունեաց եպիսկոպոս, տէր Երեմիա՝ Ապահունեաց եպիսկոպոս։ Այսոքիկ ամենեքեան եպիսկոպոսքս. և ի պատուական երիցանց՝ սուրբն Ղևոնդ, և Խորէն ի Մբենեայ, և Դաւիթ, և այլ պատուական երիցունք, և աւագ վանականք բազումք, հանդերձ սքանչելի և հրեշտակակրօն ուխտամբն Աղանաւ, որ էր յազգէն Արծրունեաց։ Եւ որք ի նախարարացն էին ժողովեալք՝ տէրն Սիւնեաց Վասակ, և տէրն Արծրունեաց Ներշապուհ, Վրիւ Մաղխազ, տէրն Մամիկոնէից և սպարապետն Հայոց Վարդանն, տէրն Վահևունեաց Գիւտ, տէրն Մոկաց Արտակ, տէրն Անձևացեաց Շմաւոն, տէրն Ապահունեաց Մանէճ, տէրն Վանանդեայ Առաւան, տէրն Արշարունեաց Արշաւիր, տէրն Ամատունեաց Վահան, տէրն Գնունեաց Ատոմ, տէրն Պալունեաց Վարազշապուհ, տէրն Աշոցայ Հրահատ, տէրն Դիմաքսենից Հմայեակ, տէրն Արեղենից Գազրիկ, տէրն Առաւեղենից Փափագ, Վրէն Ջիւնական։ Այսոքիկ ամենեքեան աւագ տանուտեարք, հանդերձ աւագ սեպհօք և բարեպաշտ եպիսկոպոսօք և աւագ քահանայիւք և վանականօք, պատասխանի հրովարտակին գրէին առ Թագաւորն Ցազկերտ և առ ամենայն աւագանին դրանն այսպէս.—*

*ԽԴ. «Ի լուսաւոր և ի ճշմարիտ օրէնս մեր գրեալ է, որ ձեզ ընդունայնութիւն և բարբանջմունք թուին, թէ «Ծառայք, հնազանդ լերուք մարմնաւոր տերանց ձերոց՝ որպէս Աստուծոյ». և մեր ըստ կարի զօրութեան մերոյ երկուցեալ նախ ի հրամանէ օրինաց մերոց, և ապա ի ձեր ի մեծ թագաւորութենէդ, եդեալ ի մտի՝ ոչ միայն ըստ երկիւղի մարդկան, որպէս առ ականէ, ըստ օրինի չար ծառայից ծառայել ձեզ, այլ կամաւ իսկ և յօժարութեամբ՝ յամենայնի զձեր կամս և զհրաման կատարել. և ծառայել ձեզ ոչ միայն կարասւոյ ծախիւք, այլ և զարիւն անձանց մերոց և որդւոց ի վերայ ձեր դնել։ Բայց վասն հոգւոց մերոց գիւտի և կամ կորստեան՝ զձեզ ինչ ամենևին այդ հոգ մի՛ աշխատեսցէ։ Եւ վասն պարգևի և պատուհասի որ երկնչիքդ յաստուածոցդ յաղագս մերոյ ոգւոց, որպէս ասէքդ՝ ի մեր անձինս և յոգիս հասցէ յԱստուծոյ օգուտն այն և կամ պատիժ։ Բայց դուք զիրսդ ևեթ զայդ լռեալ ներեցէք մեզ. քանզի որպէս անհնար է մարդկային բնութեանց փոխել զերկնից տեսչութիւնն յայլ տեսութիւն՝ նոյնպէս և անհնար է՝ որ ի բնէ ուսեալ եմք և հաստատեալ յօրէնս յայս՝ անսալ այդպիսի հրամանի և հաւանել. զոր և լոկ բանիւք անգամ լսել ոչ կարեմք, քանզի և կամիմք իսկ ոչ։*

*«Այլ վասն օրինաց ձերոց, զոր գրեալ էր և տուեալ բերել առ մեզ՝ մեք ձեզ ոչ երբէք լսեմք։ Մինչ որ այդր լինիմք ի դրանն, *և կամ ի մոգուցդ, որ ձեր օրէնսուսոյցքդ իմն կոչին, այպն արարեալ արհամար-*

2 Չ. այսոք ամենեքեան եպիսկոպոս։ Այսոք'ի վերեւից աւելացրած են
3 Չ. և Խորէն Մբենեայ
5 Չ. որն (վրան պարիւ) ազանա որ
7 Չ. այսեւղ եւ յետոյ Ներշապուհ
10 Չ. տէրն արշակունեաց
12 Չ. տէրն աշոտայ
13 ՉԱշ. փապագ
14 Չ. այսոք
15 Չ. քահանայք
16 Չ. յուսանցք. պատասխանի Թղթին այսպէս
20 Կողոս Գ, 22
22 ՉԱշ. ի մեծի
26 ԲԳշ. չիք ձեր
28 ՉԶԶ. յաղագս մերոյ ոգւոց
37 Չ. մինչ'ի վերեւից գրած որ
38 ՉԱշ. օրէնուսոյցդ

*հեմք*. Թող թէ և գրոց ևս յօժարեցուցանէք զմեզ կարդալ և լսել, որ ինչ ոչ է մեզ պիտոյ և խնդիր։ Այլ յառաւել ևս պատուելոյ զԹագաւորութիւնդ ձեր՝ և բանալ անգամ զգրեալսդ և կամ տեսանել ոչ կամեցաք. զի զօրէնս, զոր ճանաչեմք եթէ սուտ են և անմիտ մարդոյ բարբանջմունք, զոր բազում անգամ մեր լուեալ է ի ձեր անուանեալ սուտ վարդապետացդ, և տեղեակ եմք իբրև զձեզ՝ զայն ոչ կարդալ պարտ է և ոչ լսել։ Վասն զի ընդ կարդալն՝ հարկիմք և ծաղր առնել, ուստի օրէնքն և օրէնսդիրքն և որք պաշտեն զայդպիսի խաբէութիւնս՝ ի միասին թշնամանին։ Ցաղագս որոյ և ոչ զմեր օրէնս գրել և տալ բերել առ ձեզ, ըստ հրամանիդ ձերոյ, ի դէպ և պատշաճ համարեցաք։ Զի եթէ զձեր սուտ և զարժանի ծաղու օրէնսդ չհամարեցաք արժանի կարդալոյ և մատուցանելոյ ի մեզ, զի մի՛ թշնամանեսցուք զձեզ, ծաղր առնելով զօրինօքդ, — զոր ըստ ձերում իսկ մեծի խրատոյդ պարտ էր զմտաւածել ի գրելն և ի տալ բերելն առ մեզ, — մեք զիա՞րդ զայսպիսի զաստուածասէր և զճշմարիտ օրէնսն գրիցեմք առ ձեր անգիտութիւնդ յայպանումն և ի թշնամանս։ Բայց այս ևեթ ձեզ ի հաւատոյս մերոյ յայտնի լիցի, զի տարերց ոչ ծառայեմք, արեգական և լուսնի, հողմոց և կրակի, որպէս դուքդ. և բազում աստուածոցդ, զոր անուանէքդ դուք ի յերկրի և ի յերկնի՝ պաշտօն ոչ մատուցանեմք։ Քանզի ուսաք և հաստատեալ ծառայեմք միումն միայնոյ ճշմարտին Աստուծոյ, որ արար զերկինս և զերկիր և զամենայն որ ինչ ի նոսա, և նա միայն է անուանելոցդ ի ձէնջ աստուածոցդ Աստուած և արարիչ, Թագաւոր Թագաւորաց և տէր տերանց. և նմա միայնոյ վայել է ամենայն բանաւորաց՝ մատուցանել երկրպագութիւն և պաշտօն»։

ԻԶ. Եւ գրեալ զայս ամենայն բանս ի նամակին սուրբ քահանայից ժողովոյն, և հանդերձ ամենայն նախարարօքն Հայոց ետուն տանել առ Թագաւորն Արեաց Յազկերտ։ Եւ նորա հրամայեալ կոչել զմոգսն և զամենայն աւագսն դրանն՝ ետ բանալ զնամակն զոր առաքեցին Հայք, և կարդալ առաջի ամենեցուն։ Եւ լուեալ զբանս նամակին Թագաւորն հանդերձ մոգօքն և ամենայն աւագանեաւ դրանն, և սրտմտութեամբ բարկութեան գրգռեալ՝ հարցանէր ցմոգսն և ցամենայն Արեաց աւագանին, թէ «Ձեզ զիա՞րդ թուի, ծառայից այդպիսի աներկիւղ համարձակութեամբ գրել առ իւրեանց տէրն»։ Իսկ դասք մոգուցն և ամենայն մեծամեծացն աւագանւոյն դրանն՝ յոտն կացեալ ասացին, թէ «Նոցա զկորուստն անձանց իւրեանց և աշխարհի գրեալ է առ ձեզ. բայց ձեզ թէ որպէս պարտ է ծանուցանել նոցա զձեր տէրութիւն և զնոցա ծառայութիւն՝ զայն դուք իշխէք»։ Առաւել ևս գրգռեալ զԹագաւորն և զամենայն աւագանին ասելով. «Եթէ ոչ ուստեք ունէին նոքա յայլուստ օգնականութեան յոյս՝ զայդպիսի բանդ ի միտս իսկ իւրեանց նկատել չիշխէին, թող թէ նամակաւ առ ձեր Թագաւորութիւնդ առաքել»։ Զայս չարախորհուրդն Միհրներսեհ ասէր։

3 ՑՑ. զգրեալըդ կամ տեսանել
18 Զ. որպէս և դուքդ
21 ՑՑ. զամենայն ինչ որ
31 Զ. յամենայն
32 ԶՑՑ. ի ծառայից
34 ԶՑՑ. զնոցա կորուստն
38 Զ. 22—38 տողերը պառաւնակող սիւնակի տակ ունի ծանօթ. ի Թղթէս էր պակաս, և ի յօրինակս այսպէս էր գրած

Եւ Թագաւորն Յազկերտ իբրև լուաւ զայս ամենայն ի մոգուցն և յամենայն դրան աւագանւոյն՝ սրտմտութեամբ զայրացեալ՝ հրաման ետ վաղվաղակի հրովարտակս առնել յաշխարհն Հայոց և Վրաց և Աղուանից։ Եւ հրամայէր գրել յերեսին հրովարտակն, զի ամենայն տանուտեարքն և աւագ սեպուհքն երեցունց աշխարհացն փութով և անխափան ի դուռն եկեսցեն. «և որ ոք, ասէ, ծուլացեալ յապաղեսցէ՝ առանց ամենայն թողութեանց մահու պատուհաս կրեսցէ»։ Եւ հասեալ հրովարտակս այս յերեսին յաշխարհսն, Հայոց, Վրաց և Աղուանից, և ընթերցեալ առաջի նոցա, իբրև լուան զայնպիսի ստիպով զկոչումն զամենեցունց՝ անդէն և անդ գիտացին զպատճառս իրացն, թէ չէ խաղաղութեամբ, այլ կորստեան ոգւոց է ստիպումն կոչմանս այսորիկ. տրտմեալք ազմկէին և յԱստուծոյ օգնականութիւնն ապաստանեալ ապաւինէին։

Պատգամաւորութիւն այնուհետև երեքին աշխարհքն առ միմեանս առնէին և ուխտադրութիւնս, և բազում երդմամբ Աւետարանին հաստատէին։ Խորհէին՝ զչերթալն որպէս ապստամբութիւն կարծեցուցանել, և զերթալն խռովեալք տարակուսէին. հաշուէին զերթալն լաւագոյն, և ելից իրացն զԱստուած կոչէին օգնական։ Բայց զիւրեանց զմիտս և զբանս և զխորհուրդս, միջնորդութեամբ սրբոյ Աւետարանին, անքակ և աներկևան առ միմեանս հաստատէին, թէ «Երթամք, այո, այլ ուրանալ զԱրարիչն երկնի և երկրի ոչ հաւանիմք։ Եւ այս կատարի մեզ յԱստուծոյ, յորժամ ցուցանեմք զմեզ Քրիստոսի մի մարմին և մի հոգի. յիշելով զսուրբ զառաքեալսն, զքարոզքն սուրբ եկեղեցւոյ, որոց էր սիրտ մի և ոգի մի. որոց բարեխօսութեամբ ուղղեսցէ զմեր պատասխանիս առաջի ահեզ Թագաւորին Փրկիչն մեր և Տէր Յիսուս Քրիստոս, և պահեսցէ զմեզ *յարձակմանէ չար գազանին, որ դիմեալ գայ ի վերայ մեր. քանզի ոչ երբէք Աստուած զմիաբանեալսն ի բարի կամս՝ եթող ի ձեռաց։ Իսկ եթէ ոք որոշեալ ճեղքեսցի յայս ուխտէս միաբանութեան՝ և Որդի մարդոյ, որպէս և ինքն իսկ ասէ, ուրացեալ ընկեսցէ զայնպիսին յերեսաց իւրոց առաջի Հօր և հրեշտակաց երկնից»։

Եւ այսպէս միաբանեալք ուխտիւք և երդմամբ երեքեան աշխարհքն, Հայք, Վիրք, Աղուանք, գնացին ի դուռն։

Եւ որք ի ժամուն ի մեծամեծ աւագանւոյն Հայոց յուղի անկեալ ճանապարհորդեցան՝ այսոքիկ են. ի տոհմէն Սիւնեաց Վասակ Սիւնեաց տէրն, որ և ի ժամուն մարզպանն էր Հայոց. և ի տոհմէն Արծրունեաց Ներշապուհ. ի տոհմէն Ռշտունեաց Արտակ. ի տոհմէն Խորխոռունեաց Գադիշոյ. ի տոհմէն Մամիկոնէից Վարդան, Հայոց սպարապետ և տէրն Մամիկոնէից. ի տոհմէն Մոկաց Արտակ. ի տոհմէն Ապահունեաց Մանէճ. ի տոհմէն Ամատունեաց Վահան. ի տոհմէն Վահեւունեաց Գիւտ. ի տոհմէն Անձևացեաց Շմաւոն։ Եւ յաշխարհէն Վրաց՝ բդեշխն Աշուշայ և այլ տանուտեարք աշխարհին։

1 Ձ. ազկերտ
5 Ա8. երեցունց
8 Ձ. աշխարհին։ Ա8. յաշխարհն
9 88. կոչումն
11 Ձ. կոչմանս այսորիկ
15 88. չերթալն
15 Ձ. *ապստամբութ
18 Ձ. սրբոց
26 ԲԳ8. միջ8 երբեք
29 Մատթ. Ժ, 33. Ղուկ. ԺԲ, 9
30 Ձ. ուխտիւ
35 88. ըռըշտունեաց
35 Ա8. խորխորունեաց
39 ՁԱ8. շմաւօն
39 Ձ. բդեշխն

ԻԶ. Եւ հասեալք ամենեքեան սոքա ի դուռն՝ յանդիման եղեն նախ մեծամեծացն դրան արքունի և ապա թագաւորին Յազկերտի։ Հրաման տուեալ արքային Պարսից Յազկերտի առ վաղիւն, որպէս զի ամենայն աւագանին դրանն հանդերձ երևելի մոգօքն առաջի նորա լիցին ի խորանին։ Եւ ասացեալքն ի թագաւորէն կատարէին առ վաղիւն։

Ապա հրամայէր զուղեկեալսն ի Հայոց, ի Վրաց և յԱղուանից զառաջեաւ ածել։ Եւ նախգոյն հարցեալ զՀայոց տանուտեարսն և ցեպուհսն՝ ասէր, եթէ «Նախ և առաջին կամիմ լսել ի ձէնջ, եթէ զի՞նչ համարեալ եմ ես ձեզ, և կամ թէ դուք ո՞րպէս կարծէք զձեր անձինս լինել մի»։ Եւ նոցա պատասխանի արարեալ միաբան ասացին, եթէ «Այդ հրամանիդ տեսութիւն և գիտելութիւն՝ և առանց պատասխանի լսելոյ ի մէնջ՝ յայտնի է ամենայն Արեաց և անարեաց»։ Եւ թագաւորն անդրէն երկրորդեալ ասաց, եթէ «Յայտնի և անծածուկ են այնոցիկ, որ ընդ իմով իշխանութեամբ են և հրամանի իմում ընդդիմանալ չիշխեն ամենևին. բայց ես ի ձէնջ կամիմ լսել, և զձեր ճանաչողութիւնդ կամիմ գիտել, եթէ զի՞նչ հաշուեալ կարծէք զիս. ասացէք ցիս»։ Եւ նոցա պատասխանի արարեալ ասացին, եթէ «Մեք զձեզ թագաւոր գիտեմք, որպէս ամենեցունց՝ առաւել ևս մեր. իշխանութիւն ունիս նման Աստուծոյ ի վերայ մեր և ամենայն մարդոյ որ է ի թագաւորութեան քում՝ սպանանել և կեցուցանել»։

Եւ Յազկերտի արքայի լուեալ ի նոցանէ և ամենայն դրանն աւագանւոյն զայսպիսի պատասխանիս՝ ասէ ցնոսա թագաւորն Յազկերտ. «Այդ պատասխանիք ձեր ի նամակէն, զոր եառուք բերել առ իս՝ շատ հեռի են և աննմանք։ Վասն զի ի նամակին յայտ արարեալ էր, եթէ է իւիք, որովք ծառայեմք քեզ և կամաց քոց և հրամանի չընդդիմացեալք հաւանիմք. և է ինչ, զոր ոչ քեզ պարտ է ասել և ո՛չ մեզ հնար է հնազանդել և յանձն առնուլ։ Արդ՝ ի մեր թագաւորութենէս և ամենայն Արեաց՝ ի ձէնջ նախ և առաջին կարևոր և պիտոյ խնդիր այդ է, և այդու ճանաչի մեր առ ձեզ տէրութիւն և խնամարկութիւն, և ձեր առ մեզ արդարամտութեամբ ծառայութիւն և հնազանդութիւն. զի զվաստակոյ և զօգտէ, որ մինչև ցայսօր ձեր առ մեզ թագաւորս և առ Արեաց աշխարհս ցուցեալ՝ գոհ եմք. և արդ կամիմ պատուով և մեծամեծ փառօք արձակել զձեզ յաշխարհն ձեր. միայն եթէ զայդ ես զիմ զկամս, որ վասն ձեր հոգւոյ փրկութեան հոգացայ՝ յանձն առնուք և դառնայք ի կորստեան ճանապարհէն, յորում ցայժմ իբրև զկոյր մի ի խաւարի շրջեալ էիք։ Ապա եթէ այլազգագոյն ինչ խորհիք, և արդարև յորում միտս և մոլար օրէնս ցայժմ կեցեալ էք և ի նմին յամառեալ պնդիք դուք, Հայք, Վիրք և Աղուանք՝ առ ոչինչ համարիմ զայնչափ ի ձէնջ օգուտս և զվաստակս, այլ կնաւ և որդւովք և ազգաւ կորուսանեմ ի միջոյ»։

4 Զ. ամենայն, լուսանցքում աւելացրած զ
6 Զ. զուղեկեալսն (ըն-ուածներով)
9 ՏՏ. ձեզ, կամ թէ դուք
9 ԲԳՏ. ուղղագրում են լենել եմ
11 Զ. Նախ հրամանեդ. յետոյ ուրիշ գրչով աւելացրած է — հրամանեդ
24 ՏՏ. եթէ, իւիք իւիք՝ որովք։ Զ. այսպէս, ըն-ուածներով
26 ՏՏ. չիք հնար է
33 ԱՏ. միայն թէ զայդ ես զիմ զկամս։ ԲԳՏ. միայն թէ զայդ ես զիմ կամս
39 ՏՏ. և վաստակս

Եւ լուեալ զայս ամենայն բանս, պատուոյ և խոստմանց և մահու սպառնալեաց, ի Թագաւորէն Պարսից Յազկերտէ երեցունց աշխարհաց ազատանւոյն՝ լռեցին առ վայր մի այլքն. բայց յառաջ կացեալ աներկիւղ և քաջասիրտ մտօք Վարդանայ Մամիկոնէից տեառն և Հայոց սպարապետի՝ պատասխանի ետ Թագաւորին Յազկերտի առաջի ամենայն բազմութեանն և ասէ, եթէ «Բազումք են յայս երից աշխարհաց յազատորերոյ, որք են աւագ քան զիս և գահու և աւուրբք, և շատ են, որ ի խոնարհ են։ Զվաստակ և զհպատակութիւն, զոր ծառայից պարտ է առ իւրեանց տեարսն և առ Թագաւորսն առնել՝ զայն նախ դու, որ ամենեցուն տէրդ ես, և ապա ամենայն Արիք, զիմ և զիւրաքանչիւր ի նոցանէ մինչև ցայժմ՝ քաջ դիտէք, և ոչ ինչ պիտոյ է ինձ և կամ ումեք ի սոցանէ զիւր զվաստակ և զսպաս ծանուցանել ձեզ։ Յայսմ հետէ և յառաջ ի մտի այսպէս եղեալ իմում անձինս, զի եթէ և գոյ հնար առնել զմի անձն իմ բազում անձինս, զոյժ և զյօժարութիւն կամաց առաւել ևս քան զնոյնս, զկեանս և զկարասի, որ գամ մի յիմում տանս կայ, ձեր առնելով, և ի վերայ Արեաց տեառն և ի վերայ Արեաց աշխարհի եղեալ է ի մտի մաշել։ Բայց զօրէնս, զոր ուսայ յԱստուծոյ ի մանկութենէ իմմէ, Թողուլ և ընդ երկիւղի մարդոյ փոխանակել՝ չէ հնար։ Զի եթէ ի մարդոյ ընկալեալ էր զարդար վարգապետութիւնն, զոր հաստատեալ է ի միտս իմ, գիտէի թէ ճշմարիտ են, և ուրանայի՝ ողորմելի զանձն համարէի. Թող թէ օրէնս, զոր ընկալայ և ուսայ ի բերանոյ Աստուծոյ՝ վաճառել ընդ երկիւղի մարդոյ և մնոտի փառաց. քա՛ւ լիցի։ Իմ պատասխանիք այդ են, յորում ցանկամ մեռանել, քան թէ կալ ուրացութեամբ առանց Աստուծոյ։ Իսկ այլքս, որ կան առաջի ձեր ամենեքեան, որ են ի քրիստոնէական կարգէ՝ բաւական է իւրաքանչիւր ոք ընդ անձին իւրոյ տալ պատասխանի»։

Եւ լուեալ այլ ազատանւոյն, որք էին յերից աշխարհաց, Հայոց, Վրաց և Աղուանից, զպատասխանիսն աներկիւղութեամբ զսպարապետին Հայոց Վարդանայ և զաստիկ սրտմտութիւն զտեսլեան Թագաւորին՝ ետուն պատասխանի և ասեն. «Ներեսցէ մեզ արքայ աւուրս ինչ խորհել ընդ միմեանս, և առնել ձեզ պատասխանիս հաստատապէս միաբանութեամբ. վասն զի յաղագս հոգւոց ընտրողութեան խնդրին ի մէնջ պատասխանիքդ, յորում կայ առաջի գիւտ և կամ կորուստ յաւիտենական։ Եւ ոչ է պարտ ստիպով և անքնին մտօք առաջի ձեր առնել այդպիսի մեծի խնդրոյ դարձուած բանից. քանզի ղնախնի և զսովորական հայրենի աւանդութեան մերոյ խնդրէք զքակտումն, և զյանձնառութիւն բռնադատէք օրինաց՝ որոց ոչ եմք եղեալ մեք և կամ հարք մեր ընդունողք և սիրողք»։ Եւ Թագաւորին ամենայն աւագանեաւն յանձն առեալ հաւանեցան բանիցն, և շնորհեալ նոցա զժամակալութեան խնդիրն՝ արձակեցին զատեանն։

2 ԱՑ. երկրցունց
5 Ձ. Նախ սպարապետի, յետոյ ա՛ն ֆեռուած
6 ՁԱՑ. այս երից
9 ՑՑ. առ Թագաւորն
12 ՑՑ. ի նոցանէ
18 Ձ. մարդւոյ
19 Ձ. զոր հաստատեալ ի միտս իմ
21 ՑՑ. զանձն իմ
27 Ձ. յ. գ. եք աշխարհէ։ ԱՑ. յերեք աշխարհէ
37 Ձ. մեք կամ հարք մեր

ԻԸ. Յայնժամ ի մի վայր ժողովեալ Նախարարացն ամենեցուն, որք էին յերեցունց աշխարհացն, Հայոց, Վրաց և Աղուանից, և տարակուսեալք յանձինս իւրեանց, խորհուրդ ի մէջ առեալ, թէ զի՞նչպիսի հնարիւք և մտածութեամբ ելս իրացն կարասցեն գտանել։ Եւ յածեցուցեալ զմիտս ի բազում յուզմունս խնդրոց զսակաւ աւուրս՝ յայս միտս առ վայր մի հաւանեցան և հաստատեցան, եթէ «այլ ոչ ինչ գոյ մեզ հնար զերծանել յորոգայթէս, զոր ձգեալ չար որսորդին սատանայի պաշարեաց զմեզ՝ բայց եթէ առ ժամ մի յանձն առնումք պատճառանօք զհրամայեալս նոցա. և երթեալ յիւրաքանչիւր յաշխարհ՝ այնուհետև կամ կեամք, ծառայելով ճշմարիտ հաւատոյն Քրիստոսի, յոր ծնաք աւազանին նորոգութեամբ ի ձեռն ամենասուրբ վարդապետութեան նահատակին Գրիգորի և նորին զաւակի, և կամ թողեալ զաշխարհ՝ գնամք իւրաքանչիւր յօտարութիւն կնաւ և որդւովք, ապաւինեալք և հաստատեալք ի բան կենարար Փրկչին, որ ասէ, թէ «Յորժամ հալածեսցեն զձեզ ի քաղաքէս յայսմանէ՝ փախիջիք ի միւսն»։ Ապա եթէ զանձանց միայն զփրկութիւն եղեալք ի մտի, ընդդիմանամք անօրէն հրամանաց իշխանին՝ անթիւ բազմութեան արանց և կանանց, ծերոց և տղայոց լինիմք պատճառ յաւիտենից կորստեանն. զորս խաղացուցեալ այսր՝ զընաւս ծառայեցուցանեն անօրէնութեանց պաշտամանց ազգաց յազգս»։

Արդ՝ թէպէտ և ածեալ ուրուք զմտաւ զայսպիսի որոշողութեամբ առանձինն, և զնոյնս դարձեալ խորհեալք միաբանութեամբ առ միմեանս զաւուրս սակաւս զցայգ և զցերեկ՝ սակայն ոչ իշխէին յայտնել զօրավարին Հայոց Վարդանայ տեառն Մամիկոնէից զմտածութիւն միաբանութեան իւրեանց. ճանաչելով ի միտս իւրեանց, թէ նմա ոչ է հնար յանձն առնուլ և հաւանել այսպիսի խորհրդոյ, ունելով անշարժ զհաւատ հոգւոյն իւրոյ ի վերայ հաստատնոյ վիմին Քրիստոսի։ Բայց սակայն զչյայտնելն նմա և չպատմել զայս ամենայն՝ չկարէին հանդուրժել. քանզի գիտէին, եթէ առանց նորա ամենայն խորհեալքն ի նոցանէ և պատճառագրութիւնք և արարուածք՝ թերիք են և անկատարք։ Զի թէպէտ և կարծէին լինել կարող, ըստ պատճառախնդիր խորհելոցն, զերծանել խաբէութեամբ և գողանալ զմիտս թագաւորին և զամենայն Արեաց հրապարակին, և դառնալ յիւրաքանչիւր յերկիր՝ սակայն գիտէին, թէ թերակատար և ոչ լիապէս լինի նոցա գործ խորհրդոյն և իրացն առաջարկութիւն։ Վասն զի տեսեալ էր ամենեցուն և լիով ի գրոց ճանաչէին, եթէ ամենայն իրք այնպիսի գործոյ ի բնէ յոլով Մամիկոնէիցն ազգաւ և նոցա միաբանութեամբ ելեալ էին ի գլուխ։

Որոց ածեալ զայս ամենայն զմտաւ Նախարարացն ամենեցուն և սեպհացն, որք էին ի դրանն ժողովեալք՝ միաբան եկին առ տէրն Մամիկոնէից և Հայոց զօրավարն Վարդան, և յայտնեալ նմա զխորհուրդն՝ պատմեցին զիւրեանց զիմաստս ամենայն և զոր խորհեալ էին առնել. յաւելեալ ի նոյնս թախանձումն և աղերս ամենեցունց՝ ասէին. «Հայեա՛ց,

9 ՏՏ. իւրաքանչիւր յաշխարհ
13 Չ. յիւրաքանչիւր յօտարութիւն

15 Մատթ. Ժ, 23
25 ԳՑ. զանշարժ
27 Աց. չյայտնելնս ԲԳՑ. ուղղագրել են չյայտնել

32 ՏՏ. երկիր
33 Չ. չիք թէ
40 ՏՏ. զամենայն
41 Չ. յաւելեալս

ասեն, ի մեզ անընդոստ մտօք. հայեաց, ասեն, և յառաջիկայ դիպմունս բազմութեան բիւրոց մարդկան պատահելոց չարաչար աղետից. յիշեա զհառաչանս մարց, զմտաւ ած զտղայոց ողբումն, զծերոց ստիպով և զպառաւանց վարելոց յօտարութիւն, և այլ ամենեցունց դիպելոց այսպիսի անհնարին և չար վշտաց։ Թէ լոկ միայն մարմնոյ աշխատութեամբ և մահուամբ էր կրել զայս ամենայն՝ համայն ծանր էր և դառն և արժանի լալոյ. թող թէ առ հասարակ առաջի հոգւոյ և մարմնոյ գայթակղութիւն և կորուստ։ Եւ ոչ եթէ լոկ հարևանցի լինի հասելոյ վտանգիս վախճան, այլ ցանկ մածեալ խաւար ամբարշտութեան՝ թանձրամածութեամբ ունելոց է զսուրբ եկեղեցիս մեր և զժողովուրդս, զկանայս և զծնունդս մինչև յաւիտեան։ Եւ եթէ դու միաբանելով մերում խորհրդոյս, կարասցես առ վայր մի հաւանեցուցանել զքո միտդ՝ դիտեմք զի ողորմութեան դիպիմք բազումքս, այլ և ոչ ընդհանուր եկեղեցիք երեցունց աշխարհացն մատնին յաւեր, և ոչ վար՚ն. ի գերութիւն բովանդակ աշխարհացն բնակիչք. զի ոչ շարժի սուրբ հաւատն ի հիմանէ, այլ թէ և առ վայր մի դղորդ հասանէ՝ կանգնէ հաստատ անդրէն և հաստատէ աջ Ամենակալին։ Եւ այս լինի հաստատ այսպէս, եթէ կարասցես վայր մի հիւանդանալ վասն մեր, որպէս զի ողջացուսցէ զմեզ քև հանդերձ ամենազթածն բժիշկ Բանն Աստուած»։

Եւ լուեալ զայս ամենայն բանս զօրավարին Հայոց Վարդանայ տեառն Մամիկոնէից ի նախարարացն Հայոց, Վրաց և Աղուանից՝ ամենևին ոչ առնու յանձն լսել և հաւանել այսպիսի բանից և կամ բնաւ հաղորդ լինել այսպիսի խորհրդոյ. այլ յոյժ խռովեալ մեծաձայն գոչմամբ ասէր ցամենեսեան, թէ «Մի՛ լիցի ինձ ստել Արարչին իմում՝ պատճառանօք և կամ ճշմարտութեամբ, և մի՛ ուրանալ զայն առաջի անօրէն և մահկանացու ազգի, որ ուրանայ զուրացողս իւր առաջի Հօր և հրեշտակաց սրբոց։ Քա՛ւ լիցի ինձ յաղագս զմտաւ ածելոյ զկարիս և զվիշտս զկնոջ և զորդւոց և զազգի՝ տալ ի մոռացումն զոր ասէն, թէ «Որ սիրէ զկին և զորդիս առաւել քան զիս՝ չէ ինձ արժանի»։ Այլ դուք, որ այժմ յերեցունց աշխարհաց եկեալդ էք տանուտեարք և սեպուհք, շնորհիւ ողորմութեամբն Քրիստոսի լի էք ամենայն զօրութեամբ և լաւութեամբ. զի ըստ ազատութեան արուեստի առաւելեալ էք ամենայն հրահանգիւ, և ճանաչիք երևելի ի մէջ սպայից և ի մէջ ամենայն ազգաց՝ ի մարտս և ի բոլոր կարգս քաջութեամբ. իսկ զճշմարիտ և զարդար հաւատն ուսեալ էք յԱստուծոյ ի ձեռն առաքելանման հօվուին սրբոյ Նահատակին Գրիգորի և Նորին զաւակի. բաւական էք ընդ իւրաքանչիւր անձին տալ պատասխանի, և որպէս խորհիք՝ կարիցէք արդեօք և առնել։ Այլ ինձ ոք ի ձէնջ՝ զոր ինչ անհնար է ինձ լսել բանիւք, թող թէ և առնել արդեամբք՝ մի՛ ասէք»։

2 88. աղէտից
4 2. և այս ամենեցունց
7 Թերեւս՝ առաջի կայ հոգւոյ եւն
13 2. ընթանուր
14 Ա8. այսեղ եւ յեօյ երկուց
16 2Ա8. հասանի
27 2. մտաւ ածելոյ
28 2. որ ասէն
29 Մատթ. Ժ, 37
33 2. ճանաչիք երևեալ սպայիս, յուսանցնում է մէջ։ Գ8. սպայից
34 88. և ի մարտս և ի կարգս քաջութեամբ
37 88. կարիցէք առնել։— 2. արդեամբք...

Եւ լուեալ զայս ամենայն զխօսս՝ բազմութեան Նախարարացն աշխարհացն երեցունց ի զօրավարէն Հայոց ի տեառնէն Մամիկոնէից Վարդանայ, թէպէտ և յանհնարին տրտմութիւն ընկղմեալք խռովէին՝ այլ սակայն ոչ ինչ թոյլ տուեալ լինէին ի բանիցն առաջարկելոցն, իմացեալ և առ կարիս վտանգին և այլ հնարս մաղթանաց։ Եւ ժողովեալք ի մի վայր՝ կոչէին առ ինքեանս զիշխանն Մոկաց զԱրտակ և զնա առաւել փութացուցանէին՝ անձանձրոյթ խանդաղատանօք նստել առանձինն և խօսել ընդ սպարապետին իւրեանց տեառն Մամիկոնէից տոհմին։ Եւ նա ինքն էր այր համեստ, մտացի և քաջ, և տէրն Մամիկոնէից Վարդան առաւելապէս պատուով սիրէր զԱրտակ։ Որ և հաւանեալ հրամանի Նախարարացն Հայոց՝ յանձն առնոյր ամենայորդոր փութով ջանալ ընդ նմա յաքաժամ և աղաչել, զոր և առնէր իշխանն Մոկաց Արտակ, մերթ առանձինն և մերթ հանդերձ աւագանեաւն Հայոց, ըստ յանձնառութեանն իւրոյ. որք ոչ դադարէին զցայգ և զցերեկ խօսել ընդ նմա զնոյն բանս և զաղերս ի բազում աւուրս։ Զորս և ստիպագոյնս և անհանգիստս ի նոյն խորհուրդս ճեպեցուցանէր զամենեսեան բդեշխն Վրաց Աշուշայ, որ էր այր խելացի և խորհրդական և ունէր կին յազգէն Արծրունեաց, զքենի մեծի սեպհին Մամիկոնէից, եղբօրն Վարդանայ. որ ևս առաւել յորդորէր յառաջագրեալն Աշուշայ զամենայն բազմութիւն Նախարարացն Հայոց և զտէրն Մոկաց զԱրտակ, խօսել ընդ զօրավարին Հայոց Վարդանայ զայս ամենայն առանց յապաղելոյ։ Եւ ինքն զնոյն խօսել ընդ նմա ոչ կասէր, անձանձրոյթ բողոքելով և ստէպ հայեցուցանելով յիրսն, թէ որչափ յանհաւանելն քո՝ կորուստ երեցունց աշխարհացն լինի, և ի հաւանելն և յանձն առնուլն՝ գիւտ բազմաց և անձին ապաշխարութեան ակնկալութիւն։

Եւ տեսեալ Նախարարացն և սեպհացն երեցունց աշխարհացն զկամս սպարապետին Հայոց Վարդանայ այնպէս անշարժս և անհաւանս ի յորդորմունս խօսից նոցա և աղաչանաց՝ բերեալ հարկաւորէին այնուհետև մատուցանել նմա և ի սուրբ Գրոց առակս դիպողս, ըստ պատշաճի հանդիպելոյ ի ժամանակին, որք տեղեկագոյնք էին ի նոսա գրոց սուրբ եկեղեցւոյ, յիշեցուցանելով նմա, որպէս առն ուսելոյ և տեղեկի,— քանզի յոյժ հմուտ էր և ընդել գրոց վարդապետութեան, ուսեալ և խրատեալ ի սուրբ հայրապետէն Սահակայ ի հաւոյն իւրմէ,— զգրեալսն սրբոյն Պօղոսի յաղագս Արարչին, թէ «Որ ոչն գիտէր զմեղս՝ վասն մեր մեղս արար»։ Եւ դարձեալ զինքեան իսկ Պօղոսի զիջանելն և նզով զանձն տենչացեալ լինել վասն ազգատոհմին փրկութեան, զոր գրեալ ասէր ի թղթի Հռոմայեցւոց, եթէ «Ուխտիւք խնդրէի ես իսկ ինքն նզովեալ լինել ի Քրիստոսէ վասն եղբարց իմոց և զաւակաց և ազգականաց ըստ մարմնոյ, որք են Իսրայէլացիք, որոց որդէգրութիւնն

2 Աց. և երեցունց
8 Զ. Նախ սպարապետին, յետոյ ա՛ն ճեռուած։ Այսպէս եւ յետոյ
12 ՑՑ. յաքաժամ աղաչել
16 ՑՑ. և անհանգիստ
18 ՁԱԲՑ. մեծի սեպհին Մամիկոնէից Վարդանայ։ Գց. ուղղագրեալ է այսպէս, ըստ վկայութեան ճեղինակին. (Տես գլ. ԿԲ)։ Թէրեւս ուղղելի է մեծի սեպհին Մամիկոնէից Հմայեկայ
29 ՑՑ. չիք և
33 ՑՑ. ի Սահակայ
34 ՑՑ. մեղս
35 Բ. Կորնթ. Ե, 21

և փառքն և կտկարանքն և օրէնսդրութիւնքն և պաշտօնն և աւետիքն»։ Ա՛ռ յանձն, ասեն, և դու լինել վասն մեր առակաւորս, նզովս. չես մեծ և առաւելեալ ի հաւատս արդարութեան քան զսուրբ առաքեալն Քրիստոսի Պօղոս. բայց ժողովուրդքն Հայոց, Վրաց և Աղուանից յոյժ շատ են և առաքինի քան զժողովուրդս խաչահանուացն Հրէից»։

Եւ յորժամ զայսպիսի բազում բանս և ստէպ թախանձանօք զաղաչանս դնէին առաջի զօրավարին Հայոց Վարդանայ երեցունց աշխարհաց աւագ տանուտեարքն և սեպուհքն՝ բերէին այնուհետև և զսուրբ Աւետարանն, եդեալ ամենեցունց առ հասարակ զձեռս ի վերայ՝ երդնուլին ասելով. «Եթէ դու եւեթ առ վայր մի կարասցես յանձն առնուլ պատճառանօք զասացեալս թագաւորին և զերծուսցես զմեզ յորոգայթադիր թշնամւոյն յարձակմանց՝ ամենայն ասացելոց ի քէն լուիցուք և արասցուք, դնելով զանձինս մեր ի վերայ ուխտին սրբութեան և հեղլով զարիւնս մեր ի վերայ ամենայն աշխարհին փրկութեան։ Եւ եթէ դիպեսցի մեզ թողուլ զաշխարհ և զամենայն ստացուածս և փախչել յօտարութիւն՝ ընտրեսցուք հանդերձ կանամբք և որդւովք, և սիրով յանձն առցուք զաղքատութիւն և զմուրողութիւն. միայն ի բարկութենէս եւեթ ապրեսցուք։ Եւ որ ոք թուլացեալ ի բանիցս յայսցանէ ստեսցէ ուխտիս այսմ, և նենգութեամբ որոշեսցի յերդմանէ սուրբ Աւետարանին և ի միաբանութենէ բազմութեանս այսորիկ՝ որոշեալ ճեղքեսցի և նա նման Յուդայի, որ ճեղքեալ մեկնեցաւ ի գնդէն սուրբ առաքելոցն. և բաժին այնպիսւոյն առանց ապաշխարութեան և թողութեան ընդ նմին լիցի մատնեալ անշէջ բոցոյն, զոր պատրաստեաց Աստուած սատանայի և արբանեկաց նորա։ Եւ որ ինչ վնասք և կամ գերութիւնք և դղրդմունք աշխարհաց երեցունց հասցեն՝ յանձնէ այնպիսւոյն և միաբանելոցն ընդ նմա խնդրեսցէ վրէժխնդիրն մինչև ցյաւիտեան։ Իսկ զբարի և զօգտակար պահպանութիւնն, զոր շնորհեալ Փրկչին Քրիստոսի պարգևեսցէ բազում ոգւոց երեցունց աշխարհացս, վասն քո առ վայր մի հաւանելոյդ մեզ՝ եղիցի յիշատակ ժառանգութիւնն այն ի փրկութիւն թողութեան ոգւոյ քո և ազգի մինչև ցյաւիտեան»։

Եւ լուեալ զայս ամենայն բանս ի բերանոյ երից աշխարհաց ազատանւոյն՝ զօրավարին Հայոց Վարդանայ տեառն Մամիկոնէից, տեսեալ և զկնքեալ ամենեցուն անհաւորապէս երդմամբ զսուրբ Աւետարան ուխտին, որոյ առաջի ուխտեցին և աւանդեցին կնքով՝ յարտասուս հարեալ յանձն առ առ վայր մի զպատճառանօք վիրաւորիլն վասն երեցունց աշխարհացն և բազմութեանց ի նոսա արանց և կանանց։

ԻԸ. Եւ այնպէս միաբանեալք ամենեքեան յանձն առնուլին կատարել խաբէութեամբ զհրաման թագաւորին, և երթեալք ի տուն մոխրանոցին՝ կէսքն ի նոսա ցուցանէին, այլ ոչ ամենեքեան, զպատճառանօք և ոչ ճշմարտութեամբ զխոնարհումն դլխոց իւրեանց սնոտի պաշտամանն։ Եւ ոմանք թէպէտ և գիտէին զանյարական գլորումն, այլ ցանկացեալք

1 Հւովմ. Թ, 3—4 | 8 Չ. տանուտերայն | 33 ՑՑ. զկնքել
5 ՑՑ. չիք և առաքինի | 14 Չ. չիք եԹէ | 35 ՉՑՑ. յանձն առ վայր մէ
5 ՑՑ. քան զժողովուրդն | 18 Չ. Թող՚ացեալ | 41 ՉԱց. ցանկացօղք

աշխարհիս փառաց՝ փոխանակէին զփառս անեղծին Աստուծոյ ընդ եղծանելի և անցաւոր կենաց աշխարհիս։

Եւ զայն տեսեալ Թագաւորին Պարսից և ամենայն մեծամեծաց դրանն և մոգուցն՝ նուէրս ազգի ազգի բազում խնդութեամբ մատուցանէին աստուածոց իւրեանց։ Ուրախ մեծ ուրախութեան առնէին յաւուրն յայնմիկ, հաշուելով այն օր լինել անշարժ հաստատութիւն թագաւորութեան իւրեանց, կեալ խաղաղութեամբ աներկիւղ այնուհետև յամենայն թշնամեաց։ Եւ պատուեալ զտանուտեարսն և զսեպուհսն զերեցունց աշխարհացն, զՀայոց, զՎրաց և զԱղուանից, ի հանդերձս թագաւորականս զարդարէին. այլ և բազում և այլ ազգի ազգի պարգեօք և պատուօք, գիւղօք և ագարակօք, ըստ իւրաքանչիւր ուրուք պիտոյից, լցուցանէին զամենեսեան. զորս և ի հրաժեշտի կացուցեալ՝ փութացուցանէին հասանել յիւրաքանչիւր յաշխարհս։ Տուեալ ընդ նոսա բազմութիւն սուտ վարդապետաց, զոր և մոգ անուանեն, յորդորէին ուսանել զուսմունս ծաղրելի շնչմանց և ընդունչսարկու քարթնջմանց խօսսն, որպէս զօձակոչսն և զորովայնախօսս. պատուէր տալին՝ յերեսին յաշխարհսն կարգել զխաբէութեան դպրոցս և ուսուցանել առ հասարակ զրնաւս, զարս և զկանայս, զուսմունս մոգուցն։

Որոց առեալ ի յանձն՝ զբազմութիւն մոգուցն տանել ընդ ինքեանս յօժարէին։ Երթեալք այնուհետև հրաժարեալք ի Թագաւորէն Յազկերտէ և ի մեծամեծ աւագանւոյն դրանն՝ գովութիւնս սուտս և շնորհակալութիւնս խաբէութեամբ իւրաքանչիւր ոք ի պատճառելոցն առ վայր մի ըստ իւրում զօրելոյ իմաստից մատուցանէին Թագաւորին և ամենայն աւագանւոյն Արեաց, մանաւանդ առաւելագոյն չարաթունին Միհրներսեհի։ Եւ էր պատճառ շնորհակալութեանն յամենեցունց մտաց այս, եթէ «Ամենայն Թագաւորք, որ յառաջ քան զձեզ էին ի գահուղ յայդմ, ձեր նախնիքն՝ սիրէին զմեզ, հոգալով զմեր շինութիւնս և զօգուտս մարմնաւորս. բայց դուք առաւել ցուցիք զսէրն որ էր առ մեզ, զի զյաւիտենական կենդանութիւնն մեր զմտաւ ածիք ծանուցանել մեզ և պարգևել։ Եւ եթէ նախնեացն քոց ծառայեցաք յամենայնի յօժարութեամբ և կամաւ յամենայն պէտս, յոր և հրամայէին մեզ. իսկ քեզ՝ ամենայն անձին պարտ է ոչ իբրև զմի անձն սպասս մատուցանել, այլ որպէս զբազում անձինս զմի անձն առնել և անձանձրոյթ հպատակել զցայգ և զցերեկ օգտախնդիր Թագաւորութեանդ. քանզի յաղագս զիւտի մոլորեալ ոգւոյս մերոյ փութալ հոգացար»։

Եւ սոքա իւրաքանչիւր անձին այսպիսի ինչ և ևս առաւել, ըստ իւրաքանչիւր կարի, ասացեալ գովութիւնս՝ լռեալ դադարէին։ Իսկ սպարապետն Հայոց Վարդան տէրն Մամիկոնէից կարգեալ զիւրն զառանց պատճառանաց զանսուտ բանս և զլինելոց իրս, որպէս ի դէմս գովութեան Թագաւորին և ամենայն բազմութեան աւագանւոյն Արեաց՝ ասէր այսպէս, թէ «Զիմոց զնախնեացն զհպատակութիւն և զվաստակ,

1 ՑՑ. փոխանակեցին
11 Չ. գեւղօք
12 Աթ. չիք և։—Չ. ի հրաժեշտէ
13 Աթ. յիւրաքանչիւր աշխարհս։ ԲԳթ. ... աշխարհ
21 Չ. գովութիւն
28 Չ. ցուցէք
29 Չ. ածէք
35 ՑՑ. փութով հոգացար
41 Չ. զիմոյ

զոր յայս դուրս և առ ձեր թագաւորութիւնդ արարեալ է, ի ժամանակէ յորմէ հետէ կարգեալ եմք ի ձեր ծառայութիւնդ՝ դուք ամենեքեան քաջագոյն գիտէք, և ինձ ոչ է պիտոյ յաղագս այդպիսի իրաց մի ըստ միոջէ տեղեկացուցանել զձեզ, զոր ստուգագոյն առաւել ճանաչէք քան զիս։ Իսկ թէպէտ և շատ նուազ եմ քան զիմ նախնիսն՝ սակայն որչափ կարն էր յիս՝ եղեալ էր ի մտի արդար վաստակօք հաճել զմիտս ձեր. և ուր հասեալ էի ի գործ ի ձեր հրամանէ՝ տեսեալ էր զօրագլխաց ձերոց և իմ ընկերաց ըստ իմ ուժոյ միամտութեամբ զիմ զգործն և զվաստակն։ Բայց արդ յայսմ հետէ այսպէս կամք են, ջանամ, զի թէ ցայժմ գործեալ ինչ իցէ, և ոչ արժանի անուան կամ գովութեան՝ յայսմ հետէ հնարիմ ամենայն զօրութեամբ և ուժով, օգնականութեամբն Աստուծոյ, գործել գործ այնպիսի, զոր ոչ միայն առաջի ձեր Արեաց, այլ և ի կայսեր դրանն և յայլ ազգս պատմեսցի համբաւն այն մինչև ցյաւիտեանս»։

Եւ զայս բանս որպէս ի շնորհէ Աստուծոյ սպարապետին Հայոց Վարդանայ տեառն Մամիկոնէից ասացեալ, զոր հռչակելոց էր զնահատակութիւնն որ առ Աստուած ի դարս յաւիտենից։ Եւ զայսպիսի ասացմունս լուեալ թագաւորին Պարսից և ամենայն աւագանւոյ դրանն՝ մեծաւ շնորհակալութեամբ զարմացեալք գովեցին զնա և գոհացան. քանզի ծածկեաց Աստուած զբան խոստմանցն, զոր ասաց գործել սպարապետն Հայոց Վարդան՝ յաղագս մեծի անուան համբաւոյ, զոր պարգևեաց նմա Աստուած զանուն նահատակութեան յազգս յաւիտենից։

Եւ հրաժարեալք այնուհետև յամենեցունց երեքեան աշխարհքն, Հայք, Վիրք և Աղուանք, առեալ ընդ ինքեանս զդասս բազմութեան մոգուց՝ դարձան յիւրաքանչիւր աշխարհս, հաստատեալ բազում անգամ և ի ճանապարհին զնոյն ուխտ երդման Աւետարանին սրբոյ։ Հրաժարեալք և ի միմեանց՝ գնացին յիւրաքանչիւր յաշխարհս, ազդ առնել միմեանց ի ժամանակի ըստ Աստուծոյ հրամանատրութեանն՝ զպէտս գործոցն, զոր խորհեցան կատարել։ Բայց զբդեշխն Վրաց զԱշուշայ և զերկու որդիս իշխանին Սիւնեաց Վասակայ, զԲաբիկ և զԱմիրներսեհ, ոչ արձակեաց թագաւորն Պարսից Յազկերտ ընդ այլ նախարարացն Հայոց. հայելով ի յառաջիկայ իրացն անյայտութիւն՝ կասկածեալ զգուշացաւ։

ԻԹ. Արդ՝ եկեալ հասանէին տանուտեարքն Հայոց հանդերձ սեպհօքն որ ընդ ինքեանս՝ յաշխարհս Հայոց, ողջք և ոչ ողջք, կենդանի կիսամեռք. որք ոչն տեսանէին ըստ յառաջ լուսաւոր եկիցն ողջամբ յայնպիսի հեռաւոր ճանապարհէ։ Եւ ելեալ ընդ առաջ նոցա դասք պաշտօնէիցն Քրիստոսի, բերելով ընդ ինքեանս զնշան կենսատու խաչին և զնշխարս սրբոյ առաքելանման նահատակին Գրիգորի, զձայն սաղմոսաց, զորս երգեաց մարգարէն Դաւիթ սուրբ Հոգւոյն շնորհիւ, որում և

4 Զ. ձեզ
10 Զ. յայսմ հնարիմ
14 ՑՑ. զայս բան
14 Զ. սպարապետին
15 ՁԱՑ վարդանայ ասա-ցեալ տեառն մամիկո-նէից
17 Զ. աւագայնոյ
22 Զ. ամենեցունց
23 Զ. ընդ ինքեան
26 ՑՑ. աշխարհս
29 Թերեւս ուղղելի զԱտր-ներսեհ
34 ՁԱՑ. որն և ընդ ին-քեանս։ ԲԳՑ. և որ ընդ ինքեանս
39 ՑՑ. զոր երգեաց

*ինքեանք երբեմն ձայնակից եղեալ՝ առաւելագոյն քան զպաշտօնեայսն նուագէին զերգս երկնաւոր ցնծալից ուրախութեամբ։ Այլ անդ էր լսել զձայնս լալոյ և զձայնս գուժի, զոչիւնս ողբոց և բարբառ ճչոյ. տղայք անձկոտք ի գրկաց հարց իւրեանց պակուցեալք փախչէին, կարծելով այլափոխեալս իմն, և ոչ զնոյնս նկատելով կերպարանս՝ զարհուրէին, ստէպ հայելով յերեսս մարցն, զորս տեսանէին կողկողագինս միշտ և արտօսրաբուղխս. յաղագս որոյ և ինքեանք յարտասուս հարեալ տղայքն՝ ոչ ոք կարէր լռեցուցանել ի դայեկացն կամ ի դաստիարակացն։ Ընդ որ հայեցեալ այնոցիկ, որք պատճառանօք և ոչ ճշմարտութեամբ ուրացողքն էին՝ փութանակի և առ ժամայն կամէին յառնել և ընդ ինքեանց սուրն ելանել. որոց ոչ պիտէր և առ վայր մի կեալն, քան թէ զայնպիսի տեսանել զաղէտս, և ժուժկալել. որք զկերակուրս ուրախութեան, ըստ բանի սաղմոսերգին, իբրև զմոխիր ուտէին, և զըմպելի իւրեանց արտասուօք խառնէին. քանզի ոչ ոք հաւանէր ընդ նոսա կամակից լինել սեղանոյ, ոչ կին, ոչ որդի, ոչ ազատ, ոչ ծառայ ոք և ոչ սպասաւորք։*

*Եւ էր այնուհետև տեսանել զամենեսեան քակտեալս ի միմեանց և պատառեալս. և զորոց քաղցր և ախորժակ բարբառ Փրկչին Քրիստոսի ասէր, թէ «Են և այլ ոչխարք, որ ոչ են յայսմ գաւթէ, պարտ է և զնոսա ածել այսր, զի եղիցին մի հօտ միոյ հովուի» ճշմարտի, զոր Աստուած միացոյց, և կատարէր զասացեալսն՝ յանկարծակի աքցոտեալ թշնամւոյն՝ ցրուեաց վեր ի վայր և արար իբրև զհօտ՝ որոյ ոչ գուցէ հովիւ։ Վասն ամենայնի այսորիկ սուգ առեալ կոծէին կանայք ււագ ազատացն և այրիք ի հրապարակս, մանկամարդ առնականայք և օրիորդք ի սրահս դռնափակեալս, հարսունք ի սենեակս։ Սուրբ եպիսկոպոսք, պատուական քահանայիւք և եկեղեցական ուխտիւ, ծերովք և տղայովք և ամենայն ժողովրդոցն բազմութեամբ՝ կառաչ բարձեալ լային ի տանն Աստուծոյ։ Եւ էր տեսանել ծեփեալ արեանց հոսմամբք զամենայն դէմս ուղղափառ մարդոց։*

*Իսկ մոգուցն գունդք ստիպով բռնադատէին տանել զկրակս ի տաճար սրբութեանց Տեառն, և յայլ յականաւոր և ի գեղեցիկ տեղիս շինել ատրուշանս, և կարգել բեռնակիրս փայտակրաց ի պէտս կիզման չաստուածոյն անյագի. որոյ յուտելն յանզգայս՝ ոչ ինչ շնորհ ունի պաշտօնէիցն, և ի կրել արտաքս զաւելորդ թրքածս մոխրոցացն՝ ձանձրացուցանէ զգազախադէմ զկրողսն պակշոտեալս։*

*Լ. Եւ արդ՝ տեսեալ զայս ամենայն չարիս տեառն Մամիկոնէից և Հայոց սպարապետին Վարդանայ, կոչեալ առ ինքն զամենայն ընտանիս իւր, զեղբարս և զաղատս և զծառայս և զամենայն միահամուռ զբազ-*

1 ՅՅ. եղեալք
3 ՅՅ. զձայն լալոյ
6 ՅՅ. կողկողագէն
7 Չ. արտօսրաբուխս
13 Սաղմ. ՃԱ, 10
17 2ՅՅ. քրիստոսի որ ասէր
18 Չ. գաւթի
18 ՉԱ. զնոքա
19 Յովհ. Ժ, 16
20 Կամ թերեւս օցտեալ (ԱՒՑՏԵԱԼ)։ Չ. աքցոտեալ ճիրուածներով
21 Չ. որոց
23 ՅՅ. առնականայք, օրի-որդք
24 Չ. ի սենեակս
27 Չ. տեսեալ
30 ՅՅ. յայլ ականաւոր և գեղեցիկ
32 ՅՅ. չաստուծոյն։ Չ. չաստուածոյն
32 Չ. անզգայս
36 ՅՅ. չիք զամենայն ընտանիս իւր, զեղբարս և զաղատս և զծառայս և

*մութիւն դրանն իւրոյ՝ սկսաւ խօսել ընդ նոսա և ասել. «Ես ոչ ուրացայ զԱրարիչն իմ և զտէր Յիսուս Քրիստոս՝ կամաւ և կամ առ երկիւղի. քաւ լիցի. և ոչ զվարդապետութիւն և զհաւատս սրբոյ Աւետարանին, զոր ուսոյց և հաստատեաց յիս ճշմարիտ հաւն իմ տէր Սահակ, մերժեցի յինէն. այլ առ վայր մի մինչև ի ժամս յայս յաղագս ձեր ամենեցուն գիւտի կորեայ պատճառանօք, զի գտեալ զիս ձեօք հանդերձ՝ ապաշխարեցից և կեցից։ Վասն զի ուսեալ եմ և յիշեմ զքարոզութիւն սուրբ մարգարէիցն, թէ «Ոչ կամիմ զմահ մեղաւորին, այլ զդառնալ նորա և զկեալն», և զոր ի միւսում վայրի սուրբ Հոգին ասէ, թէ «Յորժամ դարձցիս և հեծեսցես՝ յայնժամ կեցցես»։ Արդ՝ փոխանակ զի թողի զնա պատճառանօք առ վայր մի վասն ձեր՝ կամիմ ստուգութեամբ փոխանակ այնր թողուլ զամենայն ինչ իրս կենցաղոյս այսորիկ մինչև ի սպառ։ Եւ որ ոք ի ձէնջ կամակից կարող էք լինել, արհամարհելով զամենայն սնոտի կեանս աշխարհիս, յանձն առեալ ձեօք հանդերձ վասն անուան Քրիստոսի՝ ընտրեմ գնալ յօտարութիւն»։*

*Եւ նորա խօսեցեալ զամենայն այսպէս ընդ ընտանիս տանն իւրոյ՝ պատասխանի ետ նմա երանելի եղբայրն Հմայեակ և ասէ. «Փութա՛ կատարել զոր խորհիդ, և մի՛ յապաղեր. քանզի ոչ ոք կարէ լինել երաշխաւոր անձին իւրում և ոչ ժամ մի։ Աստուծով եթէ կեցցուք՝ և առանց խղճի մտաց վախճանի աւուրն դիպեսցուք, գամ մի չկարացեալք վաղ և կամ անագան զերծանել ի մահուանէ. թէ՛ մուրողութեամբ իցէ և թէ օտարութեամբ՝ նովաւ ևեթ կեցցուք և անուամբ նորա պարծեսցուք զօրհանապազ։ Զուրացութեանն ևեթ զանունն ի բաց ընկեսցուք ի մէնջ, և խառնեալ ի հօտն Քրիստոսի՝ կամաւ յանձն առցուք զամենայն վիշտս՝ որ և հասանէ ի վերայ մեր, եթէ սով, եթէ սուր, և կամ թէ յօտարութեան՝ մուրողութիւն և վախճան»։*

*Եւ այսպէս միաբանութեամբ արհամարհեալ զամենայն սնոտի մեծութիւն կենցաղոյս այսորիկ՝ առ ոչինչ համարեցան. այլ հանդերձ հաւանելովք ընդ ինքեանս դրամբ և ընտանեօք դէմ եդեալ անցանել ի կողմանս իշխանութեանն Յունաց ճեպէին, ուր և թագուցանել միաբանութեամբ և կամ աստ անդր ցրուել զանձինս կարասցեն։ Եւ եկեալ հասանէին ի գիւղ մի, որոյ անունն էր Արամանայ, ի նահանգին Բագրաւանդայ, մերձակայ սահմանակից Բասենոյ և *Տուարածատափու. ուր և սակաւ ինչ աւուրս կամեցեալ հանգչել, և զուշ եդեալ ճանապարհն գնալ պատրաստէին ստիպով։*

*Յանկարծակի իրազգած եղեալ այսպիսի խորհրդոյ և գնացից յաշխարհէս Հայոց՝ զմեծէ սպարապետէն Հայոց, զտեառնէն Մամիկոնէից Վարդանայ, հանդերձ եղբարբք իւրովք, դրամբ և ամենայն *ախիւ՝ իշխանին Սիւնեաց Վասակայ, որ և մարզպան էր Հայոց ի ժամանակին,*

9 Եզեկ. ԺԸ, 23
10 Ես. Լ, 15
19 ՁԱՑ. աստուծով է թէ Այսպ. ըստ ուղղագր. ԲԳՑ. (աստուծով՝ եթէ կեցցուք,)
29 ՁԱՑ. հաւանելով
29 ՑՑ. անցեալ
31 ՑՑ. աստ անդ։ Զ. աստ անդր
31 Զ. ցրուելով
32 Զ. այսերդ եւ յետոյ ի գեաւղ
33 ՑՑ. տուարածատափոյ
33 ՁԱՑ. որ և
37 Կամ ըստ Զ. զտեառնէն

և ամենայն տանուտերացն Հայոց և սեպհացն՝ խորտակեալ սրտիւ զարհուրէին. զմտաւ ածեալ ամենեցուն, որք ի փրկութիւն անձանց իւրեանց ի խնդիր էին, թէ արդ գիտեմք, զի կորեաք ի սպառ, և ոչ է հնար մեզ զերծանել ի չարէս յայսմանէ մինչև ի սպառ։ Քանզի տեղեկացեալ ճանաչէին ամենեքեան, թէ առանց առաջնորդութեան ազգին այնորիկ և ոչ մի ինչ իրք և գործք աշխարհիս Հայոց երթեալ էին ի գլուխ։ Խորհուրդ ի մէջ առեալ իշխանին Սիւնեաց Վասակայ հանդերձ ամենայն տանուտերամբք Հայոց և աւագ սեպհօք, և զմիտս ամենեցուն յիւր կամսն հաւանեցուցանէր, ասելով թէ «Պարտ է փութով զհետ զօրավարին Հայոց Վարդանայ Մամիկոնէի քահանայս առաքել ընտիրս և արս աւագս ի տանուտերացս Հայոց, և աղաչանօք դարձուցանել զնա այսրէն. զի առանց նորա մեր այս ամենայն կամք և խորհուրդք և ոչ մի ինչ վճարին»։

Եւ արարեալ նամակ իշխանին Սիւնեաց Վասակայ իւրով մատանեաւ՝ հրամայէր նամականի առնել և այլ ամենայն աւագ տանուտերացն Հայոց, և կնքեալ զնամականին իւրաքանչիւր ուրուք մատանեաւ՝ տայր բերել և զկնքեալ Աւետարանն ուխտին. և արս պատուականս յայտ արարեալ ի քահանայից, զերանելին Ղեւոնդ երէց, և զերանելի երէցն զԵրեմիա ի Նոր քաղաքէ, և զերանելի երէցն Խորէն ի Մրենոյ, և արս աւագս ի տանուտերացն Հայոց, զիշխանն Արշարունեաց Արշաւիր, զիշխանն Դիմաքսենից զՀմայեակ և զիշխանն Աբեղենից զԳազրիկ. և տուեալ ցնոսա իշխանին Սիւնեաց Վասակայ զամենայն նամականին և զԱւետարանն երդման՝ դեսպանս արձակէր զկնի նորա։ Որք հասեալ գտանէին զնա և որք ընդ նմայն էին՝ յառաջագրեալ գեօղն Արամանայ։

Եւ ազդ արարեալ՝ մտանէին զառաջեաւ, պատմէին երանելւոյն Վարդանայ տեառն Մամիկոնէից և Հայոց սպարապետին և առաջի եղբարցն իւրոց Հմայեկայ և Համազասպայ զպատճառս իւրեանց փութանակի հասանելոյն առ նոսա, զխորհուրդն և զխօսս հանդերձ երդմամբ որ եղեն ամենայն Հայոց՝ միաբանութեամբ իշխանին Սիւնեաց Վասակայ. յառաջ բերեալ և զԱւետարանն երդման՝ ունէին առաջի երանելւոյն Վարդանայ և եղբարց նորա։ Տային ի ձեռս նորա և զնամակն Վասակայ զտեառն Սիւնեաց և զայլոց ազատացն Հայոց, և զեպիսկոպոսացն և զսեպհացն, և պատգամ կարճառօտիւ ամենեցուն բան, և ասէին ցերանելին, թէ «Դու աւադիկ հանդերձ եղբարբքդ և հաւանեալ ընտանեօքդ, որք հոգացեալ են ապրեցուցանել ընդ քեզ զինքեանս՝ անձնապուրք լինիք. բայց մեք ամենեքեան կորնչիմք զանվախճան կորուստն։ Վասն զի ոչ է հնար մեզ առանց ձեր, և ոչ զաւակի մերում՝ երբէք պատահել փրկութեան և կեալ։ Բայց որպէս հոգացեալ խնամ տարէք ձեզ՝ նոյնպէս և զայսչափ ղբազմութեան ոգիս մի՛ թողուք կորնչել. քանզի եմք աստ բազումք, որք և ազգախառն և արիւն ձեր եմք. պսակեցարո՛ւք և ընդ մեզ ի Քրիստոսէ, որպէս ցանկացեալ ջանայք ընդ ձեր միայն պսակիլն»։

Եւ զայս ամենայն բանս լուեալ ի քահանայիցն և ի նախարար պատգամաւորացն եկելոց՝ սուրբ սպարապետին Հայոց տեառն Մամի-

1 Աs. տանուտերանցն
3 ՑՑ. իւրեանց խնդրէին
15 Աs. նամականին
17 ՁԱs. այսեղ եւ յեսոյ երէց
27 Աs. զխորհուրդն զխօսս
32 Ձ. կարճառօտի
33 ՑՑ. աւասիկ

կոնէից Վարդանայ հանդերձ երանելի եղբարբքն իւրովք, եւ զսուրբ Աւետարան ուխտին տեսեալ, և զնամականին կարդացեալ ղիշխանին Սիւնեաց Վասակայ զմարզպանին Հայոց և զայլոց զիւրաքանչիւր ուրուք զընկերակցացն՝ պատասխանի ետ միաբանութեամբ ամենեցուն և ասէ. «Ես և եղբարք իմ և ընտանիք կարևոր ընտրելագոյն քան զամենայն ինչ որ է յաշխարհի՝ հաստատեալ եմք ընտրել և գտանել զօգուտն փրկութեան գիւտ, և ուսեալ եմք հաստատուն և զանշարժ բանն, որ ասէ,— յոր և հաւատացեալ եմք անշարժութեամբ,— թէ «Զի՞նչ օգուտ է մարդոյ, թէ զաշխարհ ամենայն շահեսցի, և զանձն իւր կորուսցէ. և կամ զի՞նչ տացէ մարդ փրկանս ընդ անձին իւրոյ»։ Եւ ոչ զմեր եւեթ զօգուտ խնդրեմք զօգուտն, այլ և ընդ այլոցն խնդամք ընդ փրկութիւն։ Եւ ոչ՝ որ փախուցեալս եմք՝ յերկիւղէ ոք ինչ սրոյ կարծիցէ զայս զմէնջ, յորմէ ոչ ոք երբէք զանգիտեալ յազգիս մերում, և ոչ երբէք. և թէ որպէս ի վերայ ընկերի բարւոյ առաւել քան յանձին միշտ հոգալով զանձն եդեալ է այսմ տոհմի՝ զայն և ամենայն դուք, Հայք, գիտէք ստուգութեամբ ի պատմութենէ գրոց և ի լսելոյ ձեր յաւագաց։ Բայց ի նենգաւոր խաբէութենէ ձերմէ, զոր արարեալ է ձեր ընդ նախնիսն մեր հանապազ՝ զայն ամենայն յիշելով գնացեալ եմք լինել անձնապուրծք. որպէս ցանկ ձեր մղեալ է զմեզ ի նեղ, և զձեր անձինս ի բաց ունելով՝ մեր միայն ազգս պատահեալ է վշտաց մեծաց և մահուց։ Բայց սուրբ և երկնաւոր հրաւիրակիդ Աւետարանի ոչ կացեալ ոք է ընդդէմ ի մեր ազգէս, և ոչ մեք կամք. քա՛ւ լիցի։ Դուք թէ միամտութեամբ վարիք և կամ երկմտութեամբ՝ դուք գիտէք և սուրբ Աւետարանդ, որ ճանաչէ զամենայն և դատի ըստ իւրաքանչիւր գործոցն»։

ԼԱ. Եւ զայս ասացեալ սրբոյ առնն Վարդանայ տեառն Մամիկոնէից և Հայոց սպարապետի՝ կամակցութեամբ երանելի եղբարցն իւրոց և սիրելեաց դարձան անդրէն առ ընկերսն իւրեանց ի բանակն Հայոց։ Եւ եկեալք ի միաբանութիւն բազմութեանն՝ ոչ առնէին դուլ և դադար խորհուրդք սրբոյ սպարապետին Հայոց Վարդանայ՝ լոկ միայն առտնին կատարել քահանայիւք և այլ բազմութեանն պաշտօնէիւք դրանն իւրոյ զպաշտօն կարգեալ ժամուցն, զոր զցայգ և զցերեկ բազում փութով վճարէին անյապաղ. այլ միաբանութեամբ ամենայն Հայովք երթալ յեկեղեցի ցանկայր։ Բայց թէպէտ և նեղէր չերթալով, այլ և կամաւ արգելեալ՝ առ վայր մի համբերէր իրացն, հոգալով և զպէտս ընկերացն, որպէս իւրոյ տանն և անձին. մանաւանդ յաղագս Աշուշայի Վրաց բդեշխի և որդւոց իշխանին Սիւնեաց Վասակայ, զորս արգելեալ պահեաց անդրէն ի դրան թագաւորն Պարսից Յազկերտ։ Եւ զայս խորհէր սուրբն Վարդան, իբրև ոչ առ ի պէտս ինչ օգնականութեան իւրում առաջադրեալ գործոյն, քանզի չխորհէր զյաղթութեան ինչ անուն գտանել, այլ զհեղումն արեան անձինն ի վերայ շինութեան ուխտի

3 Զ. զպարզպանին
10 Մարկ. Ը, 36—37
11 Աց. խնդրեմք ընդ փրկութեան։ Բց. խնամք ընդ փրկութեան։ Գց. խնդամք ընդ փրկութեան։ Զ. այսպես
12 Գց. կարծեցի
13 Գց. յազգիս մերում, ոչ երբեք
14 Յց. քան զանձին
27 Զ. ի բանակն Հայոց'ից յետոյ ունի ժգ (վրան պաշտի)
37 Աց. ազկերտ

եկեղեցւոյ մինչէր ըմբռնել. բայց հոգայր իբրև զբարեսէր, թէ մի՛ գուցէ դժուար ինչ արանցն ի Թագաւորէն դիպիցի, և վնասիցին։

Բայց իշխանն Ամատունեաց Վահան ոչ տայր դուլ և դադար զօրավարին Հայոց Վարդանայ. այլ մերթ ինքեամբ և մերթ այլովք ստիպէր՝ վաղվաղակի յայտնել գիրս ապստամբութեանն, կարծեցուցանելով որպէս հոգւոյ ևեթ հոգալ զգիւտ փրկութեան. բայց ոչ հոգալով ինչ կարի յայն միտս՝ ըստ խօսիցն փութացուցանէր զյայտնել իրացն, այլ վասն մթերից առաջին ոխութեանն, զոր ունէին առ միմեանս իշխանն Սիւնեաց Վասակ և տէրն Ամատունեաց Վահան։ Բայց ըստ ծանր խոհականութեանն իւրոյ հայեցեալ նկատէր, թէ կա՛մ չհաւանեալ ապըստամբել իշխանն Սիւնեաց Վասակ՝ մեռանի յիւրոցն ընկերաց անարժան մահուամբ, կամ թէ հաւանեալ առ վտանգին ապստամբել՝ արգելեալ անդրէն ի դրանն որդիքն երկոքեան չարաչար կենօք վտանգեալ պատահեն մահու և կամ բազմաժամանակեայ կարևոր կապանաց և բանդից դիպեալք՝ տանջին անխնայ։ Իսկ սուրբ այրն Աստուծոյ Վարդան տէրն Մամիկոնէից և Հայոց զօրավարն ոչ ի բանս ինչ ուրուք հայէր, այլ ղհոգ ընկերացն հոգայր և ի նահատակութիւնն ցանկացեալ ընթանայր։ Եւ այնպէս ձգեալ ռնի զաւուրս գարնանոյն յերկար, մինչև յաւուրս տօթոյն մօտելոյ. և հասեալ ամիսք տօթոյն ջերմութեան՝ չուարարեալ ամենայն բազմութիւնն Հայոց ի տեղիս հովոց՝ գային հասանէին ի գաւառն որ կոչի Ծաղկոտն, մերձ ի բերդն ամուր, զոր Անգղն անուանեն. զայն տեղօք արարեալ բանակետեղս արանց՝ դադարէին անդ զաւուրս տօթոյն։

ԼԲ. Իսկ մոգքն, որ ի դրանէն Նախարարքն Հայոց ուսուցիչս ածեալ էին ընդ ինքեանս, իբրև տեսին, թէ արհամարհեալ են յաչս նոցա ինքեանք և օրէնք նոցա, —քանզի կանայք նախարարացն, զորս կարծէին մոգքն աշակերտել՝ այնք և տեսանել անգամ գարշէին զնոսա, այլ զորդիս իւրեանց և զդստերս՝ պատուիրէին ստէպ դաստիարակացն՝ չանցուցանել երբէք առ նոքօք մօտ. իսկ արքն, որք պատճառանօք կարծեցուցանէին զինքեանս ուրացողս՝ սուտ վարդապետացն և հաց ուտել առաջի իւրեանց չտային թոյլ, և շրջէին ողորմելի սովամահք.— գնալ ի բաց և փախչել չիշխէին, և կալն առ նոսա՝ զմահ ծանուցանէր նոցա և զկորուստ. և տակաւին գրել գաղտ ի դուռն գիրս ապստամբութեանն փութանային։

Ապա իմացեալ սպարապետին Հայոց Վարդանայ, թէ կարի հրաչակին իրք ապստամբութեանն, և ի կարի հեղգալոյն մեծամեծ գործէին վնասք, խորհուրդ ի մէջ առեալ զաւուրս բազումս և ժողովեալ զպատուական եպիսկոպոսս և զականաւոր երիցունս և զաւագ տանուտեարսն Հայոց և զսեպուհսն առանձինն, —չև դեռ ևս յայնմ ժամու կամեցեալ յայտնել զբանսն իւրեանց մարզպանին Հայոց Վասակայ, գիտելով ոչ միայն լոկ վասն որդւոցն ևեթ զկասումն առն ի փրկութեան դարձէն, այլ զառաւել փառասէր աստուածատեաց խորհրդոց

1 ԲԳՑ. ուղղագրում են տենչէր ըմբռնել | 2 ՑՑ. դիպի | 22 Ձ. զբանակետեղս — Թէրեւս բանակետեղս իւրեանց
2 Ձ. դժար | 6 ՁՑՑ. զգուտ փրկութեան |

նորա ճանաչեալ զորոճմունս՝— ասէր ցամենեսեան այնուհետև յայտնապէս այրն երանելին Վարդան, թէ «Մինչև ցե՞րբ հանդուրժեմք թագուցանել զճշմարտութիւնն և կորնչիմք. և այս համբաւ ելեալ տարածեալ ելից զամենայն տեղիս. այլ յայտնի լուսով գնասցուք լիբրև ի տուընջեան և որդիս լուսոյ կոչեսցուք»։

Մի ոմն յՈստանեայ տանէն, որում անուն Ջանդադան, սերմն ժանդ, որդի անօրէնութեան, որ բազում և անապաշխար չար գործեալ էր ի կեանս իւրում՝ լսէր յոմանց զխորհեալսն Հայոց և երթեալ վաղվաղակի գուշակէր նմանւոյն իւրում Վասակայ։ Որոյ բանից իրազգած եղեալ նենգաւոր քսուին աւագ նախարարքն Հայոց՝ կալեալ զնա ի գեօղն որ կոչի Արծակ՝ տարեալ կապեցին ի միւսում ևս ի գեօղ յանուանեալ Բերդկունս, ի նմին Բագրևանդ գաւառի. զոր և ոչ յետ բազում աւուրց ըստ արժանի գործոց իւրոց անօրէնութեանց քարկոծեալ սատակեցին։

Եւ ապա յայտնապէս ժողովեալ միաբանութեամբ ամենայն տանուտեարքն Հայոց և սեպուհք, եպիսկոպոսօքն և բազմութեամբ ամենայն քահանայիւք և ժողովրդովք, առ երանելի սպարապետն Հայոց տէրն Մամիկոնէից Վարդան, և հանդերձ նովաւ մտին թափ ըստ գրոց հրամանին բոլորեքեան առ իշխանն Սիւնեաց Վասակ, առ մարզպանն Հայոց. և յայտնեալ նմա միաբան ամենեցուն զխորհուրդն, թէպէտ ջանայր յապաղել նա, մի՝ վասն որդւոցն իւրոց, որք ի դրանն էին, և դարձեալ՝ զի և կեանքն իւր իսկ ի խնամս չարին միտէին հանապազ՝ ոչ ինչ այնուհետև թոյլ տային սայթաքել խորհրդոց նորա այսր անդր. այլ թէպէտ և ոչ կամաւ, սակայն ի հարկէ յանձն առեալ միաբանէր ընդ նոսա։ Բերել դարձեալ հրամայէին նախարարքն Հայոց սուրբ եպիսկոպոսացն և երիցանցն՝ զԱւետարան ուխտին սրբոյ. և երդուեալ ամենայն բազմութիւն զօրացն ազատաց և անազատաց, հանդերձ իշխանաւն Սիւնեաց Վասակաւ և ամենայն տանուտերամբքն և սեպհօք՝ հաստատէին զերդումն. և որոց մատանեաւ չև ևս էր կնքեալ զԱւետարանն՝ կնքէին. և համբարձեալ առ հասարակ զձեռս ընդ երկինս՝ բարբառելով ասէին այսպէս ամենայն բազմութիւնն, այր և կին միաբան խնդալիցք.

«Զքեզ, սուրբ Հայր, արարիչ երկնի և երկրի, և զՈրդիդ քո միածին զտէր մեր Յիսուս Քրիստոս, և զսուրբ Հոգիդ կենդանարար, զանորիշ և զանքակ Երրորդութեանդ միութիւն, խոստովանիմք արարիչ երկնի և երկրի, տեսակաց և անտեսից. որ միայնդ ես Աստուած, և չիք այլ ոք բաց ի քէն։ Որ և ըստ մարդասիրութեան յաղագս փրկութեան տիեզերաց՝ ի վախճան աւուրցս մի ի սրբոյ Երրորդութենէդ ծնար ի սուրբ կուսէն Մարիամայ, և զամենայն կարիս բարձեալ քոյին մարմնովդ, զոր ի սուրբ և յաստուածածին կուսէն առեր՝ տարեալ բևեռեցեր ի խաչին փայտի. յորում հեղեալ զսուրբ արիւնդ քո՝ ազատեցեր զաշ-

8 ՅՅ. զխորհեալն
8 ԲԳՑ. վաղվաղակի պատմէր
9 Աց. չիք դուշակէր
18 Չ. զգրոյ հրամանին։ Աց. զգրոց հրամանին
21 ՉԱց. յապաղել նմա
22 Թուի ուղղելի կամքն իւր
34 Չ. զսուրբ հոգիս
38 Չ. չիք մի
41 ՅՅ. ի խաչափայտ

խարհս ի ծառայութենէ մեղաց անիծից. մեռար, թաղեցար և յարեար, և վերացեալ յերկինս՝ եառուր աւետիս խոստման՝ տանել առ քեզ զամենեսեան, որ խոստովանին առ քեզ, Աստուած ճշմարիտ, թագաւոր թագաւորաց և տէր տերանց։ Եւ մեք վկայեմք և խոստովանիմք զքեզ Աստուած աստուծոց և տէր տերանց, Աստուած քաւիչ մեղաց մերոց. ուրացեալքս՝ և զղջացեալքս, յանցուցեալքս՝ և յողորմութիւնդ ապաւինեալքս, գլորեալքս՝ և կանգնեալքս։ Ընկալ զմեզ որպէս զորդին ուրացող, որ ծախեալ ապականեցաք զհանդերձ սուրբ մկրտութեանն, զոր զգեցուցեր մեզ աւազանին լուացմամբ, անառակ անօրէնութեամբ թաւալեցաք ի տղմի ուրացութեանց իբրև զդասակսն խոզաց։

«Եւ արդ՝ դարձեալ առ ճշմարիտ Հայրդ երկնաւոր աղաղակեմք ասելով. Մեղաք յերկինս և առաջի քո. շնորհեա մեզ բարեխօսութեամբ լուսաւորիչ առաքելոցն և վաստակովք սուրբ նահատակին Գրիգորի նոցին նմանոյն և գործակցի՝ զթողութիւն մեղաց մերոց. և զգեցո մեզ զառաջին պատմուճանն և մաքրեա զոտս մեր ի խոչիցն չարեաց, որով ծակոտեալ թշնամւոյն կաղացոյց զմեզ։ Եւ ագո մեզ կօշիկս պահպանութեան՝ Աւետարանին սրբոյ. և դիր զմատանին, զգծած խաչի քո, ի մատին աջոյ ձեռին մերոյ, որով կնքեալք զբոլոր անդամս մեր՝ սարսեալ բանսարկուն փախիցէ ի մէնջ։ Եւ որպէս հեղեր դու զարիւնդ քո սուրբ ի վերայ մեղաւորաց, ի փրկութիւն յանցաւորաց՝ պարգևեա և մեզ հեղուլ զարիւնս մեր ի վերայ խոստովանութեանս այսորիկ և իւրաքանչիւր թողութեան մեղաց։ Եւ որ ոք հեռացեալ յուխտէ երդմանցս այսոցիկ ցուցցի ուխտազանց և ի միաբանութենէս մերմէ որոշեսցի՝ ելցէ նա արտաքս ընդ Յուդայի, որ մերժեալ ընկեցաւ ի գնդէ սուրբ առաքելոցն, և առանց ամենայն թողութեան կացեալ ի ձախու կողմանն՝ լուիցէ ի քէն զահագին բարբառն, զոր ասես յաւուրն հատուցման, թէ «Երթայք յինէն, անիծեալք, ի հուրն յաւիտենից, որ պատրաստեալ է սատանայի և արբանեկաց նորա»։

Եւ ասացեալ զամենայն խոստովանութիւն զօրհնութեանն և զանիծիցն միաբանութեամբ ամենայն բազմութեանն ի ձայն մեծ արանց և կանանց՝ հնչեաց երկիրն ամենայն ի բարբառոյ զօրացն բազմութեան։ Եւ գրեալ զայս ամենայն բանս հաւատոյ ուխտին, և կնքեալ նախ մատանեաւ իշխանին Սիւնեաց Վասակայ և ապա մատանեօք ամենայն տանուտերացն Հայոց և աւագ սեպհացն, և եդեալ ի սուրբ Աւետարանի երդմանն՝ եառուն ցպատուական եպիսկոպոսն և ցաւագ քահանայութիւնն որ էին անդ։ Եւ կատարեալ զայս ամենայն այսպէս՝ դիմեցին մեծաւ ցնծութեամբ և հոգևոր երգովք ի տուն Տեառն, և երկրպագեալ միոյն միայնոյ ճշմարտին Աստուծոյ՝ լի անձկով և յերկար և անձանձրոյթ ծունրդրութեամբ կատարեցին զաղօթսն։

Եւ արձակեալք յաղօթիցն՝ ռամիկ զօրացն բազմութիւնն դիմեցին ի տուն մոխրանոցին, չմնալով բնաւ աւագացն հրամանի, և առեալ

8 Չ. չիք որ
12 Ղուկ. ԺԵ, 21
13 ՁԱs. առաքելոցն վաստակովք և սուրբ
16 ՏՏ. ի Թշնամւոյն
16 Չ ագոյ
18 Չ. կրեալ
23 ՁԱs. և ուխտազանց ի միաբանութենէս
28 Մատթ. ԻԵ, 41
34 Չ. տանուտերքն
35 ԲԳs. եպիսկոպոսն

զկրակարանն՝ վարեցին ի ջուրսն զկրակսն, որպէս ի գիրկս եղբօր, ըստ ասելոյ սուտ վարդապետացն Պարսից. զոր ըմբռնեալ Ջրոցն Թըշնամաբար և ոչ եղբայրաբար՝ ծախեցին։ Բայց զմոգուցն բազմութիւն պահել առ օրն հրամայեցին զգուշութեամբ. և ի վաղիւն ընդ ծագել արևուն արս ի նոցանէ թուով սպանին սրով ի գիւղն, որ կոչի Զարեհաւան։

ԼԳ. Եւ կատարեալ զայս ամենայն գործս ըստ ասելոցս կարգաւ՝ դադարեցին անդէն զաւուրս տօթոյն։ Եւ ապա փութացան իջանել յԱյրարատ գաւառ. քանզի լուան, թէ Միհրներսեհ Արեաց հազարապետ եկեալ ի Փայտակարան քաղաք՝ գունդ կազմէ և ընդ Աղուանս արձակէ ի Հայս. զոր և Աղուանից ազատքն, որ ուխտակիցք էին Հայոց՝ստէպ փութացուցանէին հասանել առ ինքեանս և անդէն յԱղուանս ի դիմի հարկանել նոցա պատերազմաւ։

Եւ արդ եկեալք յԱյրարատ գաւառ, և զայս համբաւ լուեալ ի կողմանցն Աղուանից՝ ստիպէր զերանելի սպարապետն Հայոց Վարդան զտէրն Մամիկոնէից իշխանն Սիւնեաց Վասակ՝ գնալ պատահել նոցա գնդաւ. և զինքն մնացուցանէր անդէն պատճառանօք, ասելով, թէ «Ես աստէն պատրաստիմ. գուցէ, ասէր, այլ ինչ իմացեալ չարախորհուրդն Միհրներսեհ՝ գործիցէ ընդ մեզ»։ Այլ ինքն Վասակ զխաբէութեան ճանապարհն կազմեալ նիւթէր ի սրտի իւրում, ունելով կամակիցս և այլ աստուածանենգ արս խորհրդոցն իւրոց՝ յազատացն Հայոց։ Իսկ երանելի սպարապետն Հայոց, տէրն Մամիկոնէից Վարդան, ասէր ցիշխանն Սիւնեաց Վասակ, թէ «Որպէս ածաք զմտաւ՝ պարտ է մեզ նախ զորս առաքեմքն առ կայսր՝ արձակել, և ապա զոր ինչ հրամայեսցես ինձ՝ առնեմ անխափան»։ Եւ նորա յաղագս ճեպով զիւր առաջի եդեալ զխորհուրդն կատարելոյ՝ յանձն իւր առնոյր զասացեալսն յերանելի սպարապետէն ի Վարդանայ կատարել։

Եւ վաղվաղակի նամականի արարեալ առ կայսր և առ ամենայն աւագանի դրանն Յունաց և առ այլ իշխանս և կողմանակալս, առ բդեշխն Աղձնեաց և առ իշխանն Անգեղ տան, ի Ծոփս և ի Հաշտեանս և յԵկեղեաց և այլ իշխանաց իւրաքանչիւր տեղեաց, և առ մեծ սպարապետն Անտիոքայ։ Եւ զայս ամենայն թղթեան կնքէր նախ ինքն իշխանն Սիւնեաց Վասակ իւրով մատանեաւ, և ապա ամենայն տանուտեարքն Հայոց։ Եւ պատրաստեալ ճանապարհին Յունաց կազմէին զիշխանն տանն Ամատունեաց Վահան, որպէս զայր մտացի և խորհրդական, և զսուրբ սեպուհն զՀմայեակ, զեղբայրն երանելի զօրավարին Հայոց Վարդանայ ի Մամիկոնէից տոհմէն, և զերանելին Մերհուժան զեղբայր սրբոյն Ազանայ՝ ի տոհմէն Արծրունեաց։ Յորոց ձեռն տուեալ զնամականին իշխանին Սիւնեաց Վասակայ և ամենայն նախարարաց աշխարհին Հայոց՝ յուղարկէին առ կայսր և առ այլ ամենայն յառաջագրեալսն աւագանին Հայոց։

4 ՏՏ. ի ծագել
9 Չ. միջ արայրատ
10 Չ. գունդ կազմ
12 ՏՏ. առ Աղուանս
14 Չ. յուսանցիում մէ
19 Չ. գործեցէ մեզ ընդ այլ
32 Չ. Թղիթեան
36 ՏՏ. և սուրբ սեպուհն
36 Չ. երանելւոյն
39 Աs. նամականեն
40 ՏՏ. յառաջագրեալ

ԼԴ. Եւ սպարապետն Հայոց տէրն Մամիկոնէից երանելին Վարդան, առեալ ընդ իւր ի տանուտերացն Հայոց, որք ջերմեռանդն սիրով ճեպէին մարտիրոսութեան ժամուն պատահել, որք էին այսոքիկ. Խորէն Խորխոռունի, Արշաւիր Կամսարական, և Թաթուլ Դիմաքսեան, և Արտակ Պալունի, և Գիւտն Վահեւունեաց, և Հմայեակ Դիմաքսեան, և այլ տանուտեարք և սեպուհք, և բազումք ի զօրացն Հայոց, որք ինքնայօժար փութով փափագէին լինել վրէժխնդիր ուխտի սուրբ եկեղեցւոյ, և տալ զանձինս ի մահ ի վերայ սուրբ և ճշմարիտ հաւատոյն Քրիստոսի. եւ այլ գունդք ի զօրացն Մարզպետական այրուձիոյ, փոյթք ի գործ պատերազմին առաքինութեան. զորս և չարախորհուրդ իշխանին Սիւնեաց Վասակայ ծանուցեալ ոչ հաւանս իւրոյ չար մտածութեանն՝ կազմեալս առաքէր ընդ նմա. և զորոց գիտէր զհոլովումն ի վատթար կողմն, և ոչ ուղղակի ի խորհուրդ ուխտապահութեանն՝ ի տանուտերացն Հայոց և ի սեպհացն, որք էին երևելագոյնք, և յայլ ռամիկ բազմութենէն՝ զայնս արգելեալ առ իւր պահէր։

Եւ հրաժարեալ երանելի զօրավարն Հայոց տէրն Մամիկոնէից Վարդան, հանդերձ ընկերակցօքն իւրովք և այլ զօրուն արամբք որ էին ընդ նմա, յիշխանէն Սիւնեաց Վասակայ և յայլ մնացելոցն ընդ նմա աւագանւոյն՝ ողջախորհուրդ մտօք գնային ի գործ պատերազմի։ Եւ մտեալ ի տուն Տեառն, որ է սուրբ եկեղեցի, երկիր պագանել տեառն Աստուծոյ ամենակալի, առեալ զսուրբ Աւետարանն և զնշան կենսատու խաչին՝ ողջունէր, դնելով անյագ ի վերայ բբաց աչացն և ճակատու։ Զնոյն առնէին ջերմեռանդն սիրով և որք ընդ նմայն էին ամենեքեան. և ողջամբ գնային ամենեքեան յորդորմամբ սիրոյ։ Եւ չև ևս հեռացեալ[ք, տեսանէր] օթևանս ոչ բազումս յԱյրարատոյ երանելի սպարապետն Հայոց Վարդան՝ և իշխանն Սիւնեաց Վասակ վաղվաղակի գաղտ դեսպանս առնէր առ Միհրներսեհ հազարապետն Արեաց և զիւր նենգաւոր խորհուրդն նամակաւ ծանուցանէր նմա։ Նոյնպէս արար նամակ և առ Նիխորական Սեբուխտ և առ այլ աւագս, զորս արարեալ էր Միհրներսեհի ի վերայ Հայոց,— և զվեհշապուհ հաւատարիմ վերակացու արար, որ էր ի ժամուն սենեկապան արքունի, յետ այնորիկ ապա և դպրապետ եղև Արեաց, — յորում գրեալ եցոյց նոցա նենգաւոր իշխանն Սիւնեաց Վասակ զիւր խաբէութեանն կամս. «Դուք, ասէ, անհոգ լերուք յելևլոցդ ընդ Վարդանայ ի վերայ ձեր, եւ մի ինչ զարհուրիք. վասն զի շատք այն են՝ զորս ես աստէն պահեցի առ իս. և զայլս բազումս ընդ այսր ընդ այնր ցրուեցի. և դա յոյժ սակաւուք է և ոչ բազմօք»։ Եւ զայն ոչ յիշէր անօրէնն, թէ սիրտք իշխանաց ի

2 ՏՏ. ջերմեռանդ
4 ՏՏ. Խոռխոռունի
4 ՁԱՍ. Դիմաքսեան
5 Չ. և գունդն վահե...
6 Չ. որ ինքնայօժար
8 ՏՏ. սուրբ ճշմարիտ
9 Չ. մարզպետական
13 Չ. ի տանուտերացն
24 Չ. յորդորմամբք
25 Փակագծի մէջ դրիլք (ք, տեսանէր), որ աղաւաղութիւն է բնում: ՁՏՏ. և չև ևս հեռացեալք, տեսանէր օթևանս եւն: ԲԳՍ. ունին ծանօթութիւն. «Խառնակ կամ պակաս է ի բնին»
26 Չ. Վարդանի՛ց յետոյ [illegible] նոր գլխի նշան §: ԱՍ. սպարապետն Հայոց Վարդան: Եւ իշխանն: ԳՍ. սպարապետն Հայոց Վարդան. և իշխանն
28 ՁԱՍ. Նոյնպէս և արար նամակ առ
36 Չ. ընդ այս ընդ այնր

ձեռս Աստուծոյ են. քանզի որով կարծէր չարախորհուրդն շնորհ ինչ առնել նոցա՝ առաւել ևս զօրութիւնն Աստուծոյ ի բարկութիւն սրբտմտութեան փոխէր, և այնու գրգռէր զնոսա ի վերայ նորա. որ և ի ժամուն կատարեալ՝ կուտեցաւ ի գլուխ նորա ցուցակութեամբ։

ԼԶ. Եւ հասեալ յԱղուանս երանելւոյ զօրավարին Հայոց Վարդանայ տեառն Մամիկոնէից՝ ազդ եղև զօրագլխացն Պարսից եկք Հայոց. որոց լուեալ՝ փութացան անցանել ընդ գետն մեծ, զոր Կուր գետն կոչեն, և ընդ առաջ եկին նոցա մինչև ի գեօղն որ կոչի Խաղխաղ, յերկրին Աղուանից։ Եւ տեսեալ սրբոյ սպարապետին Հայոց Վարդանայ զանթիւ բազմութիւն գնդին Պարսից, և յինքեանս հայեցեալ, թէ յոյժ սակաւք են՝ սկսաւ խօսել ընդ զօրն Հայոց և յիշեցուցանել զբան սուրբ Հոգւոյն, զոր մայրն մարգարէին Սամուէլի ցնծութեամբ քաջալերեալ ի Քրիստոս՝ երգելով ասէր, թէ «Մի պարծեսցի հզօրն ի զօրութեան իւրում, և մի պարծեսցի մեծն ի մեծութեան իւրում. այլ որ պարծելոցն իցէ՝ յԱստուած պարծեսցի»։ Քանզի ոչ ինչ է ի նուազս և ի բազումս յաղթութիւն և պարտումն, այլ յԱստուծոյ ակնարկութեանն հրամանի»։ Եւ զայս ասացեալ երանելւոյ զօրապետին Հայոց տեառնն Մամիկոնէից Վարդանայ, հայեցեալ և ի կամս ընկերակցաց իւրոց և ամենայն գնդին որ ընդ նոսա, թէ որպէս ջերմեռանդն սիրով զօրացեալք էին և քաջալերեալք՝ խրախալից մտօք փառաւորէր զՓրկիչն ամենեցուն զտէր Յիսուս Քրիստոս։

Եւ հասեալք ի ժամ մարտին՝ հայեցեալ տեսանէին ըստ օրինի կարգման նկատելոյ զգունդան Պարսից։ Կարգէր և զիւր գունդն երանելի զօրավարն Հայոց Վարդան, ըստ բաւականին այրուձիոյն իւրոյ, ընդդէմ նոցա. յերիս առաջս բաժանեալ՝ տայր ի ձեռս իւրաքանչիւր զօրագլխի. որում աջոյ կողմանն կացուցանէր զօրագլուխ զիշխանն Արշարունեաց զԱրշաւիր Կամսարականն, որ էր և փեսայ զօրավարին Հայոց սրբոյն Վարդանայ տեառնն Մամիկոնէից, ունելով զդուստր նորա ի կնութեան. և նիզակակից տայր նմա զՄուշ զաւագ սեպուհ՝ յազգէն Դիմաքսենից. և զահեակ կողմն տայր ի ձեռն Խորենայ Խորխոռունւոյ, և զօրավիգն ընդ նմա կացուցանէր զՀմայեակ Դիմաքսեանն. և ինքն սուրբ զօրավարն Հայոց Վարդան պատրաստէր զինքն միջոյ տեղւոյն յարձակման։ Եւ այսպէս յօրինեալ զճակատն և յԱստուծոյ խնամն ապաւինեալք՝ յարձակեցան ի վերայ թշնամեացն։

Յորս նախադոյն յառաջեալ ի տեղի մարտին՝ Կամսարականն Արշաւիր և Մուշ սեպուհն Դիմաքսենից, որք յանդիմանութենէ տեղեացն՝ դիպեցան թանձրախոր սաստիկ մօրից. Կամսարականն Արշաւիր և Մուշ ի յառաւելապէս դիմեցմանէն երիվարացն՝ անկեալք ի տիղմն հանդերձ երիվարօքն խրէին. անդ կատարեալ պսակէր երանելի սեպուհն Դիմաքսենից Մուշ ի Նիխորականայ։ Իսկ Կամսարականն Արշաւիր իջեալ յերի-

6 Զ. Մամիկոնէից' ից յետոյ ունի գնալն յաղուանս վարդանայ
9 ՑՑ. չիք Հայոց
15 Ա. Թագ. Բ, 9։ Տես նաև Երեմ. Թ, 23—24։ Ա. Կորնթ. Ա, 31, ևն
16 Գց. չիք այլ
17 ՑՑ. երանելի
25 Աց. երկս յառաջս
33 Զ. ի տեղմն
40 ՑՑ. մուշն՝ ի խորականայ։ ԲԳՑ. ունին ծանօթ. «զուգէ Նիխորականայ» Զ. մուշինն խորականայ

վարէն՝ ի հետիոտս սպանանէր զՎուրկն, զեղբայր Լփնաց Թագաւորին, և իւր ի րաց ձգեալ զերիվարն ի սաստիկ խոր տղմոյն, ուր և մօյկ մի զերծեալ յոտանէն Թաղեալ մնայր անդէն ի մօրին. և ինքն Կամսարականն միամոյկ, տղմաթաթաւ, հանդերձ ամենայն զինուն, հանեալ զերիվարն ի ցամաք՝ անվեհեր քաջարար նման Թռչնոյ յերիվարն հեծանէր, և զարհուրեցուցեալ զԹև իւրոյ կողման Թշնամեացն՝ փախստական առնէր։ Եւ հայեցեալ տեսանէր զերանելի սպարապետն Հայոց զտէրն Մամիկոնէից Վարդան՝ հանդերձ ընկերակցօքն իւրովք և ամենայն Հայոց գնդաւն, զի արարեալ փախստականս և նոցա՝ածէին առաջի իւրեանց զբազմութիւն զօրացն Պարսից. յորոց զկէսն սրովք իւրեանց դիաթաւալս յերկիր կործանէին և զկէսն գետավէժս արարեալ հեղձամղձուկս առնէին. և զայլսն ի նոցանէ դաշտացն և անտառախիտ մայրեացն ցրուեալս վատնէին։

Իսկ ոմանք յաւագորերոյ Պարսիցն ելեալք ի նաւս՝ յայնկոյս գետոյն մեծի փախստեայք լինել ճեպէին։ Որ և զԿամսարականն Արշաւիր զիշխանն Արշարունեաց ստիպով փութացուցանէր երանելի զօրավարն Հայոց Վարդան՝ զկնի փախստէից նաւացն նետաձիգ լինել, ի հաստատաձգութիւն և յանվրէպ դիպողութիւն առնն վստահեալ։ Իսկ Կամսարականն Արշաւիր, որպէս և միշտ կամակատար էր բանի սրբոյ զօրավարին, վաղվաղակի հաւանեալ առ ի նմանէ հրամանին՝ զկնի նաւավարացն և փախստէիցն նետաձիգ լինէր։ Եւ խոցեալ զնաւավարսն և զայլս բազումս ի նաւսն՝ կարէվէրս առնէր. որոց ընդ տապալել վիրաւորացն կործանէին նաւքն. և բազումք ի նաւավարացն և ի գլխաւորացն Պարսից գետասոյզ եղեալ կորնչէին։ Եւ այսպէս շնորհեալ նոցա զյաղթութիւն վերին օգնութեանն՝ դառնային ի բանակս իւրեանց, գոհանալով և օրհնելով զԱստուած։

Եւ դարձարեալք անդէն ի տեղւոջն զօրն զայն՝ ի վաղիւն չուեալք անցանէին ընդ գետն մեծ, անուանեալն Կուր գետ, և հասանէին ի պահակ որմոյն, որ է ընդ մէջ իշխանութեանն Աղուանից և Հոնաց. և գտեալ անդ զպահապանս պահակին և այլ զօրականս պարսիկս բազումս, յորոց սուր ի վերայ եդեալ կոտորէին. և զպահակն յանձն առնէին Թագաւորազնի միում Աղուանի, որում անուն էր Վահան, և զնոյն արձակէին դեսպան ի Հոնս և առ այլ ամրականս տեղեացն, զորս հաւանեցուցէ միաբանել նոցա գնդաւ. որոց կամաւ և յօժարութեամբ զօգնելն յանձն առեալ՝ հաստատէին երդմամբ։

ԼԶ. Եւ մինչդեռ այս ամենայն կատարէր այսպէս յաջողութեամբն Աստուծոյ ըստ կամաց նոցա՝ յանկարծակի դեսպան հասանէր առ երանելի զօրավարն Հայոց Վարդան և առ ամենայն գունդն որ ընդ նմա էին. գոյժ տրտմութեան և համբաւ չարաչար տայր նոցա, ասելով, Թէ «Ստեաց անօրէնն Վասակ ուխտին Աստուծոյ և նենգեալ դրժեաց Աւետարանին երդմանն, և ի յետս կացեալ ապստամբեաց ի միաբանութենէ

2 ՑՑ. չիք իւր
5 ՑՑ. Թռչնոց
11 Աց. գետավէժս
11 ՑՑ. հեղձամղձուկ
21 Չ. զնաւավարն
23 ՑՑ. և գլխաւորացն
33 Աց. առ և այլ
35 Չ. երդմամբ'ից յետոյ
ունի ԺԸ
39 ՑՑ. չիք տայր նոցա
40 ՑՑ. արդ ստեաց
40 Աց. դժրեաց

ճշմարտութեանն. նոյնպէս և մնացեալքն անդէն առ նմա աւագանին Հայոց յետս կացեալ՝ ընդ նմա ապստամբեցին, և դարձուցեալ զերեսս իւրեանց ի ճանապարհէն արդարութեան՝ մոլորեցան զկնի սատանայի. դեսպան արձակեցին ի Պարսս և նամակօք ուխտադրեցին ընդ նոսա. և զբերդեան ամրոցացն Հայոց ի բաց կալան, և զիւրեանցն բերդակալս արարեալ՝ զգուշացուցին։ Եւ զորդիս տոհմին Մամիկոնէից և Կամսարականաց և զայլոց տանուտերացն ժողովեալ յիւրաքանչիւր դայեկաց՝ յամուրս բերդից իշխանութեանն Սիւնեաց ետ անցուցանել, և հրամայեաց պահել զամուրսն զգուշութեամբ. և ապա նենգաւորն Վասակ տայ տանել զտղայսն առ Թագաւորն Պարսից։ Եւ որք խոտորեցան զկնի սատանայի ընդ ուխտանենգին Վասակայ՝ են այսոքիկ. իշխանն Բագրատունեաց՝ Տիրոց, իշխանն Խորխոռունեաց՝ Գադիշոյ, իշխանն Ապահունեաց՝ Մանէճ, իշխանն Վահևունեաց՝ Գիւտ, իշխանն Պալունեաց՝ Վարազշապուհն, իշխանն Աբեղենից՝ Արտէն, իշխանն Ուրծայ՝ Ներսէհ, և այլք յոստանկաց և սեպուհք ոմանք յիւրաքանչիւր տոհմէ»։

Եւ լուեալ զայս ամենայն գործ ազէտից, զոր էր գործեալ նենգաւոր իշխանն Սիւնեաց Վասակ և այլ նախարարացն որ ընդ նմա, երանելւոյ սպարապետին Հայոց տեառն Մամիկոնէից Վարդանայ, հանդերձ նախարարօքն և զօրուն որ ընդ նմայն էին՝ չտրտմել ոչ կարէին. և զանձինս և զգերեալ տղայսն ի պահպանութիւն ամենահնար աջոյն յանձն արարեալ նուիրէին, ասելով այսպէս. «Ահա առեալ հեծանոց ի ձեռն Փրկիչն ամենեցուն Քրիստոս՝ սրբել զկալ իւր և ընտրել զցորենահատն, ժողովել յերկնից ի շտեմարանսն, և զյարդն մատնել անշէջ բոցոյն կիզուց անխնայ։ Եւ եղիցուք մեք սրբեալք ցորենահատ, և ցանկութեամբ սպասեսցուք աւուր նահատակութեան մերոյ, յորում թէ արժանի եղեալ դիպեսցուք մասին սրբոցն՝ վախճան մեր բարի զմեզ պսակէ, և զտղայս պահպանեալ սնուցանէ և ի տեղիս իւրաքանչիւր և յիշխանութիւն ածեալ հասուցանէ, և զարբանեակսն սատանայի բազում զղջմամբք ամաչեցուցեալ նշաւակէ աստ և ի հանդերձելումն»։

Եւ ասացեալ զայս երանելւոյն՝ չուեցին միաբան ամենեքեան յաշխարհէն Աղուանից յերկիրն Հայոց ի գաւառն Այրարատոյ. և անդ զաւուրս դառնաշունչ օդոյ ձմերայնւոյն ըստ սովորութեան իւրեանց դադարեալք՝ փութային առ հասարակ անձկով զաւուրս գարնանային ամսոյն տեսանել և յօր իւրեանց նահատակութեան պսակին հասանել։ Քանզի ոչ ևս ինչ այլ ընաւ ածէր զմտաւ ոք զյաղթութիւն և կամ զպարտումն, այլ ցանկացեալք, որպէս ծարաւիք, բաժակին փրկութեան՝ իւրեանց կատարմանն պատահել և ընդունել զնայն։

Իսկ նենգաւոր իշխանն Սիւնեաց Վասակ ոչ երբէք դադարէր գրել նամականի առ իշխանս և շինականս և քահանայս աշխարհիս Հայոց. ցուցանէր ինն բերեալս ի դրանէ ուխտս սուտս և վկայութիւնս ընդունայնս, թէ «Արքայից արքայ զքրիստոնէութիւն շնորհեաց աշխարհի,

4 Գ8. ի Պարսս․ նամակօք | 7 Զ. իւրաքանչիւր | 8 ԶԱ8. յամուր բերդէց | 9 Զ. պահել *մուրսն զգուշութեամբ, և *պա նենգաւորն | 14 Զ. վարշապուհն | 14 Զ. արմէն | 15 Գ8. ներսեհ | 15 Զ. սեպուհուք | 22 ԶԱ8. ընդրել | 32 Ա8. ձմեռայնոյն

և զնմա կոտորածի մոգուցն չխնդրէ. և զապստամբութենէն ասէ, թէ «բնաւ և յիշեմ իսկ ոչ, միայն թէ ի բաց դառնայք ի խրատուէ և ի բանից Վարդանայ, և մի կորնչիք ընդ դմա»։ Եւ զինքենէ գրէ ուխտանենգն Վասակ, թէ «ես լինիմ միջնորդ այսմ ամենայնի, և անմնաս պահեմ զաշխարհս Հայոց»։ Եւ տուեալ ի ձեռս սուտ քահանայից զգրեալսն՝ նենգաւորին Վասակայ, որոց անուանքն են չքահանայիցն այս. Ջանգակ մի անուն, Սահակ Ջայնող, և միւս անուն Պետրոս Երկաթի։ Եւ էին Սահակն և Պետրոսն ի գաւառէն Սիւնեաց. յորոց ձեռս տայր գաղտ յերանելի սպարապետէն Վարդանայ նենգաւորն Վասակ զգրեալսն շրջեցուցանել ընդ աշխարհս Հայոց. զոր լուեալ թուլացելոցն ի հաւատս և անյուսիցն, հաւատացեալ բանից նենգաւորին՝ կորնչէին։ Իսկ պինդքն և մարտիրոսութեան տենչողքն իբրև լսէին զայս ամենայն բանս ցնորից՝ ևս առաւել պնդեալք զօրանային, և աւուր աւետաբեր փրկութեան իւրեանց սպասէին յուսով։

Լէ. Եւ կատարեալ զաւուրս ձմեռնային ցրտաշունչ օդոցն և հասեալ ի տօն մեծ զատկին բովանդակ ուխտապահքն, և ամենայն աշխարհի եղև խնդութիւն, հրեշտակաց և մարդկան. քանզի խառնուրդք խաղաղութեան եղեն ընդ միմեանս աւետաւոր յարութեամբ կենարարին. զոր տօնեալ ուրախութեամբ զուարճանային։

Եւ յետ սակաւ ինչ աւուրց անցելոց լուան, եթէ զօր եհաս բազում ի Հեր և ի Զարևանդ գաւառ։ Եւ երանելի սպարապետն Հայոց տէրն Մամիկոնէից Վարդան ազդ առնէր ուխտապահացն, որք յաղագս տօնի աւուրցն երթեալք էին ի տունս իւրեանց՝ կատարել զտօնն զատկի առ ընտանիս իւրեանց, եթէ «Գունդ բազում հասեալ գայ, բերելով աստուածասիրացն պսակս երկնաւորս. արդ՝ որ ոք ցանկայ առնուլ՝ անճապարեցէք, զի մի վրիպեսցի ոք և զղջանայցէ։ Եւ եթէ ոք խորհի այլազգ ինչ, որպէս և այլքն, որք խոտորեցան զկնի սատանայի՝ դադարեալ հանգիցէ՝ ուր և թուեսցի հաճոյ ումեք։ Քանզի ոչ ոք պսակի 'ընդ ընկերաց իւրոց՝ թէ ոչ տանջի. այլ իւրաքանչիւր ոք անձին իւրում գանձէ զհողեղէնսս և զյաւիտենականսն»։

Եւ զայս լուեալ ճշմարտասիրացն և զանմահութիւն սիրողացն՝ դղրդեցան, եկեալ առնելով զմիմեամբք, որպէս հօտք, որ ի ձայն աղի փութայցեն զկնի հովուացն։ Թուի ինձ, ոչ այնպէս ընթացեալ երագունս Աբրահամայ ի տանել զորթն հրեշտակացն, որք խոստացան տալ նմա զորդին՝ որպէս ճեպեալ ընթանային զօրքն Հայոց զհետ երանելւոյն Վարդանայ սպարապետին Հայոց, երթալ յընթրիսն Քրիստոսի և ուտել զհաց հրեշտակաց։

Եւ այսպէս եղեալք ըստ նմանութեան սուրբ առաքելոցն ամենեքեան մի սիրտ և մի հոգի՝ առաքէր երանելի սպարապետն Հայոց

3 Զ. ընդ դմայ։ Գs. ընդ նմա

7 ԲԳs. մի անուն 'ի մասին ունին ծանօթ. «Թուի խանգարեալ մականուն Ջանգակին»: Թուի ուղղելի մի անուն Սահակ Ջայնող, և միւս անուն... (Ջանգակ անունը կամ աւելորդ, կամ Ջայնող անուան հոմանիշ)

15 ՑՑ. ձմերային

20 Զ. զհետ սակաւ

21 Զ. զարևանդ

23 Զ. երթեալ էին

33 Զ. Թուի ինչ

Վարդան, միաբանութեամբ աւագանւոյն որ ընդ նմայն էին, սեպուհ մի յազգէն Ամատունեաց, որում անուն էր Առանձար, իբրև երեք հարիւր հեծելով՝ երթալ լրտեսել զբազմութիւն զօրացն Պարսից, և տալ գլգիռս, եթէ հնար իցէ, առ ի փութապէս, ասէ, գալ բերել մեզ զպսակս արքայութեան, զոր ի ձեռն նոցա պարգևէ մեզ Փրկիչն Քրիստոս, յաւիտենից բարութեանցն տուիչ։ Եւ երթեալ Առանձար և գունդն որ ընդ նմա՝ այնպէս շնորհեցաւ նմա յԱստուծոյ, որպէս զի տեսին զբանակն Պարսից. և զհզօր վերջապահ թևով միով անկեալ՝ զբազումս հանէին ընդ սուր, և զայլս փախստականս արարեալ արկանէին ի զօրն Պարսից. և ինքեանք դարձեալ ողջանդամք հասանէին ուրախութեամբ ի գունդն Հայոց և պատմէին նոցա զԱստուծոյ զօրութիւնն, զոր յաջողեաց նոցա Փրկիչն։

Եւ լուեալ երանելւոյ սպարապետին Վարդանայ հանդերձ միահամուռ զօրօքն՝ գոհանային և օրհնէին զամենահզօրն Աստուած։ Պատմէին և վասն զօրագլխացն, թէ Մուշկանն Նիւսալաւուրտ և Դողվճն են. տային գիտել և զայն ևս սթափութեամբ հասանել ի միջոյ կողման աշխարհիս։ Զոր լուեալ երանելւոյ սպարապետին Հայոց և որ ընդ նմայն էին՝ ևս առաւել ճեպէին երթալ ընդդէմ նոցա. նախ՝ վասն փաղփաղակի պատահելոյ նոցա ժամու մարտիրոսութեան. քանզի անձանձրոյթ աղօթէին հանապազ ի տուէ և ի գիշերի, լինել արժանի այնպիսի մասին երկնաւորի. և երկրորդ՝ ասէին, թերևս անդէն ի տեղւոջն ի Հեր և ի Զարևանդ գաւառին վճարին ելք գործոյն պատերազմին, և ոչ ոք լինէր արգել զօրուն Պարսից հասանել յաշխարհն Հայոց սպանութեամբ և գերելով յարձակել և վնասել։ Եւ սոցա թէպէտ և ածեալ զայսպիսի ինչ զմտաւ կամէին փութալ՝ սակայն ևս առաւել ստիպով եկեալ հասանէին գունդն Պարսից ի գաւառն Արտազ, հուպ ի գեօղն որ կոչի Աւարայր, ի շրջափակ տեղի Տղմուտ դաշտին, զոր ընտրեաց յաղագս երկիւղի զօրացն Հայոց. ամուր ապաստանի անձանց համարէին պատշաճ, և ի միջի նորա ածեալ ղակիչ բանակէին։

ԼԸ. Իսկ ի յաւուր ուրբաթու մեծի տօնին պենտէկոստէին դիմեալ հասանէին մերձ ի նոյն տեղիս զօրքն Հայոց, գտեալ անպատրաստագոյն զզօրսն Պարսից. որոց թէ կամեցեալ էին՝ կարող էին մանաւորապէս վնասել երամակարձակ ծուլացելոցն. բայց թոյլ տուեալ դադարեցին յայնմ աւուր. քանզի ոչ էր եդեալ ի մտի նախատակութեան փափաքողաց՝ այնուհետև յաղթել, վասն տեսանելոյ հանապազօր զհոգեկորուսացն զապականումն, այլ միշտ և հանապազ ի կէտ կոչման և տենչալի մարտիրոսութեանն փութանային հասանել։

Եւ ժողովեալք այնուհետև մօտ առ զօրսն Պարսից բանակէին, մինչ եղեալ սահմանն ընթացից տուընջեանն կատարէր։ Եւ հասեալք ի ժամ երեկոյին և զկանոն պաշտաման ժամու աղօթիցն ըստ սովորու-

4 Չ. Թէ հնար իցէ
12 ՏՏ. երանելի
14 Չ. զոգովճն
15 ԲԳՑ. ծանօթութեան մէջ յուցնում են այսպես. «եթէ կամին սթափութեամբ հասանել»
15 Թուի է միջոյ կողմն կամ ի միջակողմն
19 Չ. չիք հանապազ
19 Չ. չիք արժանի
22 Թերևս և որով լինէր
26 Չ. աւար այրի շրջափակ
27 Աց. ապուր, որ ԲԳՑ. ուղղագրել են ամուր
31 Չ. մանաւորութեամբ
35 Չ. զապատակումն
37 Աց. բանակէն

թեանն լցեալ՝ գուարճանային չափաւոր ուրախութեամբ կերակրովքն։ Եւ կատարեալ զամենայն՝ առնուին հրաման ի սուրբ քահանայիցն՝ արթուն խնդրուածովք կատարել զգիշերն յաղօթս։ Եւ զցայգն ամենայն դասք քահանայիցն, մերթ սաղմոսարանին գործայիւք, մերթ վարդապետական բանիւք, քաջալերէին զբազմութիւն զօրացն՝ վայր մի քաջանալ, և անսպառ բարեացն լինել ժառանգաւոր։ Իսկ սուրբ երէցն Յովսէփ, որ և զկաթողիկոսութեանն Հայոց ունէր զաթոռ, հրաման տայր երանելւոյ առն Աստուծոյ Ղեւոնդի խրատել զժողովուրդն և քաջալերել։ Եւ սուրբ երէցն Ղեւոնդ զամենայն զգիշերն անձանձրոյթ առաքելական վարդապետութեամբ զօրացուցեալ ուսուցանէր զամենեսեան յորդառուղխ իմաստութեամբ, առակաց մեկնութեամբք, հոգէշնորհ վարդապետութեամբ. որոյ բանքն նման քաղցրութեան մեղու բղխէին ի բերանոյ արդարոյն, որ էր լսողացն ցնծութիւն. և ախորժաբար զնա ծանուցանէր վերին ազդեցութեամբ լուսաճաճանչ պայծառութիւնն ի նմա ներքին մարդոյն և տեսակութիւն հրեշտականման երեսացն կերպարանի։ Զոր և յառաջագոյն ժամանակի, կալով ի քուն սրբոյն, այրն Աստուծոյ Մաշտոց վարդապետն նորին՝ հանդերձ և այլ աշակերտօք իւրովք, երանելեաւն Կորեամբ և Արձանաւ, տեսանէին արթնութեամբ ճառագայթեալ շուրջ զնովաւ լոյս սաստիկ. ուք անդէն և անդ ծանեան երանելի արքն սուրբ Հոգւով զվախճան սրբոյն, թէ նահատակութեամբ կատարի. զոր թէպէտ և նմա ոչ յայտնեցին զքանչելագործութեան զտեսութիւնն, սակայն ի բազում շշնջելն՝ պատմեալ հռչակեցաւ բան երևմանս այսորիկ։ Որ յուսուցանելն իւրում բազում բանս հոգևորս՝ յիշեցուցանէր ամենեցուն զվարս և զժուժկալութիւն առաջնոցն, և նախ զանպատումն զհամբերութիւն սրբոյն Գրիգորի, ապա զայլոցն ամենեցուն. «Որոց գիտացեալ, ասէ, զվաղ և զանազան կենցաղոյս զվախճան՝ ընտրեցին ըմբռնել զյաւիտենից կեանսն։ Ոմանք տանջանօք և մահուամբ, ոմանք պահօք և գետնատարած անկողնօք, այլք աղքատսիրութեամբք և օտարասիրութեամբք յանդգէտս ընդունել զհրեշտակս արժանի եղեն. և կէսք աշխարհաշինութեամբք և արդար դատողութեամբ երևեալ՝ ընտիր գտան Աստուծոյ։ Քանզի ոչ բոլորեցունց դիպի մարտիրոսութեան վիճակն, այլ ըստ ժամանակի որպէս և բաշխէ վերին տեսչութիւն։ Եւ պարտին առողջքն՝ արդար վաճառականութեամբ գնել ընդ անցաւորիս զանանցն, ընդ ապականացուիս զանանց բարութիւնսն։ Իսկ պահեալքդ այժմ մեծի և պատուական բաժակի՝ փութացուք լինել արժանի հասանել ի մասն ժառանգութեան սրբոցն ի լոյս. զորոց զպատուականութիւնն սաղմոսերգուն գոչէ ասելով. «Պատուական է առաջի Տեառն մահ սրբոց իւրոց»։ Ահա և ճգնաւէրն Գրիգորիոս վարդապետն ձեր կոչէ զձեզ յերկնային քաղաքն Երուսաղէմ, յամենատենչ և յանուշահոտ ընթրիսն Քրիստոսի, ուստի մերժեալ են ցաւք և տրտմութիւնք և հեծութիւնք»։

10 ՁԳՑ. յորդաբուխ
14 Չ. զլուսաձաձանչ
17 ԱՑ. հանդերձ և աշակերտօք։ ԲԳՑ. հանդերձ աշակերտօք
28 Չ. աղքատասիրութեամբ։—ՑՑ. չիք և օտարասիրութեամբք։
31 ՁԸԲՑ. մարտիրոսութեան։ ԳՑ. ուղղագրել է այսպ. (բաց Ն. Բ.)
33 Չ. ընդ անցաւորս
37 Սաղմ. ՃԺԵ, 15
39 Չ. Երուսաղեմ
39 ՑՑ. անուշահոտ

Բազում և այլ բանիւք հոգեղինօք և շնորհօք վարդապետութեամբք քաջալերէր զիւրաքանչիւր ոք ի մեծամեծ աւագանւոյն Հայոց սուրբն Ղեւոնդ, հանդերձ երանելեաւն Յովսէփաւ. որ թէպէտ և զձեռնադրութիւն երիցութեան ունէր՝ սակայն յաթոռ կաթողիկոսութեանն էր վիճակեալ արժանաւորապէս։ Որոց խրատեալ և զօրացուցեալ հոգևոր բանիւք զամենայն գիշերն՝ լինէր ամենայն մարդ ի կամաւոր լսողացն վառեալ, որպէս աներկիւղ ամրութեամբ, սուրբ Հոգւոյն զինու։ Որք զօրինադրեալ ժամս գիշերոյն կարծէին երկայնագոյն քան զայլ գիշերացն, և տեսանել զառաւօտ փրկութեանն բաղձային, որպէս զի հասեալք արբցեն զբաժակ արքայութեանն երկնից։

Որոց աստուածաշնորհ բանից և մարտիրոսայորդոր վարդապետութեան հրեշտականման տեսոյն Յովսէփայ և Ղևոնդի մտադիւրութեամբ լուեալ երանելւոյն Վարդանայ տեառն Մամիկոնէից՝ տայր պատասխանի, թէ «Սուրբ քահանայից եկեղեցւոյ պատիւ ձեռնադրութեան ոչ է ի մարդկանէ, այլ ի սուրբ Հոգւոյն յաջորդեալ շնորհէ. նոյնպէս և բանք սոցա զամենայն առողջ խորհուրդս լսողացն ի յերկինս հայեցուցանէ. որպէս և այժմ իսկ զամենայն գիշերս անհանգիստ ձայնիւ յորդորէին զամենեսեան յերկնաւոր ընթրիսն, յիշեցուցանելով մեզ զչարչարանսն սրբոյն Գրիգորի. յորոց բազումք որ աստ կամք, ոչ միայն աշակերտք, այլ ազգախառնութեամբ եմք հաղորդեալք։ Փութացուք ժամանել ի հարսանիսն Քրիստոսի և ի հրաւիրականն, ի գունդ սուրբ առաքելոցն, և յընթրատուն Քրիստոսի, որ բացեալ զդուռն արքայութեանն՝ սպասէ ընդունել զամենեսեան և ուրախ առնել. որոյ ուրախութիւնն մշտնջենաւոր է և անանց և անվախճան։ Փութացուք առանց յապաղելոյ, և մի ոք նման Յուդայի, որ յառաքելական դասուէն քակտեցաւ՝ նման նմա գտցի. որպէս և յայսմ գիշերի տեսէք, որք մեղկեալ զկնի սատանայի ընթացան։ Այլ ես բաժակին, որում վաղնջուցն ցանկացեալն էի՝ փափաքանօք ընդունիմ, և ըստ գրեցելումն գոչեմ. «Զբաժակ փրկութեան ընկալայց և զանուն Տեառն կարդացից»։

Եւ զայս ամենայն այսպէս խօսեցեալ սրբոյ զօրավարին՝ ի ժամ հաւուն ասելոյ հրաման տայրն սուրբն Յովսէփ և Ղևոնդ, հանդերձ ամենայն քահանայիւքն, զպաշտօն կանոնին կատարել, որով նպարակեալ վառեալ զինու Հոգւոյն յուղարկէին յաստուածատունկ վայելչութեան դրախտն։ Եւ հաղորդեալ զօրացն Հայոց ի պատուական խորհրդոյն մարմնոյ և արեան՝ ի գործ առաջիկայ երկնաւոր իրացն փութային։

ԼԹ. Վասն զի մերձեալ էր այնուհետև ժամ ելից արեգական, և գունդն Պարսից ճակատել ի պատերազմն պատրաստէին և վառէին, և սուրբն Վարդան տէրն Մամիկոնէից բաժանեալ զիւր գունդն յերիս առաջս՝ միջոցի դնդին կարգէր գլխաւոր զտէրն Արծրունեաց, և զմարդպետն Միհրշապուհ՝ հանդերձ իշխանաւն Արշարունեաց Արշաւրաւ և

8 Զ. գիշերւոյն
9 ՑՑ. չիք և
12 Զ. զհրեշտականման
13 ՑՑ. երանելւոյն
18 ԶԱց. զամենայն
24 Զ. անվաղճան
29 Սաղմ. ՃԺԵ, 13
35 ԲԳց. ծանօթութեան մէջ յուշացնում են «արեան տեառն կամ փրկչին»
35 ՑՑ. չիք երկնաւոր
35 ՑՑ. փութանային
39 ՑՑ. այսեղ եւ յետոյ յառաջս
40 Զ. արշօրաւ

երանելի արամբն Արտակաւ, իշխանաւն Մոկաց, և այլ աւագ նախարարօքն. և կողմանն աջոյ կարգէր աւագ՝ զերանելին Մախազ Խորէն, հանդերձ երանելեաւն Թաթլաւ, տեառն Վանանդայ, և սուրբ արամբն Ներսեհիւ Քաջբերունոյ և այլ աւագ նախարարօքն. և ընդ ահեկէն կողմանէ պատրաստէր զինքն իւրով գնդովն և իշխանաւն Առաւեղենից Փափագաւ և այլ իշխան նախարարօքն Հայոց. քանզի յայն կողմանէ առաւելապէս երևէր ղակիշ գնդին Միհնի զօրուն և այլ զօրաւոր արանց նշանք դրօշիցն: Եւ զՀամազասպեան զիւր եղբայրն Թողոյր վերջապահ, և պատուիրէր նմա՝ մի՛ զոք բռնադատել, այլ յորդորել միայն բանիւք՝ յաղագս իւրեանց փրկութեան:

Եւ այսպէս բաժանեալ յերիս առաջս զզօրսն Հայոց սրբոյն Վարդանայ, և օրհնեալք ի բերանոյ սուրբ քահանայիցն, օրհնաբանելով զԱստուած՝ յարձակէին ի վերայ միմեանց երկոքին կողմանքն, Հայոց և Պարսից: Եւ ելեալս արարեալ այնուհետև՝ յառաջէին արք ցանկացօղք մարտիրոսութեան պսակին, և զզօրսն Պարսից ի փախուստ դարձուցանէին զառաջինսն: Իսկ այլ բազմութիւն զօրացն Հայոց, որք առ հարկի և ոչ կամաւ, մանաւանդ զի և զայլս յերկուանալոյ և դարձուցանելոյ յետս, որք երկնից բարութեանց ցանկացեալք էին՝ անդէն ի փախուստ դարձեալ կորնչէին զյաւիտենից կորուստն: Եւ տեսեալ զօրացն Պարսից զգունդն Հայոց լքեալս և պարտասեալս առ ի կոտորել զազգն իւրեանց, հայեցեալ և յայն ևս, զի փախուցեալ երթային զօրքն Հայոց՝ ի մէջ առեալ շուրջ զնոքօք պատեալ ծովանային. ուր և ցանկալի խնդրոյն դիպեալք՝ կատարէին այնոքիկ: Ստիպով այնուհետև զհետ փախստէիցն Հայոց անցանէին զօրքն Պարսից. որոց հասեալ՝ զոմանս կոտորէին, և զայլ ոմանս արգելեալ ի տեղի ինչ ամրոց արգելուին. որոց ոմանք հատեալ զնիզակափակ զփշերոյն պահապանացն և զբազումս ի նոցանէ կոտորեալ՝ գնացին ողջանդամք: Եւ այգոյն ի փախստէիցն Հայոց ձերբակալ արարեալ ածին ի բանակն և կոտորեցին սրով, և զայլս բազումս արկեալ զփղօք սպանանէին. և մնացորդք փախստէիցն յայլ և այլ տեղիս Հայաստան աշխարհիս ցրուեցան:

Բայց որ ի ժամուն երանելի և երկնաւոր կոչմանն եղեն արժանաւորք ընդ սրբոյն Վարդանայ և նահատակեցան՝ են այսոքիկ. յազգէն Խորխոռունեաց՝ երանելին Խորէն. յազգէն Պալունեաց՝ երանելի սեպուհն Արտակ. յազգէն Գնդունեաց՝ երանելին Տաճատ. յազգէն Դիմաքսենից՝ երանելին Հմայեակ. յազգէն Քաջբերունեաց՝ երանելին Ներսէհ. յազգէն Գնունեաց՝ երանելին Վահան. յազգէն Ընծայնւոյ՝ երանելին Արսէն. յազգէն Սրուանձտայ՝ երանելին Գարեգին: Եւ որպէս շատ խուզիւ և բազում քննութեամբ հարցեալ և ուսաք զնահատակելոցն թիւս, որք ի տեղւոջ պատերազմին պսակեցան ընդ աւագ նախարարսն՝ երկերիւր

7 ՁԱց. կատէչ, որ ԲԴց. ուղղագրել են այսպէս

13 ՁԱց. կողմանցն

17 Աց. զի և զայս: ԲԴց. ուղղագրել են այսպէս եւ ծանօթութեան մէջ դնում են «պակասին բառք ինչ»: Ձ. այսպ.: Լրացնելու է բերել այսպէս. որք առ հարկի և ոչ կամաւ եկեալ էին, մանաւանդ զի և յաղագս զայլս յերկուանալ ցուցանելոյ...

18 Ձ. ցանկացեալ էին

21 Ձ. փախուցեալս

26 Ձ. զփշերւոյն

27 Աց. ձեռբակալ

29 Ձ. զմնացորդք

30 Ձ. չիք տեղիս

*եօթանասուն և վեց այր։ Եւ զորս յամրոցացն իջուցեալ սպանին սրով և կամ փղօք կոխեցին՝ եօթն հարիւր և յիսուն այր. որք լինին միահամուռ հազար երեսուն և վեց այր. ղորոց խուրաքանչիւր անուն վարձահատոյցն Քրիստոս գրեալ պահէ ի դպրութեան կենաց։ Իսկ ի զօրացն Պարսիցն, որք անկան ի պատերազմին յաւուրն յայնմիկ, զոր ստուգիւ համարեալ պատմեցին մեզ, տեղեկացեալք ի զօրագլխացն Պարսից, երեք հազարք հինգ հարիւր քառասուն և չորս այր։*

*Խ. Եւ յետ վճարելոյ այսպէս գործոյ պատերազմին, և մարդասիրին Աստուծոյ զիւր սիրելիսն առ ինքն կոչելոյ՝ հրովարտակ առնէր Մուշկան Նիւսալաւուրտ առ թագաւորն Արեաց Յազկերտ, և զելս գործոյ պատերազմին գիտել տայր, գրեալ ղյաղթութեանն աւետիս և յանուանէ զհամար անկելոցն յերկոցունց կողմանցն պատերազմին։ Զոր լուեալ արքային Յազկերտի զկոտորումն լաւ արանց ի դնդէն Պարսից և զմահ առն Վարդանայ՝ յահաւոր սուգ ընկղմեալ խռովէր, յիշելով զքաջութիւն առնն և ղլաւութիւնն՝ զոր արարեալ ընդ թշնամիս բազում անգամ ի վերայ աշխարհին Արեաց եցոյց։ Պատասխանի առնել հրամայէր հրովարտակին, և զՄուշկան Նիւսալաւուրտ հանդերձ գնդաւն ի դուռն կոչէր։ Եւ զԱտրորմիզդ ոմն անուն, յաշխարհէն Հայոց, մարզպան հրամայէր թողուլ, որում յանձն առնէր հրովարտակով զմարդիկն Հայոց չընգոստուցանել, այլ սիրով նուաճել, և զպաշտօն քրիստոնէութեանն համարձակապէս ունել ամենեցուն։ Եւ տեսեալ Մուշկանայ զհրովարտակն թագաւորին Յազկերտի, և լուեալ զբանսն ի հրովարտակէն՝ կացուցանէր ի Հայս մարզպան զԱտրորմիզդ Արշական, և զիրս ամենայն ըստ գրեցելոցն *ի հրովարտակէն թագաւորին՝ նմա յանձն առնէր։ Դառնայր Մուշկանն հանդերձ աւագանւովն և այլ ամենայն գնդիւն յերկիրն Պարսից։ Եւ մնացեալ Ատրորմիզդ մարզպան աշխարհիս Հայոց՝ բազում թուղթս խաղաղութեան առնէր ի տեղիս տեղիս Հայոց աշխարհին, թէ «Եկայք շինեցարուք աներկիւղութեամբ, և մի ինչ զարհուրիք»․ յորս գրէր և կնքէր աւետաւոր բանս, շնորհել ամենեցուն զկարգ քրիստոնէութեան, որպէս և կամիցի ըստ իւրաքանչիւր կամաց։ Որք ի համբաւն՝ խնդութեամբ ի Պարսից և ի Սիւնեաց ժողովեցան ամենեքեան։*

*ԽԱ. Սա և ի վերայ ժողովելոցն առ երանելին Հմայեակ յամուրսն Տայոց՝ գունդ կազմէր այրընտիր բազմութեամբ ի Պարսից և ի Սիւնեաց. և յերկուս բաժանեալ զգունդն՝ կարգէր նոցա զօրագլուխս ղԱրտէն Գաբեղեան և զՎարազշապուհ Պալունի։ Քանզի բազմութիւն փախստէիցն Հայոց, նախարարք և սեպուհք, ոստանիկք և ռամիկք, դիմեալ ի յերկիրն Տայոց՝ ժողովէին առ Հմայեակ եղբայր սրբոյ զօրավարին Վարդանայ, որ էր յամեալ յաշխարհին Յունաց, խնդրել զօրս ի թագաւորէն, ըստ յառաջագոյն գրելոցն ի կարգի։ Որք երթեալք յանդիման եղեն թագա-*

7 Չ. բառերով գրուած թուից առաջ ունի ճերուած ․ թուից յետոյ էլ ունի ճերուած վէջը։ — Չ. երեսի ներքևի յուսանցքում ունի. աւադ զհայր յայնմ աւուր և առ յապայ
13 ԱԲՑ. զկատարումն։ Դց. ուղղել է զկոտորումն (ըստ Ն. Բ.)։ Չ. այսպես
15 ՏՏ. արարեալ էր
19 Աց. այստեղ եւ ընդհանրապես մարզպան
21 ՏՏ. առնել ամեն...
35 Չ. զՎարազշապուհ

ւորին Թէոդոսի. որոյ լուեալ զպատճառ նոցա երթիցն՝ սիրով լսէր ի նոցանէ, և յանձն առնոյր օգնել նոցա գնդիւ. և մինչդեռ պատրաստէր զիրս խոստմանն՝ հասեալ վախճան սորոյն՝ վճարէր ի կենցաղոյս։ Եւ թագաւորէ փոխանակ նորա Մարկիանոս, որոյ և տեղեկացեալ նորա զպէտս խնդրոյն իւրացն Հայոց՝ հարցանէր զաւագս դրանն, թէ որպիսի թուի ձեզ պատասխանի առնել արանցդ եկելոց յաշխարհէն Հայոց առ ձեզ։ Պատասխանի տուեալ Անատոլեայ, որ ի ժամուն ասպարապետ էր Անտիոքայ, և Փղորենտի ուրումն առն՝ ասորի ազգաւ, որ էր աւագ դրանն թագաւորին, և ասեն. «Մեզ ոչ թուի հաճոյ արհամարհել զուխտ և զհաստատութիւն, զոր ի բազում ժամանակաց գրեալ և կնքեալ է առաջին թագաւորացն, և գրգռել պատերազմաւ իրս մի խաղաղացեալս, և ի բաց հանել զաշխարհ մի ի ծառայութենէ թագաւորին իւրեանց։ Այլ և զելս անյայտ իրացդ պարտ է ածել զմտաւ, զոր ոչ ոք կարէ գիտել, թէ որպէս, դիւրեաւ և կամ սաստիկ պղտորմամբ պատերազմդ եղեալ վճարեսցի»։ Եւ զայս այսպէս ասացեալ՝ կասեցուցին զմիտս թագաւորին, և մնասեցաւ ակնկալութիւն Հայոց, որում ուշ եդեալ մնային, և ոչ պատահեցաւ։ Եւ մինչդեռ յապաղեալ էր զրոյց պատասխանւոյն այսպէս՝ հասեալ գործ պատերազմին Հայոց և Պարսից կատարէր։

Եւ տանուտեարքն Հայոց և նախարարք, որք երթեալն էին յաշխարհն Յունաց, իբրև տեսին, թէ ոչ ինչ օգտեցան յաղագս որոյ աշխատն եղեն՝ դարձան և փութային գոնեայ ի յուսոյ փրկութենէն չվրիպել, այլ գէ արժանի լիցին ընդ ընկերս իւրեանց ըմպել զմարտիրոսութեան բաժակն։ Եւ ոչ ժամանեալ ի գործ ժամու պատերազմին՝ առ վայր մի առ լերամբն որ կոչի Պարխար, մերձ առ սահմանակցութիւնն Խաղտեաց, ամրագոյն տեղի մի գտեալ դադարեցին, թէ որպէս առաջիկայ իրացն մարթասցեն պատրաստել։ Յորոց վերայ տեղեակ առաջնորդօք եկեալ զցայգն, և ընդ ծագել առաւօտուն պատրաստքն զինուք անկանէին ի վերայ այնց նորին ընկերաց Հմայեկայ Մամիկոնէի, ի գիւղն որ անուանի Որջնհաղ, ի գաւառին Տայոց. քանզի ի ժամուն իջեալ էին ի յամրոցացն լերինն Պարխարայ. արք փախստէիցն ճեպով յիւրաքանչիւր երիվարս հասանէին։ Ոմանք մերկանդամք և ոմանք զինեալք հարկանէին ի զօրացն Պարսից. և դարձուցեալ ընդ կրունկն՝ անդէն փախստականս առնէին. յորոց զբազումս անդէն ի շինամիջին և զայլս ի մէջ այգեստանոյն յերկիր կործանէին։ Անդ զկատարելութեան պսակն ընդունէր, զոր երանելի սեպուհն Հմայեակ փափագանօք և բազում ցանկութեամբ խնդրէր՝ ժամանել զկնի սուրբ եղբօրն իւրոյ, և վաղվաղակի լսելի լինէր. զի հայեցեալ Աստուծոյ ի փափագ առնն՝ կատարէր զհայցուածսն և պսակէր զսուրբն։

Իսկ զօրն ուխտապահացն, որք առ սրբոյն Հմայեկի ժողովեալ էին,

1 Չ. որոց լուեալ
5 Չ. խնդրուոյն
6 ՏՏ. պատասխան
8 ԲԳՒ. փլորենտի։ ՉԱՏ. փղօրէնտի
8 Չ. նախ ուրումն, յետոյ ն աւելցրած է.
19 Չ. տանուտեար
26 Չ. զցայքն
29 Չ. ի գաւառէին
30 ԲԳՒ. ուղղագրել են որք փախստէյն։ ՉԱՏ. այսպես:—Աղաւաղուած է
33 Չ. այգեստանեայն
34 ԹԻՐԼԻ ընդունէր երանելի սեպուհն Հմայեակ, զոր փափագանօք
35 ՏՏ. փափաքանօք

իբրև տեսանէին զիրսն՝ ի սուգ մեծ մտեալ ի վայր կործանէին, չունելով ամենևին յոյս մխիթարութեան. այլ անձամբ անձին այր խրաքանչիւր զվճիռ վատ մահու և չարաչար կորստեանն կատարեալ տեսանէր. զարհուրեալք անդէն ի վեր ի լեառն դառնային ի Պարխար, հայթայթանս իմն առ չարի և սուգ պատճառանաց մեծի և ահաւոր հասելոյ տրտմութեան հաշուէին։ Եւ լուեալ Ատրորմզդին մարզպանին Հայոց զայնչափ լաւ արանց զծախս ի գնդէն Պարսից և Սիւնեաց, թէպէտ և սաստիկ տրտմութեամբ խռովէր, այլ յորժամ լսէր զվախճան հրաժարելոցն սրբոյն Վարդանայ և Հմայեկի՝ մխիթարեալ ուրախանայր մեծապէս, ճանաչելով զբարձումն սպառ սպուռ քաջ զօրավարացն։

ԽԲ. Խորհուրդ ի մէջ առեալ, թէ որպէս հնարեսցին որսալ զարսն փախստականս առանց Արեաց կռուոյ, և ըմբռնել ըստ կամաց և ի հարկատրութեան կացուցանել զաշխարհս Հայոց. և յայս միտս հաստատեալ կային, թէ բայց միայն սուտ երդմամբ և մնոտի խոստմամբ հաւանեցուցանել զմիտս որերոյն կարասցեն, առանց կռուոյ։ Առաքէր առ նոսա մարզպանն Ատրորմիզդն ի բանէն արքային Ցազկերտի, և երդնոյր նոցա դաւով, թէ ոչ զոք սպանանեմք ի ձէնջ, և ոչ զտէրութիւնզ և զպատիւ հանեմք յումեքէ։ Եւ այսպէս նենգով նուաճեալ զմարդիկն՝ կալաւ զամենեսեան, և տայր խաղացուցանել ի դուռն Արեացն՝ զիշխանն մեծ Արծրունեաց զՆերշապուհ, և զիշխանն տանն Ամատունեաց, և դիշխանն տանն Վանանդեայ, և զիշխանն տանն Արշարունեաց զԱրշաւիր, և զիշխանն տանն Անձևացեաց զՇմաւոն, և զիշխանն տանն Ամատունեաց զՎահանն, և դիշխանն Գնթունեաց, և զիշխանն Աշոցաց և զիշխանն Առաւեղենից զՓափաք, և զիշխանն Տաշրայ զՎրէն, և զիշխանն Արծրունեաց զԱպրսամ, և զայլս ի տանուտերացն և յաւագ սեպհացն, խաղացուցանէին ի դուռն թագաւորին Ցազկերտի։ Կամեցեալ չու առնել գնալ ի դուռնն և ինքն նենգաւոր իշխանն Սիւնեաց Վասակ, բայց նախ տայր խաղացուցանել յառաջագոյն քան զինքն։

Իսկ ի սուրբ քահանայիցն Հայոց, զորս կալեալ էր նախագոյն և եդեալ ի տեղիս տեղիս յամուրս բերդիցն Սիւնեաց՝ զսուրբ երէցն Յովսէփ, որ զկաթողիկոսութեանն ունէր զաթոռ ի ժամուն, և զտէր Ղևոնդ, և զքահանայսն Արածայ՝ զտէր Սամուէլ և զտէր Աբրահամ. ընդ որս կալեալ տանէին և զսուրբ եպիսկոպոսն Ռշտունեաց զտէր Սահակ, և զդրան երէցն իշխանին Արծրունեաց Ներշապհոյ՝ զտէր Մուշէ, և զսուրբ երէցն զԱրշէն և զսուրբ սարկաւագն զՔաջաջ։ Բայց զսուրբ եպիսկոպոսն Բասենոյ զտէր Թաթիկ՝ էր յառաջագոյն տուեալ տանել զօրագլխացն Պարսից ի Խուժաստան, ըստ քսելոյ իշխանին Սիւնեաց, և անդ խիստ կապանօք պահէր։ Տայր խաղացուցանել և զտղայսն, զոր կալեալ էր իւր ի տոհմէն Մամիկոնէից և Կամսարականաց

1 2. ի սուք
4 2. ի հայթաթանս
9 2. որբոյն
20 ԲԳՑ. չիք և զիշխանն տանն Ամատունեաց
21 2. վանանդեայ, զիշխ..
24 2. զփափագ
25 2. զապրսամ
29 2. իսկ սուրբ քահան...
30 2Աց. այստեղ եւ յետոյ երէց
35 ՑՑ. Արշէն
38 2. պահէր'ից յետոյ ունի պահէին մոգն, որ նե- րած եւ ուղղած է պա- հէր գլ. մոգն. (յ'ի վրայ եւսն կեց) — Տայր'ից առաջ նոր գլխի նշան §

*և ի յայլ տոհմէ իշխանացն Հայոց. կարծեցեալ առնել մեծապէս սպաս Թագաւորին Յազկերտի և ամենայն աշխարհին Արեաց, և առնուլ զպատիւ Թագաւորութեան և զպարգևս։ Որ ևս առաւելապէս եղև նմա յԱստուծոյ անուամն ձաղանաց յաւուր Թշնամանաց իւրոց, յորժամ նշաւակեալ խայտառակեաց զնա Յազկերտ՝ ամենայն աւագանւով դրանն, ըստ աներևոյթ սադրելոյ նոցա ի վերուստ ազդեցութենէն արդարադատին Աստուծոյ։*

*Արդ խաղացուցեալ զամենեսեան զնոսա առաջի իւր յերկիրն Պարսից նենգաւորն Վասակ, յերեքտասաներորդում ամի Յազկերտի արքային Պարսից, և ինքն չու արարեալ սաստիկ կազմութեամբ և ուժգին ախիւք, մերձ ի հասանելն առ Թագաւորն Պարսից, և զկարծեցեալ զխաբէական զիւր զմիամտութիւնն ծանուցեալ Թագաւորին և աւագանւոյն Արեաց՝ և առնուլ վարձս ըստ մոլեկան խորհելոյն իւրոյ զԹագաւորութիւնն իսկ Հայոց։ «Ապա Թէ յայնմանէ վրիպեալ ինչ, ասէ, գտանիմ՝ համայն զայլն ամենայն, զպատիւ և զգահս, առանց ամենայն երկբայութեան և յերկուանալոյ գտանեմ, և իմ են»։ Եւ զտէր Աստուած ոչ հարցեալ, որ ասէ մարգարէիւն, Թէ «Թագաւորեցին, և ոչ ինև, և դաշինս կռեցին, և ոչ իմով կամաւ»։ Որում ի ժամ պատահելոյ նենգաւորին, ըստ իւրում կարծեաց, այսպիսի մեծամեծ պատուոյ, յառաջեալ արդարախնդիր բանն Աստուծոյ, և զդիմակս նենգաւոր խորհրդոց նորա մերկացեալ ցրուեալ՝ վեր ի վայր տապալեաց զամենայն դառն մտածութիւնս առն, որպէս զվայրաԹոյն խորհուրդն Ակիտովփելայ։*

*Եւ արդ ելեալ սա զմիջոցաւ ճանապարհին, ուր զսուրբ քահանայսն Աստուծոյ տանէին կապեալս, նստուցեալս ի վերայ ջորւոց, և բազմութիւնք չուելոցն, որ էինն ընդ անօրինին Վասակայ՝ հասին նահատակացն Քրիստոսի։ Եւ նոցա հարցեալ, եԹէ «ո՞յր է բազմութիւնս այս»՝ լուան ի մարդկանէ, Թէ «Սիւնեաց տեառնն է». և նոքա ասեն. «Աւադիկ մօտ առ մեզ գայ»։ Լուեալք ի հարցանելոյ սուրբքն՝ ճանապարհին ուշադրէին. և սուրբն Յովսէփ հարցանէր ցայրն Աստուծոյ Ղևոնդ, Թէ «Գիտեմ Թէ հասեալ գայ ի մեզ Վասակ՝ լրբի անամօԹուԹեամբ սրտիւ գալ առ մեզ յողջոյն. և քոյ զմտաւ ածեալ՝ ո՛րպէս պարտ է առնել մեզ հրամայեա՛, և այնպէս արասցուք մեք»։ Եւ սրբոյն Ղևոնդի պատասխանի տուեալ ասէ. «Զվարդապետութիւն Փրկչին մի՞ խնդրես ուսանել ի մարդոյ. «Յոր քաղաք կամ ի գեօղ մտանիցէք՝ ողջոյն ասացէք. և ուր գտցի որդի ողջունի՝ հանգիցէ ողջոյնն ձեր ի վերայ նորա, ապա Թէ ոչ իցէ արժանի՝ առ ձեզ դարձցի ողջոյնն»։ Եւ այն ինչ կատարեալ նոցա զհարցուածսն առ միմեանս՝ եկեալ հասանէր առ նոսա նենգաւորն Վասակ Սիւնեաց տէր. և տեղեկացեալ ի նոցանէ՝ փութփութակի իջանէր յերիվարէն և ողջունէր*

1 Զ. և այլ ի տոհմէ
4 Աց. յաւուր Թշնամեաց
6 ՑՏ. ազդեցութեան
8 ՑՏ. զնոսա զամենեսեան
11 Զ. մերձ հասանել... խաբէական
18 Ես. Լ, 1
21 Զ. ցրուեալ
22 Տես Բ. Թագ. ԺԵ, 31
24 ՑՏ. չիք Աստուծոյ
25 Զ. ընդ անօրէնին
26 Զ. այս բազմութիւնս
28 ԶԱՑ. լուեալք ի հարցանելոյ։ Այսպէս բաց ուղղագր. Գց. (բաց Ն. Բ.)
29 Զ. զևոնդ
31 Զ. հրամայեաց
34 ՑՏ. կամ գեօղ
34 Զ. որ գոյի
36 Մատթ. Ժ, 11—15
38 Զ. նոցանէ (չիք ի)
38 Զ. նախ իջանէր յանդրուարէն, յետոյ ջնջած եւ ուղղած այսպ.

զսուրբսն. որոց ոչ ինչ բնաւ կարծեցուցեալ թշնամութիւն ընդ նմա՝ յոյժ խնդալից սիրով տեսանէին զնա։ Եւ մանաւանդ սուրբն Ղեւոնդ, որոյ անտրտում և զուարթերես միշտ տեսակ իւր, և ախորժակ բանիւ լրջմտութեամբ խօսէր երկարս ընդ Վասակայ Սիւնեաց իշխանին։ Որ իբրև լսէր զքաղցրաքանութիւնն և զշնորհալից բանս երանելւոյն՝ խելացնորեալ ի դիւէն՝ կարծեաց, թէ սոքա ոչ գիտեն իսկ զիմ արարեալ ի սոսա գչարիս. յաղագս որոյ և առաւելագոյն մխիթարեալ ի բանից առն Աստուծոյ Ղեւոնդի՝ երթայր ընդ նոսա երկարագոյնս։

Եւ յետ կատարման խօսիցն՝ կամեցեալ կոչել զնոսա Սիւնեաց տէրն, զորս և յաւուրն յայնմիկ աղաչեաց զսուրբսն՝ ճաշել ընդ նմա յօթեանին։ Եւ յառաջեալ սակաւ մի նենգաւորին Վասակայ ի նոցանէ՝ ձայն զկնի եդեալ սրբոյն Ղեւոնդի՝ կոչէր զնա պատուոյն անուամբ մեծաձայն. «Սիւնեա՛ց տէր, Սիւնեա՛ց տէր»։ Եւ նորա յօժարապէս պատասխանի արարեալ. «Տեա՛րք, զի՞նչ ասէք»։ Եւ սրբոյն ասացեալ. «Զամենայն ինչ մեր ասացեալ ընդ քեզ՝ զպիտոյսն և զառաւել օգտակարսն մոռացաք հարցանել, թէ ու՞ր երթաս»։ Եւ նենգաւորին Վասակայ լուեալ զայս և ի մեծ տրտմութիւն ընկղմեալ՝ ասէր զարմացմամբ. «Առ տէրն իմ երթամ, գտանել ի նմանէ ըստ արժանի մեծ վաստակոցն զհատուցումն մեծ»։ Եւ սրբոյն Ղեւոնդի պատասխանի տուեալ ասէ. «Կարծեցուցանէ զքեզ դեւդ, որ պատրեալ սագրեաց զքեզ նենգել սուրբ Աւետարանին ուխտի, թէ արդ միայն թագաւորութեամբ աշխարհին Հայոց կարեն Արիք տալ քեզ ըստ արժանի վաստակոց քոց զհատուցումն. այլ և ոչ մի ինչ է որ կարեն տալ քեզ փոխարէնս. բայց թէ արդարև դու կենդանութեամբ զգլուխդ ի վերայ ուսոցդ ի Հայս տանիս՝ ապա ընդ իս տեառն Աստուծոյ չէ խօսեցեալ»։ Եւ զայս լուեալ նենգաւոր իշխանին Վասակայ՝ վհատեալ խզեցաւ ամենայն մտօք յոյսն իւր, և անդէն ծանեաւ զբեկումն անձին իւրոյ, որ մերձ ընդ մերձ հասանելոց էր ի վերայ նորա։ Քանզի ոչ վրիպէր բան սրբոյն, մինչև կատարէր ամենայն։

ԽԴ. Եւ արդ՝ հասեալ ի դուռնն նենգաւոր իշխանն Սիւնեաց, և տեսեալ նախ ղաւագանի դրանն արքունի՝ մտանէր և առաջի թագաւորին Յազկերտի. ընդունէին զնա թագաւորն և ամենայն մեծամեծքն արքունի առ վայր մի մեծարանօք և շքեղութեամբ։ Զի թէպէտ և գիտէին զմնաս նորա և զերդումն, և զուխտն զոր ուխտեալ էր նենգութեամբ ընդ սրբոյն Վարդանայ և ընդ ամենայն իշխանս աշխարհին Հայոց, յաղագս զնոսա կորուսանելոյ և զինքն հաւատարիմ ցուցանելոյ՝ սակայն ոչ ինչ զգացուցեալ տային գիտել նմա. այլ լաւութեամբ որպէս զանգէտս պատուէին զնա՝ որպէս զայր հաւատարիմ և զբարեկործ, մինչև ածեալ հասուցանէին ի դուռն զսուրբ քահանայսն Աստուծոյ և զաւագս ի տանուտերացն Հայոց, ի սեպհացն՝ որ ապստամբն էին, ընդ նոսին և ի տոհմէն Մամիկոնէից և Կամսարականաց և յայլ ազգաց զողայ

5 ՑՑ. զշնորհալէ

7 Զ. ի սոյա զչարիս

24 Զ. ուսոցդ բառի դէմ յուսանցքում ունի անձինդ

27 ԶՍՑ. հասանելոց էին

34 ՑՑ. և ամենայն իշխանաց

36 ՑՑ. լաւութեամբ։ Զ. այսպէս: ԲԳՑ. ծանօթութեան մէջ ուղղում են — «զուցէ լաւութեամբ»

37 ԲՑ. որպէս զհայր

37 ՑՑ. և բարեգործ

մանկունսն ապստամբացն, զորս նախագոյն տարեալ նենգաւորին կացուցանէր առաջի հազարապետին Միհրներսեհի և այլ աւագանւոյ դրանն։

Եւ անօրէն հազարապետն Արեաց հրամայէր նախ զքահանայսն ածել զառաջեաւ. և հարցանէր զսուրբ երէցն Արածայ զՍամուէլ, և զնորին զհոգւոյ որդին, զսուրբ սարկաւագն զԱբրահամ, որոյ զկրակն անցուցեալ էր զԱրտաշատու. «Ո՞րպիսի համարձակութեամբ և ո՞յր հրամանաւ իշխեցէք գործել զայդպիսի մահապարտութեան գործ, և ոչ ածէք զմտաւ զահ թագաւորաց և զերկիւղ իշխանաց, և այնպիսի մեծ կրակի իշխեցէք ձգել զձեռս ձեր. զի թէ մարդոյ եղեալ էր այնպիսի յանդըգնութիւն՝ համայն արժանի մահու էր գործն, թող թէ յաստուածսն»։ Եւ լուեալ զայս սրբոցն երկոցունց, տեառն Սամուէլի և Աբրահամայ՝ ետուն պատասխանի միաբանութեամբ, էր ինչ որ ստուգախօսութեամբ, և էր որ եպերանօք, ցուցանելով զիւրեանց աներկիւղ համարձակութիւնն և լողացն զանզգայաբար հարցմամբն ծիծաղելով։ Ասեն. «Երկնչել զերկիւղ զարժանն և զարդար ի թագաւորաց և իշխանաց՝ նոյն օրէնքն մեր հրամայեն. բայց զԱստուծոյ երկիւղն փոխանակել ընդ երկիւղի մարդոյ՝ ոչ առնումք յանձն։ Իսկ յաղագս կրակիդ որ ասէք ցմեզ, թէ սպանէք՝ մեք զկրակն ոչ գան հարկանելով և ոչ չարաչար խոշտանգանս ածելով նմա՝ վնասեցաք ինչ. այլ հայեցեալ ի ժամանակ ամբոխին և ի սպասաւորաց վատթարութիւնս, որք առ ոչինչ համարեալ զերկիւղ աստուածոցն իւրեանց, թողին զնա որպէս զոչինչ արհամարհանօք, և ինքեանք գնացին. և մեր տեսեալ միայն զկրակն, առանց մարդոյ մոխրեալ, և այնպէս կացեալ ի բազում աւուրս առանց ուրուք խնամ տանելոյ՝ առաք զմոխիրն հեղաք ի բաց. վասն զի զայն ի նորին սպասաւորացն տեսանէաք հանապազօր, կրելով ցանկ զմոխիրն և հեղլով յերկիր։ Բայց որպէս չարախօսացն մերոց իմացուցեալ է ձեզ զմէնջ, թէ առեալ զկրակն ի ջուր վարեցին՝ յայդմ բնաւ իսկ չէ արժան արդարադատութեանդ ցասնուլ մեզ և առ մահապարտս ունել, այլ գովութեան և պատուի առնել արժանի։ Զի թէ արդարև ըստ ձեր բանիցդ, զոր լուեալ է յուսուցչացն ձերոց՝ խօսիք, և ճշմարիտ է վկայութիւնն այն, [և] զի եղբայր է ջուր կրակի՝ մեր ոչ միայն զի անցուցեալ չէ և վնասեալ զկրակն, այլ և մեծարեալ է զնա և բարի արարեալ։ Արդ՝ թէ արժանի մահու են՝ այնոքիկ են արժանի, որ թողին և արհամարհեցին զկրակն և գնացին, և ոչ մեք, որ առաք և յեղբայր նորին տուաք, զի պահեսցէ սիրելապէս և բազում շքեղութեամբ, և ի ժամու տացէ ի բաց»։

ԽԵ. Ըստ սմին օրինակի պատուհասեալ հարցանէին և զայլ սուրբ քահանայսն Աստուծոյ, զսուրբն Յովսէփ, զարդարև զկաթողիկոսն Հայոց, և զսուրբ եպիսկոպոսն Ռըշտունեաց զտէր Սահակ, և զամենասուրբ երէցն զտէր Ղեւոնդ, և զայլ սուրբ քահանայսն, որք էին ընդ նոսա ի հարցմանն. զսուրբն Մուշէ Աղբակացի, որ էր դրան երէց իշխանին Արծրունեաց Ներշապհոյ, և զսուրբն զԱրշէն երէցն, որ էր ի գաւառէն Բագրեւանդայ, ի գեղջէն որ կոչի Եղեգեակ, և զսուրբ սարկաւագն

9 Չ. ձեռս ձեր | — ստուածոցն | 25 Չ. ցանգ.
20 Չ. որք առ ինչ | 21 ՏՏ. որպէս ոչինչ | 42 Չ. բագրեւանդայ
21 Աs. այսուհետ և ւ յեսոյ | 24 Չ. զնորին

զԹաճաջ, որ էր և նա ի գաւառէն Ռշտունեաց, աշակերտ սրբոյ եպիսկոպոսին Սահակայ, թէ «Ո՞րպիսի աներկիւղ համարձակութեամբ, անձամբ ի վերայ թշուառացեալ անձանց ձերոց զայդչափ բազում մահապարտութիւնն դիզեալ կուտեցէք. աւերեցէք զատրուշանսն. սպանեցէք զայնպիսի ճոխ կրականի, որ յաստուածոց շնորհեալ Արեաց աշխարհիս ի պահպանութիւն վատ և վնասակար իրաց, որ ի թշնամեաց ուստեք դիմեալ յարձակէին ի վերայ մեր և ամենայն կողմանց՝ այն կրականւոյն անվնաս պահեալ էր զմեզ և պահէին։ Սպանէք զմոգեանն. կորուսէք ձերով կախարդութեամբ զայնպիսի քաջ այր զՎարդան, զի յօգտակարութիւն էր Արեաց տեառն. և զմեծամեծ գործոց նորա յիշումն առ Արեաց աշխարհին, զոր բազում զօրագլուխք և այլ Արիք յիշեն, ընդ որս նորա կռիւ եղեալ էր, այլ և զոր իւր իսկ աստուածանման տեառն իւրովք աչօք տեսեալ էր ի Մարվիռոտ՝ զնորա քաջասրտութիւնն՝ սակաւ մարդիկ են յԱրեաց աշխարհիս, որ կարեն ասել ըստ արժանի զովութեան յայրն և ի նորա արարած. և դուք ձերով անպիտան և վնասակար ուսմամբ թշուառացուցեալ կորուսէք զայնպիսի այր։ Եւ յայնպիսի աշխարհի հեղան անթիւ արիւնք բազում Արեաց և անարեաց։ Եւ արդ՝ ոչ կարէք արդեօք ձեզէն ձերոյին անձանցդ գտանել հնարս մահու և վճարիլ ի բարեբար լուսոյն, զոր անարժանութեամբ և ոչ իրաւացի տեսանէք այսօր, քան թէ սաստիկ և ըստ արժանի ձերոց գործոցդ պատահեալ բազում տանջանաց վատամահ լինիք»։

Եւ լուեալ զայս ամենայն խօսս սպառնալիցս և զբանս պատուհասալիցս զչարաթոյն հազարապետին Արեաց Միհրներսեհի, և զամենայն դրան աւագանւոյն՝ յառաջ կացեալ այրն Աստուծոյ Ղեւոնդ երէց պատասխանի և ասէ. «Սոքա ամենեքեան, որ կան ի հարցմանս առաջի իշխանութեանդ ձերոյ, ընդ որս դուք զբանս երկարեալ խօսիք, ըստ օրինաց մերոց և ըստ աստուածատուր հրամանի կարգադրութեան եկեղեցւոյ՝ որոշութիւն ունին ըստ քահանայութեան պատուոյ»։ Եւ ծանուցանելով զմի մի ի սրբոց՝ ցուցանէր նոցա զիւրաքանչիւր ոք, թէ ո՛ ոք է, և կամ զի՛նչ է անուն ուրուք նոցա, և թէ ո՛րպիսի աստիճանաւ ըստ քրիստոնէական կարգի պատուեալ է։ Քանզի թէպէտ և ըստ համբաւոյ լուեալ էր նոցա զանուանս սրբոցն և զգործ զիւրաքանչիւր ուրուք, զոր գործեալ էր յաշխարհին Հայոց՝ սակայն և անծանօթ էին անուանք սրբոցն, և ըստ քրիստոնէութեան օծմանն անտեղեակ էին իւրաքանչիւր պատուոյ։ Եւ զսրբոյն Յովսեփայ ասէր. «Զսա զոր տեսանէքս, թէպէտ և մանկագոյն քան զիս տեսանէք տիովք, այլ պատուով կարգեալ է արժանաւորապէս, և գլուխ է ամենայն Հայոց քահանայութեանց»։ Եւ զսուրբն Սահակ ցուցեալ ասէր. «Սա զկարգ օծման ըստ ճշմարիտ և արդարև քրիստոսատուր ձեռնադրութեան մերոյ օրինաց՝ զկատարեալն ունի. իսկ այլքս և ես միապէս եմք ըստ կարգի քահանայութեանն։ Իսկ թէ և ոք նուազ հա-

4 Զ. կուտէք
5 Զ. կրակնի
7 ՑՑ. չիք դիմեալ
10 ՑՑ. օգտակարութիւն էր
12 Աց. ընդ որս նորա և կռիւ։ ԲԳց. ընդ որս և նորա կռիւ
17 ՑՑ. արիւնք և բազում
22 Զ. սպառնալեց
26 ՑՑ. ընդ որս և դուք
31 ՑՑ. քանզի և թէպէտ
32 Զ. չիք զոր
36 ՑՑ. տիօք
38 Զ. արդար

ղորդելով այսմ ժամուս, մանաւանդ դիպելով ևս խնդրոյ կատարելութեան և գտցի արժանի, և մեծ ևս է այնպիսին յանճնախանձ արքայութեանն Աստուծոյ. և ոչ է իմ բանս՝ այլ որ արարիչն է մեր և վարդապետ՝ նա ասաց, թէ «Որ ախորժելով ապաստւորէ ամենեցուն՝ մեծ կոչեսցի յարքայութեանն Աստուծոյ»։ Որք և զպատասխանիս ձերոց ընդ մեզ այդչափ բանից և սպառնալեաց հրամայեցիք առնել *մեզ ինչ. քանզի ոչ իբրև զանգէտս գործեցաք անխորհուրդ զայնպիսի մեծ և ահաւոր գործ, և զղջացեալ եմք, և կամ այժմ կարծիցիմք յումանց՝ երկիւղիւ և ոչ ուրախութեամբ կալ առաջի ահաւորութեանդ ձերոյ. այլ ի վերայ գործելեացն ուրախ եմք և ցնծամք. այլ մեք պատահեալ եմք ազգի ազգի վշտաց, և մահու ևս փափաքելով սպասեմք՝ զի արժանի լիցուք։

«Իսկ յաղագս ատրուշանացն աւերելոյ որ ասէքդ, և կամ կրակին սպանանելոյ՝ ասէ ի մեր Գրի, թէ «Աստուածք, որ զերկինս և զերկիր ոչ արարին՝ կորիցեն ի ներքոյ երկրի»։ Վասն զի կրակ ի բազում նիւթոց լինի. և է զի յորոց նիւթոց լինի՝ ի նոցունց և շիջանի, և է յորմէ լինի՝ ի նոցունց աճեալ բորբոքի։ Արփ՝ ծնանի հուր յերկաթոյ, և ի քարէ, և ի ջրոյ, և ի փայտէ. այլ է և ուլն սպիտակ, որ ի նմանէ լինի հուր. լինի ի կաւարծաթոյ հուր, յորժամ ընդդէմ արեգական ոք շողացուցեալ դիցէ։ Եւ ծնեալն յերկաթոյ հուրն, թէ կուտեսցես ի վերայ նորա երկաթ՝ կորնչի. և եղեալն ի քարէ, եթէ ծածկեսցես զնա քարամբք՝ անցանէ. նոյնպէս որ ի ջրոյն և յայլ նիւթոյ. իսկ ելեալն ի փայտէ հուր՝ ի փայտէ վառեալ զօրանայ. արդ ոչ հուրն, այլ փայտն արժանի է անուանել աստուած, որ և՛ ծնանի և՛ կենագործէ։ Արդ՝ ո՞չ արդեօք իցէ յետին մոլորութիւնն չար, զԹշնամիսն միմեանց՝ եղբարս անուանել և զմարդկան հաստուածս՝ աստուած։ Որ զիւր զեղբայր և զծնօղ որպէս Թշնամիս ծախէ, զիա՞րդ նա զԹշնամանիչս իւր և կամ զերկրպագուսն գիտէ պատուել և կամ Թշնամանել. և դարձեալ յորմէ ծնանին՝ զնոյն ուտեն և անխնայ։ Ոչ պակասէ յամենայն նիւթս հուր. ապա ուրեմն ամենայն նիւթք երկրի աստուածք. ապա թէ այդպէս գիտէք, ընդէ՞ր կուրացեալ մտօք զկէս մասն անուանէք *աստուածք, և զկէսն յաղտեղի գործ ծախեալ Թշնամանէք. որպէս յաղիւսոյ և ի քարանց զկէսս ապարանս շինէք, և և զկէսս տունս դաշտանաց և աղտեղութեան շինէք. և յարծաթոյ զկէսս ըմպելիս կազմէք, և զկէսս անօթս աղտեղութեան կազմէք։ Հրով՝ աստուածոցն զարջառս և զոչխարս խորովէք և եփէք, և ջրով՝ զդաշտանս և զԹարախս և զաղբս լուանայք, և զկէսն առանձինն և կամ խառնեալ ընդ գինի՝ ըմպէք, և ոչ զարհուրիք և սոսկայք։ Եւ զի՞ ես մի ըստ միոջէ հարկաւորիցիմք ասել և կամ Թուել զանզգայութիւնդ ձեր. զոր արԹուն և քաջ նահատակն Վարդան և նոցունց նմանիքն, որք ոչ կարացեալք

5 Մատթ. Ե, 19
13 ՏՏ. չիք Թէ
14 Երեմ. Ժ, 11
17 Զ. յոր ի նմանէ լինի հուր, լինի կաւարծաթոյ
21 Զ. և նոյնպէս... և յայլ նիւթ
24 Զ. և մարդկան աստուածս։ աստուած որ Աս. նոյնպէս մարդկան
26 Զ. զերկրպագունս
26 ՏՏ. պատուել կամ
27 Թերեւս ուղղելի զնոյն ուտէ նա անխնայ
28 Զ. ոչ պակասէ յամենայն նիւթ
28 Զ. նիւթք յերկրէ
31 ԶԱԲՑ. յաղուսոյ
35 Զ. խառնել
36 ԶՏՏ. մի ես մի ըստ միոջէ։ Այսպ. ըստ Ն. Բ.

այսպիսի խարէութեան ծառայել՝ բողոքէին ձեզ հանապազօր, թէ սուտ են պաշտամունքդ ձեր և անմտաց վարդապետութիւնք, և չլսէիք. զի բռնութիւնք՝ զիրաւունս ոչ տան ճանաչել, որպէս և այժմ։ Ցաղագս որոյ ոչ հանգուրժեալք՝ ետուն զանձինս իւրեանց ի մահ և պսակեցան, որոց և մեք քաջալերիչք էաք և արգարև ճշմարիտ վարդապետք նոցա»։

Եւ ասացեալ դայս ամենայն սրբոյ առն Աստուծոյ Ղևոնդի՝ որպէս ընդ մի բերան գովեցին սուրբ քահանայքն մեծաձայն բարբառով և ուրախ եղեն յոյժ։ Եւ լուեալ զմեծաբարբառ գովութիւն սրբոցն, և զբերկրումն երեսաց նոցա տեսեալ անօրէն Միհրներսեհի և այլ աւագանւոյն Արեաց, որ նստէին առաջի նորա՝ ի ցասումն բարկութեան եղեալ, ասէ ցնոսա. «Ոչ հրամայեն մեզ օրէնքն մեր ցամնուլ ումեք, մինչ չև ինչ լուեալ ի բերանոյ նորա. արդ՝ զուարթացեալս իմն տեսաք զձեզ ընդ խօսս աշխարհակործանիդ այդորիկ, զորոյ քաջ տեղեկացեալ լուեալ է մեր զամենայն գործս և զկախարդասար վարդապետութիւն դորա, որով կորոյս զպիտանի այրն զքաջն Վարգան և զընկերս նորին. ըստ որոյ արժանի պատրաստեալ պահին գմա չարաչար հատուցմունք և մահք։ Բայց գուք գիտել տուք մեզ, թէ և ձեր նոյն բանք են, զոր մահապարտդ այդ իշխեաց աներկիւղ համարձակութեամբ յանդգնել և խօսել առաջի մեր»։

Եւ սուրբն Ցովսէփ և սուրբն Սահակ ետուն պատասխանի և ասեն. «Զամենայն բանսդ և զպատասխանիսդ, զոր ըստ արժանի իւրոյ սրբութեանդ արար, Աստուծոյ օգնականութեամբն քաջալերեալ, և խօսեցաւ ընդ ձեզ տէրդ Ղևոնդ՝ ի յերկար ժամանակաց բազում անգամ զմտաւ ածեալ հասարակաց մեր ամենեցուն, զոր այսօր դա ըստ իւր աստուածաշնորհ գիտութեանդ գեղեցկապէս յօրինեալ կարգեաց առաջի ձեր՝ խորհեալ էր մեր և խօսեալ. որք ի դոյն միտս ամենեքեան և ի դոյն կամս ամենեքեան կամակիցք եմք, և խնդրեմք զի արժանի լիցուք վճարիլ ի դմին։ Իսկ դու ախտիւ դառնութեան առ զայրացմանդ թշնամանեցեր զդա։ Երանի՜ այնոցիկ, որ մտաց աչօք սրատեսք իցեն և արդարահայեացք. այլ մարմնական ախտիւ մեծամեծք ըմբռնեալ տկարանան, է զի և կրսերք. և դուք զոք այդպիսի ախտիւ մի՛ զայրացնեալ թշնամանէք, զի դուք էք արժանի եպերանաց բազմաց»։

Եւ զայրագնեալ ի վերայ սրբոցն անօրէն իշխանն յաղագս թշնամանացն, որպէս թէ ի թագաւորն կողմն դարձուցին սուրբքն զքրքանսն՝ հրաման ետ դահճացն հարկանել խստապէս շղթայիւք զբերանսն երանելեացն, մինչև լցեալ բերանք նոցա արեամբ՝ հոսէր արտաքս։ Եւ այսպէս վճարեալ արձակեաց զատեանն. իսկ սուրբքն ըստ օրինակի սուրբ առաքելոցն՝ գնացին խնդութեամբ յերեսաց ատենին, զի արժանի եղեն վասն անուանն Քրիստոսի անարգանաց և գանից և պատասխանատուութեան։

ԽԶ. Իսկ զայլս ի կապելոց, որք էին ի տանուտերացն և յաւագ սեպհացն, որք էին ի նմին ատենի՝ հրամայէր Միհրներսեհ դահճացն՝

16 ՁԱԲᴃ. պատրաստեալ պատահին։ Այսպէս բաց ուղղագր. Գᴃ. (բաց Ն. Բ.) 17 Զ. ձերոյն բանք են 20 ՑՑ. սուրբն Իսահակ 31 ՑՑ. չիք զոք 31 Զ. զայրացնել 39 Զ. պատասխանատուութեան

տանել զնոսա և խիստ կապանօք պահել, մինչև ինքնին Թագաւորն, ասէ, առաջի իւր հարցցէ և լուիցէ զոր ինչ խօսին։ Եւ մտեալ ի վաղիւն անօրէնն Միհրներսեհ առաջի Թագաւորին Յազկերտի՝ տալ նմա գիտել զամենայն հարցուածսն իւր և զպատասխանիս քահանայիցն Հայոց։ Եւ սրտմտեալ Թագաւորն՝ հրամայեաց ի վաղիւն ատեան մեծ լինել առաջի իւր, և ամենայն այր, Արի և անարի, և զոր ինչ և ունէր ոք զպատիւ Թագաւորին՝ կազմ առաջի իւր եկեսցեն, և զկապեալսն զամենեսեան ածել առաջեաւ։ Բայց զտղայսն և զմանկունսն ի տոհմէն Մամիկոնէից և Կամսարականացն և որք յայլ տոհմէն՝ հրամայէր անօրինին Միհրներսեհի տալ ի բաց՝ ում և կամեսցի։

Եւ լուեալ զայս ամենայն զինուորքն՝ որ ոք ունէր զպատիւ Թագաւորին՝ վազ անդր հասանէին յատեանն։ Իսկ ուխտանենգ իշխանն Սիւնեաց Վասակ, արկեալ զիւրեաւ զամենայն պատիւս, զոր ունէր ի Թագաւորէն՝ գայր մտանէր ի խորանսն արքունի մեծաւ շքեղութեամբ. քանզի բաց ի պատուոյ Թագաւորացն որ նուազէր նմա՝ այլ ոչ ինչ ի պատուոյ արքունի պիտոյ էր՝ զոր ոչ ունէր. և կարծէր այնուհետև առնուլ զԹագաւորութիւնն մեծ աշխարհին Հայոց։ Եւ զայն ոչ գիտէր Թշուառացեալն, եթէ Տէր հեռացեալ էր ի նմանէ, և այսն պիղծ խեղդէր զնա. և բան սրբոյ առն Աստուծոյ Ղեւոնդի ի նմին ժամու կատարէր ի վերայ Թշուառականին։ Եւ լցեալ Արեօք և անարեօք ամենայն խորանն՝ հրաման տայր Թագաւորն զապստամբսն Հայոց կապանօք ածել առաջեաւ։

Եւ ածեալ կացուցանէին զնոսա առաջի Թագաւորին։ Եւ հարցեալ Թագաւորին՝ ասէ ցնոսա. «Ո՞րպիսի համարձակութեամբ և կամ զի՞նչ զմտաւ ածեալ և կամ ո՞ր պատրանօք և կամ զի՞նչ ոյժ օգնականութեան տեսեալ՝ դիմեցէք յայնպիսի ահաւոր գործ, յորում տեսանէիք զկորուստ անձանց ձերոց և զաշխարհին, որպէս եղև իսկ և տեսէք»։ Եւ լուեալ զայս ամենայն Նախարարացն Հայոց՝ լուռ եղեն առ վայր մի և ոչ ինչ ետուն պատասխանի։ Եւ երկրորդեալ զբանսն Թագաւորին ըստ առաջին հարցմանն՝ խնդրէր ի նոցանէ ստիպով պատասխանի։ Եւ նոցա տուեալ պատասխանի՝ ասեն. «Շնորհեսցէ մեզ բարերարութիւնդ ձեր վայր մի, զոր մեք ի մէնջ ցուցանեմք, լսել ի նմանէ զամենայն ի բնէ զմերոց իրաց զանցումն, զխորհելն և զառնելն. վասն զի ոչ է պարտ ամենեցուն մեզ անկարգ ամբոխիւ խօսել առաջի քո»։

Եւ Թագաւորին և ամենայն աւագանւոյն յօժարութեամբ յանձն առեալ՝ հրամայեաց։ Եւ նոցա յառաջ մատուցեալ զԿամսարականն Արշաւիր՝ ասացին լսել ի նմանէ բովանդակապէս զամենայն. և Կամսարականն Արշաւիր, զօրացեալ ի սուրբ Հոգւոյն, յառաջ մատուցեալ, աներկիւղաբար սկսաւ խօսել առաջի Թագաւորին և ամենայն աւագանւոյն և ասէ.

«Ի սկզբան իսկ զիրացդ զայդոցիկ զպատճառս. յորժամ ի ձեր Թագաւորացդ ի միտս ծնեալ՝ յայտնեցաւ մեզ բանն, և զիրացդ բուռն

6 ՏՏ. չիք ամենայն
15 Չ. ի բաց ի պատուոյ
18 Աց. հեռացուցեալ
20 ՏՏ. չիք և անարեօք
25 ԲԳց. բաց են բոլոր և կամ ո՞ր պատրանօք
26 Չ. դիմեցէք
35 ՏՏ. այսուհետ եւ յետոյ աւագանոյն

հարէք, որում մեզ ծառայել հրամայէիք, և օրէնս իմն հարկաւորէիք ունել մեզ, զոր ոչ մեք և ոչ նախնիք նախնեաց մերոց գիտէին և կամ ծառայեալ էր. և բազում անգամ բողոքեցաք, թէ անհնար է մեզ յանձն առնուլ և ծառայել օրինաց, որոց նախնիքն մեր ոչ ծառայեցին, որ և մտաց մերոց ծանր թուի և արհամարհանք. և այսպիսի ի մէնջ բողոքելոյ՝ ձերոյին իսկ վկայէ անսուտ հրապարակդ։ Եւ իբրև ոչ *կամեցաք լսել, ըստ բռնաւոր կամացդ ձերոց՝ և հարկաւորութեամբ յանձն եւտուք առնուլ զպաշտօնն. զոր շրթամբք առ երկիւղի մեծարեցաք սուտ, կամեցեալ գողանալ վայր մի խաբէութեամբ զերկիւղ ձեր, և արտիւք գարշելի համարեցաք զգործն և ատէաք, եդեալ ի մտի զերծանել հնարիւք և երթալ յաշխարհն մեր և թողուլ դաշխարհն մեր և գնալ կնաւ և որդւովք, և երթալ կորնչել յօտար երկիր։ Զոր նախ քան զամենեսեան ըստ ամենեցուն խորհրդոցն երևելին ըստ աշխարհին իշխանաց, ծառայն ձեր Վարդան արար, զոր գիտեն և վկայեն բանից իմոց արք պարսիկք յաւագ տոհմաց, որ այժմ ողջ են և աստ են առ ձեզ։ Առեալ լոկ զիւր կին և զընտանիս իւր՝ դէմ եդեալ գնաց փախստեայ ի ձերոյ երկիւղէ յերկիրն Յունաց։

«Եւ զգացեալ դայս տեառնդ Սիւնեաց Վասակայ՝ փութով զհետ դեսպանս արար զաւագ տանուտեարսն և սեպուհսն և զսուրբ քահանայսն, և զսուրբ գիրս օրինաց մերոց կնքեալ իւրովք մատանեաւ, որով և երդուան իսկ՝ ետ տանել առ նա. ընդ որս յղեաց և զիս։ Եւ գրեաց ի նամակին առ նա այսպէս, թէ «Զի՞ ես փախուցեալ, և կամ զի՞նչ է երկիւղդ քո, յորմէ դուդ երկնչիս, և ինչ ոչ յայտնեցեր. արդ մի՛ փախչիր և մի՛ երկնչիր յումեքէ. զի թէ յԱրեաց տեառնէն և ի նորին ուժոյ զարհուրեալ ես՝ մի՛ երկնչիր. դարձի՛ր, և նամակ առնեմք առ կայսր, և զանձինս մեր նմա ի ծառայութիւն տամք. և նա հաւատայ, թէ զայսպիսի մեծ աշխարհ նմա մե՛ր կամաւ ի ծառայութիւն տամք՝ խնդութեամբ և կամաւ յանձն առնու, և զօր տայ մեզ. և նոքա և մեք միաբանեալք՝ միշտ աշխատ ունիմք զտէրն Արեաց և զԱրիս։ Ապա թէ կայսր այլազգազգոյնս ինչ խորհի և չճանաչէ զիւր օգուտն՝ և ես մինչ Վրաց մարզպանն էի և դուռն Աղուանից յիմում ձեռին էր՝ բազում զօրագլուխք Հոնաց ընդ իս բարեկամացան ուխտիւ և երդմամբ, և այսօր նովին երդմամբ երթեւեկեն առ իս. և հարկքս ամենայն աշխարհիս Հայոց առ իս են, և գործակալք ամենայն յիմում ձեռին են, և այլ ևս բազում կարասի, զոր ի պարսիկ գործակալացն հանի՝ որ աստ ի Հայս էին, և յիմում գանձի կայ. յորմէ թէ զմի մասն Հոնաց տամ տանել՝ անտի ա՛յնչափ սաստիկ հանեմ Հոնս, որչափ զի հողն Պարսից չբաւիցէ նոցա յաւարի»։

«Եւ գրեալ զայս ամենայն երդմամբ Վասակայ Սիւնեաց տեառն՝ դարձոյց բռնի զՎարդան, որ էր մոտեալ յօտար իշխանաց իշխանու-

2 ՁԱs. զէտեն
13 Աs. ընդ ամենեցուն... ընդ աշխարհին
18 ՅՅ. զգացուցեալ
20 Աs. մատանեով
21 ՁԱs. ընդ որ
22 Գs. զի՞նչ երկիւղդ
24 Կամ ըստ Զ. յարեաց տեառնէն
30 ՅՅ. օգուտն
31 Աs. այսպէս եւ նորէսր յունաց, յոյնս։ Այսպէս ըստ Զ.: ԲԳs. ուղղագրել են նոյնպէս
33 Աs. հարկս
39 Զ. բանին
39 ՅՅ. էր մոտեալ օտար իշխանաց, որք ոչ են

թիւն, որք ոչ են հնազանդեալ ձերում իշխանութեանդ։ Եւ նամակն զոր գրեաց առ Վարդան Սիւնեաց տէրդ՝ ողջ է, և կնիք աստ առ մեզ։ Տեսանել հրամայեցէք։ Եւ յաղագս որդւոցն իւրոց այսպէս ասէր, թէ «Որ ի Հայս Պարսիկ է՝ զամենեսեան կապանօք յամուր բերդս դնեմ, մինչև հարկաւ արքայն զիմ որդիսն ի բաց արձակիցէ»։ Յորս կալաւ արս սակաւս ի Պարսկաց, առ վայր մի կապեաց. և յորժամ ինքն նենգաւորութեամբ զմերոյ կորստեան խորհուրդ ի միտ արկեալ տարաւ ի գլուխ՝ ապա զնոսա ի բաց արձակեաց։ Նամականի արարեալ առ կայսր և առ այլ աւագանի դրանն և առ սպարապետն Անտիոքայ. և զՎահան Ամատունի և զայլս ի նախարարացն յիւրաքանչիւր տոհմէ ի Հոռոմս արձակեաց. և զՎարդան և զմեզ գնգաւ յԱղուանս ի կռիւ գումարեաց. և ինքն յանզգայս մեզ նենգեալ՝ յայս չար մղեաց. և զայնպիսի պիտանի զձեր ծառայ սպան, և այնչափ բազմութեան Պարսից և Հայոց կոտորածի և աշխարհին կորստեան եղև պատճառ։ Եւ արդ՝ ինքն զարդարեալ աւադիկ որպէս բարեգործ նստի ի միջի ձերում անհոգութեամբ։ Բայց դուք զնամականին զամենայն, զոր գրեալ և կնքեալ է առ կայսր և առ ամենայն աշխարհն Հոռոմոց և կամ առ այլս բազումս՝ տեսանել հրամայեցէք զայն. և որպէս ձեզ Արեաց կամ է՝ հրաման տուեալ կատարեցէք ի վերայ մեր։ Զի ուր գրեալք և կնքեալք ի միջի են, որպէս ձեր արդարութիւնդ խնդրէ, աւելորդ բանից և շատխօսութեան պէտք անդ ոչ են»։

Եւ լուեալ զայս ամենայն կարգաւ ի Կամսարականէն Արշաւրայ արքային Պարսից և ամենայն աւագանւոյն դրանն, տեսեալ և զնամականին, զոր գրեալն էր Վասակայ Սիւնեաց տեառն, և ի վերայ հասեալ՝ մեծապէս հիացեալ թագաւորն Յազկերտ և ամենայն իշխանք դրանն զարմացան։

ԽԶ. Յայնժամ յառաջ կոչեցեալ թագաւորին զիշխանն Սիւնեաց Վասակ՝ սկսաւ սաստիկ և առաւելապէս զայրացեալ սրտիւ խօսել ընդ նմա և ասել. «Է՛ արդարև լուեալ մեր զայդ ամենայն նենգաւոր իրս քո և զարարուածս. բայց արդ ա՛ղէ ասա. զի՞նչ խորհելով և կամ ո՞րպիսի ինչ զմտաւ ածեալ զայդպիսի իրս վնասից իշխեցեր ձեռնարկել և գործել. քանզի դու էիր իշխան և գլուխ աշխարհին Հայոց. նախ քաջալերել բանիւ զմարդիկն, զոր ի նամակացն գրելոց ի քէն, զոր տուեալ մեր կարդալ՝ ստուգութեամբ տեղեկացաք. երդմնեցուցեալ զվաստակաւոր և զայնպիսի պիտանի ծառայն մեր զքաջն Վարդան և զընկերակիցս նորա՝ խաբեցեր նամականիւ առ կայսր և առ նորին սպարապետն. երդմնեցուցեալ նենգով զայնպիսի քաջ և պիտանի զվաստակաւորսն մեր զՎարդան և զայլ ընկերս. և դարձեալ գումարեալ զնա զօրու յԱղուանս՝ ի վերայ Պարսկաց գումարտակին համարձակեցուցեր երթալ. նենգութեամբ մատնեալ զաշխարհն Արեաց կորուսեր և կոտորածի այնչափ իմոց ծառայից Արեաց և անարեաց եղեր պատճառ։ Զի զայնպիսի

3 ՑՑ. Եթէ ոք ի Հայս
5 ԲԳՑ. ուղղագրեալ հին յորոց կալաւ։ Այսպէս ըստ ՁԱՑ. (Յորս=ի բերդս)
12 ԳՑ. յանզգայ
12 ՑՑ. զմեզ նենգեալ
17 Չ. աշխարհին
20 ՑՑ. չիք խնդրէ
28 ՑՑ. տեսեալ զնամականին
31 Չ. յայդպիսի
34 Չ. տեղեկացեաք

*ծառայ մի զմեր, որպէս զՎարդան, և կայսր և կամ Հոնաց արքայ բռնութեամբ յինէն հանել կամէին՝ ամենայն Արեաց ուժովս կռուէի, և չտայի հանգչել՝ մինչև այսրէն յիս հանէի. և արդ՝ դու ընդ քո ձեռն զայնպիսի օգտակար ծառայն սպաներ, և զմեծ և զպիտանի աշխարհ մի կորուսեր, և դու իշխեցեր լրբաբար առ մեզ, իբրև անգէտս քո նենգաւոր գործոյդ, գալ և զմեզ տեսանել։ Բայց զայս գիտեա, զի յայսմ հետէ Սիւնեաց տէր չես. և զչարիսն ամենայն, զոր խորհեցար և կատարեցեր՝ կուտեսցի ամենայն ի վերայ չար գլխոյ քո։ Եւ զհարկեր զիմոյ աշխարհին Հայոց և կամ զՊարսկացն զոր սպաներն, և զկարասին այնչափ զոր հաներ՝ հրամայեցաք խնդրել ի տանէ քումմէ և յորդւոց քոց՝ մինչև վճարեսցի ամենայն»։*

*Իսկ ողորմելի ուխտադրուժն Վասակ թէպէտ և կամէր 'խօսել ինչ և տալ պատասխանի՝ չգնէր ոք բնաւ ունկն բանից և կամ ախորժէր. վասն զի ուխտանենգութիւնն սրբոյ Աւետարանին և բանն անիծից երանելւոյն առն Աստուծոյ Ղեւոնդի եկեալ հասեալ ի վերայ նորա՝ պատեալ փակեալ պաշարեցին զնա։ Որ թէպէտ և կայր ինչ վաստակս առնն առ Պարսիկս, և ջանայր ցուցանել ի ժամուն՝ և այն ոչ ինչ էր օգուտ, այլ առաւել ևս ի դատախազութիւն եղեալ վնասէին նմա։ Եւ կատարէր առ նա բան սաղմոսերգին, թէ «Ի դատաստանէ իւրմէ ելցէ դատապարտեալ, և աղօթք նորա ի մեղս դարձցին»։ Հրաման տայր թագաւորն Ցազկերտ անդէն զառաջեաւ կողոպտել ի նմանէ թշնամանօք զամենայն պատիւն զոր ունէր. և ձազկեալ զնա պայկացն մերկացուցին զնա. մերկացուցեալ ի նմանէ զզարգարանս պատուոյ տէրութեանն՝ հանէին խայտառականօք արտաքս քան զհրապարակն արքունի։ Եւ ի նմին աւուր զթշնամին նորա, զսեպուհն սիւնի, զուրացողն զՎարազվաղան՝ տէր ի վերայ աշխարհին Սիւնեաց կացուցանէին, որոյ որքան ժամանակս կալեալ զիշխանութիւնն Սիւնեաց՝ բազում արարեալ անիրաւութիւնս և բազում տունս մոխրանոցս շինեալ յաշխարհին Սիւնեաց, ի զայթակղութիւն տանն իւրոյ, բազմաժամանակեայ տանջեալ ի դիւէ ըստ յառաջագրելոցն՝ դառն մահուամբ սատակեցաւ չարաչար։*

*Եւ նենգաւորն Վասակ կացեալ ի դրանն ամս ինչ կարի վշտագին և նեղութեամբ բազմաւ՝ մաշէր զաւուրս իւր հառաչելով և յոգւոց հանելով զամենայն օր և զժամ. մինչև թշնամանակերպ ձաղանօք սփռեալ ղթաթս ձեռաց իւրոց՝ ինքնին զիւրոյին ծեծէր զդէմսն, ասելով. «Ահա ընկա՛լ զայս ձաղսս, ասէր, զոր ետ բերել քեզ ուխտանենգութիւն սրբոյ Աւետարանին և արիւն նահատակութեան սրբոյն Վարդանայ Մամիկոնէի և այլոցն ցանկալի հաղորդելոցն ընդ նմա, որոց ժառանգեալ զյաւիտենից կեանսն՝ ընկալան զանուն բարի յերկրի և անանց ազգաց յազգս իւրեանց։ Իսկ դու, ասէ, մեղաւո՛ր անձն իմ, կեաս խղճիւ և ցաւովք մտաց զսակաւաթիւ զաւուրս կենցաղոյս, և պատրաստեալ պահիս մշտնջենաւոր և անանց գեհեններն»։ Եւ զայսպիսի բանս հառաչանաց նորա և լալոյ*

4 ՑՑ. չիք օգտակար | 20 Սաղմ. ՃԸ, 7 | 38 Զ. յերկիր
6 Զ. գործոյս | 23 Զ. զարդարանս | 38 ՑՑ. յազգաց յազգս
7 Աց. զչարիսն զամենայն | 24 ՑՑ. Հանեն | 39 ՑՑ. ցաւօք
18 ՑՑ. չիք բնաւ | 32 ԶԱց. յոգւոց |

մինչև յօր մահուան իւրոյ՝ խօսէին ընդ մեզ զայս արդարապատումն սպասաւորք նորին իշխանին Վասակայ։ Որոյ և վախճանն իւր անդէն յերկիրն Պարսից վճարէր, ըստ բանի սրբոյ առն Աստուծոյ Ղևոնդի։

ԽԷ. Իսկ զսուրբ քահանայսն Աստուծոյ, զտէր Յովսէփ կաթողիկոս, և զտէր Սահակ Ռշտունեաց եպիսկոպոս, և զերանելի երէցն զտէր Ղևոնդ, և զտէր Մուշէ, զդրան երէցն Ներշապհոյ Արծրունեաց տեառն, և զտէր Սամուէլ երէցն Արածայ, և զտէր Աբրահամ սարկաւագ, և զտէր Արշէն երէց Եղեգեկի, և զտէր Քաջաջ սարկաւագ, — զսոսա ութ քահանայս. և զքրիստոսասէր կապեալ նախարարսն Հայոց, որոց անուանք են այսոքիկ. ի տոհմէն Սիւնեաց երկու եղբարք՝ Բաբկէն և Բակուր, ի տոհմէն Արծրունեաց Ներշապուհ և Շաւասպ և Շնգին և Պարգև և Տաճատ, ի տոհմէն Մամիկոնէից Համազասպեան և Համազասպ և Արտաւազդ և Մուշեղ, ի տոհմէն Կամսարականաց Արշաւիր և Թաթ և Վարձայ, ի տոհմէն Ամատունեաց Վահան և Առանձար և Առնակ, ի տոհմէն Գնունեաց Ատոմ, ի տոհմէն Դիմաքսենից Թաթուլ և Սատոյ, երկու ևս այլովք տոհմակցովք, ի տոհմէն Անձևացեաց Շմաւոն և Առաւան, ի տոհմէն առաջին Առաւեղենից Փափակ և Վարազդեն և Դատ, ի տոհմէն Արծրունեաց Ապրսամ, ի տոհմէն Մանդակունեաց Սահակ և Փարսման, ի տոհմէն Տաշրացեաց Վրէն, ի տոհմէն Ռոփսենից Բաբիկ և Յոհան. —և զսոսա երեսուն և մի այր ի նախարարացն Հայոց՝ հրաման տայր թագաւորն Յազկերտ խիստ կապանօք պահել անդէն ի Վրկանի, մինչև յամս վեշտասաներորդ թագաւորութեանն իւրոյ։

ԽԸ. Եւ յամի վեշտասաներորդի թագաւորութեանն իւրոյ Յազկերտ չու արարեալ ամենայն բազմութեամբ իւրով խաղայր ի պատերազմ ի վերայ Քուշանաց. հրամայէր և զկապեալսն Հայոց, զքահանայսն և զնախարարսն, խաղացուցանել ընդ իւր ի Վրկանէ։ Եւ ելեալ յԱպար աշխարհ, և եկեալ ի շահաստանն որ անուանեալ կոչի Նիւշապուհ՝ հրամայէր պահել անդ զկապեալսն Հայոց, զքահանայսն և զնախարարսն, ի դղեակ շահաստանին Նիւշապուհ։ Բայց զերանելի զերկու քահանայսն, զտէր Սամուէլ և զԱբրահամ, հրամայէր ընդ իւր խաղացուցանել. զոր չարաչար վշտով և բուռն կապանօք և գանիւ տայր նեղել հանապազօր, ահ և երկիւղ արկանել ի վերայ քրիստոնէիցն, որք ընդ նմա ի կարաւանին էին։ Եւ հասեալ ի սահմանս թշնամեացն՝ և ոչ սակաւ մի մասամբք կատարէին խնդիրք թագաւորին, այլ ամենայնիւ նկուն եղեալ դառնայր ամօթալից, կորուսեալ ի զօրաց իւրոց արս ընտիրս և ականաւորս, նոյնպէս և յայլ ռամիկ այրուձիոյ։ Քանզի ոչ դէմ յանդիման ճակատեալ թշնամեացն պատերազմէին ընդ զօրսն Պարսից, այլ յեղակար-

3 ՏՏ. ըստ բանի առն Աստուծոյ սրբոյն Ղևոնդի
5 ՏՏ. տէր Ղևոնդ, և զտէր Մուշէ դրան երէցն (Աs. Երէցն)
9 ՏՏ. քրիստոսասէր կապեալ նախարարքն։ Չ. զքրիստոսասէր կապեալ նախարարքն
11 ՁԱs. և Շնդէն
11 ԲԳs. Շնգէն՝ից յետոյ աւելացնում են Մեհրուժան
14 ՁԱs. առանձար և սրոնակ
17 Չ. և Վարազ դենդադ։ Աs. Վարազդեն և Դադ։ Այսպ. բայց ուղղագրութեամբ ԲԳs.
18 Չ. Բարեկ
19 Աs. Յոհան
21 Չ. ի Վրկանի
29 Չ. ի դղեկ
30 Աs. զապրահամ
34 Կամ ըստ Չ. յամենայնի
37 Չ. պատերազմին

ծուխն անկեալք ի վերայ միոյ միոյ թեւի՝ հանէին ընդ սուր զբազումս, և ինքեանք դարձեալ անվնասք աներկոյթք լինէին։ Եւ այսպէս ի բազում աւուրս արարեալ՝ վատնէին սաստիկ հարուածովք զզօրսն Պարսից։

Եւ թագաւորին Յազկերտի տեսեալ զայնպիսի թեթեւութիւն ծանականաց իւրոց, յանհնարին տրտմութիւնս ընկղմեալ մաշէր. մտայոյզ եղեալ խնդրէր գիտել, թէ վասն որոյ պատճառանաց եղև դիպեալ նմա այնպիսի ծանր թեթեւութիւն։ Եւ կացեալ ի տարակուսի՝ ձգէր զպատճառսն մերթ յանմիաբանութիւն գնդին իւրոյ և մերթ ի մոգուցն ծուլութիւն, թէ «Ուրեմն ոչ կարացին ընծայիւք և արժանաւորապէս զոհիւք հաճել զմիտս աստուածոցն. որոց ցասուցեալ՝ ոչ կամեցան օգնել մեզ, այլ թողեալ ի ձեռանէ՝ զօրացաւ կողմն թշնամւոյն, և մեք վատնեալք դարձաք լի ամօթով»։ Եւ մոգուցն իմացեալ զտրտմութիւն թագաւորին, խորհուրդ ի մէջ առեալ, խրատու անօրէն հազարապետին Միհրներսեհի՝ սկսան խօսել ընդ թագաւորին և ասեն. «Արեւուց քաջ, մի յածեսցին միտք քո յայլ խորհուրդս վասն վատ պատահմանց, որ դիպեցաւ մեզ ի թշնամեացն. այլ ի ցասմանէ աստուածոցն, որ կարի խիստ զայրացեալ են մեզ յաղագս աստուածասպան քահանայիցն Հայոց, որ վաղ արժանի էին մահու, և ձեր անփոյթ արարեալ՝ կան կենդանի մինչև ցայսօր։ Զի եթէ լոկ մարդասպանք իսկ էին, և դուք այդքան յերկարեալ պահէիք առանց մահու՝ սակայն կարի ծանր էր և արժան մեղադրութեան գործն. թող թէ յաստուածս իշխեցին ձգել զձեռս՝ սպանանել, և նոքա կեան և զարև տեսանեն. յիրաւի պատժեալք մեք յաստուածոցն գտանիմք անխնայ»։

Եւ լուեալ զայս թագաւորն ի մոգուցն, և կարծեցեալ ստոյգ զսուտ պատճառս նոցա, և ի մեծ սրտմտութիւն գրգռեալ ընդ կապեալ քահանայսն, հաշուելով թէ արդարև վասն նոցա եղև այսչափ կոտորած զօրացն իւրոց՝ վաղվաղակի հրաման տայր՝ նախ զնոսա, որ ընդ իւր քահանայքն էին, զսուրբ երէցն Սամուէլ և զսուրբ սարկաւագն Աբրահամ, յաներևոյթ տեղի ինչ տանել, շատ ի կարաւանէն հեռի, և անդ գլխատել, յաղագս չգտանելոյ ուրուք ի քրիստոնէից և պատուելոյ զոսկերս նոցա։ Բայց յառաջ քան զսպանանելն զնոսա՝ հրաման տայր՝ զաջ ձեռն կտրել զսրբոյն Սամուէլի և դնել ի ձեռին տեառն Աբրահամու, նոյնպէս հրամայեաց՝ և զսրբոյն Աբրահամու կտրել զաջ ձեռնն և դնել ի ձեռին տեառն Սամուէլի, «Փոխանակ, ասէ, զի իշխեցին ձգել զձեռս իւրեանց ի պատուական կրակն և սպանանել», և ապա սրով կտրել զգլուխս նոցա։ Եւ այսպէս վկայեցան սուրբքն յամսեանն հրոտից, որ օր եօթն էր ամսոյն, ի գաւառին որ անուանեալ կոչի Վարդգէս։

ԽԸ. Յետ այսորիկ դեսպանս հրամայէր առնել թագաւորն Յազկերտ վաղվաղակի և յոյժ փութով յաղագս երանելւոյ եպիսկոպոսին

3 Չ. բնագրում վատնէին, (տ՚ի վրայ ջնջման նշաններով). լուսանցքում ուղղած ըն, (ը՚ի վրայ ջնջման նշանով). =վանէին

12 ՏՏ. զտրտմութիւն

15 ՏՏ. յայլ խորհուրդ

21 ՏՏ. յաստուած

25 ՉԱՏ. ի մեծ տրտմութիւն։ Այսպէս ըստ ուղղագրութեան ԲԳՏ.

30 Չ. գլխատեալ

33 ՏՏ. սրբոյն

36 Չ. բնագրում հրոտից, լուսանցքում ուղղած Հրոտից

Բասենոյ Թաթկայ, որ կայր ի կապանս յԱսորեստանի, ի բազում ժամուց տանջեալ չարալլուկ տանջանօք. և հրամայէր սպանանել անդէն և անհետ առնել զմարմին սրբոյն, յաղագս չգտանելոյ ուրուք ի քրիստոնէից, ի պատիւ տանելոյ զոսկերս նորա։ Եւ հասեալ դեսպանին անդ՝ կատարեալ մոգուցն զհրամանն և լցեալ խնդութեամբ. բայց յառաջ քան զվախճան սրբոյն՝ քերեցին նախ տանջանօք զաւուրս բազումս զմարմինն սրբոյն յոսկերացն, և ապա ըստ հրամանի թագաւորին հատեալ սուսերաւ զգլուխն և սպանին։

Ծ. Նոյնպէս տայր հրաման և վասն այլ քահանայիցն սրբոց, զորս թողին կապեալս ի Նիւշապուհ ի դղեկին։ Տայր հրաման Վեհդենշապհոյ ամբարապետի առնուլ ընդ իւր երկուս ևս այլ օգնականս յաւագանւոյն, զՋնիկան մայպետն արքունի, և զՄովան անդերձապետ՝ ի ձեռանէ մովպետան մովպետի, երթալ փութով յառաջ քան զինքն, և հանել զսուրբ քահանայսն ի բանտէն, ուր էին կապեալք նոքա և նախարարքն Հայոց, և տանել զնոսա հեռի ի քաղաքէն յանկոխ և յանապատ տեղի, և անդ չարալլուկ տանջանօք, որպէս և կամեսցի, բարձցէ զնոսա ի կենացս։ Բայց յոյժ պատուիրանաւ զգուշացուցանէր թագաւորն Վեհդենշապհոյ՝ ոչ տալ ումեք գիտել, ո՛չ զառնուլ և զգնալ զնոսա ի քաղաքէն, և ոչ զճանապարհն ընդ որ տանիցին, և ոչ զտեղի մահուանն ուր սպանանիցեն զնոսա։ «Քանզի լուեալ է, ասէ, մեր ստուգութեամբ, թէ աւելի, ասէ, վասն այսր կարի խնդան ի մահ՝ որք ի մոլար աղանդն են քրիստոնէից. զի այդպէս ասեն, թէ ոսկերք այնոցիկ, որք յաղագս Աստուծոյն իւրեանց մեռանին, և որ ոք, ասէ, յիւրում տանն ունիցի ինչ անտի, թէ և փոքր խրխոր ինչ ունի՝ և վատ ինչ և խորամանկ ի նա և ի նորա տունս և ի սիրելիս ոչ մերձենայ։ Այլ և զայս ևս, ասէ, ասեն, թէ ի բանս ատենի աջողութիւնս տան և իմաստս և քաջութիւնս գտանել և պահպանութիւն։ Եւ մինչև ի մահ ջանան անձամբ և կարասւով գոնէ տատամի մի կամ եղունկն մի գտանել յայնպիսեացն, և ի տունս իւրեանց տանել։ Այլ և զայն ևս ի հաւատարիմ մարդկանէ, որք ի մոլար աղանդին նոցա են եղեալ, ապա զմեր լուսաւոր և զարդար օրէնս ունին, տեղեկացեալ եմք, թէ կանայք նոցա, ուստերք և դստերք, և զզարդս ոսկւոյ և արծաթոյ և մարգարտոյ տարեալ ուրուք նոցա, թէ կարի փոքր ինչ յոսկերաց այնր մեռելոց տայր նոցա՝ զայն մեծարգոյ և պատուական համարին։ Եւ զի՞նչ ևս այլ աւելի ասեմ. և զհարց և զմարց զարդս, զոր յանուն նոցա արարեալ է մեծաւ աշխատութեամբ, ճիտակս և կամ զտակս ինչ մարգարտոյ կարի մեծագնոյ՝ կանայք քրիստոնէիցդ չհամարին ինչ հանել յանձանց և տալ և գնել փխրանս ինչ յոսկերաց այնպիսեացն։ Այլ դուք ուշիմ լերուք, և յայնմ վայրի եղիցի սպանումն նոցա, ուր յայնպիսեաց կարծեաց և պատուոյ՝ սպանեալքն և որք սպասեն ոսկերացն՝ վրիպեալ լիցին»։

Եւ զայս ամենայն բանս լուեալ ի թագաւորէն ամբարապետին

9 ՁԱց. Նոյնպէս և տայր հրաման վասն
10 ՁԱց. վեհդէն շապհոյ
11 Զ. Նախ ամբարակա- պետի, յետոյ ջնջած և կա՛ն
13 ՁԱց. մովպետեան
25 ՏՏ. չիք ասէ
26 ՏՏ. յաջողութիւնս
32 Զ. մարգարտւոյ
38 Աց. ուշիմ

Վեհդենշապհոյ յԱպար աշխարհին, և մտեալ ի դղեկ շահաստանի Նիւշապհոյ՝ խօսէր բանս սուտս, և տայր աւետիս նենգութեամբ, թէ «Արքայից արքայ հրաման ետ ինձ՝ զհայ երիցունսդ որ աստ ի կապանս են՝ արձակել յաշխարհն իւրեանց, և վասն այլ ազատանւոյն որ ի Հայոց են՝ պայման արար, թէ ես յորժամ գամ՝ արձակեմ ի կապանաց»։ Եւ լուեալ զայս բազմութեանն որ էին ի շահաստանին՝ կարծէին զոլ արդար զխօսեցեալսն ի Վեհդենշապհոյ։ Բայց սուրբ քահանայքն իբրև լուան՝ իսկոյն գիտացին ազդեցութեամբ սուրբ Հոգւոյն զհասեալ բարի ժամ յուսոյ նահատակութեան իւրեանց. սկսան խօսել ընդ Նախարարսն Հայոց, ընդ որս կապեալն էին, և ասեն. «Թէպէտ և կամէր արդեօք Վեհդենշապուհ թաքուցանել զճշմարտութեան բանն՝ ոչ կարաց. քանզի երկոքեան մեր այդ իրք այդպէս կատարելոց են, որպէս և լուանն իսկ ի նմանէ ամենեքեան. զի և դուք իբրև ողորմութեամբն Քրիստոսի արձակելոց էք ի կապանացդ, և մեք զօրութեամբ սուրբ Հոգւոյն կատարեալ զտաղտուկ զաւուրս կենցաղոյս պանդխտանոցիս՝ գնալոց եմք ի բնիկ աշխարհն մեր և յընտանիս, ուր դասք առաքելոցն են և օթևանք սրբոցն, ի բանակ տանուտեառնն և արարչին ամենեցուն Քրիստոսի, որ ասացն. «Ուր եմ ես՝ անդ և պաշտօնեայն իմ եղիցի»։

ԾԱ. Եւ սոցա դեռ ևս խօսելով զայս այսպէս՝ մի ոմն ի դահճացն, որ սիրելապէս ընդունելութիւնս ունէր ընդ կապեալ Նախարարս Հայոց, լուեալ ճշգրտապէս յերանելի Խուժկէն՝ եկեալ յայտնէր նոցա զստոյգ խորհուրդն, և տայր գիտել զարդարն, թէ որպէս տուեալ է հրաման թագաւորին յաղագս սպանման քահանայիցն։ Զոր ստուգեալ Նախարարացն՝ լային դառնապէս. իբրև ոչ եթէ ոչ կամելով զնահատակութիւն սրբոցն, որում և ինքեանք իսկ փափաքէին լինել արժանի, այլ վասն մնալոյ ի նոցանէ որբք և անմխիթարք։

Իսկ սրբոցն և յառնէն իսկ ճշգրտեալ զիւրեանց հաստատապէս աւետիսն՝ զօրացեալք զուարճանային ցնծութեամբ, և տուեալ փառս Աստուծոյ՝ իսկոյն երեկոյին պաշտամանն պատրաստէին. քանզի և անագանագոյն իսկ էր այնուհետև ըստ այլ աւուրց պաշտամանն ժամ։ Որ քանզի և եկք ամբարակապետին ի շահաստանն ոչ ինչ էին վաղ, վասն որոյ կալ զգիշերն անդէն հարկաւորեցաւ ի շահաստանին։ Եւ սրբոցն կատարեալ զկանոն երեկոյին պաշտամանն՝ վայելէին սուղ ինչ և դոյզն ոռճկոյն որպէս բազմախորտիկս անուշահոտութեամբ. և անուշակ ընթրեացն ուրախութեանն յերկարեալ զուրախութիւն ճաշակմանն մխիթարութեան շնորհիւ, զօրութեամբ Աստուծոյ սուրբ Հոգւոյն, և յարուցեալ յընթրեացն, փառաւորելով և օրհնելով զԱստուած՝ կատարէին զաղօթսն։ Հրաման տային սուրբ քահանայապետքն Աստուծոյ կապելոցն Նախարարաց՝ աղօթից և տքնութեան պարապելոյ ըստ կարգի իւրաքանչիւր ուրուք զգիշերն զայն, ասելով ցամենեսեան այսպէս. «Զի եթէ զոք ի ձէնջ այսօր յուղարկէիք ի Հայս, ո՞չ ապաքէն առ իւրաքանչիւր

4 Չ. յաշխարհս
4 ՏՏ. ազատանոյն
13 ՏՏ. զի դուք
17 ՏՏ. յարարիչն ամենեցուն Քրիստոս
18 Յովհ. ԺԲ, 26
26 ՏՏ. չիք վասն
31 Չ. ամբարակարպետին
31 ՉԱՏ. ի շահստանին
41 ՉԱՏ. յուղարկեալք։ ԲԳՏ. ուղղագրեալ էին յուղարկեալ էիք։—ԳՏ. այսր

սիրելիս Թուղթս ողջունացոյցս և պատգամս ուրախալիցս յղէիք խնդութեամբ. Նաև յաղագս ճանապարհորդելոյ ի ձէնջ ուրուք խնդրէիք յԱստուծոյ՝ ողջամբ հասանել առ իւրաքանչիւր ընտանիս և զեղեալ ձեզ նմա զբանն կատարել։ Եւ արդ՝ աւասիկ յուղարկիմք մեք ի ձէնջ առ Աստուած. խնդրեցէք ամենեքեան ի Փրկչէն Քրիստոսէ և ի սուրբ Նորա Հոգւոյն՝ լինել աներկիւղ քաջալերութեամբ ամենեցուն մեզ արժանի երկնաթռիչ ցանկալի ուղւոյն, տանել ձեզ ողջոյն և զյանձնարարութիւն առ բազումողորմն Քրիստոս և առ սուրբ գունդն առաքելոց և մարգարէից և ամենայն սրբոց։ Որոց միշտ բարեխօսութեամբ թախանձեսցի գորովալից գութ բազումողորմ արարչին Քրիստոսի՝ լինել ձեզ մխիթարիչ և փրկիչ. և արձակեսցէ զձեզ յերևելի կապանացդ յորում էքդ, և ամաչեցուցանէ զնախանձորդս ձեր և զթշնամիս։ Տացէ ձեզ տեսանել զաշխարհն Հայոց և զընտանիս ձեր, և անդ ամփոփեալ զոսկերս իւրաքանչիւր ուրուք զձեր՝ առ ոսկերս հարց ձերոց ժողովեսցէ, և յաներևոյթ կապանաց սատանայի արձակեալ զոգիս ձեր՝ պահեսցէ անմխաս յօր տեսեանն Յիսուսի Քրիստոսի»։

Եւ լուեալ զայնպիսի հրաման ի սուրբ քահանայիցն Քրիստոսի ամենայն նախարարացն՝ ետուն պատասխանի և ասեն. «Ո՞ւմ արդեօք յաղթիցէ քուն յարքայութեանն, ուր ոչ գոյ տքնութիւն և ոչ ծանրութիւն տաղտկութեան. և կամ ո՞ արդեօք ախտացեալ տրտմեսցի յանանց բարութեանն, ուստի մերժեալ են ցաւք և տրտմութիւնք և հեծութիւնք։ Եւ մեզ օրս այս կարապետ և առիթ է աւուրն այնմիկ, ուր վարդապետութիւնք սուրբ քահանայից Աստուծոյ քարոզեալ լսելի լինէր ի միջի մերում։ Եւ տրտմութիւն ընդէ՞ր իսկ բնաւ ծնանիցի ի սիրտս ուրուք, որք արժանի եղաք ցանկ ղծնողս մեր և զհոգևոր վարդապետս ի կենդանութեան մերում ի մարմնի իբրև զհրեշտակս տեսանել, և ի վախճանի իբրև զզուարթունս։ Բայց որ արտասուեմքս փղձկալով՝ որպէս Փրկչին ամենեցուն Քրիստոսի զԵրուսաղէմ տեսեալ կամ զՂազար, զոր յարոյցն ի մեռելոց, թէ ընդէ՞ր իսկ անմահ և անախտ ստեղծուածս յԱրարչէն, գերեալ ի խաբէութենէ թշնամւոյն, դարձեալ ի հող՝ անկաւ ընդ ախտիւ և մահուամբ»։

Եւ այսպիսի բանս աւետալիցս լուեալ ի նախարարացն սուրբ քահանայիցն Աստուծոյ՝ մեծաւ ուրախութեամբ սկսան ամենեքեան տարածել ղձեռս ի յերկինս, գոհանալ զԱստուծոյ և ասել. «Գոհանամք զքէն, Աստուած, որ ի շնորհէ քարոզութեան սուրբ առաքելոցն բազումս ծնար առաքեալս, և ի շնորհէ ճգնազգեցիկ մարտիրոսացն անթիւս ծնար նահատակս. որպէս առաքեալն և խոստովանողն տէրն Գրիգորիոս, արարողն ուղիղ գործոց և ուսուցիչն յստակ և անհեղգ վարդապետութեան, նախանձեցուցեալ զամենեսեան ի բարի նախանձս՝ ծնաւ վարդապետս և անթիւ նահատակս, յոլով միանձունս, անչափ դասս կուսանաց, զամենայն անձն բնաւ տաճար բնակութեան սուրբ Երրորդութեանդ

1 Չ. Թուղտ
5 ՉԱց. խնդրեցաք
7 Չ. անձնարարութիւն
19 Չ. արքայութեանն
22 Աց. կարապետ է և առիթ յաւուրն յայնմիկ։ ԲԳց.... աւուրն յայնմիկ։ Այսպէս ըստ Չ.
24 ՉԱց. տրտմութիւնք
25 Չ. ցանգ
38 Կամ ըստ Չ. վարդապետութեամբ

յօրինեաց։ Գոհանամք զքէն, Փրկիչ, որ ի հօտէն սրբոյն Գրիգորիոսի զոչխարսն առաւել քան զհովիւս բանաւորս արարեր, և զաշակերտս ի ժողովրդենէն առաւել քան զվարդապետս յօրինեցեր գիտունս։ Ահա և մեք այժմ զօրացեալք քաջալերեցաք ի բանից շնորհալից հոգևոր ծննդոցս մեր, հարք յորդւոց, վարդապետք յաշակերտաց, քահանայք ի ժողովրդոց։ Եւ արդ՝ յուղարկիմք ի սոցանէ ուրախութեամբ, որոց արկեալ զմեզ յուղի՝ առ քեզ առաքեն, և ինքեանք մնալով ի մարմնի՝ ընդ քեզ են և առ քեզ, և քև զօրանան։ Պահեա զսոսա ամենազօր աջովդ քո, պարսպեա զնոսա ամրութեամբ սուրբ Հոգւոյդ քո, մխիթարեա զսոսա ուրախութեամբ բանի քո. զխաղաղութիւն քո տուր սոցա և աճեցո ի սոսա զշնորհսն»։

Եւ այսպէս օրհնեալք զերանելի կապեալսն և հզօր ամենակալին յանձնեալ՝ ասեն. «Նա պահեսցէ զձեզ ողջս, և Հոգւովն իւրով սրբով մխիթարեսցէ զձեզ հանապազ։ Եւ դուք մի՛ տրտմիք, այլ ուրախութեամբ ուրախ լերուք յայն որ ասացն, թէ «Ոչ թողից զձեզ որբս. գամ, ասէ առ ձեզ»․ որ եկեալ իսկ է և է ի միջի ձերում. որ արձակէ զձեզ ի կապանացդ յորում էքդ, և պահեսցէ զձեզ յուսով օգնականութեան իւրոյ և տայ ասել ձեզ համարձակաձայն պարծանօք, թէ «Վասն քո մեռանիմք զօրհանապազ. համարեցաք որպէս զոչխար ի սպանդ»։ Եւ ամենատէրն խորտակէ զսատանայ ի ներքոյ ոտից ձերոց, երևելիս և պայծառս ցուցցէ զձեզ ի մէջ ազգիս ամբարշտի, և դարձուսցէ զձեզ ի յերկիր ձեր։ Պահեսցէ զտունս ձեր, սնուսցէ զտղայս ձեր, ժառանգեցուսցէ զաւակի ձերում զվիճակ հարց իւրեանց. նմա փառք և այժմ և յաւիտեանս յաւիտեանս. ամէն»։

Եւ կատարեալ սրբոյն Ղևոնդի զբանս վարդապետութեան և մխիթարութեանս այսօրիկ՝ ըստ հրամանին սրբոյն Յովսէփայ և սրբոյն Սահակայ, որոց և նոցա օրհնեալ զերանելի նախարարսն և զայլ ժողովեալսն ընդ նոսա՝ յանձնեցին զամենեսեան սրբոյ Երրորդութեանն, և կատարեցին զաղօթս։ Եւ եղև ամենայն անձն երանելի կապելոցն նախարարացն որպէս զանձինս այնոցիկ, որք ժողովեալ էին ի վերնատունն և բնակէին ընդ սուրբ առաքեալսն, լցեալք սուրբ Հոգւոյն շնորհիւ, քաջալերեալք և ապաւինեալք ի յոյսն երկնաւոր։

ԾԲ. Եւ մինչդեռ ուրախացեալ ցնծայր ամենայն խոհարան լսողացն, որպէս բազմախորտիկս անուշահոտ ճաշակօք, հոգեշնորհ վարդապետութեամբ առաքելանման վարդապետացն՝ գային հասանէին յանկարծակի բազմութիւնք դահճացն յամբարապետէն, ջահիւք բազմօք սաստկապէս լուցելովք. քանզի ըստ անանց և անփոփոխ ձայնարձակութեան յաստուածային հրամանատուութենէն թուչնոյ՝ ժամ էր այնուհետև հաւուն խօսելոյ. ունելով ընդ ինքեանս բազմութիւն դարբնաց գործւովք ՝արուեստաւորութեան իւրեանց, սալիւք և ուռամրք, կռանօք և խարտոցովք, խարտել և կտրել և ի բաց հանել զերկաթսն ի ձեռաց և յոտից և ի պարանոցէ սրբոցն. և զոր ոչն կարասցեն կտրել խար-

16 Յովհ. ԺԴ, 18
17 Աs. յորում էքք
19 Չ. որպէս զոչխարս
19 Հռովմ. Ը, 36
21 ՁԱs. չիք և
26 ԲԳs. այսեղ եւ . յեօոյ
36 Յովսէփայ
38 Չ. Հրամանատուութենէն
40 Չ. գործովք

տոցօքն՝ ուռամբք ջարդեալ զբեւեռս երկաթոյն, դնելով ի վերայ սալիցն, բեկեալ հանցեն ի բաց։ Քանզի ստուարք էին և ծանունք քան զբնութիւն ամենայն երկաթոյ, որովք զայլ մահապարտսն կապէին, զոր ի նոցա իսկ անուն տուեալ էր առնել մոգուցն, որպէս յանուն արանց վատախրատից և աշխարհակորուսաց և աստուածասպանաց, և մանաւանդ զշղթայս սրբոյ կաթողիկոսին Յովսէփայ. զոր ևս առաւել քան զսաստկութիւն այլոց շղթայիցն ստուարագոյնս ասէին զնորայն և անհեդեդս։

Եւ տեսեալ սուրբ քահանայիցն Աստուծոյ զեկեալս ի դահճացն ընդ Վեհդենշապհոյ, և զբազմութիւն դարբնացն գիտացեալ՝ տրտմեալք խռովէին առ հասարակ. վասն զի ցանկանային երկնահրաւիրակ կոչմանն նոյն զարդու, զոր յաղագս անուանն Աստուծոյ արժանի եղեն կրելոյ զայնչափ ժամանակս կամաւ և ցնծութեամբ ի մարմինս իւրեանց, թէ և հասեալք նովիմբ ի տեղի նահատակութեանն, ուր եղեալք արժանիք յաւիտենից փառացն, անդ ապա դնելով յետս միանգամայն զշղթայսն և զկապանս երկրային ծանրութեանց այսր աշխարհիս կամէին ախորժելով։ Քանզի զոր օրինակ մոլեկան փառացն ցանկացողք, արք և կանայք, որք անյագութեամբն համակեալք ոսկւովք և պատուական ակամբք և մարգարտովք, կապեն ախորժելով զիւրոյին անձանց զձեռս և զոտս և զպարանոց. զորս թէ ոք ի թշնամեաց և կամ ի բռնաւոր իշխանաց կապէր առ վտանգի և նովիմբ տայր կալ և չհանել ի բաց՝ առատանային փղձկալով, և չունէին ժոյժ և առ վայր մի. և արդ ինքեանք զինքեանս կապեն, և չհամարին ծանր և ոչ զգան, այլ և զոր յայլսն տեսանեն յայնպիսի նիւթոյ՝ նախանձին, թէ ընդէ՞ր ոչ և այն ևս ի մերում զարդուս չէ. բայց իբրև այլոց կայ, ես լի՛ւ երևիմ քան զոք աւելի. և թէ կուտէր ոք զամենայն նիւթս աշխարհիս պատուականութեան ի վերայ այնպիսւոյն, մինչև հեղձամղձուկ եղեալ խեղդէր՝ շատս չասէր։ Բայց և ոչ այնպիսիքն երևէին պաճուճեալք անցաւոր զարդուքն, այնպէս գեղեցիկք և շքեղք և ամենայն տեսողաց պատուականք, որպէս երևէին հայրանման որդիք նահատակին Գրիգորի ցանկալի շղթայիւքն՝ երջանիկք և հրեշտականմանք, զոր ունէին պարծանօք և խնդութեամբ ի սուրբ ձեռս իւրեանց և ի պարանոցի։ Յորս մատուցեալ դարբինքն և ի բազում ժամս ջանացեալ խարտոցօք և այլ ազգի ազդի հնարիւք՝ և ոչ կարացին կտրել զստուարութիւն բևեռացն. յետոյ ապա եդեալ ի վերայ սալիցն և ուռամբք ջարդեալ՝ հազիւ զերծուցեալ հանէին զերկաթսն ի մարմնոյ սրբոյն, չարաչար կոտորելով և վիրաւորելով զմարմինս նոցա. որք զահագին ցաւս վշտացն առ ոչինչ համարեալ. այլ և ձգտեալ յերկարէր գործն մինչև յերրորդ ժամ աւուրն, հանդերձ ընդ նոսա կապելովք նախարարօքն Հայոց աղօթիւք և փառաւորելով զցաւացածոյցն զՔրիստոս օրհնէին։

1 ՑՑ. զբեւեռ
6 ԱՑ. շղթայս։ ԲԴՑ. շղթայք։ Այսպէս բաց Զ.
10 ԱՑ. վեհդէնշապհոյ
17 ՑՑ. չիք մոլեկան
24 Զ. նախանձէին'ր նախ գրուած՝ ախտանէին, յետոյ ուղղած այսպ.
24 ՑՑ. ընդէ՞ր ոչ այն
25 Թերևս ուղղելի բայց իբր և այլոց կայ, կամ բայց իբրև և այլոցկայ
25 ԶԱՑ. քան զոքն։ Այսպ. բաց ուղղագր. ԲԴՑ.
37 Զ. ձգտեալ

*ԾԳ. Յայնժամ հրաման տայր Վեհդենշապուհ և որք ընդ նմա օգնականքն էին՝ կոչել ի ծածուկ ի գիշերի զականաւոր արս շահաստանին, նոյնպէս և զերևելիս ոմանս ի մոգուցն. և պատուիրէին նոցա հրամանաւ արքունի. «Դի՛ք, ասէ, զկեանս ի մտի զիւրաքանչիւր անձին և տան, և յիշեցէ՛ք զերկիւղ Թագաւորաց, որք նման աստուածոց իշխեն սպանանել և կեցուցանել, պատուել և անարգել. և մի՛ զոք յօրէս յայսմանէ մինչև ցբովանդակել ամենայն կարաւանին արքունի և ի Վրկան հասանել, զհայ այր, ուստի և իցէ, կամ ի մանկտւոյ կապելոց նախարարացն Հայոց, որ ի շահաստանիս են, և կամ ի մանկանց կապելոցս երիցանցս, զորս մեք այսօր ի բաց տանիմք, և կամ բնաւ հայ զոք, որ յանկարծ թէ և այլուստ ուստեք եկեալ իցէ այսր բնակել՝ թողուլ արտաքս քան զդուռն շահաստանիս. և գտանիցի՛ք առանց ամենայն թողութեան ազգաւ հարեալք և դառն մահու մեռանիցի՛ք ի Թագաւորէն, և մեր անձինք անպարտ լիցին յայնպիսի չարեաց, որ ի վերայ ձեր հասանիցեն. այլ զգուշացարո՛ւք երկիւղիւ և հոգալով հասուցանել բարի շնորհակալութիւն ի վերայ անձանց և մեր և ձեր հասարակաց»: Բանզի ըստ հրամանի Թագաւորին երկնչէին, թէ մի՛ գուցէ ոք ի մանկանց նախարարացն կապելոց, գաղտ այլակերպեալ, հետազօտիցէ զայն ճանապարհ գնացից նոցա: Զոր Փրկիչն Քրիստոս ընդ նոսին իսկ առաքեալ էր ղցուցակ և զլայտնիչ աշխարհի՝ զանձուն մեծի, և նոքա, նման Հրէիցն, Պիղատոսի զօրուն հրամայէին պահել զգերեզմանն, զոր Բանն Աստուած հրեշտակօք բացեալ յայտնէր զինքն հաւատացելոց յանունն նորա. որ և ասացն և կատարեալ երևեցուցանէ անսուտ զասացեալս իւր հանապազ, թէ «Որ հաւատայ յիս՝ զգործն զոր ես գործեմ՝ և նա գործեսցէ, և առաւել ևս գործեսցէ»:*

*Եւ կատարեալ դահճացն զգործն ըստ հրամանին Վեհդենշապհոյ՝ խաղացուցանել այնուհետև ի շահաստանէն զսուրբսն փութայրին: Եւ տեսեալ զայն նախարարացն Հայոց, որք անդէն ի դղեկի շահաստանին մնալոց էին ի կապանս՝ քաջալերեալք և պաւինեալք ի յոյսն երկնաւոր, աներկիւղ համարձակութեամբ առաջի ամենայն բազմութեանն հրապարակին Պարսկաց, օտարացն և որք անդ էին ի շահաստանին, անկեալք յոտս սուրբ քահանայիցն Աստուծոյ՝ խնդալից և ուրախառիտք համբուրէին յերկար ողջունիւ զոտս նոցա, աղաչելով և ասելով, թէ «յիշեսջի՛ք զմեզ անմոռաց յուրախութեանն ձերում և յարքայութեանն»: Նոյնպէս և սուրբ քահանայքն Աստուծոյ բերկրեալք սրտիւք և զուարթալից երեսօք ընկալեալ զամենեսեան ի գիրկս իւրեանց՝ ասէին. «Աստուած զօրութեանց օրհնեսցէ զձեզ, և տացէ ձեզ տևողութիւն համբերութեան ի փառս անուանն իւրոյ, և զօրացուսցէ զձեզ առաջի ազգացս հեթանոսականաց. և արձակեալ զմարմինս ձեր յերևելի կապանացդ յորում էքդ՝ առաջնորդեսցէ ձեզ յաշխարհն ծննդեան ձերոյ, և ի դիրս հարցն ձերոց*

5 Ցց. աստուծոյ
9 Զ. ի մանկանց
10 Աց. տանեմք
11 Զ. բնակեալ
14 ԶԱց. լիցի
20 ԲԳց. զյայտնի
22 Գց. Բանն Աստուծոյ
24 ԲԳց. չիք և
25 Յովհ. ԺԴ, 12
27 ԶԱց. ի շահըստանէն
28 ԶԱց. և որք անդ էին ի դղեկի: Ցց. և որք անդէն ի շահաստանին
36 Ցց. ընկալեալք
37 Ցց. չիք համբերութեան

հանգուսցէ զոսկերս ձեր, և յաներևոյթ կապանացն սատանայի արձակեալ զոգիս ձեր՝ ածցէ զձեզ ի գաւառն, ուր զմեզ յուղարկեցէք, և բնակեցուսցէ զմեզ ձեօք հանդերձ յաւիտենից յարկսն, ուր Քրիստոս է ընդ աջմէ Աստուծոյ Հօր»։

Եւ տեսեալ անօրինացն զայնպիսի ուրախալից հրաժեշտ ի միմեանց սուրբ քահանայիցն և նախարարացն Հայոց՝ այպանէին ընդ միտս իւրեանց ծաղրելով. հաշուէին զնոսա լինել անգէտս հրամանի թագաւորին, և ասէին գաղտ ցմիմեանս. «Զի թէ գիտէին երիցանիս զմահն, զոր պատրաստեալ է նոցա՝ ունէին արդեօք բազում սաստարս լալոյ զինքեանս, այլ այդպէս ծիծաղել և ուրախանալ ոչ լինէին կարող»։ Եւ զայն ոչ գիտէին ամբարիշտքն, եթէ նոցա այն էր ցնծութիւն և նոյն լուր ուրախութեան, և ընդ այն զուարճանային անյագ խնդութեամբ, հրաժարեալքն և մնացեալքն։ Եւ ողջունեալք զմիմեանս սուրբ քահանայիցն և նախարարացն Հայոց՝ յուղարկեալք գնային, կոչեցեալք ի պսակումն։ Եւ երթեալք սուրբ քահանայքն Աստուծոյ՝ կազմէին ճեպով և այլ մանկունք ի սպասաւորացն երանելեացն, որք եկեալ էին ընդ նոսա ինքնակամ յօժարութեամբ յաշխարհէն Հայոց, արբանեկել նոցա և սպասաւորել ի կապանսն, որք և վիճակի բարւոյ մասինն լինել արժանիք տենչային։ Եւ մանաւանդ առաւել Խորէն երէց, որ էր ի գաւառէն Այրարատու, ի գեղջէն որում անուն էր Որկովի, և երանելին Աբրահամ երէց, որ էր ի գաւառէն Տայոց, ի գեղջէն որում անուն էր Զենակս։ Զոր տարեալ Վեհդենշապհոյ և որք ընդ նմայն էին, և հարցեալ թէ «դուք յո՞ կազմիք»։ և լուեալ ի նոցանէ, թէ «ուր զհոգևոր տեարսդ մեր և զվարդապետս տանիք՝ ընդ դոսա պատրաստ եմք երթալ, ի կեանս կամ ի մահ»։ Եւ սրտմտեալ Վեհդենշապհոյ՝ հրաման տայր բռնաբար ունել զնոսա և պահել անդէն ի շահաստանին. պատուէր տայր ըստ առաջին հրամանին զգուշանալ նոցա բազում պահպանութեամբ մինչև ցժամանակ մտանելոյ ամենայն զօրացն արքունի յոստանն. «և ապա, ասեն, իշխեսցէ ծառայ ոք կապելոց նախարարացն Հայոց ելանել ի շահաստանէն ի պէտս արբանեկութեանն, ուր և առաքեսցեն տեարքն իւրեանց»։ Զոր իբրև տեսեալ երանելեաց քահանայիցն Խորենայ և Աբրահամու զբռնաբար դահճացն արգելուլն զնոսա անդէն ի շահաստանին՝ մեծապէս խռովեալք տրտմէին, հաշուելով անարժան զանձինս այնպիսի երկնաւոր պսակի, զոր և առնլոց են սուրբ վարդապետք նոցա, որդիք նահատակին Գրիգորի։

ԾԴ. Չուէր այնուհետև ամբարապետն Վեհդենշապուհ հանդերձ քահանայիւքն ի Նիւշապհոյ, ի վեցերորդ ժամու աւուրն, ընդ ճանապարհն որ ելանէ ի Վրկանն։ Եւ լուեալ զայս առն միոյ վաճառականի, որ էր ազգաւ Խուժիկ, որոյ ըստ օրինի վաճառականութեան շատ անգամ ճանապարհորդեալ էր ի Հայս, որ և զլեզու հայերէն խօսից քաջ տեղեկաբար գիտէր. և էր ինքն այր ի մանկութենէ իւրմէ կեցեալ առաքինի վարուք, եղեալ որդի քրիստոսասէր և հաւատացեալ ծնողաց, որ և

1 Զ. սատանայի կապանացն
4 ՏՏ. չիք Աստուծոյ
5 ՏՏ. այնպիսի
10 Աշ. այդպէս
11 ՏՏ. չիք նոցա
19 Զ. որ ի գաւառէն էր արայրատու
22 Թերևս զոր տեսեալ

զերանելի քահանայսն Աստուծոյ և զնախարարսն Հայոց որ ի կապանսն էին՝ յոյժ ընտանութեամբ գիտէր. առ որս և բազում ծախս յընչից և սպասաւորութիւն արարեալ էր, մինչ ի Վրկանին էին, ուշադրելով զամենայն օր և ակն ունելով մասին նշխարաց սրբոցն ի կատարումն նոցա լինել արժանի։ Սորա լուեալ զհրաման Թագաւորին՝ ճեպով և անյապաղ, ոչինչ զգացուցեալ ումեք, թողոյր և զգրաստ իւր և զկարասի ի մանկունս իւր և յընկերս, և իւր առեալ ի գրաստուց իւրոց դրաստս տոկունս և ուժեղս, և նմանեալ առն կարաւանի՝ գնայր ընդ ճանապարհ որ երթայր յԱպար աշխարհն, և ուղեկցեալ ճանապարհորդէր ընդ ամբարակապետին ընդ Վեհդենշապհոյ, ցուցանելով նմա, զճանապարհայնն և յօթևանս ուր հանգչէին՝ բազում արթնութեամբ շուտութիւնս. և հաճոյ եղեալ Վեհդենշապհոյ ամենայն գործ հպատակութեան Խուժկին՝ սիրէր զնա յոյժ և խնամարկելով ողջունէր. վասն զի Աստուած էր, որ յաջողէր զիրն։

Եւ եղեալ համարձակապէս յընդունելութեան մեծի իշխանին Խուժիկն՝ հարցանէր առ ի սթափելոյ ամբարապետն զԽուժիկն յաղագս գեղջն նորա և ծնողացն, թէ որպիսիք էին և ուստի։ Եւ Խուժիկն պատճառագրելով խօսէր ընդ նմա այլաբանութիւնս, սուտ պատճառս և դիպողս ըստ առաջարկելոյ իրացն գործոցն։ «Որդի եղեալ եմ ես, ասէ, ծնողաց օրինաւորաց, որք ի նախնեաց իւրեանց կրակի և արեգական հաւատարմապէս եղեալ են ծառայք, որոց զիս ի նոսա յանձնեալ է ի մանկութենէ իմմէ, և նոցա պահպանութեամբն կացեալ եմ ի միջի մինչև ցայսօր և կամ, ճանաչելով յայտնապէս յանձին իմում զաստուածոցն օգնականութիւն»։ Յիշելով երանելւոյ Խուժկին զպատճառագրութիւնսն վարդապետին հեթանոսաց Պօղոսի, որ երբեմն հաւատովն փարիսեցի լինէր, և դարձեալ այլուր հռոմայեցի. որ ոչ էր յայսցանէ ի ժամուն և ոչ մի, այլ հաւատովք՝ Աւետարանին քարոզ էր և վարդապետ, և քաղաքաւ՝ ի Կիւլիկեցւոց գաւառէն էր, տարսոնացի, մանաւանդ թէ ուրբ և հոգեղէն վերին զօրացն էր դասակից. բայց զմիտս լսողացն առ վայր մի սայթաքեցուցանէր այսր անդր, զի զճշմարտութիւն աճեցուցեալ հաստատեսցէ։ Այսպէս և երանելի Խուժիկն պատրողական բանիւք զմիտսն Վեհդենշապհոյ խնդացուցանէր ի ժամուն, որպէս զի զիւր ընթացիցն տենչանս տարեալ ի գլուխ՝ կատարեսցէ ըստ կամի։

Իսկ ամբարապետն Վեհդենշապուհ որպէս թէ յաստուածոց համարէր զպատահումն նմա Խուժկին, տեսանելով զայրն յամենայնի աջողակ, և առաւել վարկանէր հաւատարիմ և ըմբռն գործոց իրացն՝ յոր երթայր. վասն որոյ և չտայր թոյլ առն և ոչ ժամ մի հեռանալ յիւրմէ, այլ ի տուէ և ի գիշերի մօտ ունէր առ իւր բազում յարգանօք և սիրով. և հաւատայր նմա զխորհուրդ Թագաւորին և զպէտս գործոյն՝ յոր երթայր. վասն զի ըստ յառաջագոյն ասացելոցն, Աստուած էր որ տնտեսէր զիրսն ըստ իւրոց կամացն, ի քակտումն և յամօթ դասու անօրինացն, և յօգուտ

4 Զ. ակն ունել
6 Զ. զգացուցեալ
8 Զ. տոկուն
9 ԶԱց. ուղեկցեալ
15 ՑՑ. Խուժկին հարցանէր
17 Զ. սուտս
27 ՑՑ. ի Կիլիկեցւոց
31 Զ. այսպէս եւ յետոյ Վեհդենշապուհոյ
32 Բց. արարեալ ի գլուխ
33 ԶԱց. յաստուածոց
34 ՑՑ. յաջողակ
36 Զ. չտայ թոյլ.. ի գիշերի
37 Աց. և սիրով հաւատայր
40 ՑՑ. չիք դասու

և ի փառս եկեղեցւոյ իւրոյ սրբոյ։ Եւ կատարէր բանն սուրբ Հոգւոյն որ ասէր, թէ «Խորհեցան ոչ ինև, և դաշինս կռեցին, և ոչ իմով բանիւ». և սաղմոսերգն ասէ. «Խորհեցան խորհուրդ՝ զոր ոչ կարացին հաստատել»։

Ապա պատճառէր երանելի Խուժիկն պէտս ինչ զիւր տեսանել այլուր, և խնդրէր աղաչելով հրաժեշտ ի Վեհդենշապհոյ. որով յամենայն օգտակար իրաց և կարծեաց հեռացուցեալ զմիտս ամբարակապետին՝ առաւել հաւատարմագոյն ցուցանէր նմա զինքն, գիտելով յազդեցութենէ սուրբ Հոգւոյն, եթէ ոչ տայ թոյլ Աստուած արձակել զնա նմա։ Իսկ Վեհդենշապուհ և բնաւ իսկ ոչ առնոյր յանձն՝ լսել բանից Խուժկին, այլ ասէր ցնա դաղտ, եթէ «Դու որ օրինօք մնեալ ես և կեաս ի փառս կրակաց, ո՞չ կաս առ իս յօժարութեամբ և տեսանես զկորուստ անօրէն կրակապաշտ մահապարտացն, և ուրախանաս»։ Եւ երանելւոյ Խուժկին լուեալ զայնպիսի բանս յամբարապետէն՝ մեծաւ երկրպագութեամբ շնորհ ունէր սիրոյն Վեհդենշապհոյ. այլ ի սրտի իւրում փառս տալով օրհնէր զամենահզօրն և զյարդարիչն ամենայնի զԱստուած, որ տայրն խօսել ամբարակապետին և աղաչել զգուշակ նշխարացն սրբոցն՝ երթալ ընդ նոսա ի տեղի նահատակացն Աստուծոյ. այն որ լինելոց էր ցրիչ և խայտառակիչ թագաւորին հրամանի, և ցուցակ և բաշխիչ մեծի և երկնաւոր գանձու սրբոցն։

Իսկ երանելւոյ Խուժկին համբարձեալ առ տէր Աստուած զաղօթս սրտի իւրոյ՝ խնդրէր ի բարձրելոյն շնորհել նմա ուշ և լայնութիւն սրտի, որով արժանի լիցի դրել հաւաստեաւ ի տախտակս մտաց իւրոց, որպէս յարձանագրի, զամենայն հարցմունս բռնաւորացն և զպատասխանիսն և զաղօթսն, զոր իւրաքանչիւր ոք ի սրբոցն ի ժամ կատարմանն մատուցանէր Աստուծոյ. որպէս զի պատմել ճշմարտապէս կարասցէ ի կարգի առ ի յիշումն ամենայն հաւատացելոց լսողաց յազգս յաւիտենից։ Եւ ընկալեալ ի յախորժալուր ի տուչէն զգիւտ մաղթանօք խնդրոյն իւրոյ՝ պատմել անդադար ցնծալից սրտիւ ամենայն ուղղափառ ժողովրդոց յամենայն տեղիս, ի զարմացումն և ի փառս անուանն Քրիստոսի։

ԾԵ. Իսկ Վեհդենշապհոյ ի սկզբանն ոչ համարէր արժանի պատմել Խուժկին զսուրբ քահանայիցն, զոր ինչ գործելոց էր ընդ նոսա, այլ ասէր, թէ «ի Վրկան տանիմք և անդ արձակեմք»։ Եւ երթային այն օր ի գեօղ մի, որում անուն էր Ռեան, հեռի ի Նիւշապհոյ որպէս հրասախօք վեցիւք և թէ աւելի ևս, ըստ չափոյ համարուց Պարսկացն, և դադարէին անդ մինչև ցառաւօտուն պահն։ Եւ յառաւօտեան պահուն յարուցեալ փութով զաղտ, ոչինչ զգացուցեալ ումեք ի գեղջէն, այլ և ոչ ամենեցունց զօրս ընդ ինքեանս, բայց միայն երանելի Խուժկաւն և անօրէն դահճօքն, որովք սպանանելոց էին զսուրբսն ըստ հրամանի թագաւորին՝ գնային ի գեղջէն լռելեայն։ Եւ առեալ զսուրբսն դահճացն՝

1 ԱՑ. զբան
2 Ես. Լ, 1
3 Սաղմ. Ի, 12
5 «յամենայն օգտակար իրաց» աղաւաղուած է թուում: Չ. ամենայն
8 ԱՑ. ևթէ տայ թոյլ։ ԲԳՑ. ուղղագրեն ևթէ չտայ։ Այսպէս ևս Չ.
24 ՑՑ. ոք սրբոցն
36 ՑՑ. չիք և յառաւօտեան պահուն
37 Չ. զգացուցեալ
37 ՑՑ. չիք այլ
40 ՑՑ. գնացեն

գնացին զբովանդակ մնացեալ մասն ի գիշերոյն ընդ անկոխ անապատն, հեռի ի գեղջէն որպէս պարսիկ հրասախաւ միով և թէ աւելագոյն. և ընդ ծագել առաւօտուն հասանէին ի տեղի մի քարուտ, յառապարաձոր աւազուտ, ի տեղի՝ յոր ոչ հասանէր արօտական և ոչ բնաւ անցանէր ընդ նա ուղևոր, վասն ոչ գտանելոյ երբէք ի նմա ճանապարհ։

Եւ արկեալ աթոռս երեցունց իշխանացն՝ նստէին ամբարապետն Վեհդենշապուհ և Ջնիկան մայպետն արքունի և Մովան անդերձապետն։ Իսկ երանելւոյ Խուժկին համբարձեալ առ Արարիչն ամենայնի զուշն։

Եւ կացուցեալ զսուրբ նահատակսն յատենի՝ ասէ ցնոսա Վեհդենշապուհ. «Բազում և անհամար չարիս գործեալ է ձեր, և բազում Արեացն կոտորածի պարտաւոր էք. զի թէ լոկ միայն երկուց և կամ երից անձանց մահու պատճառ էիք՝ սակայն մեծ էր, և չէիք արժանի կեալոյ, թող թէ այնպիսւոյ աշխարհի մեծի, որպէս Հայքն են, և այնչափ բազում արեանց որ անդ հեղան. և ամենայնի այնմ դուք էք պարտաւորք, և ձեր առնելով և խրատու գործեցաւ ամենայն գործն այն։ Եւ ի վերայ այդչափ ձերոյ յանցանաց և մահապարտութեան՝ արքայից արքայ առ ձեզ կարի բարերարութիւն արար, զի մեզ հրաման ետ և ասէ. «Թէ հաւանին արեգական և կրակի երկիր պագանել, և զմեր օրէնս յանձն առնուլ պաշտել՝ նոցա զմահապարտութիւնն թողում, և զազատորեարսն զոր կապեալ է՝ արձակեմ ի Հայս, և զիւրաքանչիւր ուրուք գտանուտէրութիւն տամ և զգահ և զպատիւ»։ Արդ՝ դուք յիշեցէք և՛ զձեր անձինսդ զմտաւ ածել և զայնչափ կապելոց զոգիս որք ի բանտին էին, և [զի] զհրամանն արքայից արքայի կամաւ և փափագելով յանձն առէք. և որպէս եղէք պատճառք բազում արեանց՝ լերո՛ւք այժմ պատճառք բազմաց կենդանութեան։ Ապա թէ ոչ առնուք յանձն, և տակաւին ի նմին ապշութեան յամառեալ *կեայք՝ դուք մեռանիք, և զնոսա հրամայէ սպանանել. և ամենայն արիւնքն որ յառաջն հեղան և որ այժմ հեղլոց են՝ ի ձեր յոգւոց խնդրին յաստուածոց»։ Եւ զայս ամենայն բանս խօսեցաւ Վեհդենշապուհ հանդերձ ընկերօքն իւրովք ընդ սուրբսն։

Հրաման տային երանելւոյն Սահակայ եպիսկոպոսին՝ թարգմանել սրբոյն Յովսեփայ և սրբոյն Ղևոնդի և այլոց ընկերակցացն. քանզի սուրբն եպիսկոպոսն միայն գիտէր պարսկերէն, և այլ ոք ի սրբոցն ոչ գիտէր։ Որոյ անդրէն պատասխանի արարեալ սրբոյ եպիսկոպոսին Սահակայ՝ ասէ ցԴենշապուհ և ցայլսն որ նստէին ընդ նմա. «Մի՛ տայք ինչ, ասէ, ասել ցդոսա բանս, որ ոչ են արժանի սոցա լսողութեան. վասն զի խօսք, որ ինձ ասելի թուին և արժանի ծաղու, զի՞ ես ասեմ ցնոսա, զոր գիտեմ թէ իբրև լսեն՝ և զձեզ և զյղեալսն ի միասին անգոսնեն։ Արարէք զինչ և կամիք, և մի՛ յերկարեալ խօսիք ընդ մեզ բանս սնոտիս և պատգամս ընդունայնս»։

Եւ սրտմտեալ Դենշապհոյ և այլոցն՝ ասեն ցսուրբսն. «Դու հարկաւորութեամբ ասա ցդոսա. թող գիտասցուք և զդոցա խօսս և զկամս»։ Եւ սրբոյ եպիսկոպոսին կարճառօտիւ զբանսն և զպատգամս թագաւորին

1 2. ի գիշերւոյն
3 88. աւազապարաձոր
4 2. որ ոչ հասանէր
5 88. ոչ գտանելոյ։ 2. ոչ գնաելոյ, յետոյ ուղղած այսպէս
20 88. որ կապեալ է
38 2. անգոսնեն
41 88. զխօսս

ասացեալ ցսուրբ ընկերակիցսն իւր, և սրբոցն լուեալ՝ մեծաձայն ծաղու անգոսնեցին զբանիւքն. զոր և իմացեալ անօրէն իշխանացն՝ առաւելապէս զայրացան։ Սակայն պատասխանի տուեալ սրբոյ կաթողիկոսին Յովսեփայ՝ ասէ, թէ «Եղև հարցումն այդ առեհաւ ի դրան առաջի հազարապետին Արեաց Միհրներսեհի, և լուեալ ի մէնջ զբանս մեր և զկամս, զոր և թագաւորին գիտել եա։ Նոյն են մեր ամենեցուն կամք և բանք, և ոչ փոփոխեմք զբանս մեր, որպէս երբեմն խօլացեալք իբրև զանխորհուրդս՝ և այժմ զղջացեալ ապաշաւեմք իբրև զմիասակարս։ Այս եւեթ խորհուրդ և խնդիր օր քան զօր աճէ ի սիրտս մեր, թէ ընդէ՞ր ոչ այսօր քան զերեկն և զեռանդն ցուցանի կործ յանձինս մեր լաւութեան և արարուած բարւոյ, — ի հաւատս յորում եմք՝ խորհել ի սոյն և կեալ սովաւ և ի միասին վախճանել։ Այլ յաղագս երկրպագութեան արեգականդ որ ասէք, թէ հրաման եա թագաւորն, զոր թէ յանձն առեալ հաւանիք՝ ասէ, կեայք դուք և ազատորեարն որ ի կապանս են, և եթէ յամառեալ չկամիք առնուլ յանձն՝ և դուք մեռանիք և զնոսա հրամայեմք սպանանել. — մեզ մի՛ լիցի ուրանալ զճշմարտութիւն և ծառայել սուտ անուանելոց աստուածոց, որ ոչ են աստուածք. և մերով ուրացութեամբ ումեք ի հաւատացեալ կապելոցն մի՛ լիցի արձակումն և ի յաւիտենից անլոյծ կապանսն անկանել. զոր և նոքա այժմ առաւել ևս քան զմեզ խնդրեն յԱստուծոյ, զմեր վասն Աստուծոյ զվախճանն, քան թէ զկեալն մեր ուրացութեամբ։ Այլ թէ հնար էր ձեզ այժմ գիտել մարգարէութեամբ, թէ ո՞րպէս (վասն) պատգամիդ այդորիկ, զոր բերէք առ մեզ հրամանաւ թագաւորին, թուիք մեզ անմիտք և կորուսեալք, և դուք և որ զձեզն յղեաց՝ ողորմելի զանձինս ձեր և զթագաւորին քան զամենայն թշուառացելոց ի մարդկանէ հաշուէիք։ Բայց զոր ինչ կամիք՝ արարէք վաղ, և կամ երբ կամիք»։

Եւ ասացեալ զայս սրբոյ կաթողիկոսին Յովսեփայ՝ սրտմտեալ զայրացաւ Վեհդենշապուհ և որք ընդ նմա հաւատարիմքն էին, և հրաման եա սրբոյն Սահակայ ասել ցնա. «Զի թէպէտ և թուին մեզ ծանր թշնամանքդ, որով թշնամանեալ ասացեր զմեզ անմիտս և կորուսեալս, սակայն առ համարձակապէսն յանդգնութեամբն, զոր իշխեցեր յաստուածանման թագաւորն ասել բանս անարժանս՝ իբրև զոչինչ թուին ի մեզ կողմն թշնամանքդ մեր անձանց և թեթևութիւն։ Բայց դու գիտեա, զի քեզէն զկորուստ անձինդ խնդրեցեր և առեր, և կեալ քեզ այսուհետև անհնար է. սակայն պարտ է մեզ և զիւրաքանչիւր զայլոց գիտել զկամս և զընտրողութիւն, վասն զի օրէնք մեր այսպէս ասեն»։

ԾԶ. Եւ հրամայեաց սրբոյն Սահակայ ասել ցնոսա, թէ «Մի՛ անսայք անմիտ բանից դորա, և զանձինս ձեր յայդպիսի խօլ խրատուէ ի բաց կալայք և մարդկաբար զկեանս ընտրեցէք քան զմահ։ Եւ դա որ ինքն այժմ իշխեաց խօսել զայդպիսի բանս մահապարտութեան՝ վասն զի

1 Ձ. ցընկերակիցսն
4 ՑՑ. հարցումն
10 Ձ. քան թէ
12 Թերեւս և ի սմին
14 ԱՑ. եկայք դուք
22 ՁԱՑ. (Թէ որպէս պատգամիդ այդորիկ։ Այսպ. ըստ ուղղագր. ԲԳՑ.
23 ՁԱՑ. (Թուիք զմեզ։ Այսպ. ըստ ուղղագր. ԲԳՑ.
32 ԲԳՑ. իբրև ոչինչ
33 ՑՑ. գիտեա։ Ձ. գիտեայ
36 Ձ. այդպէս
38 Ձ. այդպիսի

մեծամեծ է և չէ արժանի կելոյ՝ իւր իսկ վատ գործքն չտան դմա կեալ։ Իսկ դուք թէպէտ և էք տակաւին ինչ մնասակարք, և զկամս թագաւորին ևեթ առնէք և արեգականն երկիր պագանէք՝ հրամայեաց զմնասն թողուլ ձեզ և զձեզ պատուով և ողջանդամ ի տունս ձեր արձակել»։

Հրամայէին ևս Վեհդենշապուհ և այլ հաւատարիմքն որ ընդ նմայն էին՝ սրբոյն Սահակայ, ասել ցերանելի այրն Աստուծոյ Ղեւոնդ, թէ «Մեր լուեալ է վասն քո, թէ օրինաց քրիստոնէից իբրև զքեզ ոք տեղեակ չէ, և ի քո խրատուէ աւելի ևս կորեաւ աշխարհն Հայոց. արդ՝ այդպիսի մեծ և իմաստուն մտաց պարտ է ճանաչել զարքայից արքայի զբարերարութիւնն, զի զայնչափ զմնասն թողու ձեզ և ձեզ ճշմարիտ աստուած ծանուցանէ։ Արդ՝ որպէս եղեր խրատատու, և բազումք մեռան ի քո առնելոյ՝ լե՛ր այժմ խրատատու կենաց, և թող կեան և դոքա և այլ բազում անթիւ անձինք. ասա՛ ցդոսա, զի պագցեն արեգականն երկիր և կեցցեն. և դու այնպիսի պատիւս գտանես ի թագաւորէն, որովք անուանի լինիս ի քում աշխարհին և յամենայն ազգս»։ Եւ սուրբ եպիսկոպոսն Սահակ երկայնմտութեամբ և ծաղրելով թարգմանէր առ վայր մի՛ սրբոցն զամենայն բանս ամբարակապետին և զնորուն անօրէն գործակցացն, որպէս զի ծանուցէ անօրինացն պատասխանեօք սրբոցն՝ զիւրաքանչիւր անձին զերանելեացն զկամս և զփափագ և զանշարժ հաստատութիւն նոցա ի հաւատն։

Եւ սրբոյ առն Աստուծոյ Ղեւոնդի սկսեալ խօսել առանձինն ընդ սրբոյն Սահակայ՝ ասէ, թէ «Մեզ դոցա պատասխանի այնքան պարտ է առնել՝ որչափ արար պատասխանի Փրկիչն Պիղատոսի յատենին։ Բայց զի ծանուսցուք աներկիւղ զցանկութեանս մերոյ զխնդիրն՝ ասա՛ ցդոսա. «Դուք ասացէք աւադիկ՝ զոր ինչ լուեալ է ձեր վասն իմ, թէ օրինացն մերոց տեղեակ եմ, և բազմութեան ժողովրդոց եղեալ եմ ուսուցիչ. ցուցանէ ձեզ տիոց իմոց մերձաւորութիւն ի կատարումն։ Եւ արդ՝ զընտրողութիւն լաւ գիտութեան իմոյ, որում դուք իսկ վկայէք, զի ուսեալ եմ յԱստուծոյ և ոչ ի մարդոյ, այսօր յաղագս երկիւղի մահկանացու և ապշեալ մարդոյ մոռացեալ փոխանակիցե՞մ և կորնչի՞մ—քաւ լիցի—և լուեալ յանդիմանիցիմ բանիւն, թէ «Որ ուսուցեր զբազումս՝ զանձն քո ոչ ուսուցեր»։ Եւ վասն պատուի և փառաց զոր խոստանայքդ տալ՝ մեզ մի՛ լիցի առնուլ զպատիւ ի հողեղէն և ի մահկանացու մարդոյ, զոր ցեց և ուտիճ ապականէ և դող ական հատանէ և տանի. որ զգեցեալ եմք զփառս և զպատիւս յերկնաւոր և յանմահ աջոյն Բարձրելոյ, զոր ոչ երկինք և ոչ երկիր և կամ որ ի նոսա պատուականութիւնք են՝ արժել ոչ կա՛րեն։ Մի ինչ պակաս է ի մեր յերանելի փառաւորութենէս, —բաժակ մահուդ, որում իբրև զպապաքեալ ծարաւիս փութամք ըմպել։ Արբուցէք վաղվաղակի, և թող ուրախացեալք զերծանիմք յերերալից

2 Ուղղելի ևԹէ զկամս
4 ՑՑ. պատուով ողջանդամ
5 Զ. ընդ նմա
6 Զ. ղեւոնս
9 Զ. զարքայից արքայէ
10 ՑՑ. մնասն
12 Զ. այսեղ եւ յեսոյ խրատատու
17 Զ. օրէն գործակցացն
19 ՑՑ. փափաք
21 Զ. այսեղ եւ յեսոյ ղեւոնդէ
27 ՑՑ. տիոյ իմոյ
31 ԶԱՑ. որում ուսուցեր Այսպէս բաց ուղղագր. ԲԳՑ.
32 Հռոմ. Բ, 21
32 ԱՑ. տալ մեզ, մի՛ լիցէ
36 ՑՑ. չիք կամ
37 ՑՑ. երանելի

*ախտարակաց կենցաղոյս. և մի՛ ևս այլ յերկարեալ ձգտէք զանմիտ և զմնասակար բանս բանդագուշեալ Թադաւորին ձերոյ»։*

*Եւ սրբոյ առն Աստուծոյ Ղևոնդի կատարեալ զիւր պատասխանիսն՝ աղաչեցին զսուրբ եպիսկոպոսն զՍահակ երանելի երէցն Մուշէ և երանելի երէցն Արշէն և երանելի սարկաւագն Քաջաջ՝ ասել ցանօրէն իշխանն և նոցա բանիւ, Թէ «Զոր ինչ ասացին սուրբ վարդապետքն մեր և հոգևոր հարքս տէր Յովսէփ և տէր Ղևոնդ՝ դոյն են մեր կամք և խնդիրք. կատարեցէք վաղվաղակի յոր եկեալդ էք, և մի՛ յապաղէք. և խնդրեմք յԱստուծոյ պարգևել մեզ և արժանի առնել զմեզ յաւիտենական պատուոյն և երկնից արքայութեանն»։*

*Եւ լուեալ զայս Վեհդենշապուհ և անօրէն գործակցացն և ի սրտմտութիւն բարկութեան գրգռեալք՝ կամեցան և այլ պատրողական բանս և խօսս ընդունայնս խօսել ընդ սուրբ նահատակսն, կարծեցեալք Թերևս կարասցեն ճեղքել զօք ի գնդէ անքակ միաբանութեանն. որում անհնար էր լինել. սկսան ստիպել և այլ զսուրբ եպիսկոպոսն Սահակ, զի Թարգմանեսցէ նոցա և այլ զոր ինչ կամիցին խօսել ընդ սուրբսն։ Եւ սրբոյ եպիսկոպոսին Սահակայ պատասխանի տուեալ ասէ ցՎեհդենշապուհ և ցայլ գործակիցս նոցա, Թէ «Ես որ մինչև ցայժմս կամակատար ծանուցայ ձեզ և զասացեալն ի ձէնջ Թարգմանեցի սրբոցս՝ իբրև ոչ եԹէ ձեզ և կամ պակշոտեալ բանից Թագաւորին ձերոյ կամեցայ արբանեկել. քանզի զի՞նչ արդեօք հարկ ի վերայ կայ մարդոյ, որոյ միտք իւր առ իւր են և զգայ խելաց իւրոց, զայդպիսի զձեր զբանդագուշանաց բանս՝ իւր իսկ լսել, Թող Թէ և յականջս այսպիսի իմաստուն և խորհրդական մարդոց լսելի առնել. բայց այսքան միայն՝ զի առաւել ևս ծանիցի ձեր յիմարութեանդ նշաւականք, և ի մեզ զօրացեալ հաստատեսցի ճշմարիտ և աստուածուսոյց քարոզութեանն մերոյ անշարժութիւնն»։*

*ԾԸ. Եւ սրտմտեալ անօրէն երեցունց իշխանացն, ոչ ևս առ ի յերկարսն հանդուրժել կարացեալ սրբոցն, որպէս շնորհ առնելով Թագաւորին ընդ այնչափ Թշնամանելոյ զնա՝ յարուցեալ ինքնին Վեհդենշապուհ առաջի գործակցաց իւրոց՝ հարկանէր սուսերաւ զուս սրբոյ եպիսկոպոսին Սահակայ, և հուպ ի գօտին մերձեցուցանէր զվէրսն. և սրբոյ եպիսկոպոսին ի սաստիկ հարմանէն դրդուեալ՝ ոչ գլորեալ անկանէր յերկիր, այլ ի քարի մի յեցեալ հաստատէր. և որպէս ի բերանոյ ամենայն սրբոցն սկսաւ ասել այսպէս. «Գոհանամք զքէն, Քրիստոս, որ բազում անգամ կենդանարար զառնդ անմահական զենմամբ մատակարարեալ անծախութեամբ բաշխեցար ի ձեռաց մերոց. իսկ արդ և զմեզ իսկ մարդասիրապէս արարեալ զենումն՝ ընկա՛լ զամենեսեանս արժանաւորապէս զպատարագեալսս՝ ի հոտ անուշից»։ Եւ ասացեալ սրբոյ եպիսկոպոսին այսպէս, Թէպէտ և յորդեալ հոսէին վտակք արեանն ի վիրէ սրբոյն՝ սակայն կայր զօրացեալ ուժով շնորհօք հզօրին, որպէս զի բնաւ չիցէ վիրաւորեալ։*

*Եւ ապա հրամայէին զսուրբ կաԹողիկոսն զՅովսէփ գլխատել*

1 ՑՑ. չի՛ք այլ
14 Աց. զանքակ
22 ՑՑ. բանդագուշանաց
23 ՑՑ. Թող Թէ յականջս
29 Չ. լուսանցում նոր գլխի նշան §
42 Չ. լուսանցում նոր գլխի նշան §
42 ՑՑ. և զսուրբ

սրով. և մերկացուցեալ դահճացն զսուրբն՝ ասաց երիցս. «Դարձ անձն իմ ի հող և ի հանգիստ քո, զի Տէր բարի արար քեզ». և այսպէս ընկալաւ սրով զվախճան կատարելութեանն։

Իսկ յաղագս սրբոյն Ղևոնդի հրաման եսուն դահճացն անօրէն իշխանքն՝ մերկացուցանել զսուրբն և քարշել ուժգին ընդ քարաժեռ կոպճուտ տեղիս լանջակողմանցն։ Եւ այնպէս քարշեցին յերկար ժամս, մինչև զամենայն մարմինս սրբոյն, և զլանջացն և զթիկանցն, քանցեալ քերեցին ի մորթոյն, մինչև ոսկերացն մերկանալ ի մորթոյն. վասն զի զերանելի այրն Աստուծոյ զՂևոնդ առաւելագոյն ասէին ամենայն Պարսիկք խրատատու և պատճառ լինել ամենայն իրացն Վարդանայ և գործոցն՝ որ ի ժամանակին յայնմ գործեցան յաշխարհիս Հայոց։ Եւ մինչդեռ կէսքն ի դահճացն քարշէին զերանելին Ղևոնդ՝ այլքն կտրեցին սրով զգլուխ սրբոյ երիցուն Մուշէի և զսրբոյ երիցուն Արշենայ և զսրբոյ սարկաւագին Քաջաջայ. որոց ի ժամ վախճանին կատարմանն ասացեալ, «Տէր Յիսուս, ընկա՛լ զոգիս մեր»։

Եւ ապա աշխատեալ դահիճքն որ քարշէին զսուրբն Ղևոնդ՝ ածին ի նոյն տեղիս սուղ ինչ ոգւով, ուր և այլ սուրբքն կատարեցան, և անդ հատին զգլուխ սրբոյն սուսերաւ. որ ի ժամ իւրոյ կատարմանն զուարթագին ձայնիւ ասաց. «Գոհանամ զքէն, Քրիստոս, որ բազում գթութեամբ քո օգնեալ պահեցեր զիս ի մանկութենէ իմմէ և հասուցեր ի ժամս յայս, արժանի արարեր մասին սրբոց քոց. ի ձեռս քո, Փրկիչ, յանձն առնեմ զհոգի իմ»։ Եւ սուրբ եպիսկոպոսն Սահակ կայր ևս սակաւ ոգւով. զորոյ յետ վախճանելոյն ամենեցուն կտրեցին զգլուխն սուսերաւ. որոյ մատուցեալ նուաղ ձայնիւ աղօթս և ասացեալ զամէնն՝ աւանդեաց զոգին։

Եւ այսպէս ի վեշտասաներորդում ամի թագաւորութեան Յազկերտի, որ օր քսան և եօթն էր ամսոյն հրոտից՝ պսակեցան սուրբքն վեցեքեան. սուրբ կաթողիկոսն Յովսէփ ի Վայոց ձորոյ, սուրբ եպիսկոպոսն Սահակ յՌշտունեաց, սուրբ երէցն Արշէն ի Բագրևանդայ, սուրբ այրն Աստուծոյ Ղևոնդ երէց ի Վանանդայ, սուրբ երէցն Մուշէ յԱղբակոյ, սուրբ սարկաւագն Քաջաջ յՌշտունեաց, յԱպար աշխարհի, մերձ ի գեօղն մոգուց որ անուանեալ կոչի Ռևան։ Եւ որպէս ստուգիւ և ջերմ խնդրով Կամսարականին Արշաւրայ հարցեալ ցերանելի Խուժիկն, և լուեալ ի նմանէ պատմեաց մեզ զխօսս իւրաքանչիւր և զվախճան սրբոցն՝ գրեցաք հաւաստեաւ։

Եւ գնացեալ ի բաց ի տեղւոջէն Վեհդենշապհոյ և այլ իշխանացն որ ընդ նմա էին, ընտրեալ արս ինն թուով՝ թողին ի տեղւոջն կազմ զինու. ընդ որս նախ առաջին ըստ Աստուծոյ ազդեցութեանն զերանելի Խուժիկն ընտրէր Վեհդենշապուհ և թողոյր աղաչելով, որպէս զկարի սեպհականագոյն և պիտոյ իւրում հրամանին։ Որոց հրաման տուեալ ասէին

2 Սաղմ. ՃԺԴ, 7
7 88. սրբոյն զլանջացն
13 88. սրբոյ երիցոյն Մուշէի և զսուրբ երիցոյն Արշենայ
15 Տես Գործք Առ. Է, 58
22 88. ոգւով։ 2. հոգւով
26 88. քսան և հինգ։ 2. բնագրում են, յուսանց- նում ուղղած այսպէս
27 2. ի վայոյ
29 Գs. ի Վանանդոյ
30 Գs. յԱղբակայ
31 2. Ռևան
33 88. իւրաքանչիւր ուրուք
36 Կամ ըստ 2. տասն

ցպահապանսն, թէ «Մինչև ցաւուրս տասն և կամ ևս աւելի պահեցէք զգուշութեամբ զդիակունսդ, որպէս զի գիշատեալք ի թռչնոց՝ ընկեսցի այսր անդր ոսկրոտին, ի գլուխ լերանց և կամ ի խորաձոր տեղիս քարանձաւաց, մինչև եկեալ անցցէ ի բաց կարաւանն արքունի. գուցէ, ասէ, եկեալ ոք ի քրիստոնէիցն, իրազգած յումեքէ եղեալ՝ գտանիցէ զոսկերս դոցա և առեալ սփռիցէ յամենայն քրիստոնեայս, և մեք գտանիմք մահապարտք առաջի թագաւորին»։

Եւ մնացեալ անդ պահապանացն ըստ հրամանին Դենշապհոյ և Մովան անդերձապետի և Ջնիկանայ մայպետի, և կացեալք զայն աւուրս՝ խորհէր ի միտս իւր երանելի Խուժիկն, եթէ զինչպիսի հնարիւք ցուցանիցէ Աստուած ճանապարհ առնն, որով արժանի լիցի գողանալոյ զնշխարս սրբոցն յայլոց պահապանացն։ Եւ մինչդեռ երանելի այրն յայնպիսի խոհականութեան վտանգի կայր՝ յանկարծակի ի նմին աւուր յերեկորեայ գիշերոյն լինէր շարժումն մեծ ի տեղւոջն. բոմբիւնք սաստիկք և ձայնք ահագինք յանդնդոց հնչէին. կուտեալք բազմութիւնք ամպոց զերկիրն ծածկէին. ձայնք որոտմանց և փայլատակունք զլերինս դողացուցանէին։ Եւ սիւն լուսոյ ըստ օրինակի ծիածանի իջեալ յերկնից՝ շուրջ պարուրեալ զնահատակաց զմարմինս ծրափակէր։ Եւ կործանեալ յերկիր պահապանքն՝ կիսամեռք լինէին, չգիտելով այր զընկեր բնաւ արդեօք թէ ուր իցէ. որք և գլորեալք յերկիր՝ ոչ կարէին կալ հաստատուն. քանզի դողումն մեծի շարժմանն ի վեր ոստուցեալ զնոսա ընկենոյր յերկրէ. և այսպէս կքեալ ոտիւք և կարկեալ խօսիւք՝ լինէին խորտակեալք ամենեքեան։ Իսկ զերանելի Խուժիկն աջ հզօրին պահէր անհոգս. ուրախալից մտօք փառաւորէր զԱստուած, իմացեալ այնուհետև, թէ արդ հաստատ կատարին բազմաժամանակեայ յամենայն կամաց իւրոց խնդիրքն։ Եւ կատարեալ միապէս երկիւղիւ զգիշերն ողջոյն և զտիւն բովանդակ և զերկրորդ ևս գիշերն մինչև ի ժամ արեգականն ծագման՝ և ապա լռէին ձայնք անդնդոցն հնչմանց, և որոտմունք ամպոցն փարատեալ ցածնուին, և դադարէր երկիրն ի շարժելոյ, և ցայտմունք փայլատակմանցն ամփոփէին յերևելոյ. և լինէր այս լոկ շուրջ զտեղեաւն իբրև ասպարիսօք երկուք։ Իսկ պահապանքն յահագին ապշութենէ թմրութեանն սակաւիկ մի ոգի առեալ՝ աչս ածէին փախչելոյ ի տեղւոջէն. այլ ի յոյժ բեկմանէ սրտիցն երկիւղէ՝ ոչ կարէին կանգնել ի յերկրէն. լոկ հայէին ևեթ ընդ միմեանց դէմ, և խօսել ինչ ոչ կարէին։

Բայց զինն ժամու աւուրն երրորդի յարուցեալ երանելի Խուժիկն, որպէս թէ կամաւ կաղս ի կաղս, հայելով զկնի իւր՝ փախչէր ի տեղւոջէն, զի զնոսա զօրացուսցէ ի կանգնել և զկնի իւր հեռացուցանել ի վայրացն։ Որոց տեսեալ զերանելի Խուժիկն, զի երթայր խեկբեկս յընթացի՝ ուշարբերեալք առ վտանգի զկնի նորա սրանային ի տեղւոյն, չիշխեցեալք բնաւ դառնալ և հայել ի տեղին առ երկիւղի. և պնդեալք զհետ Վենդենշապհոյ և գործակցացն նորա փութային։ Բայց երանելի Խուժիկն ընդ այլ ճանապարհ որոշէր ի նոցանէն։ Եւ հասեալ պահա-

1 ՏՏ. պահեսցեն
3 Ձ. ի խորաձորս
5 ՏՏ. եկեալք (չիք ոք)... գտանիցեն... ոխս լիցին
8 ԲԳs. Վենդենշապհոյ
9 Ձ. անդրզապետի
12 ՏՏ. երանելին յայնպիսի
34 Կամ ըստ Ձ. յերկրէն
35 Ձ. զինն ժամու

պանացն առ իշխանսն յաւուրն վեցերորդի՝ պատմէին զամենայն անցս ազէտիցն, որ անցին ընդ նոսա զտիւն մի և զգիշերս երկուս. զորոց զգոյն երեսացն տեսեալ Դենշապհոյ և ընկերացն նորա, և զանցս ահագին իրացն մի ըստ միոջէ լուեալ՝ զարհուրէին, և ապշեալք ի բազում ժամս հիանային։ Յորհուրդ ի մէջ առեալ՝ ոչ ինչ կարէին իմանալ հնարս, բայց զպահապանսն ևեթ լռեցուցանել ջանային, չյայտնել ումեք ամենևին և ոչ բնաւ յիշել առ ումեք զմահ քահանայիցն և կամ զայնպիսի նշանաց երևմունս։ Բայց ինքեանք միայն խռճռճելով առանձինն զարմացմամբ որպէս յանզգայութիւն ընկղմէին, ասելով Դենշապուհ և Ջնիկան ցմիմեանս, եթէ «Ոչ են իրք քրիստոնէից թեթև իմն և զուգնաքեայ. այլ հաստատ մեծ է զօրութիւն օրինաց նոցա և հաւատոց. և մեք յանգիտութեան վնասեալ կորնչիմք և չզգամք»։

Իսկ երանելի Խուժիկն գիտացեալ, թէ ցածոյց Աստուած զամենայն կասկած յամենայն կողմանց, այլ և զպատասխանիսն իշխանացն լուաւ, զոր ինչ պահապանացն արարին, և թէ ոչ ոք առնէ փոյթ ոսկերացն սրբոց՝ առեալ ընդ իւր տասն ևս այլ ընկեր, զորոց կարի քաջ գիտէր զհաւատս քրիստոնէութեանն՝ առնուին ընդ ինքեանս և դրաստս, և ըստ իւրաքանչիւր անձին սրբոցն սապատս չորեքկուսիս, և գնացին լռելեայն ի գիշերի յիրսն։ Եւ մերձեալք ի վայրն՝ վրիպէին ի տեղւոյն, ուր մարմինք սրբոցն կային, քանզի ոյժ աղջամղջին էր գիշերն. և աշխատեալք առ վայր մի՝ տրտմէին, անարժանս կարծեցեալ զանձինս գիւտի երկնաւոր գանձուն։ Եւ մինչդեռ նոքա խռովեալք յածէին ընդ տեղիսն՝ և ահա յանկարծակի ի նմանութիւն լուսաւոր արծուոյ սլացեալ հասանէր յերկնից և իջեալ նստէր ի վերայ մարմնոյ սրբոյ առն Աստուծոյ Ղևոնդի. և լուսաւորեալ տեղիքն առաւել ևս քան ի տուէ՝ երևէին յայտնապէս մարմինք իւրաքանչիւրոց սրբոցն։ Եւ նոցա ուրախալից սրտիւք զուարճացեալք երկիր պագանէին տեառն Աստուծոյ. և ձեռն ի գործ արկեալ՝ ժողովեցին զիւրաքանչիւր ոք յականէ ի մի մի սապատ, որպէս նշմարեալ երևիւր իբրև գրով երանելի Խուժկին. յորոց բուրեալ հոտ անոյշ ի մարմնոց սրբոցն՝ լցեալ զուարթացուցանէր զամենեցուն զգայութիւն խելացն։

Եւ բարձեալ վաղվաղակի դրաստուց՝ փոխէին յայլ տեղի յանապատին, հեռի ի տեղւոյն իբրև երիւք պարսիկ հրասախօք. և դադարեալ աւուրս եօթն, վասն քաջ ցածնլոյ իրաց երկիւղին՝ ապա մաքրեցին զոսկերս սրբոցն յանուշահոտ մարմնոցն. զոր և պատեալ պլժանաւորապէս կտաւօք՝ թաղէին պատուով անդէն յանապատին զգուշութեամբ. և զոսկերսն առեալ բերէին ի շահաստանն և աւուրս բազումս ունէին առ ինքեանս ի ծածուկ։ Ապա լռելեայն սկսանէին տալ և ոմանց յառաքինի քրիստոնէից որք ի կարաւանին էին. որք ընդունէին՝ հաշուելով գիւտ փրկութեան ոգւոց և մարմնոց։ Եւ ստիպով յիւրաքանչիւր աշխարհ տային հասուցանել վաղվաղակի, յօգուտ երկնաւոր կենդանու-

7 88. յիշել ումեք
8 2. երևումն. բայց ինքեան
17 2. զհաւատ
19 Ա8. այսեհղ եւ յեսոյ լռելեան
26 88. իւրաքանչիւր
29 2. որպէս և նշմարեալ *երևեր
31 2. զգայութիւն
38 88. առաքինի
41 88. աշխարհս

*թեան ընտանեաց միանգամայն և գաւառին։ Բայց զառաջին պտուղ աստուածաշնորհ մեծի գանձուն՝ բերեալ նախ երանելւոյ Խուժկին մատուցանէր կապելոց Նախարարացն Հայոց. որք իբրև արժանի եղեալք ընդունէին զայնպիսի փրկութեան իւրեանց զգիւտն՝ անդէն և անդ ճանաչէին, թէ այցելութեամբ այց առնէ նոցա Աստուած, և երբ և է արձակին ի կապանացն, բարեխօսութեամբ ոսկերաց սրբոցն, ըստ բանի սրբոյ առն Աստուծոյ Ղևոնդի, զոր ի խրատելն իւրում ի գիշերին աւետաւորեաց զդիպելոց նոցա ի շնորհէն Աստուծոյ, տեսանել զաշխարհ իւրեանց. որք կատարելոցն էին ասացեալք սրբոյն ի ժամու իւրում։*

*Սկսեալ այնուհետև մի ըստ միոջէ պատմել կապելոց Նախարարացն Հայոց երանելի այրն Աստուծոյ Խուժիկն, զոր անուանել յայժմ հետէ Խուժիկ՝ ծանրանամ, և զանուն սքանչելւոյն ոչ ոք հոգացեալ պատմեաց մեզ, այլ ամենագէտն գրեալ պահէ յօր մեծ այցելութեանն և պարգևէ առատապէս զվարձս վաստակոց նորա ընդ հաճոյս անուան իւրոյ։ Ասէր և ոչ լռէր զխնամս մեծամեծս և զօգնութիւն հզօրին զոր արարեալ էր նմա. և թէ ծրպէս ի Վարդգէս յայտնեալ Քրիստոսի զխորհուրդ թագաւորին ծանոյց նմա, և նոյն ուղեկցեալ առաջնորդեաց նմա յուսով։ «Մեծարոյ, ասէր, և հաւատարիմ առաջի Դենշապհոյ համբարակապետի երևեցոյց զիս, մինչ զի աղաչելով զիս և բռնի տանելով անօրինին ի ձեռն հզօրին Աստուծոյ ի տեղի տենչալի նահատակութեան սրբոցն, որում կամաց հնարաւոր է ամենայն. ու եղէ արժանի տեսանել զամենայն, զոր ոչ կարծէի տեսանել, և լսել մի ըստ միոջէ, որում ոչ արժանի լսելոյ համարէի զանձն իմ. զհարցումն բռնաւորացն և զպատասխանիսն միոյ միոյ սրբոցն, զաղօթս և զկատարումն զիւրաքանչիւր անձին տեսի կարգաւ և լուայ. ահա արդ և մեծի մասին, ձերոյ անձանձրոյթ խնդրելով՝ զիս անարժանս արժանի արար շնորհ սուրբ Երրորդութեանն, մինչև երկնաւոր գանձու նշխարացն սրբոցն տալ լինել ձեզ բերող։ Փախոյց ամօթով զպահապանսն տագնապեալս, զարհուրեցոյց զանհաւատ զվերակացուացն զսիրտս, ցրուեաց զանմիտ թագաւորին զխորհուրդս և բարձրացոյց զանուն եկեղեցւոյ իւրոյ սրբոյ»։ Զայսպիսի բանս պարծանաց և խնդութեան պատմէր անձանձրոյթ երանելի վաճառականն՝ ամենայն հաւատացելոցն ի Քրիստոս. որ էր երբեմն վաճառական երկրաւոր գանձուն՝ և եղև յանկարծ վաճառական բարի գործովք պատուական մեծի երկնաւոր գանձուն մարտիրոսական նշխարաց։*

*Նոյն խօսք և մխիթարութիւն էր յաւէտ կապելոց Նախարարացն Հայոց յելս և ի մուտս իւրեանց, ի նստել ի տան և յառնել, ի տօնս և յամսագլուխս. զոր և պատմեալ անյագ ցնծութեամբ՝ զուարճացուցանէին նորոգելով զամենայն մեղկեալ միտս լսողացն և հաստատէին ի հաւատս արդարութեան։ Եւ մանաւանդ տէրն Արշարունեաց Կամսարականն Արշաւիր, որ յամենայն ժամու ի տուէ և ի գիշերի՝ վարդապետութիւն սրբոցն, և մանաւանդ խօսք և հոգևոր խրատ սրբոյն Ղևոնդի, և պատասխանիք իւրաքանչիւր ուրուք ըստ հարցմանն սպանողացն, և աղօթք միոյ միոյ ի ժամ կատարմանն եղեալք՝ այն էր նորա հոգւոյն կերակուր և ուրու-*

4 Տց. զիւրեանց զգիւտն | 17 Աց. ուղէկցեալ | 22 ՁՏց. լսել և տեսանել
14 Գց. վաստակոյ | 20 Բց. տենջալի | 37 Ձ. պատմել անյագ.

ճումն քաղցր, զոր ասէր և ընդ դուբողայս սաղմոսին միաբանեալ՝ պատմէր անձանձրոյթ համապազ: Զոր և մեր յոլովագոյն լուեալ ի հրաշալի Կամսարականէն՝ գրեցաք յօժարապէս հոգալով. զոր թէպէտ ըստ տկարամտութեան մերոյ ոչ եղեաք բաւական յիշել զբովանդակն ի կարգի, այլ և ոչ բնաւ գտեալ անյուշք՝ յապաղեալ մոռացաք ինչ ծուլանալով:

ԾԸ. Եւ մտեալ Թագաւորին Յազկերտի ըստ կարգելոյ ժամանակին յոստանն ի Վրկան և միահամուռ ամենայն աւագանւոյն և զօրացն որ ընդ նմա էին՝ համարձակութիւն այնուհետև տային բնակիչք շահաստանին որք ի Նիւշապուհն էին, ըստ հրամանին Դենշապհոյ, Նախարարացն Հայոց որք ի դղեկին ի կապանսն էին՝ արձակել զմանկունս իւրեանց և կամ զայլ ոք որ ընդ նոսա լինէին՝ ի պէտս արբանեկութեան ուր և կամիցին: Զոր իբրև լուան երանելի երիցունքն Յոբէն և Աբրահամ՝ վաղվաղակի փութով ի Վրկան հասանէին, և անկեալք հրապարակաւ առաջի ամբարապետին Դենշապհոյ՝ բողոք բարձեալ ասէին, եթէ «Դու յորժամ զհոգևոր տեարսն մեր և զվարդապետս ի Նիւշապհոյ առեր կնացեր, ընդ որս և մեք կամեցաք ուղեկից լինել, և դու բռնաբար հրամայեցեր խիստ պահպանութեամբ արգելուլ զմեզ անդէն մինչև ցայժմ. արդ եթէ տարեալ ուրեք յերկիր օտար և յանդարձ անցուցէք զնոսա՝ առնելով բարերարութիւն պատմեցէք մեզ, երթալ և մեզ լինել անդարձ ընդ նոսա. այլ կեալ անդէն և վախճանիլ պատրաստ եմք, տեսանելով ևեթ զնոսա, ցանկամք արժանի լինել. և եթէ սպանէք զնոսա՝ կամեցարուք և ի վերայ մեր տալ զնոյն հրաման, զոր պատուական և մեծարգոյ համարէաք զմահն այնպիսի քան զամենայն զփառս և զմեծութիւնս աշխարհիս»:

Եւ Վենդենշապուհ լուեալ զայնպիսի բանս ի նոցանէն, և ընդ համարձակութիւն աներկիւղածութեան արանցն զարմացեալ ինքն և ամենայն բազմութիւն հրապարակին՝ պատասխանի տուեալ ասաց ցերանելիսն, թէ «Զճանապարհ վարդապետացն ձերոց ոչ ոք ցուցանէ. բայց վասն ձեր հարցանեմք ցարքայից արքայ. նա իշխէ զոր ինչ հրաման տայ ի վերայ ձեր»: Եւ մտեալ ի ներքս Դենշապուհ՝ պատմէր Թագաւորին Յազկերտի զամենայն բանս և զխնդիրս երանելի երիցանցն: Եւ Թագաւորին հրաման տուեալ ասէ. «Թէ ի նոցա վերայ մեղս ինչ ոք յայտ չառնէ, և դատախազ ոք չէ զհետ՝ երկիր պագցեն արեգական և պատուել զկրակն յանձն առցեն, և ընկալեալ զպարգևս մեծամեծս ի մէնջ՝ արձակեսցին յաշխարհն իւրեանց. ապա թէ չհաւանեսցին յանձն առնուլ զմեր հրաման՝ պատուհաս կրեսցեն խեղութեամբ, և երթեալ յԱսորեստան մշակութիւն արասցեն ընդ արքունի մշակսն, և ի հարկի կայցեն մինչև ցվախճան իւրեանց»: Եւ եկեալ Դենշապուհ ասաց ցերանելի երէցն Յոբէն և ցերանելի երէցն Աբրահամ զհրաման Թագաւորին: Եւ լուեալ զայս պատուական քահանայիցն՝ ետուն պատասխանի որպէս ընդ մի բերան և ասեն. «Մեք ոչ միայն խեղանաց ևեթ պատրաստ եմք վասն անուանն Քրիստոսի, այլ և քերանաց և մահու: Այլ վասն արե-

1 Զ. զոր առ ոչը
4 Զ. զբովանդակն
7 ՏՏ. աւագանոյն
16 ՏՏ. կամեցաք
16 ԱՏ. ուղեկից
18 ՏՏ. անդարձ անցուցէք
21 Զ. ցանկամք
27 ՏՏ. Զճանապարհ
31 ՏՏ. և Թագաւորն
33 ԲԳՏ. պատուեալ
38 ԱՏ. այսեղ եւ յեսոյ երէց

գական երկրպագութեանդ որ ասէք՝ մեք ընդ ձեր մոլորութեանդ ապշութիւն տրտմեալք խռովիմք, և խնդրեմք յԱստուծոյ զգալ ձեզ ի թմրութենէ անգիտութեանդ այդորիկ, թող թէ մեզ նմանել ձեզ. և մի՛ լիցի՝ թողեալ զարարիչն՝ արարածոց երկիր պագանել»։

Եւ լուեալ զայսպիսի պատասխանիս աներկիւղ՝ իշխանացն ի բերանոյ երանելի երիցանցն՝ կատարեցին զհրամայեալսն ի թագաւորէն։ Եւ կտրեալ զերկոցունց զականջսն՝ եառուն տանել յԱսորեստան, ի գաւառն որ անուանեալ կոչի Շափուլ, կալ անդ նոցա ի հարկի և առնել մշակութիւն արքունի։ Եւ լուեալ զայս հաւատացելոցն աշխարհին որք յԱսորեստանին էին, զերթս երանելեացն անդր՝ ընդ առաջ ելին նոցա խնդութեամբ և պատուեցին զնոսա որպէս զնշխարս նահատակելոցն սրբոց. որք և արժանի իսկ էին այնպիսի մեծարանաց. նա և զկարասի իւրաքանչիւր ուրուք զինչ և ունէր՝ բերեալ դնէին առ ոտս երանելեացն, առնուլ և մատակարարել ի պէտս հոգևոր մասին ի փրկութիւն անձանց իւրեանց և ընտանեաց։ Եւ երանելի երիցանցն ընկալեալ յընծայից հաւատացելոցն ըստ արժանի մասն ինչ՝ նոցին իսկ տային տանել յԱպար աշխարհ կապելոց նախարարացն Հայոց. որք խնդութեամբ և բազում յօժարութեամբ իւրաքանչիւր ոք աղաչէր զերանելիսն՝ առնել արժանի այնպիսի հոգևոր ճանապարհի։ Էր զի երանելի երէցն Աբրահամ, առեալ զտուրս հարաւային կողմանցն Ասորեստանեացն, տարեալ մատակարարէր կապելոց նահատակացն Հայոց, ըստ իւրաքանչիւր պիտոյից. և արարեալ զայս այսպէս բազում անգամ կարգաւ՝ քրիստոնէից աշխարհին, և ապա իսկ ինքն երանելի երէցն Աբրահամ բազում ամս, մինչև յարձակումն կապելոց նախարարացն Հայոց աշխարհին, անվեհեր լինէր նոցա թոշակատար ի հաւատացելոց աշխարհին տուողաց։ Եւ կեցեալ ամս երանելւոյ երիցուն Խորենայ անդէն յԱսորեստանի վախճանիւր։

Իսկ երանելի երէցն Աբրահամ, հրաշխաւորութեամբ հաւատացելոց աշխարհին, որք զտունս իւրեանց և զարարս փոխանակ ընդ հարկի նորա գրեցին յարքունիս զվախճան նորա, և կատարեցին զկարգեալսն անվեհեր յաղագս նորա, արձակեալ զերանելի այրն՝ եկն ի Հայս։ Որոյ տեսն իսկ իւր առանց ամենայն երկբայութեան զկերպարանս հրեշտակի ցուցեալ ծանուցանէր ամենայն տեսողաց զայրն։ Եւ ձեռնադրեալ յաստիճան եպիսկոպոսութեան աշխարհին Բզնունեաց՝ բազում ուղղութեանց աշխարհին մարդկան լինէր ուսուցիչ, և վախճանէր ի նմին կարգի ի բարւոք ծերութեան։ Որում արժանի եղիցուք և մեք ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր, և նմա փառք յաւիտեանս. ամէն։

---

2 ՑՑ. զգալ ձեր
6 Ձ. ի բերանոյ
8 ՑՑ. Շաբուլ
16 Ձ. յընծայից
23 ՑՑ. կարգաւ կարգաւ
26 ՑՑ. Երիցոյն
37 Ձ. ամէն՝ից յեսոյ ունի յիշատակարան. Քրիստոս աստուած, որ առատն է ի տուրս բարեաց, գրեզոր գրչիս և ձեզ կարդացողացդ և այսմ տաւի ստացողի առ հասարակ ողորմեսցի յաւուրն դատաստանի ամէն։

# ԴՐՈՒԱԳ Գ.

ԾԹ. Արդ՝ դարձեալք անդրէն յառաջին դրուագն՝ գրեսցուք ի կարգի։ Իսկ յամին եօթնևտասներորդի Յազկերտի արքայի իշխանն Վրաց Աշուշայ աղաչէր զաւագս դրանն արքունի, բազում և անհամար կարասի ծախեալ իւրաքանչիւր ումեք, և մանաւանդ առաւել անօրէն հազարապետին Միհրներսեհի. զոր մեծաւ ջանիւ և սաստիկ աշխատութեամբ հաւանեցուցեալ՝ տայր ասել ցԹագաւորն Յազկերտ, զի շնորհեսցէ նմա զորդիս երանելւոյ Նահատակին Հմայեկայ. ի տոհմէն Մամիկոնէից, զորս առեալ էր նենգաւոր իշխանին Սիւնեաց Վասակայ ի դայեկաց՝ որպէս զորդիս մահապարտաց, և տարեալ էր ի դուռն, զի մեռցին. որք էին յոյժ տղայք։ Եւ մարդասիրին Աստուծոյ, բարեխօսութեամբ սրբոյ արեան հարց նոցա, հաւանեցուցեալ զմիտս Թագաւորին՝ պարգևեաց Աշուշայի, որպէս կարի առն սիրելւոյ և վաստակաւորի՝ զանհաւատալի ամենեցուն զմեծ նորա խնդիրն։

Եւ Աշուշայի տեսեալ զայն և ընկալեալ ի Թագաւորէն զմեծն պարգև՝ յարուցեալ ի խորանին առաջի ամենեցուն անկեալ յերկիր հոլովէր այսր և անդր, և ապա հարկանէր զգլուխ ի գետինն. այսպէս կատարէր զերկրպագութիւնն։ Եւ տեսեալ զայս Թագաւորին և ամենեցուն որ ի խորանին էին, և զարմացեալք մեծապէս, թէ զի՛նչ արար այրն, հարցանէր ցնա Թագաւորն, թէ «Վրաց բդեշխ, զի՞նչ է այդ նոր իմն գործ, զոր ցուցեր դու մեզ այսօր»։ Եւ պատասխանի տուեալ Աշուշայի՝ ասաց, թէ «Բարերար արքայ, դուք ինձ նոր պարգև շնորհեցէք, զոր այլ իմ ընկերաց ծառայի ի ձէնջ չէր գտեալ. և ինձ արժան է նոր երկրպագութեամբ երկիր պագանել ձեզ, զոր ձեր յայլ ծառայէ զայնպիսի երկրպագութիւն երբէք չէր տեսեալ»։ Եւ լուեալ զայսպիսի բանս Թագաւորին յԱշուշայէ և ամենայն բազմութեան աւագանւոյն՝ յոյժ գովեցին զայրն և մեծապէս զարմացան։

1 ՁԱց. չիք Դրուագ Գ · ԲԳց. Դրուակ Գ
2 Ձ. անդէն
3 ՑՑ. եօթնևտասներրորդի
5 ՑՑ. չիք առաւել
7 ՑՑ. շնորհեսցեն։ Ձ. շնորհեսցես։—Հին ձեռագրում, թուի, եղել է շնորհեսցենմա
8 ՑՑ. երանելոյ
10 ՑՑ. տարեալ ի դուռն
17 Ձ. այսր անդր
22 Ձ. նոր պարգևս
23 Աց. զոր այլ իմն ընկերաց ծառայի ի ձենջ։ ԲԳց. ուղղագրել են զոր այլ ումն ընկերաց ծառայից ի ձենջ
26 ՑՑ. աւագանոյն

Կ. Եւ կեցեալ Յազկերտի թագաւորին Պարսից գչափ ժամանակի կենաց իւրոց՝ վախճանէր ի Փառսսում: Եւ թագաւորեցին նորա երկու որդիքն, հակառակելով ընդ միմեանս. և դիմեալք ի վերայ միմեանց պատերազմաւ՝ յաղթահարեալ սպան կրսերն զաւագն և ինքն թագաւորեաց, որում անունն էր Պերոզ: Եւ ի Նմին ամի թագաւորութեանն իւրոյ առաքեաց զՅրգատվշնասպ զիւր դայեակորդին, զոր կարի յոյժ սիրէր առաւելապէս, և հրաման ետ արձակել զնախարարսն Հայոց ի կապանաց և կարգել Նոցա ռոճիկ ի Հրե. «Կայցեն, ասէ, անդէն այրուձիով և կատարեսցեն զգործ՝ որ ինչ և դիցէ Նոցա Աշտատ հայրն Յրգատվշնասպայ»: Եւ եկեալ Յրգատվշնասպն՝ ետ Նոցա աւետիս ասելով, եթէ «Արքայից արքայ զմահապարտութիւնն եթող ձեզ, և ի կապանացդ հրամայեաց արձակել, և կարգեաց ձեզ ռոճիկ ի Հրե, և կանանց ձերոց յաշխարհի իւրեանց. և ձեզ հրաման ետ կալ ի գործ արքունի, և լսել ամենայն բանի և կատարել՝ զոր հայր իմ Աշտատ հրամայէ ձեզ»: Եւ լուեալ Նախարարացն Հայոց զայս ամենայն բանս Յրգատվշնասպայ՝ ետուն փառս Աստուծոյ, հոգողին իւրեանց և բարերարի. յորմէ և կատարելապէս և այլ բարւոյ, բարեխօսութեամբ Նշխարաց սրբոցն, սպասէին երկայնմտութեամբ:

Եւ ի տեսանել զնախարարսն Հայոց Յրգատվշնասպայ և առ սակաւ սակաւ ընդելնուլ ընդ Նոսա՝ շնորհեցաւ որպէս յաստուածայինն ակնարկութենէն, խնամարկեալ սիրեաց զՀամսարականն Արշաւիր ըստ սիրոյն Յոհնաթանայ զԴաւիթ. յաղագս և այլոց Նախարարացն Հայոց հոգայր բարեխօսութեամբ հանապազ: Տարեալ այնուհետև զնախարարսն Հայոց ի Հրե, և կարգեալ իւրաքանչիւր ումեք ռոճիկս՝ գումարէին զնոսա ի ձեռն Աշտատայ, ունել զնոսա ի գործ պատերազմի: Զորս մեծարեալ յարգեաց Աստուած առաջի զօրագլխի գնդին՝ յաջողելով Նոցա քաջութիւն երևելապէս, այլ և առաջի ամենայն քաղաքացեացն Հրեայ և գաւառին՝ շնորհելով աջոյ Բարձրելոյն բազում և ազգի ազգի բժշկութիւնս ախտաժետաց ի Նշխարաց սրբոցն, զոր ունէին քահանայքն որ առ Նոսա էին՝ գազտ առ ինքեանս. վասն որոյ հռչակեալ անուանեցան ի զօրագլխէն և յամենայն գաւառին՝ քաջք և զարմանալիք: Եւ իշխանն Հրեայ Հրե-շնումշապուհ սիրէր զկապեալսն Հայոց յոյժ, և զքաջութիւն Նոցա և զլաւ բարս և զմարթչութիւնն բազում անգամ գրով ծանուցանէր մեծամեծացն ի դուռն և իւրոց սիրելեացն որք ի հրապարակին էին:

ԿԱ. Եւ վասն զի բազումք իշխէին խուզել զերանելի կապելոցն ղտկարանալ ինչ մարմնով, զնոյն և հուրցանել յանդգնէին. որոց մոռացեալ յիւրեանց ականն զգերանն, ըստ բանի Փրկչին՝ անձնահաճ մնապարծութեամբ մատուցեալ յայլոց ական զշիւղ կրկտեն: Եւ իմ լուեալ զայս՝ ղողացեալ զարհուրիմ. քանզի հայեցեալ ի կամաւոր Նոցա յաղագս յաւիտենից յուսոյն զանազան տանջանացն մասունս, և տեսեալ զմեծ

2 Աշ. ի փառս ո՞ւմ: ԲԴՏ. ուղղագրել են ի փառս ո՞ւմ, եւ ունին ծանօթութիւն. «Տօր. ի փառս ո՞ւմ: Երկ չիցէ ընդ նենգն ասացուած՝ իցէ յասուկ անուն տեղւոյ»
8 Զ. ի Հրէ
9 Զ. այրուձիոջ
9 Աշ. որ ինչ որ ինչ
12 Զ. ի Հրէ
21 ՏՏ. խնամարկել. սիրեաց
24 Զ. ի Հրէ
26 ՏՏ. չիք Աստուած

Նոցա զտեղութիւն համբերութեանն,—արհամարհելով զմեծութիւն, առ ոչինչ համարելով զիշխանութիւն, հեռանալով յընչից, տալով աներկիւղ զանձինս ի մահ, և բազմաժամանակեայ համբերել կապանաց, տարեալ բանդից և թշնամանաց, յանձն առնուլ զանարգութիւն քան զփառս, տանջիլ ի քաղցոյ, հաշիլ ի ծարաւոյ, ատել զընչից յղփութիւնս, ախորժել զաղքատութեան վիճակն, անարգել զփափկութիւն, սիրեցեալ զխստամբերութիւն,— և զայլ բազում մասունս կարեաց զանհամարս և սաստիկս, զոր յիւրեանց մարմինս մարդիկն այն կրեցին ախորժելով՝ չիշխեմ բնաւ և ոչ յիշել զտկարացեալ մասն ինչ յայնպիսեաց անձինս. որպէս զերանելի մարգարէիցն և զսուրբ առաքելոցն բազում ինչ տեսանելով ուղղութիւնս՝ չեմք արժանի և ոչ նկատել զմի ինչ մասն· մարդկային ի նոսա, որք լցեալքս եմք բիւր չարեօք, զոր անգամ և ոչ յիշեմք երբէք զմերն և կամ զմտաւ ածեալ զղջանամք։ Մին միայն է արդար և սուրբ, որ ասացն, թէ «Ես միայն յաղթեցի աշխարհի»։

Իսկ ոմանք ի կապելոց նախարարացն յայնցանէ, որում ակա-նատես իսկ եղաք, արդարև յերկրի երկնաւորք էին և ի մարմնի հրեշ-տակք երևէին։ Որոց կարգեալ անձամբ անձանց դպրոց, և ուսեալ զկտակարանս եկեղեցւոյ՝ հոգևոր կրօնիւք զանապատական առաքինեաց զվարս տպաւորեալ յանձինս իւրեանց՝ անվեհեր կատարէին կարգեալ կանոնս գուբղայից և կարդացմունս ընթերցուածոց. զցայգ և զցերեկ յոլովէին ի նոյն անդադար, ի գումարտակի որպէս ի տան. երբեմն յայտնի և երբեմն ըստ ժամանակին ի ծածուկ զնոյն աճեցուցանել ոչ յապաղէին. վառեալք զինու՝ ընդ միտս իւրեանց պաշտէին. յարձակեալք ի վերայ թշնամեաց՝ յաղօթս կային ի սիրտս իւրեանց. և յամենայն կռուոյ, օգնականութեամբ հզօրին, ողջանդամք յաղթողք և անուանիք դառնային։ Եւ որք յաղագս ծերութեան և կամ ծանրամտութեան, ըստ մարմնոյ բնութեան, ուսանել ոչ զօրէին՝ համայն յերկար աղօթիւք և անվաստակ յոտն կալով առաւել ևս կամաւոր յօժարութեամբ անքուն և անհանգիստք լինէին. և էր տեսանել զամենեսեան որդիս լուսոյ և մանկունս արքայութեան։

Նոյնպէս և կանայք, որոց նահատակեալ մարտիրոսացան արքն, և այլոց կանանց, որոց էին ·ի կապանս արքն ի Հրև՝ բազում պարկեշ-տասէր առաքինութեամբ մի զմիով ելևելս առնէին, զօր ամենայն մեռանելով ամենայն ախտից. ըստ բանի մարգարէին կենդանի մար-տիրոսք էին. առ որս յաղթի բան՝ ասել որոշողութեամբ զսաստիկ վարուցն նոցա ճգնութիւնս, որք անցուցին զբազում արամբք, և զբնական տկարութիւն մարմնոյ կանանց զօրացուցեալ առաւել քան զարանց՝ քաջայաղթողք եղեն։ Կանայք փափուկք, դստերք նախարարացն և կանայք աւագաց, փոխանակ նաշհոյ կորեակ ուտէին, և փոխանակ պարզ գինւոյ ջուր չափով ըմպէին. փոխանակ կերպասեայ ոսկէհուռ

5 Աց. ընչէց
8 Աց. մարդիկքն
13 ՑՑ. մե միայն
14 Յովհ. ԺԶ, 33
17 ՑՑ. և դպրոց, և ու-սեալք
18 Աց. զանապականս։ Զ. այսպես: Այսպես ուղղագրել են եւ ԲԳց.
20 Զ. գուբաղայից
28 Աց. ոտն կալով
32 ԲԳց. ուղղագրել են յայլոցն կանանց
34 Գուցէ Սաղմ. ԽԳ, 22
35 Զ. որոշողութեամբք

զգեստուցն խոշոր բրդեայս զգենուին, և փոխանակ բազմադիմի անկողնոցն փրփսայիւք ի վերայ երկրի գետնատարածք լինէին. և որք յառաջագոյն յամրանային ի քուն՝ նմանեալք վերնոցն անքունք եղեն։ Ջօծան իւղով, չյարմարեցին սանտրով զհեր գլխոյ իւրեանց. և որում անհնար է յաղթել կանանց, շատխօսութեան և ստէպ ընդ քօղով այսր անդր հայեցողութեան զաչս յածելոյ՝ ... ի ստէպ, և ցածուցին զլեզուս իւրեանց յաւելորդ խօսից։

Ցորոց խնդրուածս և ի փառտակս ի միասին արանց և կանանց ամենողորմն Աստուած հայեցեալ՝ յիշեաց զնահատակութիւն սրբոյն Վարդանայ և զամենայն միաբանելոցն ընդ նմա, և զբարեխօսութիւն վկայելոց քահանայիցն Աստուծոյ, շնորհեալ պարգևեաց դառնալ կապելոցն յաշխարհս Հայոց։ Որք եկեալ ի տունս իւրաքանչիւր յամի վեցերորդի թագաւորութեանն Պերոզի, և կեցեալք իւրաքանչիւր ոք ըստ սահմանելոյ ի Տեառնէ՝ վախճանեալք թաղեցան ի դիրս հարց իւրեանց խաղաղութեամբ ըստ Աստուծոյ հաճոյիցն, օրհնեալք ամենեքեան ի բերանոյ սուրբ կաթողիկոսին Գիւտայ։

ԿԲ. Քանզի յետ կատարման սրբոյ կաթողիկոսին Յովսեփայ յաջորդեաց զկաթողիկոսութիւնն յաշխարհիս Հայոց տէր Մելիտէ, որ էր յազգէն Մանազկերտեցւոցն. և զհետ նորա տէր Մովսէս, որ էր և նա ի նոյն ազգէ։ Եւ ապա ըստ Աստուծոյ տեսչութեանն յաջորդեաց զկաթողիկոսութիւն աշխարհիս Հայոց տէր Գիւտ, որ էր ի գաւառէն Տայոց, ի գեղջէն Արահեզայ, այր լի գիտութեամբ հայոցս և առաւելեալ յունին, յորդասաց բանիւ և առատաբուղխ վարդապետութեամբ. զոր ոչ երբէք արգելոյր անգիտութեանն տկարութիւն, այլ զծածուկս ասացեալ Հոգւոյն՝ նոյն սուրբ Հոգւոյն շնորհ յայտ արարեալ նովաւ՝ լուսաւորապէս ուսուցանէր բովանդակ ժողովրդոց. որոյ բանք իւր նման յորդառատ անձրևի զամենայն լսողի ծաղկեցուցեալ պտղաբերէր զոգիս։

Եւ զմնացեալ դեռևս ի տղայութեան հասակի զորդիս նահատակելոցն ընդ սրբոյն Վարդանայ, որք ի նոյն տոհմէ Մամիկոնէիցն էին և կամ որք ի տոհմէ Կամսարականացն և կամ յայլ ազգաց, կանայք նահատակելոցն արանց և կապելոց ի դրանն, թէպէտ և ի նեղութեան էին, սակայն ուսուցեալ և բազում հոգողութեամբ ուսուցանել տուեալ և խրատեալ՝ ոչ իբրև զանփոյթս և զանպիտան կանայս, այլ իբրև զքաջայրս՝ զառաջիկայ զօգտաբեր շքեղաբար հրահանգս մանկանցն հոգացեալ լինուին։ Եւ մանաւանդ կին նահատակին Համայեկայ Մամիկոնէի եղբօր սրբոյն Վարդանայ, որ եղև կին անուանի և առաւելեալ ամենայն լաւ և մտաւոր մասամբք յամենայն կանայս ի Հայաստան աշխարհիս. որ սնոյց և խրատեաց զորդիսն իւր յաշխարհին Վրաց, ի տան Աշուշայի Վրաց բդեշխի, զորս բդեշխն Վրաց Աշուշայ խնդրեաց պարգևս ի յարքայէն Պարսից Ցազկերտէ, ըստ առաջագրելոցն կարգի, և ածեալ ետ

1 Չ. ազեստուցն... զգենոյին

5 Չ. ընդ քօղով այսր անդր

6 88. զաչս ածելոյ։ Այստեղ ենթադրում եմ մի քանի բառի պակասորդ

13 88. իւրաքանչիւրոց

17 88. սուրբ կաթուղ...

23 Չ. առատաբուխ

28 Չ. դեռ տղայութեան հասակիս

30 Չ. յայլ ազգեաց

33 88. զանփոյթ

39 Չ. պարգև

ցմայրն իւրեանց, ·որում անուն էր Զուիկ. վասն զի զքոյրն Զըւկայ ունէր ի կնութեան ըղեշխն Վրաց Աշուշայ, որում անուն էր Անուշվռամ։ Եւ սնուցեալ անդ մանկունքն և ուսեալ՝ յառաջադէմք էին յամենայնի և հռչակաւորք. որք մինչ դեռևս ի տիս մանկութեան էին՝ ամենայն տեսանող մտաց երևէին աջողակք և զարմանալիք. որում անուն էր առաջնոյն Վահան, և երկրորդին Վասակ, և երրորդին Արտաշէս։ Բայց էր նոցա միւս ևս եղբայր կրսեր, անուն Վարդ, որ էր մնացեալ տղայ ի դայեակս իւր ի Տայս։

ԿԹ. Զսոսա տեսանելով, որք ի ժամանակին իւրաքանչիւր ի տունս որպէս գաղտագողի հարանօք իբրև զանպիտանս գտանէին, ի Պարսկաց զտանուտէրութիւնն գնեալ ուրացութեամբ ըստ անարժանութեանն, և ոչ տիրացեալք սատուածպաշտութեամբ իբրև զարժանաւորս, արք անմիտք և մնասակարք, անպիտանք և ոչ պիտանիք, վատք և ոչ քաջք. յորոց ոմանք ի լեռնախոյզ աւազակաց ի մէջ անցեալ ուրացութեամբ վերտէին, և ոմանք կատակութեամբ աստուածս գնէին, և զաստուածս և զանմիտ վաճառականսն ի միասին թշնամանէին. անմարդք ի ստոյգ մարդկանէ, և անարժանք և անծանօթք յազգէ տոհմկաց։ Եւ էր այնուհետև տեսանել յաշխարհիս Հայոց զլաւութիւն հեռացեալ, զիմաստութիւն կորուսեալ, զքաջութիւն հեռացեալ և մեռեալ, զքրիստոնէութիւն թաքուցեալ. և որ երբեմն քաջանուն զօրքն Հայոց ի մէջ այլ զօրացն ամենայնի երևէին, և զօրապլուխք անուանիք և յաղթողք՝ ապա ծաղր էին ամենեցուն և կատականք. մինչև ինքն իսկ թագաւորն Պերոզ յայտնապէս նախատելով երբեմն առաջի ամենայն ատենին ասէր, թէ «Այր անպիտան և գունդ յետին, որ զամ մի յիմ իշխանութիւնն է՝ Ասորւոց է. բայց քան զԱսորի՝ Հայն է այր յետին և անպիտան»։ Եւ էր լուքն այն արժանի լալոյ և ողբալոյ։

Եւ այնպիսի անպիտան իշխանք ժամանակին իբրև տեսանէին օր ըստ օրէ զաճումն յառաջադիմութեան յորդիս ազգի նահատակելոց Մամիկոնէից, զոր ոչ ի տուչութենէ մարդոյ վստահեալ ունէին յանձինս, այլ օգնութեամբ վերին խնամակալութեան, ի բարեխօսութենէ սուրբ արեան նախնեացն իւրեանց, զոր ի վերայ սուրբ եկեղեցւոյս Հայոց հեղին յօժարութեամբ, կային աներկիւղապէս ի մէջ անուանեալ իշխանացն Հայոց, որպէս ի մէջ թշնամեաց։ Թէպէտ և արհամարհեալք էին առ նախանձու, սակայն լաւագոյնք էին և երևէին յամենայնի, և ականաւորք ի խորհրդի, մտաւորք և իմաստնադիւտք. ի նետաձգութեանն գեղեցկաձիգք և դիպեցուցողք, յորս՝ թեթևաշարժք և նախասպանք, յերկոցունց ձեռաց աջողակք, և յամենայն կողմանս ուղղակիք և շնորհալիցք. զորոց ձանձրացուցանէին բազմածառայքն զանծառայիցն զդուռսն, խնդրելով հանապազ զմիս այլ և այլ որսոց, և կամ այլ պատուական և մեծագին գիւտից խնդրովք ըստ իւրաքանչիւր աշխարհաց։ Նոքօք շքեղանային ընթրիք ամենայն տանուտերանց Հայոց. նոքօք զարդարէին յամենայն տունս օտարք և ընտանիք։ Նմանեցուցեալ

9 Զ. իւրաքանչիւր ի տանից | 24 Զ. զամ մի իմ իշխանութիւն է | վերեւից ջրագրած այսպ.
14 88. որոց ոմանք | 25 Զ. ձախ Հայ այր, յետոյ | 36 Զ. ձախ դիպողը, յետոյ վերեւից ջրագրած այսպ.

ինքեանց ի յառաջանալ փութային և զորդիս երանելւոյ Կամսարականին Արշաւրայ տեառնն Արշարունեաց, որք և ազգախառն իւրեանց էին ծնունդք դստեր մարտիրոսին Վարդանայ. խրատել և հրահանգել ըստ իւրեանց իմաստութեան և արուեստի ջանային։

Եւ զայսպիսի ինչ բարւոյ մասունս առնել առատ և հոգալ՝ առաւել ևս կամաւոր յօժարութեամբ յորդորագոյն էր աւագ որդին սորոյն Հմայեկայ, որում անուն էր Վահան։ Քանզի էր այր մտացի, առողջախորհուրդ և բարեսէր. յոր գործ և ձեռն արկանէր գործել՝ Տէր յաջողէր ի ձեռս նորա, և զօրանայր. նա և գործակալք Պարսիկք որ գային ի դրանէ, թէպէտ ոչ կամաւ, այլ ըստ Աստուծոյ սադրելոյ սիրէին զնա և պատուէին։ Որք և առաջի թագաւորին Պարսից գովէին զլաւութիւն առնն և անմոռաց յիշէին. մինչև ինքն իսկ թագաւորն Պերոզ գլխովին ծանեաւ զնա և առ լաւս ունէր, և յանդիման ամենեցուն գովէր և արժանի պատուոյ հաշուէր։ Բայց արժանի ըստ նորա իմաստից և քաջութեանն թէպէտ և ածէր զմտաւ պատուել զնա, այլ յիշելով զհարցն և զնախնեացն նորա զիրս և զգործս, և որպէս հանապազ ընդդիմութեամբ և պատերազմաւ աշխատ կալեալ էր զնոսա՝ յապաղեալ կասէր, և լուեալ թագուցանէր զարժանի պատիւ տալ նոցա. մանաւանդ իբրև հապաղէպ լսէր զնախանձորդացն զբանսարկութիւն, որք առ վտանգի ժամանակի տանուտեարք Հայոց անուանեալ էին, զորս կարի առաւելապէս երկեցուցանէր աճումն յառաջադիմութեան Մամիկոնէին Վահանայ. կասկածէր երկիւղիւ առ ի յառաջիկայն՝ զանարժան գոռոզացելոցն ընկանել զփառս։

Իսկ լաւ ոք այր յանկարծ և կամ արժանաւոր թէպէտ և էր ի ժամանակին, որպէս լաւ այր Բաբիկն Սիւնի և կամ սքանչելին Առնակն Ամատունի և կամ այլ ոք նման նոցին, ի հոգէսպանութենէ մոլեկան թագաւորին և ի կատաղութենէ ամբարշտեալ ժամանակին իշխանացն, որպէս Նապաստակք ի սլացմանէ գիշակեր արծուեաց, ի ծերպս վիմաց և կամ ի մացառուտ տեղիս մայրեաց զօղեալք թաքչէին. կարևոր համարէին համբերութեամբ ի քրիստոնէութեան կարգի վախճանել, քան թէ փառախնդիր յածմամբ պատահել ուրացութեան և կորնչել։ Լաւ համարէին ըստ բանի Գրոյն զնախատինս վասն Քրիստոսի, քան առ ժամանակ մի թաթաւել ընդ մնոտի փառս աշխարհիս, և յաւիտենից տանջանացն լինել ժառանգ. որք իբրև զԲաբելոնի հնոցին բոց տեսանէին բարձրացեալ զամբարշտութեանն կիզումն, և ոչ ոք էր որ շիջուցանէր։ Ժողովեալք նստէին առ սուրբ քահանայապետին Հայոց Գիւտայ, որ ոչ երբէք լռէր յարտասուելոյ զմոխրասիրացն զմոլորութիւնս, որ խնդրէր լսելեայն պաճարանս հայթայթանաց հանդերձ նոքօք.

1 ՁԱs. և յառաջանալ
1 ՏՏ. երանելւոյ
3 Հ. խրատեալ և հրահանգեալ
5 Հ. առնել առոք
8 Հ. արկանէր, ձեռն ի վրայ ջնջման նշան
18 Թէպէտ և լուեալ
21 ՏՏ. յաջողումն յառաջադիմութեան
21 Հ. մամիկոնէիցն
23 ՁԱs. ընկանել։ Այսպէս բուն ուղղագր. ԲԳs.
29 Հ. ի տեղիս
30 Հ. ընկղմում ի քրիստոնէական. յուսանկցում ուղղած այսպէս: ՏՏ. ի քրիստոնէական
34 ՏՏ. լինել արժանաւոր
37 ՏՏ. Գիւտայ։ Հ. Եսկ գիւտեայ, յետոյ ե՛ն ջնջուած
38 Հ. լսելեան... հայթաթանաց

երբեմն փախչել յօտարութիւն, և երբեմն ի խնդիր լինել օգնականութեան և ապստամբել։ Առաջէին գաղտ և պատգամաւորս միանգամ և երկիցս առ թագաւորն Յունաց Լեռն. որոյ թէպէտ և յանձն առեալ կամէր օգնել՝ յերկարէր ժամն և խափանէին խորհեալքն։

ԿԳ. Սկսանէր այնուհետև սուրբ կաթողիկոսն Հայոց Գիւտ առ ի չժուժալ սրտին՝ յայտնապէս ոխութեամբ գրգռել ընդ անօրէն ուրացելոցն, և սիրել և պատուել զկողմն տառապեալ հաւատացելոցն։ Եւ մանաւանդ առ վատթարս ունէր և արհամարհէր զՄախազն Գադիշոյ, որ զօրագլուխն և քաջալերիչն էր ամենայն ամբարշտելոցն դասու։ Որոյ չկարացեալ տանել արհամարհանաց սրբոյ կաթողիկոսին Հայոց Գիւտայ՝ զօդեալ բիւր բանս թշնամութեան՝ ամբաստան լինէր զնմանէ առ թագաւորն Պարսից Պերոզ, ասելով, եթէ «Զմարդիկ, որ զկամաց քոց զհրաման կամին կատարել և զքո օրէնս խորհին յանձն առնուլ և սիրել՝ կոչէ առ ինքն, և է որ ինչ տալով, և է զորս քաղցր բանիւք պատրէ, և յիրացն ի բաց դարձուցանէ։ Վասն զի բազումք եկեալ են առ իս և յանձն առեալ ունել զօրէնս քո. և նորա կոչեալ առ ինքն՝ պատրանօք ի բաց տուեալ է թողուլ զիրսն և արհամարհել. այլ և զմեզ, որ զքեզ սիրեմք և արեգական և կրակի երկիր պագանեմք և կամաց քոց ծառայեմք՝ ատեայ և թշնամանէ։ Եւ ինքն ընդ կայսեր խօսի և պատուական ընծայիւք հպատակէ նմա և մեծամեծացն որ ի դրան նորա են»։ Եւ այլ բազում բանիւք ըստ օրինի թշնամւոյ խօսէր ըստ կամի։

Եւ լուեալ զայսպիսի բանս ամբաստանութեան թագաւորին Պարսից Պերոզի ի Մախազէն Գադիշոյէ՝ զայրացեալ սրտմտութեամբ հրաման տայր՝ սրբոյ կաթողիկոսին Հայոց ի դուռն հասանել և անդ պատասխանի առնել բանից դատախազին։ Իսկ երանելի կաթողիկոսն Հայոց Գիւտ կամաւ և յօժարութեամբ ի դուռն երթայր և յանդիման լինէր աւագաց դրանն։ Որոց առաջի շքեղացուցեալ զսուրբ այրն զօրութեան վերնոյն՝ տեսանէր ամենայն մարդ զերեսս նորա իբրև զերեսս հրեշտակի. յորմէ և հեթանոսք մեծաւ զգուշութեամբ խորշեալ պատկառէին ի նմանէ։ Այլ քրիստոնեայքն և եպիսկոպոսն Տիզբոնի և Խուժաստանի և Հրևեայ, և ամենայն կողմանցն այնոցիկ երիցունք և սարկաւագունք երկուցեալ դողային ի սրբոյն որպէս ի մարգարէէ տեառն Աստուծոյ։

Եւ լուեալ թագաւորին Պերոզի զերթալ սրբոյն Գիւտայ՝ յղէր առ նա մի ըստ միոջէ զամենայն բանս ամբաստանութեանն Մախազու, զԾրզատվշնասպն զորդի Աշտատայ ի Միհրան տանէ։ Եւ սրբոյ կաթողիկոսին Գիւտայ պատասխանի արարեալ բանից թագաւորին՝ ասէր. «Ոչ են ամենայն ասացեալքդ Մախազու զինէն առ ձեզ՝ սուտ. այլ են որ արդար են, և են որ ոչ են ստոյգ արդար։ Քանզի սիրել զքրիստոնէութիւն և որ ոք քրիստոնեայ է՝ զայդ ոչ այսօր ընտրեալ պահեմ յանձին իմում, այլ ի մանկութենէ իմմէ. և զամենայն մարդ որ վրիպեալ է ի ճշմարտութենէն՝ ատեմ. և կամիմ, թէ ամենայն, որ ի ճշմարտու-

13 ՑՑ. խորհել
28 Աց. չիք վերնոյն։ ԲԳց. լռացրել են զօրութեան Հոգւոյն Սրբոյ
29 Զ. Ռախ յորմանէ, յետոյ ա՛ռ ըՆ ԲԻՐած
32 Զ. տեառն և աստուծոյ
33 ՑՑ. Գիւտեայ
37 ԶԱց. զի են առ ձեզ սուտ։ Այսպէս ըստ ուղղագր. ԲԳց.

*թենէն մոլորիլ կամէր և գնալ զճանապարհ որ ոչ է ուղիղ, և գոյր հնար բռնութեամբ և կամ աղաչելով, այլ թէ և կարասւով կարէի հաւանեցուցանել՝ ջանայի անվեհեր մտօք և ոչ տայի կորնչել այնպիսւոյն զանգիւտ կորուստն։ Այլ որ ասենդ, թէ երթևեկք նորա ի Հոռոմս՝ ոչ ըստ դորա կարծեաց և խօսիցն այդպէս են իրքն, քանզի սուտ է. այլ վասն զի զդպրութիւն գիտութեանս մերոյ և զիմաստ բանաւոր ուսմանց յաշխարհին Հոռոմոց ուսեալ եմ, և են իմ անդ ծանօթք բազում և ուսումնակիցք. այլ և զկերպարան հանդերձիցս զոր ունիմքս մեք՝ անտի գնեմք, վասն զի և ոչ յայլ աշխարհի գտանի սա ուրեք, բայց անդ՝ հարկաւորիմք անտի գնել զայս ըստ ժամանակին պիտոյից։ Այլ զհնազանդութիւն ծառայութեան՝ օրէնք իսկ մեր պատուիրեն հատուցանել տերանց, զդիպողսն և զարժանաւորս»։*

*Եւ տարեալ զայս ամենայն բանս պատգամաւորին առ Թագաւորն՝ իսկոյն ծանեաւ Թագաւորն, թէ ստոյգ և մտացէբար են խօսք սրբոյն, և սուտ և առ քինաւորութեանն խօսի Մաղխազ զնմանէն, զոր ինչ և ասէ։ Վասն զի և Աստուած ըստ հաճոյից սրբոյ առնն տայր լսել Թագաւորին զխօսս նորա. բայց զի մի թեթևացուցեալ զկարգ օրինացն իւրոց երևեցուսցէ քրիստոնէից՝ լռեալ թողոյր զխօսս Մաղխազին և չհարցանէր ինչ ծանուցանս։ Բայց յղէր առ երանելի կաթողիկոսն Գիւտ, թէ «Մինչև ցայժմ քո զիշխանութիւնդ առանց իմ հրամանի կալեալ է, և ծառայ մարդիկ են, որոց քեզ զայդպիսի մեծ գործ տուեալ է, և ոչ ինչ յինէն ունիս վստահութիւն։ Բայց այժմ եթէ զիմ կամս առնես, և զիմ օրէնս ունիս և արեգական երկիր պագանես՝ զգործդ զայդ քեզ և քում ազգի և որում դու կամիս՝ պատըշրաւ տամ մինչև յաւիտեանս, և զքեզ պատուով այնպէս արձակեմ ի Հայս, զի Հայոց ուրուք ի մեր դրացս պատիւ և շքեղութիւն այնպիսի չիցէ գտեալ, որպէս դու գտանես։ Ապա թէ յամառեալ չհաւանիս կատարել զկամս իմ՝ զեպիսկոպոսութիւնդ ի բաց առնում ի քէն և ի գործոցդ ի բաց հանեմ, և դու անարգանօք և թեթևութեամբ երթաս ի տուն քո և յաշխարհն»։*

*Եւ երանելի այրն Աստուծոյ կաթողիկոսն Հայոց Գիւտ լցեալ զօրութեամբ սուրբ Հոգւոյն՝ ասաց ցպատգամաբերն արքունի. «Կամէի թէ այդպիսի բանից պատասխանիս ես ինձէն առնէի առաջի Թագաւորին. քանզի ոչ է հնար քեզ, և ոչ իշխես համարձակապէս պատմել Թագաւորին լիով զամենայն լուեալսն ի բերանոյ իմմէ»։ Եւ պատգամաւորին պատասխանի տուեալ ասէ ցսուրբն. «Համարձակութիւն տուեալ է, ասէ, Թագաւորաց՝ ասել զարդար լուրն ի մէջ երկուց կողմանց. զոր և լսեն պատգամաւորք, և չիշխեն եթէ չասեն»։ Եւ սուրբ այրն Աստուծոյ ետ պատասխանի և ասէ. «Ասա ցԹագաւորն, թէ յաղագս գործոյս, զոր ասես, թէ ցայժմ քո ի ծառայից և ոչ յինէն կալեալ գործակալութիւն՝ թէ դու կամ թէ ոք ի ծառայիցն քոց որ ետուն, և առնուք յինէն՝*

4 88. ի Հռոմս։ Գ8. յրացրել է երթևեկք Նորա (են)
8 2. անդէ
14 2. ստոյք
16 2Ա8. տնայր լսել։ Այսպ. ըստ ուղղագր. ԲԳ8.
18 2. զխօս
20 88. իշխանութիւնդ
28 88. ի բաց առնեմ
34 2. ի բերանոյ իմէ
36 2. չիք է
36 ԲԳ8. չիք զոր
40 2. դու և կամ թէ ոք ... և առնուլն յինէն

ուրախ եմ և կամիմ. վասն զի յաշխարհատանջ հոգոյ և կարեաց ապրեալ՝ անձին պարապեմ և աղօթից։ Իսկ յաղագս եպիսկոպոսական ձեռնադրութեանս որ ասես, թէ ի բաց առնում ի քէն՝ զայս երկնաւոր ձեռնադրութեան պատիւ առնուլ յինէն ոչ թագաւորք և ոչ յիշխանաց ոք, այլ մահ, ոչ իշխէ, քանզի և կարէ իսկ ոչ. և ոչ բնաւ երկնչիմ ի մահկանացու մարդոյ՝ տալ զպատիւս զայս ինձ և կամ առնուլ յինէն։ Բայց վասն օրինացդ քոց որ ինձ ունել հրամայես, յաղագս որոյ և պատիւս և պարգևս խոստանաս տալ ինձ՝ ոչ ուրուք է յերկրաւորացս պատիւ մեծ և իշխանութիւն հզօր առաւել քան զքոյդ որ ունիս. բայց վասն անպիտան և գարշելի օրինացդ քոց զոր ունիսդ՝ դու ինքնին գլխովին որ թագաւորդ ես, և ամենեքեան որ զայդ օրէնս ունիք՝ մեռեալ համարեալ էք յաչս իմ, և ոչ կենդանիք. և զպատիւս քո և զփառս՝ անարգանս համարիմ և մանկտւոյ ծաղր և կատականս»։

Եւ լուեալ զայսպիսի բանս պատգամաւորին ի սրբոյ կաթողիկոսէն Հայոց Գիւտայ՝ ասէ ցերանելին. «Թէ արդարև ի վերայ դորին բանից պնդեալ կաս՝ ապա արդար ասէիր, թէ չիշխես տանել զասացեալս իմ առ թագաւորն, և իրաւ ասէիր. զի ոչ ուրուք երբէք այդպիսի բանս ստամբակութեամբ յղեալ է առ այր թագաւոր. բայց տես, թէ հնար է փոխել զխօսսդ, ուշիմ լեր»։ Եւ սրբոյն պատասխանի արարեալ ասէր. «Տեսանե՞ս, զի դու ընդդիմանաս պատուիրանին Աստուծոյ, և չերկնչիս. վասն զի դուք ասէք, թէ որ ոք զհրաման թագաւորին լուծանէ՝ զԱստուած անարգէ. և դու ասացեր, թէ թագաւորաց օրէնք են՝ չիշխել պատգամաւորի նուազեցուցանել բան մի ի բանից առաքողին և կամ առաւելուլ։ Արդ՝ երթ ասա զոր լուար յինէն. քանզի ինձ ոչ է հնար խորհել այլ ինչ և կամ ասել»։

Եւ երթեալ պատգամաւորն առաջի թագաւորին՝ ասէ ցթագաւորն. «Ոչ իշխեմ ես զխօսեցեալս առն յանդգնաբար երկրորդել առաջի ձեր, բայց եթէ ի ձէնջ հրաման առնումս»։ Եւ հրամայեալ թագաւորին ասել համարձակապէս զամենայն լուեալսն առանց երկիւղի, և ի պատմել այնուհետև մի ըստ միոջէ զամենայն բանս առն Աստուծոյ Գիւտայ, և լուեալ թագաւորին զամենայն աներկիւղապէս խօսեցեալսն Գիւտայ՝ ի զայրացումն սրտմտութեան գրգռեալ, կամեցաւ տալ հրաման խստութեամբ. և յանկարծակի դադարեցուցեալ զինքն՝ առ վայր մի լռեաց. և ապա սկսաւ խօսել և ասէ. «Չէ հնար. եթէ ոչ՝ կատարին կամք խնդրոյ նորա, զոր նայն կամի. և ոչ տամ համբուրել քրիստոնէից զկապանս նորա, և ոչ երկիր պագանել ոսկերաց նորա, որպէս սովորութիւնն։ Լուեալ է իմ զպաշտամանց նոցա, թէ չառնեն զայն պատիւ կենդանեաց, զոր այդպիսի մեռելոյ առնեն։ Բայց ասա ցնա, թէ այդմ պատուոյ չտամ քեզ պատահել, զոր դու ցասուցանելով զիս՝ գտանել կամիս յինէն։ Կաց ուր և կամիս, բայց ի գործոյ կաթողիկոսութեանդ հեռի ես, և չէ քո»։

6 Ձ. զպատիւս զայս ինչ
16 Ձ. նախ արդարասէր էիր, ապա նոյն գրչով ուղղած այսպէս
19 Ձ. զխօսդ
21 Ձ. զհրամանս
29 ՑՑ. և պատմել
31 ՑՑ. Թագաւորն
31 Ձ. խօսեցեալ
32 ԳՑ. խստութեամբ. յանկարծակի
34 ԱՑ. չէ հնար եթէ՝ ոչ կատարեն։ ԲԳՑ. չէ հնար եթէ ոչ կատարեն
38 ՁՑՑ. բայց ասաց նա

Եւ լուեալ զայս սրբոյ կաթողիկոսին Հայոց Գիւտայ՝ մասամբ միով ուրախացաւ, և միւսով ևս մասամբ տրտմեցաւ մինչև ի մահ. քանզի լուեալ, թէ ի գործոյն ի բաց եղև՝ ուրախացաւ, հանգչելով ի զբօսանաց աշխարհիս. և լուեալ, թէ ոչ կապանաց եւ հրաման ի թագաւորէն վասն նորա և ոչ մահու, որում ցանկանայր ի բազում ժամանակաց, տենչայր լինել արժանի՝ խռովեալ տրտմէր անմխիթար վասն չպատահելոյ ցանկալի և մեծ խնդրոյն, որում փափագեալն էր հասանել։

Կացեալ այնուհետև ի դրան ըստ իւրում կամելոյ սուրբ կաթողիկոսն Հայոց Գիւտ, բազում համարձակութեամբ պատուեալ, ոչ միայն ի քահանայից և ի քրիստոնէից, այլ և առաւել ի հեթանոսացն, որ իւրաքանչիւր ախտից գտանէին զբժշկութիւն յաղօթից սրբոյն. և այլք ի քրիստոնէից կողմանցն այնոցիկ ցանկանային ի սուրբ աջոյ առն Աստուծոյ գտանել ձեռնադրութիւն։ Ցորոց զոմանս ձեռնադրէր յեպիսկոպոսութիւն, և զայլս բազումս յաստիճան երիցութեան կարգէր։ Եւ այսպէս պատուեալ յամենեցունց՝ ուրախալից շքեղութեամբ հրաժարէր գնալ յաշխարհն Հայոց. օրհնեալ զամենեսեան յանձն առնէր Աստուծոյ, յուղի անկեալ գնայր յաշխարհն Հայոց։ Եւ կեցեալ առաւելապէս պատուովք քան զառաջինն ի Հայս՝ հանգչէր երկայն ծերութեամբ, և եդեալ ի դիրս հարց իւրոց խաղաղութեամբ ի գեօղն, որ կոչի Ոդմսու գեօղ, ի գաւառին Վանանդայ։ Եթող օրհնութեամբ զամենայն ժողովուրդն սուրբ եկեղեցեացս Հայոց։

ԿԵ. Եկեալ ի դրանէ և Մաղխազն Գադիշոյ, և ժողովեալք առ նա դասք ուրացողացն. որ թէպէտ և ուրախանային զառժամանակեայ թաղծալից ուրախութիւն կենցաղոյս՝ սակայն իբրև տեսանէին զՄամիկոնեանն Վահան այնպէս երևելի յաճմունս բարւոյ համակեալ՝ ներկեալք խամրէին և ծնկեալք թարշամէին։ Խնդրէին ի վերայ նորա հնարս պատճառանաց, որով զնա և զեղբարս նորա կորուսանել կարասցեն։ Տային գիտել մեծամեծաց դրանն, այլ էր ինչ որ և թագաւորին, թէ ոչ է հնար սմա առանց ապստամբութեան կալ ի Հայս։ Ցիշեցուցանէին Արեաց և զնախնեացն նորա զմիոյ միոյ, թէ ո՛վ ի նոցանէ ոչ խռովեցոյց զԱրեաց աշխարհ և ոչ արար մեծամեծ վնասս և մահունս. արդ՝ երբ և է, առեն, և սա զնոյն խռովութիւնս յարուցանելոց է ի վերայ ձեր։ Որոց լուեալ զայս ամենայն բանս քսութեան ի ստէպն բանսարկուաց՝ կասկածէին ի համբաւոյն, և հայելով յառն յաջողակութիւն և յիմաստն՝ տրտմէին առ սէրն։

Տեսեալ այնուհետև Վահանայ զայնչափ յարուցմունս նախանձաւորացն ի վերայ նորա, թէ ոչ երբէք կասեալ լռեն ի չար նախանձալից խօսիցն՝ չկարացեալ տանել հանապազօրեայ բանսարկութեանն, երթեալ ի դուռն՝ տկարանայր ի հաւատն. և եկեալ ի Հայս, սակայն և այնպէս խնուլ զբերանս չարախօսացն ոչ կարէր։ Զի որ ոք բան ուղիղ ի հրապարակի առաջի իշխանի չգիտէր խօսել՝ զնա ատեայր. և որ ոք յորս

3 ՑՑ. Եթէ ի գործոյն
7 ՑՑ. որում փափաքէր
11 ՑՑ. բժշկութիւն
25 Կամ ըստ Չ. յերևելի անձմունս
25 Թիւրև ներկևեալք (Ն. Բ.)
28 ՑՑ. էր ինչ և որ
29 ՑՑ. կեալ։ Չ. Նախ կեալ, ապա Ն'Ն ֆերած
32 ԲԳՑ. առեն, սա

կամ ի Թիւրախ նետ չգիտէր ձգել՝ զնա պարտաւորէր. «Նստի, ասէին, և ամենեցուն ունչս առնէ»։ Եւ որ ոք անմտութեամբ զգործս արքունի չմարթէր գործել՝ ի նա բերէր զպատճառն. «Նա, ասէին, յառաջէ յամենայն ի գործս, և չտայ ինչ ումեք գործել կամ օգտել»։ Վասն զի էր նորա գործակից, որում անուն էր Վրիւ, անանուն ըստ ազգի և անփորձ իրի, որդի առն Ասորւոյ, բայց շատախօսութեամբ և ընդվայրաբանութեամբ առաւելեալ նմանէր ազգի Ասորւոց. որոյ չմարթացեալ գործել զգործ արքունի՝ երթեալ լինէր ամբաստան զՎահանայ առաջի Թագաւորին Պերոզի, ասելով, թէ «Ինձ ի գործ ոսկէհատին չետ ինչ մօտ երթալ. և իւր ժողովեալ զամենայն ոսկի աշխարհին՝ խորհի երթալ առ կայսր և կամ յաշխարհն Հոնաց, և տուեալ զոսկին՝ կամի խնդրել գունդ և ապստամբել»։

Եւ լուեալ զայս ամենայն բան ամբաստանութեան զինքենէ իմաստախորհին Վահանայ, առեալ փութանակի զբազմութիւն ոսկւոյն՝ հասանէր ի դուռն։ Եւ լուեալ Թագաւորին Պերոզի զճեպով երթալն Վահանայ՝ զարմացեալ ասէր, թէ «Եկդ Վահանայ այդպէս երագ՝ շատ ընդդէմ է բանիցն Վրուայ, մանաւանդ թէ բերեալ ևս ինչ է»։ Եւ եղեալ յանդիման Թագաւորին՝ տեղեկանայր ի նմանէ Թագաւորն Պերոզ, թէ արդարև բերեալ ինչ է. և լուեալ ի Վահանայ զքանիօնութիւն բազմութեան ոսկւոյն զոր բերեալ էր՝ և ուրախանայր յոյժ։ Ապա և յանդիման Վահանայ տայր ասել Վրուայ զբանսն, զոր ասէր զնմանէ յառաջագոյն։ Եւ լուեալ Վահանայ զամենայն ասացեալսն Վրուայ՝ ետ պատասխանի առաջի Թագաւորին և ասէ. «Գիտեմ և ես զանիմաստութիւն անձին իմոյ, ըստ ցուցանելոյ զիս ձեզ Վրուայ. բայց սակայն այնքան կոյր չեմ, թէ զԱրեաց ոյժ և տեսանել անգամ չգիտեմ. որոյ ուժոյ զբազում ազգս ապստամբաց հարեալ է սաստիկ երկիւղիւ, և հնազանդեցուցեալ ընդ ձեռամբ իւրեանց ունին։ Իսկ ես, որ ապստամբելս կամիմ ըստ դորա ասելոյդ՝ դոյն իսկ ինքն գիտէ, զի մի ծառայ չգտանի իմ, որ ինձ խոհկերութիւն առնէ, և ոչ երկուց կամ երից պատանեաց իշխեմ տիրաբար, որ ինձ երկիւղիւ սպաս ունին. գնդի իմ ոյժ այդ է։ Բայց եթէ նեղ ինչ էր ինձ ի ձէնջ, և ուրեք յօտար երկիր գնալ և կորնչել կամէի, զայդչափ ոսկի այսր զի՞ բերէի, որ մինչև ցմահ իմ, թէև կարի շատ կէի՝ իմում անձինս, այլ և տասանց ևս ընդ իս, թոշակ շատ էր և բաւական. և զայլ ոք ոստիկան ձեր յիմ վերայ չէր կացուցեալ, որ թէ ինձ ի հարկէ տայր բերել այսր զայդչափ բազմութիւն ոսկւոյ։ Բայց թէ վաստակել գիտեմ ձեզ՝ դուք կարող էք որ զիս թէ կամիք կեցուցանել, վաղվաղակի և առ ժամայն մեծացուցանել, որպէս և կամիք»։

Եւ լուեալ զայս Թագաւորին Պերոզի և այլ աւագանւոյն զայնպիսի

5 ՁԱց. էր 'նա գործակից։ Այսպէս ըստ ուղղագր. ԲԳց.
9 ՁԱց. չետ ինձ մօտ (Զ. ի մօտ) երթալ։ Այսպէս ըստ ուղղագր. ԲԳց.
13 ՑՑ. ապստամբութեան
15 ՑՑ. և հասանէր
19 ՑՑ. զՎահանայ
25 Զ. զարեաց 'ի փոխարէն նախ զարթեայց, ապա յ'Ն ջնջած
26 Զ. ապաստամբաց (երկրորդ ա'ի վրայ ջնջման նշանով)
28 ՑՑ. դոյն իսկ ինք
30 Զ. գնտի
35 ԲԳց. որ թէ ինչ

իմաստութեան զխօսս ի Վահանայ՝ ամենեքեան իրաւացուցին զխօսսն Վահանայ քան զխօսսն Վրուայ։ Եւ հլանէր Վահան արդարացեալ յատենէն, և որդի Ասորւոյն Վրիւ հլանէր ամաչեցեալ և արհամարհեալ։ Եւ հրաժարեալ Վահանայ ի դրանէ՝ մեծարանօք և բազում շքեղութեամբ եկեալ հասանէր յաշխարհս Հայոց։

Եւ քանզի ոչ էր խաղաղութիւն մտաց նորա զամենայն օր վասն վատ անուան ուրացութեանն, զոր նման նահատակեալ հարցն իւրոց պատճառանօք և ոչ ճշմարտութեամբ կրէր յինքեան, եւ առաւել ի գալն պայծառութեամբ ի դրանէ՝ տարակուսէր յանձն իւր, թէ մի՛ գուցէ պատրեալ ի փառս աշխարհիս՝ յամեալ մոռանայցէ զերկիւղ հանդերձելոյ աշխարհին, և վնասիցի։ Եւ այսպէս ցանկ մաշելով ի միտս իւր՝ ծանուցանէր առ ջերմ սիրողաց զիւրն հոգալ, և հնարս հայցէր և անդադար խնդրէր ի Փրկչէն Քրիստոսէ՝ շնորհել նմա ժամ բարի, ասելով ընդ միտս իւր, թէ «Միշտ ընդ քեզ, տէր Աստուած, ամենայն ինչ հնարաւոր է, և տկարանայ քեզ և ոչ ինչ. դու, տէր, ապաւէն իմ լեր. շնորհեա ինձ ժամանակ դարձի խոստովանութեան, և ուսո ինձ առնել զկամս քո, զի դու ես Աստուած իմ»։

ԿԶ. Եւ մինչդեռ Վահան յայսպիսի յուղմունս մտաց կայր տարակուսեալ՝ լինէր յանկարծակի խռովութիւն յուզմանց յաշխարհին Վրաց. Վախթանգ սպանանէր զբդեշխն զանօրէնն Վազգէն յամի քսաներորդի հինգերորդի Պերոզի արքայի։ Զոր լուեալ Հայոց աշխարհիս մարդկան, յորոց բազումք այն ամ յԱղուանս էին, յապստամբ ամբականացն կռուի, որոց բովանդակին զօրագլուխ էր Զարմիհր Հազարաւուխտ, և Հայոց աշխարհիս Ատրվշնասպ Յոզմանդեան էր մարզպան. իսկ քրիստոնեայ մարդիկն Հայոց, որ այն ամ անդ ի կռուին էին՝ հարեալք մաշէին առաւել եւս յարհամարհանաց և ի նախանձուէ ի յետին իշխանացն Հայոց, որք ուրացութեամբն գոռոզացեալ ամբարհաւաճէին ի ժամանակին, քան թէ ի բռնութենէ պարսիկ զօրագլխացն գործոց։ Որք ի ժամանակին իբրև լուան զապստամբութիւնն Վրաց արքային՝ ցնծային ուրախալից սրտիւ։ Վասն զի գայր առ նոսա համբաւ, թէ Վրաց արքայ ասէ, թէ «Ես միում ումեք զկռիւ չտամ տեսանել, այլ այնչափ հանեմ Հոնս, որում ոչ կարիցեն հարկանել ի դիմի զօրքն Պարսից»։ Զօրացեալք յայնպիսի համբաւոց քրիստոսասէրքն՝ և անձանց ակն ունէին օգտի և բարի այցելութիւն գտանել ի Բարձրելոյն. բայց երկնչէին, թէ մի՛ գուցէ առեալ զգունդն Հայոց զօրագլխացն Պարսից՝ ընդ նոյն ի դուռն գումարիցեն։

Այլ Քրիստոս յայնպիսի կարծեացն զերծուցեալ զնոսա՝ գային ի Հայս. և եկեալք ի գաւառն Շիրակայ, ի դաշտն, ուր բանակէր մարզպանն Հայոց Ատրվշնասպ Յոզմանդեան, և առ նմին հազարապետն Հայոց Վեհվեհնամ. աստ խորհուրդ ի մէջ առեալ արանց ոմանց նախարարացն Հայոց, որք զտրտմելն և զտարակուսելն ի բազում ժամանակաց գիտէին զՄամիկոնէին Վահանայ յաղագս մոգութեանն անուան, և ասէին, թէ «Կարի պատեհ էր և մեզ և նմա ժամս այս փրկութեան.

1 Զ. խմաստաքանութեան զխօսս: ԲԳՑ. խմաստութեամբ | 14 ԲԳՑ. ուղղագրել են մի՛շտ քեզ | 16 Զ. ուսոյ | 33 ՑՑ. համբաւոյ | 37 ՑՑ. բնակէր

նմա՝ ապրել ի խղճէ մտացն իւրոց, և մեզ՝ զերծանել ի հանապազորդեայ կասկածանացս և յարաժամ հարանացս, որոց ծառայեմքս ի հարկէ հեղձամղձուկս նախանձու։ Եւ արքայդ Վրաց Վախթանգ այրացի է. ո՛ գիտէ, և բազումողորմն Աստուած հայեսցի ի վտանգս մեր և օգնեսցէ մեզ, և հանդերձ Վրօք թերևս կարող լինէաք առ սակաւ մի աշխատ առնել զՊարսիկս»։ Եւ խորհեալ այսպէս սակաւ ոմանց ի Հայ Նախարարացն՝ լսելի լինէր խորհուրդն և յայլս ոմանս. և որպէս յԱստուծոյ առաջնորդութենէ՝ միաբանէին կամաւ և յօժարութեամբ ամենեքեան որք լսէին զխորհեալսն։

Ցայտնէին այնուհետև համարձակեալք ի գիշերի միում զբանս մտածութեանն իւրեանց Մամիկոնէին Վահանայ. որոյ իբրև լուեալ՝ ասէր ցամենեսեան. «Գիտեմ ոմանք, թէպէտ և ոչ ամենեքեան որք էք ի խորհրդիս յայս, թէ որպէս վտանգեալ տագնապիմ յամենայն ժամու յաղագս սուտ անուանս, զոր ատելութեամբ կրեմ յանձին իմում. զի մերձեալ յերեկոյն՝ կասկածիմ ցառաւօտն, և հասեալ յառաւօտն՝ երկնչիմ ցերեկոյն, հայելով ի փութանակի և յանյայտ կենցաղոյս վախճան, որ երագահաս է և յանկարծակի, թէ զուցէ այսպիսի անուամբ գնալ յաշխարհէս. ապա կամէի և ընտրելագոյն էր ինձ, թէ բնաւ և ծնեալ իսկ չէր զիս մօր իմոյ յայս աշխարհս. և գտանել հնարս՝ զերծանել ինձ ի խղճէս որ նեղէն զիս՝ աղաչեմ զԱստուած անդադար։ Բայց միաբանել խորհրդոյդ զոր դուքդ խորհիք, և ասել ձեզ, թէ լաւ է իմաստդ և արարէք՝ ոչ կարեմ ասել և չիշխեմ. վասն զի զԱրեաց ոյժն և ստամբակութիւնն քաջ գիտեմ, և զՀոռոմոց զթուլութիւնն և զխաբէութիւնն. և զձեր ծանուցեալ է փորձիւ իմ, թէ որպէս հարանց մերոց ուխտեցին երդմամբ, և ստեցին։ Եւ վասն Վրաց արքայի և Հոնացդ զորս ասէք՝ Վիրք առանձին թեթև ինչ աշխարհ են և այրուձիով սակաւաւորք. բայց վասն Հոնաց ո՞ գիտաց, հաւանի՞ն գալ թէ ոչ, որք չենն ի միջի և չիւրեին։ Բայց քան զամենայն՝ ես առաւել յանձանց երկերուք, վասն զի մարդիկ սուտք էք և անվստահք։ Բայց եթէ զիս հարցէք, և զբանն իմ առնէք և հաւանիք՝ թողէք ի բաց զբանիրդ, և զԱստուած աղաչեցէք միայն՝ գտանել հնարս իրացդ, որում դիւրին է առնել զոր ինչ և կամի. այլ յընդունայն և յանպիտան խորհուրդս ձեր զիս մի՛ աշխատ առնէք»։

Եւ լուեալ զայս ամենայն բանս Նախարարացն Հայոց ի Մամիկոնենէն Վահանայ՝ եւոուն պատասխանի միաբանութեամբ և ասեն, թէ «Զամենայն զոր ասացերդ՝ լի ասացեր, որպէս վայել է քում իմաստութեանդ. ճշմարիտ ասացեր և արդար. բայց դյոյս՝ մեր ոչ ի Հոռոմս եդեալ է և ոչ ի Հոնս, բայց նախ յողորմութիւնն Աստուծոյ, բարեխօսութեամբ սրբոյն Գրիգորի, և ի մահ նախնեացն, որ նահատակութեամբ իւրեանց հաճոյ եղեն Փրկչին Քրիստոսի, և ապա ի մահ անձանց մերոց. քանզի լաւ համարիմք մի ժամ մեռանել, քան թէ զամենայն օր զեկեղեցւոյ և զքրիստոնէութեան զարհամարհանս տեսանել և զքակտումն»։

3 ՑՑ. արեւացի
12 ԲԳՑ. ամենայնքն
16 ՑՑ. անյայտ
19 ՑՑ և. զերծանել
22 ՑՑ. ուժն
26 ԲԳՑ. թեթև ինձ
29 ՁԱՑ. մարդիկք
36 Ձ. Ճշմարիտ ասացեր'ի փոխանակ Ճշտ, եւ վերեւից' ասէր, (ր'ն ճեր-ուածով)
41 ՑՑ. զքրիստոնեէից

*Եւ լուեալ զանուն մահուան Մամիկոնէին Վահանայ և քաջի եղբօր նորա Վասակայ՝ քաջալերեալք զօրացան, և լցեալք սուրբ Հոգւոյն շնորհիւ յորդորեցան։ Սկսաւ խօսել Մամիկոնեանն Վահան և ասէ. «Դուք գիտէք, զի Վարդ իմ եղբայր ի դրանն է. և գիտեմ, թէ լուեալ է զխորհուրդս մեր Պարսկաց՝ կապեն զնա և վշտացուցանեն. բայց ի մահ յօժար եմ քան թէ այսպէս կեալ ուրացութեամբ. և յայդ բան հաւանիմ ձեզ, որ ոք կարէք առնել։ Եւ ամենագիտին հայեցեալ ի դարձս իմ, և ծանուցեալ, թէ արդարև յամենայն սրտէ է իմ դարձիս կամք՝ արասցէ յիս նշան բարի և դարձուսցէ առ իս զանձկալի եղբայրն իմ զՎարդ ողջ, և տացէ տեսանել զնա աչաց իմոց և ուրախանալ. և ապա կատարեսցէ ի վերայ իմ զհաճոյսն իւր, որ ինչ թուիցի յաչս նորա»։*

*Եւ զայս ասացեալ՝ յառնեն ամենեքեան միաբանութեամբ, քրիստոնեայքն և ուրացեալքն, և յաղօթս կացեալ խնդրեն զԱւետարանն սուրբ։ Եւ մատուցեալ յառաջ սրբոյ քահանային, որում անուն էր Աթիկ, որ էր ընդ նոսա ի բանակին, այր բանիբուն բանիւ և խորհրդապահ սրտիւ, յերևելի գեղջէն որ կոչի Բճնի, և բերեալ սուրբ Աւետարան՝ ողջունէին ամենեքեան, և եդեալ իւրաքանչիւր ուրուք զձեռս ի վերայ՝ ասէին, թէ «Որ ոք խոստովանեսցի զհաւատս զայս, զոր Փրկիչն ամենեցուն և տէր Յիսուս Քրիստոս վարդապետեալ գրեաց ի սմա՝ և Որդի մարդոյ խոստովանեալ տարցի զնա առաջի Հօր իւրոյ, ժառանգեցուցանել նմա զերկնից բարութիւնսն։ Եւ որ ոք խոտորեալ ուրասցի ի հաւատոյս յայսմանէ և նենգեալ ստեսցէ Աւետարանիս երդման՝ և Որդի մարդոյ ուրացեալ հանէ զնա ի խաւարն արտաքին, ուր լալ աչացն է և կրճել ատամանցն»։ Եւ այսպէս երդուեալք ի գիշերին և հաստատեալք ի հաւատն Քրիստոսի և հրաժարեալք ի միմեանց՝ յիւրաքանչիւր վանս գնացին հանգչել։*

*ԿԷ. Մի ոմն անդէն և անդ ի նախարարացն Հայոց, որում անուն էր Վարազ-շապուհ, ի տոհմէն Ամատունեաց, ելեալ ի խորհրդենէ միաբանութեանն, որպէս մերժեցաւ Յուդա ի գնդէն սուրբ առաքելոցն՝ գնաց ի նմին գիշերի և պատմեաց մարզպանին և այլոցն ամենեցուն զխորհուրդ միաբանութեանն, և զերդումն Աւետարանին, և զխօսս ամենայն նախարարացն Հայոց։ Զոր իբրև լսէր մարզպանն Ատրվշնասպն և այլ պարսիկ մարդիկն և ջոկք ուրացողացն Հայոց՝ սրտաբեկեալք զարհուրէին և անքուն լինէին զմնացորդ մասն գիշերոյն յերկիւղէ։ Հասեալք ի ժամ առաւօտուն՝ չուէին ի տեղւոյն և երթեալ բանակէին մօտ ի պարիսպ բերդին, որ անուանեալ կոչի Անի. և առ աղէտի՝ խրատատուք խաբէութեանն և մարզպանն կասկածանօք կային զտիւն զայն անդէն, ծանուցանելով այլոցն ստուգիւ, թէ և վաղիւն անդէն լինին։ Եւ ի նմին գիշերի հեծեալք յիւրաքանչիւր յերիվարս մարզպանն և հազարապետն և որք ընդ նոսա միաբանք էին՝ փախստականք լինէին։ Զոր զգացեալ նախարարացն Հայոց՝ հետամուտ լինէին զկնի*

6 ԶԱՑ. ցայդ բան | 14 ՑՑ. որում անուն Աթիկ | 26 Զ. յիւրաքանչիւր վանս
9 Զ. զզանձկալի | 20 Զ. տարցի զնոսա | 34 Զ. գիշերւոյն
10 Զ. աչաց իմոց զնա | 21 Զ. և ժառանգեցուցանել | 37 Զ. խրատատուք
14 Գց. չիք սրբոյ | | 39 ՑՑ. երիվարս

փախստէիցն. և վասն զի տեղեակ առաջնորդօք փախչէին մարզպանն և հազարապետն, ոչ ընդ ուղղորդ տեղիս ճանապարհացն, այլ ընդ այլ և այլ տեղիս՝ զերծեալք անկանէին ի բերդն Արտաշատու. որոց ոչ կարէին հասանել Նախարարքն Հայոց։ Բայց զգրաստ ամենայն Պարսկացն կասեալ ըմբռնէին ի ճանապարհին, և զՄախազն Գադիշոյ ձերբակալ արարին, ածէին ընդ ինքեանս. և հասեալք ի Դուին՝ երթեալ պաշարէին զբերդն Արտաշատու։ Իսկ մարզպանն և հազարապետն գաղտ ի գիշերի ելեալ ի բերդէն փախստեայ գնային ի կողմանս Ատրպատականի։ Եւ սեպուհ մի ուրծացի, որում անուն էր Վարազներսեհ, որդի Կողթիկայ իշխանին Ուրծայ, որ էր յերդմանն ընդ Նախարարսն Հայոց, նենգեալ ուխտին սրբոյ՝ երթեալ աւերէր զշահաստանն Բռնավիժի, և առեալ զամենայն կարասի շահաստանին՝ դիմեալ ամրանայր ի բերդն որ անուանեալ կոչի Սագրայ բեւր, որ էր բերդ ամուր իշխանութեանն ուրեանց։

Իսկ ոմանք ի հայ Նախարարացն ամբարշտելոցն խրատ տուեալ մարզպանին Հայոց Ատրվշնասպայ՝ ասէին, թէ «Թագաւորն Վրաց ապըստամբեալ է և Հոն կամի հանել, բայց հանեալ չև ևս է. և դարձեալ՝ Հայոց առ կայսր զգնդէ յղեալ է, և դեռ չև ևս եկեալ ի միջի. և ինքեանք չև ևս քաջ՚կազմեալ են, որպէս արժան է. և դու թէ այժմ փութով հասանես ի վերայ նոցա՝ դիւրով և թեթևով վճարես զգործ մի կարի մեծ, և լաւ անուն յանձն առեալ՝ պատիւս և շատ պարգևս գտանեմք յարքայից արքայէ և դու և մեք։ Ապա թէ ծուլացեալ հեղգաս՝ երկնչիմք, մի՛ գուցէ զօրացեալ անձամբ և կամ ուստեք օգնականութիւն գտանելով՝ ոչ գիտեմք, թէ որպէս պատահեալ իրացն աշխատիցիմք և զղջանայցեմք»։

Եւ հաճոյ թուեցաւ բանն մարզպանին և ամենեցուն որ ընդ նմայն էին. և վաղվաղակի յԱտրպատականէ գունդ առեալ, և ի Կոպրեաց մարզպանէն, և զգունդն Կատշաց որ զայն տեղօքն էին՝ գայր հասանէր յաշխարհն Հայոց, ի գետեզերն Երասխայ. կամեցան անցանել ի գեօղն որ կոչի Նախճաւան, ի սահմանակցութեանն Սիւնեաց։

ԿԸ. Ազդ եղև առ տէրն Բագրատունեաց Սահակ, զոր Հայք և զօրավարն Հայոց Վահան ի ժամանակին յայնմ մարզպան կարգէին Հայոց. ասպետն Սահակ՝ զմարզպանութիւնն, և Վահան՝ զտէրութիւնն Մամիկոնէից և զսպարապետութիւնն Հայոց. որք նախ հաստատապէս ի վերնոյն հրամանէ և ապա ի Հայոց ընկալան զգործակալութիւնն. առ որս և եկք Պարսից գնդին լսելի եղեն։ Եւ տեսեալ դեռ ևս անկազմագոյն զպատրաստութիւն զօրուն իւրեանց՝ խորհէին առ վայր մի յամուր տեղիս գաւառին Տայոց չուել։ Եւ դարձեալ զամենայնաղթ օգնութիւնն Աստուծոյ յիշելով՝ ասէին, թէ «Ոչ է յաղթութիւն ի բազումս և ի սակաւս, այլ ի վերին կշռողութեան ձեռինն, և մանաւանդ մեր գործս, որ ամենևիմբ ի նորա աջողութիւնն հայի։ Արդ՝ պարտ է այլ ոչ ինչ խորհել բնաւ, բայցստիպով ընդդէմ նոցա գնալ, և

5 Ձ. ձերբակեալ
9 Ձ. վարազներսեխ
17 Ձ. բայց հանել
23 ՑՑ. գտանելով որպէս գիտեմք
25 Ձ. Թուեցեալ
33 Ձ. այսպէս և յետոյ մեծ մասամբ Մամիկոնենից
39 ԲԳՑ. և ի սակաւ
40 ՑՑ. յաջողութիւնն
41 Ձ. ոչ ինչ այլ

զզօրութիւն յաղթութեանն ի Փրկչէն բոլորեցունց հայցիլ»։ Խորհէին և զայս եւս Աստուծոյ մտարկութեամբ, միայ մարզպանին Սահակայ և սպարապետին Հայոց Վահանայ Մամիկոնենի և ոմանց յայլ նախարարացն անդէն յոստանին, ի քաջալերութիւն և ի բարի յոյս երթելոցն յառաջ, ի զարհուրումն և ի բեկումն սրտից կողման անօրինացն։ Եւ որք պատրաստեալք այնուհետև ի պատերազմն կազմեցան՝ Սիւնին Բաբգէն, զոր անուանեցին ի ժամուն իշխան տէրութեան Սիւնեաց, և ամենալաւ քաջ սեպուհն Մամիկոնէից Վասակ, եղբայր սպարապետին Վահանայ, և Գարջոյլն Մաղխազ, և երկոքեան որդիքն երանելւոյ Կամսարականին Արշաւրայ, Ներսեհ տէր Շիրակայ և Հրահատ նորին եղբայր, և երկու արք ի Գնունեաց տոհմէն, Ատոմ իշխանն Գնունեաց և եղբայր նորին Առաստոմ, և գունդ ընդ նոսա, որ էին թուով ընդ բնաւ չորեք հարիւր այր։

Եւ մտեալ նոցա յեկեղեցին՝ երկիր պագանէին տեառն Աստուծոյ և արարչին ամենայնի և զօրացուցչի, և խնդրէին ի նմանէ առաքել օգնական ընդ նոսա զճգնութիւն սուրբ նահատակին Գրիգորի և զամենայն սրբոց և զարդիս նահատակելոց քրիստոսասիրացն Հայոց, և զզօրութիւն սուրբ խաչին։ Եւ Փրկչին Քրիստոսի գթացեալ մարդասիրապէս և հայեցեալ յարժանաւոր խնդրուածս նոցա՝ առաքէր ընդ նոսա օգնական զոր խնդրեցին ի նմանէ, և յուղարկէր խաղաղութեամբ։ Երկիր պագանէին նախարարքն և ամենայն արք զօրուն որք ընդ նոսայն էին՝ և հրեշտակակրօն սրբոյ կաթողիկոսին Յոհանայ, որոյ նպարակեալ յուղարկեաց զնոսա իւր ստոյգ և արդար ոգւոյն օրհնութեամբ ի գործ պատերազմին։

Եւ ապա հրաժարէին յասպետէն Սահակայ մարզպանէն և ի զօրավարէն Հայոց Վահանայ Մամիկոնենէ և յայլ ընկերակցաց իւրեանց, որ անդէն յոստանին առ նոսա մնալոց էին. և գնացին ստիպով խնդալից յօժարութեամբ։ Եղեալ ի մտի՝ ասէին, թէ «Ո՛վ գիտէ, կարեմք հասանել ի հունն, ուր գունդքն Պարսից անցանել կամին. և դարձեալ յանեբևոյթ տեղւոջ ուրեք սպասեմք. և յորժամ գիտեմք, եթէ կէս գնդին անցեալ է ընդ գետն՝ անկանիմք ի վերայ անցելոցն, և թերևս վնասել ինչ կարեմք. նոյնպէս և մնացելոցն ի նոցանէ դարձեալ դիւրով կարեմք լինել գամագիւտ»։

Եւ եկեալք ի գիւղն որ անուանի Վարազկերտ, լուան եթէ գունդքն Պարսից անցին ընդ գետն ամենեքեան, և են թուով եօթն հազար։ Եւ քաջ սեպուհն Մամիկոնէից Վասակ, քանզի առաջապահ էր այն օր՝ գնայր յառաջ ի գեօղն որ անուանի Կռուակք. թերևս լինիցի ինչ հնար, ասէ, ջանամ առնուլ զգնդին Պարսից զհանգամանս, թէ ո՞ն ինչ եթէ ոչ։ Եւ երթեալ ի Կռուակս յօթ՝ յանկարծակի յառաւօտուն ծագել հասեալ ի նոյն գեօղ և մարզպանն պարսիկ Ատրվշնասպ՝ լսէր զՄամիկոնենէն Վասակայ, թէ անդ է։ Եւ քաջ սեպհին Մամիկոնէից Վասակայ գիտացեալ զԱտրվշնասպայ և զնոցանէն որ անդ էին՝ հնարս փրկութեան

9 Աց. գայրջոյլն
9 2. մաղխազէ
22 2. կաթաղիկոսէն
34 2. է գեւղն
34 88. գունդն Պարսից
42 88. հնար

քաջութեամբ խորհեցաւ, որով զգունդն իւր ապրեցուցանել կարասցէ ի ժամուն։ Հրաման տայր երկուց երկուց զոյգ, և կամ երից և կամ ևս յոլովից, ընդ այլ և այլ անյայտ տեղիս և ընդ փողոցս ելանել ի շինէն, և զատ ի միմեանց փութալ հասանել ի գեօղն Վարազկերտ, ուր նախարարք և այրուձի Հայոց էին, և տայր գիտել նոցա։ Եւ ինքն քաջ սեպուհն Մամիկոնէից Վասակ պատրողական բանիւք բանդագուշացուցանէր պատգամաւորօք զԱտրվշնասպ ասելով, թէ «Ես պատգամ ունիմ առ քեզ զՀայոց, զորս լուեալ քո և որք ընդ քեզ են՝ հաստատ հաճոյ համարիք և օգուտ զայնպիսի լուր և՛ Արեաց տեառն և՛ Հայոց աշխարհիս»։ Եւ Ատրվշնասպայ լուեալ, թէպէտ և գաղտ ի միտս ուրախանայր, կարծեցեալ, թէ հաստատ ի նուաճումն գան՝ այլ սակայն առնա խստագոյնս յղեալ ասէր, թէ «Աշխարհ մի ապստամբ առ իս զի՞նչ պատգամ յղեն»։

Եւ քաջի սեպհին Մամիկոնէից Վասակայ գիտացեալ զիւրոյ այրուձիոյն զերծեալք անվնասք, և թէ չիք ինչ կասկած այնուհետև՝ պատասխանի արարեալ եկելոցն յԱտրվշնասպայ՝ ասաց, թէ «Մեր ցայժմ ոչ վատ ինչ գործեալ է և արքունի իրաց վնաս արարեալ. բայց դու ինձ հրամայեա ասել զպատգամն, և ձեր լուեալ՝ ապա հայեցարո՛ւք յարժամն, և ծանեարո՛ւք զոր ինչ պարտ է առնել»։ Եւ արձակեալ զպատգամաւորսն, և ինքն հեծեալ յերիվարն՝ ասաց ցայլ Պարսիկսն որ կային անդ, թէ «Ես ծաղր առնելով ընդ ձեզ խօսեցայ ղբանսն առ պատգամաւորսն. այլ զիս ուրուք առ ձեզ պատգամ չէ յղեալ. բայց ես տեսանել զձեզ եկի, թէ որպիսի ինչ էք. այլ դուք էք մարդիկ վատք և անպիտանք, և եկեալ էք ի վատի խնդիր, և պատահէք չարի և կորնչիք»։ Ասացեալ այսպէս քաջի առն՝ դնաց ինքն ի բաց անհոգութեամբ և յաներկիւղս։ Եւ եկեալ քաջն ի գունդն Հայոց՝ պատմեաց նոցա, թէ գունդ բազում է, բայց յոլովք ի նոսա անպիտանք են և քերթաքաղ իշավարեան։

Եւ լուեալ զայսպիսի բանս ի քաջ Մամիկոնեան սեպուհէն միաբանութեամբ արք զօրուն Հայոց՝ խորհուրդ ի մէջ առեալ ասաց, թէ պարտ է զի ի դաշտէն ի լեռնակողմն փոխել. խորհելով միաբան զայս. «Զի եթէ հարեալք, ասէ, ի դիմի, օգնականութեամբն Աստուծոյ զօրեմք՝ այն աջող իսկ է և բարի. և եթէ այլազգ ինչ դիպի՝ պահպանութիւն է մեր ամրութիւն լեռնակողմանն և օգուտ մեզ»։ Եւ եկեալ չուեալք բանակեցան ի գեօղն Մասեաց, որում անուն էր Ակոռի։

ԿԹ. Եւ լուեալ, թէ առ վաղիւ գունդն Պարսից գայ ի վերայ նոցա ի պատերազմ՝ կանխեցին ըստ սովորութեան աւուրցն ի պաշտօն գիշերոյն. և կատարեալ զաղօթս առաւօտուն՝ կազմէին և նոքա որ անդ էին՝ ընդդէմ նոցա ի պատերազմ։ Եւ բաժանեալ զչորեք հարիւրսն ի չորս առաջս՝ միջին վայրին կարգէին զօրագլուխս ի ժամուն զիշխանն Սիւնեաց Բաբգէն և զքաջ սեպուհն Մամիկոնէից Վասակ, և ահեակ կողմանն զԳարջոյլն Մաղխազ, և կողմանն աջոյ զԳնունիսն երկոսին,

18 88. զպատգամաւորսն
21 88. տեսանել ձեզ
22 Աs. մարդիկք
24 88. աներկիւղս
26 2Աs. քերթաքաղիւ շաւարեան։ Այսպէս բաց ուղղագր. ԲԳs. (ըստ Ն.Բ.)
29 Թերեւս պարտ է մեզ ի...
29 2. ի յլ առնակողմն... խորհելով մի բան
32 2. ամրութեան
36 2. գիշերւոյն
37 2. բաժանել
39 88. ահեակ կողմանն
40 2. մախզազ

զիշխանն Գնունեաց Ատոմ և զնորուն զեղբայրն զԱռաստոմ. և ընդ մէջ երկոցունց մասանցն զքաջն և զընտիրն զիշխանն Շիրակայ զՆերսեհն Կամսարական և զնորուն եղբայրն զՀրահատն պատրաստական յօրինէին։ Զի ոՙր կողմն տկարասցի՝ ասեն, նոցա հասեալ փութով զօրացուցեալ օգնեսցեն, և յամենայն կողմանց ոյժ լինիցին. քանզի ամենեքեան վստահ էին ի յարսն՝ որպէս ի լաւս և յարդարս և յուխտապահս։

Եւ այսպէս յօրինեալ զչորեք հարիւր արսն, և տուեալ փառս Աստուծոյ՝ աղաղակէին միաբան ասելով. «Օգնեա մեզ, Աստուած փրկիչ մեր, վասն փառաց անուան քո. մի՛ երբէք ասասցեն ի հեթանոսս, թէ ո՞ւր է Աստուած նոցա»։ Եւ ելեալ կային ճակատեալք ի վերայ բարձրաւանդակի լանջակողմանցն յայտնաւորին։ Զորոց այնքան զսակաւութիւնն Հայոց տեսեալ զօրացն Պարսից՝ ոչ ինչ այլ կարծեցին, բայց եթէ կամաւ խելացնորեալ ի խնդիր մահու են եկեալք։ Եւ քաջ ի հեռաստանէ այրընտիր ի զօրացն Պարսից յարձակեալք ի վերայ զօրացն Հայոց՝ բազումք յետսէին վտաձիոցն Պարսից, և քաջաձիքն յառաջեալ հասանէին ի տեղի պատերազմին։ Յորս և ի ժամուն Մաղխազն Գարջոյլ, առեալ զիւրև զհարիւրսն, նենգեալ ուխտի Աւետարանին՝ ի գունդն Պարսից անկանէր. և մնային ջոկք ըստ հրամանին Աստուծոյ երեք հարիւրն Հայոց, ըստ ընտրութեան երեք հարիւրոցն ընդ Գեդէոնին։ Որք դիմեալք ի վերայ զօրացն Պարսից, օգնականութեամբ Բարձրելոյն յառաջեալ զընտիր ընտիր արս պատերազմին անդէն և անդ ի տեղւոջն դիաթաւալ յերկիր կործանէին. և զայլ բազմութիւն գնդին Պարսից ձորոց և առապար տեղեացն ցրուեալ վատնէին։ Անդ ի կողմանն քաջին Վասակայ սեպհին Մամիկոնէից և Սիւնւոյն Բաբգենայ անկեալ սատակէր Ատըրվշնասպն մարզպանն և այլ արք *աւագ և նախարարք յուրացողացն Հայոց և այլ բազում Պարսիկք. նոյնպէս և ի կողմանն Ատոմայ և Առաստոմայ բազումք մեռանէին ի քաջ արանց։ Որ և զտէրն Սիւնեաց զԳդիհոն պահելով միւսում ևս չար ժամու՝ զերծեալ ապրեցուցանէր թշնամին արդարութեան մազապուր ի ձեռացն Ատոմայ և Առաստոմայ։ Բայց նախ զյառաջեալ այր ի գնդէն Պարսից՝ Հրահատ որդի երանելւոյ Կամսարականին Արշաւրայ հարեալ նիզակաւ սատակէր։

Եւ մինչդեռ նոքա այսպէս քաջալերեալք աջով հզօրին գործամխեալք էին՝ առեալ Գարջուլայն Մախազու զգունդն Կատշաց հանդերձ և այլ ապստամբօք Հայ որերով և այնու ևս գնդաւ որ ընդ իւրն էին, և յայլ կողմն կարթեալ ըստ աներևոյթ ձորոցն խորութեան՝ հասեալ կայր զկնի ուխտապահ զօրացն Հայոց ի կողմանէ. կարծեցեալ անմտադիւր զնոսա յայնմ պարապութենէ կոտորելոյ զթշնամին Աստուծոյ,

1 Չ. և ընդ մէջս
2 Չ. զներսեհն
6 ԲԳՑ. ի լաւսն և յարդարսն յուխտապահսն։ Աց. ... և յուխտապահսն։ Չ. ի լաւս և յարդարս և յուխտապահսն
7 Չ. չորեքարիւր
8 Չ. օգնեայ
9 Չ. և մի երբէք
10 Սաղմ. ՀԸ, 9-10
10 Չ. Աստուած նոցա՞ից յեցոյ. յամենայնի աւրհնեալ է աստուած
18 Չ. անգանէր
21 ՑՑ. զընտիր արս։ Չ. զընդիր ընդիր
26 Չ. նոյնպէս և կողմանն
27 ՑՑ. տէրն Սիւնեաց
29 ՑՑ. զթշնամին
29 ՑՑ. մազապուրծ
30 ՑՑ. երանելւոյ
36 ԲԳՑ. մտադիւր։ Թերեւս ուղղելի անմտադիւր զնոսա՝ յանպարապութենէ...

կամէր ի Թիկանց կուսէ անկանել ի վերայ զօրացելոցն ի Քրիստոս, և տանել զյաղթութիւնն խաբէութեամբ և անուն մեծ ժառանգել։ Իսկ ուրումն յանկարծակի գձայն խողխողման զՀայ սպանանելոյ ի Կատշացն լուեալ՝ բողոք արկանէր առ արսն Կամսարականս. որոց ցասուցեալ առնն՝ կամէին սպանանել զնա, Թէ գունդ մեր է, և դու խաբէութեամբ զմեծ իրս կորուսանես։ Եւ ապա հաստատեալ Ներսեհի ի լրտեսելն եղբօրն իւրոյ Հրահատայ, եթէ գունդն՝ Թշնամեաց է՝ դիմեալ յարձակէին ի վերայ անչափ բազմութեան երկոքին եղբարքն սակաւ արամբք։ Անդ հասեալ հայրանման Կամսարականն Ներսեհ՝ զզօրագլուխն Կատշաց, զայր հզօր և զմարտիկ, հարեալ նիզակաւ անդէն ի տեղւոջն սատակէր, և զայլ ամենայն դունդն արկեալ առաջի՝ բազում արանց դիակունս, առաւել քան զայլ մեռեալս պատերազմին՝ կործան յերկիր վարէին։ Եւ լինէր օրն այն օր նշանաւոր ուրախութեան հաւատացելոցն ի Քրիստոս, և օր ամօթոյ և կորանաց ամենայն ուրացելոցն ի Քրիստոսէ, և ճշմարտապէս կատարեալ հաստատէր բան մարգարէին որ ասէ, Թէ «Որոց Աստուած օգնէ՝ մի զհազարս հալածէ, և երկուս զբիւրս շարժէ»։

Եւ տեսեալ այնպիսի փառաւորապէս վճարումն գործոյ Թշնամւոյն արդարութեան սատանայի, և ի կոր կործանեալ, խորհեալ, Թէ կարի անհնարին ամենայն ինչ ընդդէմ իմոց կամացս գործեցան, և արդ՝ յայլ ինչ չեղէ ձեռնհաս և նկուն գտայ՝ գոնէ առ վայր մի տրտմեցուցանեմ զսիրտս քաջացն, որք դեռ ևս ոչ գիտեն զանցս աղէտիցս իմոց և զկործանմանս։ Եւ գտեալ իւր արս երկուս արբանեկեալս, զմին ի տոհմէն Գնթունեաց, որում անուն էր Վաղգոշ, և զմիւսն ի տոհմէն Սահառունեաց, որում անուն էր Վասակ. և եկեալ արքն երկոքեան ի վաղիւն ճեպով ընդ ծագել առաւօտուն՝ գոյժ աղաղակի լսելի առնէին յականջս հայրապետին սրբոյ Յոհաննու և երկոցունց աւագ իշխանացն Հայոց, մարզպանին Սահակայ և Վահանայ Մամիկոնէի։ «Խառնեցան, ասեն, սաստկապէս կողմանքն երկոքեան ի պատերազմ,—որոց ընաւ և տեսեալ չէր զգործ պատերազմին,—և զօրացաւ կողմն Պարսից, և ի պարտութիւն մատնեցաւ գունդն Հայոց, ի փախուստ դարձան. և անկեալ զօրաւորքն ի սուր Թշնամեացն՝ մեռաւ քաջն Մամիկոնեան Վասակ և լաւ Սիւնին Բաբգէն և երկոքեան արքն անուանիք, տէրն Շիրակայ Ներսեհ, սիրելի եղբարբն իւրով հանդերձ Հրահատաւ։ Եւ արքն Գնունիք Ատոմ և Առաստոմ և այլ ամենայն զօրքն Հայոց ի լանջակողմանս Ակոռայ տապաստ անկեալ դիակնացան. և մեք միայն մնացաք ի գուժկացն Յոբայ, և եկեալք պատմել ձեզ»։

Եւ չև ևս սփռեալ տարածանէր համբաւս այս ի Դուին, զի մի շատագոյն ուրախասցի աղմկելով զքաղաքն չար դեն՝ գայր հասանէր վաղվաղակի հրեշտակ աւետաւոր ի տոհմէն Գնունեաց, որում անուն էր

3 Ձ. ուրումն, առաջին ո'ի վերեւից աւելացրած ւ
3 ԲԳՑ. սպանելոյ
12 ՁԱՑ. կործանէր յերկիր վարէին։ Այսպէս ըստ ուղղագրութեան ԲԳՑ.
16 Բ. Օր. ԼԲ, 30
19 Ձ. այլ ինչ
21 ՑՑ. աղէտեցս իմոյ
23 ՑՑ. և միւսն
27 Ձ. մարզպանին Սահակայ ունի շուամեցնում նոր գրչով
28 ՑՑ. կողմունք
29 ՁԱՑ. գործ
35 Ձ. դիականեայն
35 Ձ. յովբայ
37 Ձ. ի դլուին
38 Ձ. շուամեցնում նոր գլխի նշան §

Առաստոմ. ձայն բարձեալ գոչելով ասէր. «Ցաղթեաց զօրութիւն սուրբ խաչին, և միշտ յաղթէ»: Տայր գոհս զոյց և զսքանչելիսն Աստուծոյ, զոր արար սրբոցն բարեխօսութեամբ առ իւր սիրելիսն, և զչարաչար բեկումն և զամօթն, զոր գտեալ ժառանգեցին փաղանգ ուրացողացն: Եւ լուեալ զայս ձայն աւետեաց հայրապետին Հայոց Ցոհաննու և աւագ իշխանացն, մարզպանին Սահակայ և սպարապետին Հայոց Վահանայ, և ամենայն նախարարացն Հայոց և ռամկացն՝ դիմեալք միաբանութեամբ ի տունն Աստուծոյ, որոյ հզօր է զօրութիւն իւր՝ գոհանային, երկիր պագանէին միայնւոյ ճշմարտին Աստուծոյ և անընդդիմակայ հրամանի կամաց իւրոց: Եւ երանելի կաթողիկոսն Հայոց Ցոհան տայր սաղմոսել ի սաղմոսէն քսաներորդէ իններորդէ. «Լուաւ ինձ տէր և ողորմեցաւ, և տէր եղև ինձ օգնական: Դարձոյց զսուգ իմ յուրախութիւն. զերծ յինէն զքուրձ, և ինձ զգեցոյց զուրախութիւն: Որպէս սաղմոս ասասցեն քեզ փառք իմ, և այլ մի ևս զղջացայց, տէր Աստուած իմ, յաւիտեան խոստովան եղէց քեզ»: Եւ կատարեալ զպաշտօնն՝ զատիկ ուրախութեան առնէին. Նախ հոգալով զաղքատացն յագումն նկատէին, և ապա ինքեանք ուրախանային ցնծալից ուրախութեամբ:

Եկեալ հասանէին և զօրքն ի պատերազմէն, պատմելով զնորոգ Աստուծոյ զօրութեանն յաղթութիւն, շնորհեալ նոցա զմեծ յաղթութեանն անուն, և զթշնամեացն տալ զխորտակման և զամօթոյ զվիճակն. և փառաւորելով զՔրիստոս՝ համբուրէին զմիմեանս ողջունիւ ուրախութեան, և անհոգ խաղաղութեան ի հանգիստ ձմերանւոյն մտանէին. հոգային առ գարունն զպատրաստութիւն պատերազմին:

Հ. Եւ դեսպան ստիպով առ թագաւորն Վրաց Վախթանգ առնէին, տալ նոցա Հոն ըստ բանի խոստմանցն իւրոց: Եւ նա ժամավաճառ բանիւք ևրկայնէր զասացեալսն իւր. և ապա ուստեք ժողովէր Հոնս երեք հարիւր և առաքէր ի Հայս. և չև ևս անցեալ ամիս մի ի ձմերանւոյն՝ փոյթ պատճառադրութեամբ անդրէն առ ինքն կոչէր: Եւ միայր աշխարհիս Հայոց զօրութիւն օգնութեան՝ Քրիստոս, յոր ապաւինեալն էին և յուսային. այլ ի մարդկանէ ոչ ոք էր որ օգնէր նոցա:

Առաքէր զօրավարն Հայոց Մամիկոնեանն Վահան յերևելի և յականաւոր ազգն Արծրունեաց, և յազգս գաւառին Անձևացեաց և Մոկաց, և առ ազատորեարն Ռըշտունեաց. տայր գիտել, եթէ ո՛րպէս յառաջնումն օգնեաց Աստուած յուսացելոց իւրոց, և ասէր, թէ «Ջճշմարիտ և զարդար օրինացս մերոց զհաւատ և զքարոզութիւն իւրաքանչիւր ոք ի ձէնջ քաջ գիտէք, և ոչ էք կարօտ յումեքէ ուսանել, այլ և զտոչորումն իբրև զհնոց մոլորութեան մոգուցն տեսէք, թէ ո՛րպէս վառեալ այրեաց զամենեցուն ոգիս բաց ի`սակաւուց: Արդ՝ աւադիկ եհաս ժամ արդար մշակին Քրիստոսի, որոյ առեալ զհեծանոցն սրբել զկալ իւր, և

3 ՏՏ. սրբոյն
5 Ձ. յովհաննու
9 Ձ. միայնւոյ
9 ՏՏ. անընդդիմակ: Ձ. անընդդիմակաց
12 Ձ. իմ օգնական… ըզ-սուր իմ… զքուրց
15 Սաղմ. ԻԹ, 11—13
19 Ձ. ըզօրութեանն (ը'ի վրայ ջնջման նշանով)
22 ՏՏ. այսեղ եւ յեւոյ ձմերանոյն
33 Ձ. և թէ ո՛րպէս
35 ՁԱՏ. և իւրաքանչիւր
37 ՏՏ. առեալ այրեաց: Ձ. զառեալ այրեաց— Այսպ. ըստ Գ. Տ.-Մ.

զցորեանն մաքրեալ՝ յերկնից շտեմարանս ժողովէ, և զյարդն անշէջ յաւիտենից հրոյն մատնէ յայրումն։ Եւ արդ՝ որ ոք կամի լինել ցորենահատ՝ ընծայեսցէ զինքն Աստուծոյ, և կեցցէ. և որ ոք յետս ընկրկեալ յարդեսցի՝ յաւիտենից և անանց գեհեններն եղեալ լուցկիք այրեսցի և մի շիջցի։ Եւ ես ոչ զոք բռնաբարելով քարշեմ յօգուտ իւրաքանչիւր անձին, այլ յորդորելով յիշեցուցանեմ ամենեցուն զփրկութիւն և զկորուստ, որ դիպի յայցելութեան աւուրն։ Քանզի որ ոք խոստովանի զճշմարտութիւնն՝ փրկի ի գեհենէն, և որ ոք սայթաքեալ մոլորի յուղղորդ ճանապարհէն՝ ղանգիւտ կորուստն կորնչի։ Արդ՝ որ ոք հոդացեալ խնդրէ զգիւտ անձին և տենչի անմահ կենացն լինել ժառանգորդ՝ եկայք խնդրել զվրէժ եկեղեցւոյ թշնամանաց, որով թշնամանեցաւ ի բազում ժամանակաց և ամաց յարհամարհող ուրացողացն։ Եւ որ ոք խորհիք զմարմնոյ երկիւղ և ծառայել ցանկայք մոլորութեանն բարբանջմանցն՝ բնակեցէք ի խաւարի, չեղեալք արժանիք հայել յարդարութեան արեգակն Քրիստոս. այլ ինձ հոգողապէս բողոքոյս հատուսցէ վարձս արդար վարձահատոյցն Քրիստոս»։

Եւ լուեալ զայս պատգամ չորեցունց գաւառաց Նախարարացն, կէսքն փափաքեալք աջոյ կողմանն՝ զրոհ տուեալ ընթանային ի հետ ոչխարացն ժամանել. և այլք ընդ դասակս այծեաց ձախակողմեան հաղորդեալք՝ գնային անդարձութեամբ ի խաւարն արտաքին։ Ոմն յԱնձաւացեաց Նախարարացն սեպուհ, որում անուն էր Յոհան, և միւս ևս Երուանդունի, Ներսեհ անուն, միաբանեալ ի խնդիր բարի ցանկութեան, ընդ որս և հաւանեալ և այլ արք ճշմարտութեան նուիրինք՝ դնային խառնել ի դունդն զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնենի։ Եւ մինչդեռ ժողովեալ գնային ի ճանապարհի, մերձեալք ի քաղաքագեօղն որ կոչի Առեստ, ի ժամանակի քառասնորդացն պահոց, ի մեծի շաբաթու զատկին, յանկարծակի յանզգաստից եկեալ հասանէին ի վերայ նոցա իշխանն Անձևացեաց Սևուկ անուն և իշխանն Մոկաց Յոհան անուն, բազում այրուձիով, ընդ առաւօտուն ծագել։ Եւ սոցա զգացեալ՝ կէսքն զինեալք և կէսքն թէպէտ անպատրաստք էին, այլ օգնութեամբն Բարձրելոյն քաջալերեալք՝ հարկանէին ի դիմի աներկիւղապէս. և նախ Ներսեհ Երուանդունի յարձակէր ի վերայ իշխանին Մոկաց Յոհանայ, և հարեալ նիզակաւ, օգնելով նմա և Անձևացւոց սեպհին Յոհանայ՝ յերկիր կործանէին։ Որոյ ասացեալ էր երբեմն հպարտաբար պարծելով զԱնձևացի սեպհէն Յոհանայ, թէ «Նմա, որպէս կովու, բայց թէ անուր ևեթ պիտի արկանել. այլ նա ումպիտոյ է յայլ իրս, յօգուտ կամ ի վնաս»։ Եւ լուեալ պատասխանի յազգակցէն Յոհանայ, յիշխանէն Անձևացեաց Սևկոյ, թէ «Զանուրն ես բերեմ, բայց արկջիր դու ի պարանոցն»։ Որ յաղագս ամբարտաւանութեան բանիցն, հարեալ կովուն եղջերբն չարաչար՝

3 Զ. ընկղմեալ յարդեացի
4 Զ. այրեսցէ
8 Զ. և որ սայթաքիալ
12 88. որք խորհիք
14 88. արժանի
15 88. չիք արդար
16 Զ. վարձահատոյցն աստուած
18 Զ. զառն
20 88. ոմն յԱնձաւացի նախարարացն սեպուհ մի
21 Զ. յոհնան
24 Զ. խառնել, ե՛ն գրուած ճերուածքի վրայ
25 Զ. ի քաղաքաիգեօղն
29 Ա8. ընդ առաւօտն ծագել
29 88. զգացեալք
32 ԶԱ8. այսեղ եւ յետոյ Երուանդունի

ընկեաց յերկիր յերիվարէն և կոխեաց։ Եւ զայն տեսեալ զօրացն բազմութեանն՝ ի փախուստ դառնայրին. զորոց զհետ եղեալ՝ զոմանս սպանանէին և զմնացեալսն փախստականս արարեալ ցրուէին աստ և անդր։ Եւ անդէն յայտնապէս ճանաչեալ և փառաւորեալ զԱստուծոյ զօրութիւնն, որ անկազմ սակաւուքն զայնչափ բազմութիւն զօրացն ցրուեաց, վեր ի վայր պատմեալ հնչէր լուր անկարծելի գործոյ այսորիկ յամենայն աշխարհիս Հայոց առ հզօրին Աստուծոյ։

Եկեալ այնուհետև սեպուհն Անձևացւոցն Ցոհան և Ներսեհ Երուանդունի և արքն որ ընդ նոսա, յորոց ձեռն արար Աստուած զնշանսն և զզօրութիւնսն, և տեսեալ զնոսա սրբոյ կաթողիկոսին Յովհաննու՝ տօն ուրախութեան և պատարագս ընդունելիս մատուցանէին տեառն Աստուծոյ, որ շնորհեացն զյաղթութիւնն և բարձրացոյց զպարծանս եկեղեցւոյ միոյ սրբոյ, և ողջունեալ զնոսա ուրախանայրին ի Քրիստոս։

ՀԱ. Եւ անցուցեալ զաւուրս դառնաշունչ ձմերայնւոյ ցրտոյն՝ հասանէին գարնանային ժամանակի օդոյն բարեխառնութեան. լսէին, թէ զօր բազում խաղացեալ գայ ի Պարսից. եկեալ հասեալ են ի սահմանս Հերայ և Զարաւանդ գաւառի բազում զօրագլուխք, որք էին այսոքիկ. Սուրէն պալհաւ, և Ատրներսեհ, փուշտիպանան սաղար, և Վին-ի- Խոռեան, և Ատրվշնասպն-ի- Տապեան, և Գդիհոն Սիւնեաց տէր. և ի սոսա Թէպէտ և ըստ գահոյ էր ոք ի վեր՝ այլ հրամանատու և աւագ զօրուն՝ փուշտիպանան սաղար էր։

Փութացաւ և զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան, առեալ ընդ իւր և զսուրբ հայրապետն Հայոց զտէր Ցոհան, յուսալով յաղօթս առնն, թէ ամենայն ինչ ըստ նորա կամելոյ կատարի յԱստուծոյ. և դումարեալ զզօրսն Հայոց՝ ճեպէր հարկանել նոցա ի դիմի անդէն զայն տեղեօք. «Թերևս ոչ, ասէր, լիցի անցանել բազմութեանն Պարսից ի միջոց կողմն աշխարհիս Հայոց»։ Եւ առեալ ընդ իւր զնախարարսն և զազատս և զայլ ամենայն ռամիկն, որք կամաւոր խնդութեամբ երթային ի գործ պատերազմին, և չուեալք ի Դունայ զօրքն Հայոց՝ ըստ աւուրս օթևանացն երթեալ հասանէին ի գաւառն յԱրտազ, և մօտեալք ի գունդն Պարսից՝ բանակէին ի գիւղ մի, որում անուն էր Ներսէհապատ։

Եւ սուրբ կաթողիկոսն Ցոհան հրաման տայր ամենայն գնդին Հայոց՝ ջերմեռանդն խնդրով պարապել աղօթից զգիշերն ողջոյն և խնդրել ի մարդասէր Փրկչէն՝ բարձր առնել զանուն իւր մեծ ի մէջ բազմութեան ժողովելոցն հեթանոսաց, տալ բաժին պարծանաց ծառայից իւրոց, և զմասն ամօթոյ՝ ուրացողացն դասու։ Եւ այնպէս զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնենի, սքանչելի ասպետաւն Սահակաւ մարզպանաւ և ամենայն զօրօքն Հայոց, յորդոր սրտիւ խնդրելով յԱստուծոյ

4 Զ. անտր
8 ԾԾ. Անձևացոցն
13 ԲԳՑ. մխոյ՚ի մասին ունին ծանօթ. «Թերեւս մերոյ կամ իւրոյ»
15 Զ. ի գարնանային
18 ԾԾ. փուշտիպանացն։ Զ. փուշտիպանաւն
19 ԾԾ. Վինի-Խոռեան և Ատրվշնասպն - Խոսպեան։ Զ. վինիխոռեան և ատրվշնասպն խոսպեան
21 ԾԾ. փուշտիպան։ Զ. այսպէս: Վերջին ա՛ն յաւանցնում ուղղած յ
25 ԾԾ. չիք նոցա
25 ԶԾԾ. ի դիմի, և անդէն զայն տեղեօքԹերև...
29 Զ. միջոց դրունն, դրանայ
31 Զ. ի գեօղ
33 Զ. պարապել (պաշտով)
37 Զ. սահակայ

օգնութիւն՝ կատարէին զսահմանեալ ժամս գիշերոյն. և հասեալք ի լոյս առաւօտուն՝ սուրբ կաթողիկոսն Հայոց Յոհան օրհնէր զամենեսեան, քաջալերիցուցանելով ասէր. «Յուսացեալքն յԱստուած ոչ երբէք ամաչեցին. և ընտիր անօթ սուրբ Հոգւոյն Պօղոս գոչէ համարձակաձայն բարբառով և ասէ. «Յոյս երբէք ոչ ամաչեցուցանէ, յորոց սիրտս սէրն Աստուծոյ սփռեալ է»։ Զօրացարուք ի տէր և ի զօրութիւն բազկի նորա, և կարող լինիք զամենայն նետս մուխս չարին շիջուցանել, զերևելիս և զաներևոյթս։ Եւ մի՛ ոք ի բազմութիւն զօրու անօրինացն հայեցեալ զարհուրիցի ինչ. վասն զի լինելով ընդ ձեզ Աստուած՝ բազմագոյնս զձեզ ցուցանէ նոցա, և շարժեալ իբրև զխուիւ ի սաստիկ հողմոյ, ցրուեալ ընդ երեսս դաշտացդ և բլրոց՝ վեր ի վայր կորուսանէ։ Արդ՝ օրհնեսցէ զձեզ աջ հզօրին և զօրացուսցէ զձիզ, առաջնորդեսցէ և յաղթող արասցէ. նմա փառք և Որդւոյ իւրում և սուրբ Հոգւոյն յամենայն յաւիտեանս. ամէն»։

Եւ ասացեալ ամենեցուն զամէնն՝ պատրաստեցան ի պատերազմ. և զինեալ գունդքն Հայոց ընդդէմ թշնամեացն՝ լինէր և երանելին Յոհան յաղօթս։ Սկսանէր այնուհետև զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան յօրինել ըստ պատշաճի ղիւրաքանչիւր կողմն ճակատուն։ Զմիջոց կողմնն բազում այրուձիովն տայր ի ձեռն լաւի առն Սահակայ մարզպանին ասպետի. և ի կողման աջոյ թևին կարգէր զԲաշղ Վահևունի և զԲարգէնն Սիւնի և զԱտոմն Գնունի և զՓապակն Պալունի, իւրաքանչիւր այրուձիով և այլ ևս յաւելուածով. և յահեկէ կողմանէ հանդերձ ուխտասէր Կամսարականօքն և իւր սիրելի եղբարբքն, Վահանաւ, Ներսեհիւ և Հրահատաւ. և ընդ աջմէ իւրաքանչիւր այրուձիով գնդացն՝ կազմէր զինքն։ Պատրաստէր և զայլ արս աւագս ընտիրս այրուձիով հանդերձ և Վրենաւ Վանանդացւով. առ որս և առաքէր զՊապ Արտակունեաց, զայր ոստանիկ, զորդի Բաբոցի, ասել ցիւրաքանչիւր կողմանց աւագս, թէ «Զնշանս հզօրագոյն արանց, զոր յառաջագոյն տեղեակ եմք զարանց Պարսկաց և զԿատշաց և զգնդին Սիւնեաց՝ տեսանեմ զի դէպ ի մեզ դիմեալ գան. արդ՝ դուք մեղմով երթայք, և ուշադրեալ հայեցարուք ի մեզ. թող մեզ նախ լինի յարձակել. և եթէ շնորհիւն Քրիստոսի մեք զմեր կողմն շարժեալ փախուցանեմք՝ ապա այլ կողմանքն մեր և ձեր առաջի ոչ կարեն կալ»։

Եւ Պապայ տարեալ զպատգամն սպարապետին Հայոց Վահանայ Մամիկոնէի առ իւրաքանչիւր աւագս կողմանցն, թէպէտ և կամէին ըստ հրամանի զօրավարին առնել, այլ ստիպով հասեալ գունդն Պարսից յիւրաքանչիւր թև կողմանցն՝ ոչ տային պարապել, այլ դղրդեալ զկողմն աջոյ, ուր Բաշղն Վահևունի էր՝ փախուցանէին։ Եւ տէր Սահակ ասպետ յարձակեալ նիզակաւ ի վերայ փուշտիպանաց սաղարի՝ վրիպեցին ի միմեանց զնիզակսն երկոքեան, և մօտեալ առ միմեանս

1 2. գիշերւոյն | 4 88. չիք Պօղոս | 5 88. սիրտ | 6 Հռոմ. Ե, 5 | 7 2. զնետս | 7 Եփես. Զ, 10, 16 | 8 88. զաներևոյթ | 24 2. ընդ յաջմէ | 26 88. Վանանդացով | 27 88. չիք կողմանց | 32 2. շարժել | 37 2. դղրդեալ | 38 2Ա8. զտէր սահակ | 40 2. միմեանց (չիք ի)

երիվարացն՝ բուռն հարեալ զմիմեանց հիրաց և կռուէին։ Եւ տեսեալ զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնենի, թէ աղմկեցան զօրքն Հայոց և տկարացան առաջի թշնամեաց, ձայն արարեալ առ Վրէն Վանանդացի՝ «Ցառաջիմ, ասէ, ի վերայ թշնամեացն և ձեռն ի գործ արա պատերազմել»։ Եւ նորա զարհուրեալ՝ ասաց, եթէ «Ոչ եմ կարող. յիս ինչ ապաստան յայսմ ժամու դու մի՛ լինիր»։ Եւ զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնէի զօրացեալ սրտիւ, և նշանաւ խաչին կնքեալ զինքն՝ հանդերձ Կամսարականօքն երկոքումբք յարձակէին ի վերայ հասելոց սոցա թշնամեացն. և ոչ ինչ բնաւ տուեալ կալ առաջի, այլ շարժեալ սաստկապէս զկողմն իւրեանց՝ ի փախուստ դարձուցանէին. և առեալ զթևն զայն՝ արկանէին զմիւս ևս թևոյն զմիջոցի կողմանն. և արկեալ առաջի զկողմանցն երկոցունց զգունդսն՝ անթիւ բազմութիւն արանց քաջաց ի փոքր լանջակողմանն դիաթաւալ յերկիր կործանէին և սաստիկ արեանց հանէին ճապաղիս։ Բայց միայն Վինն Խոռհան երկուք ևս այլ զօրաւոր նիզակակցօք զօրու դարձեալ ընդդէմ խիզախէր. ուր անդէն առ նմին քաջ զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան սատակէր հզօրեղապէս. և զԱտրվշնասպն Տապեան տէրն Շիրակայ Ներսեհն Կամսարական, և այլքն ամենեքեան իւրաքանչիւր զրազում արս քաջս ընկեցեալ յերկիր կործանէին։ Եւ հայեցեալ յայն՝ գունդն Բարշղի և այլ փախստէիցն Հայոց, և տեսեալ, թէ բեկաւ ոյժ զօրու գնդին Պարսից, և երթան փախստական առաջի գնդին զօրավարին Հայոց Վահանայ՝ ոգի առեալ զօրանային. և դարձեալք անդրէն և զկնի հալածչացն եղեալք՝ զբազումս սպանանէին, և զբազումս արկեալ առաջի՝ հալածականս առնէին։ Եւ լինէր առաւելագոյն թիւ կոտորելոցն ի գնդէն Պարսից, քան թէ զերծելոցն փախստէիցն. վասն զի շատ ևս լինէր համար մեռելոցն ի տեղիս տեղիս վիրաւորացն, քան թէ կոտորելոցն ի գնդէն Պարսից անդէն ի տեղւոջն պատերազմի։

Եւ դարձեալ գունդն Հայոց բարի անուամբ և բազում փառօք, լաւ աւարաւ և սաստիկ ընչիւք առ պատուական կաթողիկոսն Հայոց Յոհան ի բանակն, փառաւորելով և օրհնելով զտուիչն այնպիսի յաղթութեան զՔրիստոս. որոյ ընդ առաջ ելեալ յաղթող գնդին՝ ցնծալից սրտիւ օրհնէր զնոսա օրհնութեամբ բազմաւ, և զուարճացեալ ոգւով զօրութեան սուրբն, և ասէր ցամենեսեան. «Ուրախ եմ յոյժ, և բանիւ վճարել զխնդութիւնս սրտի ոչ կարեմ։ Բայց ևս առաւել զուարճացեալ բերկրիմ, տեսանելով զԱստուած հաշտ ընդ ձեզ. քանզի յաղթութիւնս խնդացուցանէ զիս, այլ ևս առաւել բերկրիմ՝ զՔրիստոս տեսանելով գործակից ձեզ, որ ետ ձեզ՝ յաղթել, և ամաչեցոյց զհակառակորդս արդարութեան։ Եւ Աստուած որ զօրացոյցն զձեզ այժմ՝ նա զօրացուսցէ զձեզ հանապազ, և եղեալ ընդ ձեզ՝ մի՛ թողցէ զձեզ մինչև ի սպառ»։

ՀԲ. Եւ մինչդեռ զօրացեալք ցնծալից սրտիւք դարձեալք գային ի գործոյ պատերազմին, զոր վճարեալ եհան ի գլուխ ազդեցութիւն վերնոյն ըստ կամաց հայրապետին սրբոյն Յոհաննու և ամենայն զօրացն

9 ՏՏ. տեսեալ։ Յ. տըսեալ, ը՚ի վերուից գրուած է
9 Յ. սաստեկապէս
14 Յ. ճապաղխս
14 Աշ. երկուս այլ։ ԲԳՑ. երկու այլ
15 Յ. զօրաւ
15 ԲԳՑ. ծանօթ. մէջ ուղղագրում են զօր անդէն
18 Յ. ընկեցեալս
31 ՏՏ. զօրութեամբ
41 Յ. յովհաննու

Հայոց՝ երկրորդ ուրախութիւն մեծ և լուր անկարծակի աւետեաց տարածեալ քարոզէր ընդ ամենայն բանակն Հայոց։ Եւ եկն Վարդ ողջ, զերծեալ ի կապանացն զօրութեամբն Աստուծոյ, եղբայր զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնէի. և լցեալ այսպիսի աւետաւոր համբաւով ընդհանուր աշխարհս Հայոց՝ գրոհ տուեալ փութայր ամենայն ոք ի մեծ այցելութիւնն, զոր արար Աստուած աշխարհիս Հայոց. յորոց բազումք առ խնդին, իբրև տեսանէին զանհաւատալի տեսիլն՝ յերկուացեալք կերպարան և ոչ ճշմարտութիւն զիրսն կարծէին։ Բայց յիշելով զԱստուծոյ զօրութեանն զանընդդիմակայ սքանչելիս՝ փառս միայն և երկրպագութիւն մատուցանէին ամենահնարին, որոյ կամելութեան և հրամանի ամենայն դժուարինք և անհնարինքն դիւրինք են և հնարաւորք. յիշելով զցօղաղարձութիւն հնոցին ի Բաբելոնի, և զսառնաշէն պարիսպն եգիպտական Կարմիր ծովուն, զդառնալն ընդ կրունկն Յորդանանու, և զանկմունսն Երիքովի պարսպացն՝ աղաղակաւ։ Այս ամենայն յիշմունք հաւատացեալ խորհրդոց դրուատիս միայն զովութեան ընդունելի աղօթիւք մատուցանել յօժարեցուցանէին ամենահզօրին. որ առաւելագոյնս քան առ սուրբ առաքեալն Պետրոս արար զզօրութիւնսն. վասն զի զնա անձամբ միայն հանեալ հրեշտակին՝ արձակեաց զերծանել, յաճումն քարոզութեան կենաց. իսկ զայրն Մամիկոնեան զՎարդ ոչ միայն լոկ անձամբ, այլ և ծառայիւք, դրամբ և կազմածով, յամուր տեղեաց շահաստանին, ի բարձրաբերձ պարսպացն և յասպարափակ բազմութենէ պահապանացն, ընկալեալ իբրև զարծուի ի թևս իւր և ընդ բազում անցուցեալ օթևանս՝ ածեալ հասուցանէր խաղաղութեամբ ի յերկիրս Հայոց։

Յայնժամ ծանուցեալ յիշէին ուխտակիցք, արք աստուածասէրք, զերդումն Մամիկոնէին Վահանայ,—զընդունելութիւն Աստուծոյ դարձին նորա և վկայութեան և հաւատոց,—զոր ասաց յաւուր միաբանութեան առաջի սրբոյ Աւետարանին. «Թէ արդարև, ասէ, ծանուցեալ Աստուծոյ զբազմաժամանակեայ զթախանձ և զփղձկումն սրտի իմոյ, զոր հառաչէի յոգւոց հանելով ի մոլորութեանն, և ընկալաւ զպտուղ շրթանց խոստովանութեան իմոյ, և հաճոյ եղև ամենագիտին խորհուրդս իմ և ուխտ՝ ապա ըստ իւրում զօրեղ տէրութեանն արարեալ յիս նշան բարի՝ տացէ ինձ մերձ ընդ մերձ տեսանել ինձ զեղբայրն իմ զՎարդ և ուրախանալ»։ Եւ էր այնուհետև լսել յամենայն եկեղեցիս Հայաստանեայց աշխարհիս, ի վկայարանս սրբոց, ի տօնս և ի ժողովմունս միաբանութեան, ի բերանոյ քահանայից և միաբան ամենայն ժողովրդոց, յարանց և ի կանանց առ հասարակ, թէ «Զի՞նչ բարի, կամ զի՞նչ վայելուչ, այլ բնակել եղբարց ի միասին»։ Եւ առ սաստկապէս բեկումն թշնամեացն և բարձրանալ սրբոյ եկեղեցւոյ՝ ասէին սաղմոսելով. «Նոքա խափանեցան

1 Չ. երորդ։ ԱՑ. երրորդ | 5 Չ. ընԹանուր | 5 Չ. գաոհ... զմեծ | 7 Չ. առ խնդիր | 9 Չ. զօրուԹենէն | 9 ՑՑ. երկրպագուԹիւնս | 12 Չ. ի բաբելոնին։ ՑՑ. ի Բաբելոնի | 16 ԳՑ. ոք առաւելագոյնս | 17 ՑՑ. քան զսուրբ | 19 Չ. զմամիկոնեան | 21 ԲԳՑ. և բարձրաբերձ | 21 Չ. պարսպացն յասպարափակ | 30 ՑՑ. յոգւոց | 32 ԲԳՑ. յիս այս նշան | 34 Չ. Հայաստանեայց | 35 ԳՑ. ի տօնս ի ժողովմունս | 38 Սաղմ. ՃԼԲ, 1

և անկան, մեք յարեաք և ուղիղք եղաք»․ և «ամենայն եղջիւրք մեղաւորաց փշրեցան, և բարձր եղև եղջիւր արդարոյն»։ Եւ շնորհակալութեամբ գովութիւն ի մէջ առեալ ասէին․ «Այլ մեք ժողովուրդք և խաշն արօտի քո, խոստովան եղիցուք առ քեզ յաւիտեան․ ազգէ յազգ պատմեսցուք զօրհնութիւնս քո»։

ՀԳ. Իսկ յետ աւուրց ինչ բազմաց անցելոց, տեսեալ իմաստախնդիր մարդոց և հանճարեղ անձանց զպսակումն քաջ սեպհին Մամիկոնէից զսրբոյն Վասակայ, զեղբօր զօրավարին Հայոց Վահանայ՝ անդէն և անդ ծանեան, թէ վասն զի մեծ ուրեմն էր կատարումն սրբոյն. որ և խնդրեաց յԱստուծոյ սուրբն Վասակ՝ տեսանել ի մարմնի զեկս անձկալի եղբօրն իւրոյ Վարդայ, և ապա զօր ըղձի խնդրոյ իւրոյ ըմբռնել ցնծալով։ Եւ ամենահզօրն Աստուած եղև փութով կատարիչ խնդրոյ սրբոյն իւրոյ, ոչ ինչ յերկարեալ յապաղեաց զկամս առնն, այլ վաղվաղակի և ճեպով ընկալեալ զխնդիրն, և ածեալ զեղբայրն զՎարդ և ցուցեալ նմա և ամենեցուն՝ եթող ողջամբ առ մնացեալ կենդանի ծառայսն իւր, և զսուրբ վկայն իւր զՎասակ փոխեալ առ ինքն՝ պսակեալ բնակեցոյց յարքայութեան խորանսն, ընդ հրեշտակս յերկինս։

Գային հասանէին այնուհետև ի Ծաղկէոտն. և կամեցեալք առ վայր մի հանգչել ի ջերմկին որ կոչի Վարշակի՝ գայր հասանէր դեսպան ի թագաւորէն Վրաց Վախթանգայ, թէ «Գունդ սաստիկ եհաս յերկիրս Վրաց, և իմ տեսեալ, թէ ոչ եմ կարող կալ առաջի՝ խոյս տուեալ ի լերինս Հայոց, մօտ ի սահմանակցութեանն Վրաց՝ մնամ ձեզ»։ Եւ նամակ ունէր գրեալ ի Վախթանգայ խաբէութեամբ, թէ «Հոն դնդի հրաման ետու գալ, և չև ևս հասին. բայց մինչ դուք գայք՝ հասանեն, և այնուհետև դուք և մեք և Հոնք զնոսա կորուսանեմք։ Բայց թուի ինձ, թէ յորժամ Հոն հասանէ՝ մեզ բնաւ և աշխատել ինչ ոչ հասանէ. նոքա իսկ վճարեն զգործն. զի անչափ բազմութեան հրաման ետու դալ»։

Եւ զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնէի և ամենայն աւագ տանուտերացն և սեպհացն Հայոց, վասն զի երդումն էր Աւետարանաւ և խաչիւ ընդ թագաւորին Վրաց Վախթանգայ՝ յարուցեալ վաղվաղակի և անյապաղ ամենայն զօրքն Հայոց առ արքայն Վրաց հասանէին, և բանակեալք առ վայր մի ի գաւառին Կանգարաց դադարէին։ Ուր պատրողական բանիւք խաբէութեան թարթափեցուցանէր թագաւորն Վրաց Վախթանգ զմիտս զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնէի և զայլ աւագ տանուտերացն Հայոց. մերթ ասելով, թէ «Միհրանայ զձեր եկդ լուեալ՝ խոյս ետ ի սահմանաց Վրաց, և յԱղուանս փախեաւ առ երկիւղի. և դարձեալ՝ թէ «Զերկուս աւուրս՝ և գունդք Հոնաց հասանեն»․ և անցեալ երկու աւուրք ժամադիր խաբէութեանն՝ ապա յերրորդ և ի չորրորդ օր ձգէր զպատճառադրութիւնն, և յետ այնորիկ յայլ ի վեց և յեօթն օր։ Դարձեալ լրտեսս տայր արձակել արս ի գնդէն Վրաց և

1 ՑՑ. եղեաք։ — Սաղմ. ԺԹ, 9
1 Չ. եղջերք... եղջեր
2 Սաղմ. ՀԴ, 11
5 Սաղմ. ՀԸ, 13
6 Թերեւս ոչ բազմաց
17 Չ. ի յերկինս
20 ՑՑ. խառն Վախթանկ եւ Վախթանգ։ Չ. միշտ այսպէս
29 Չ. յերդումն էր
34 ՑՑ. չիք Հայոց
36 Չ. եկտ
37 Չ. և դարձեալ եթէ

Հայոց. որք իջեալ ի տեղիս ինչ դաշտացն՝ տայր երեւեցուցանել լոյս կրակաց բազմաց եւ կոճեղս ծառոց զինեալս այրանմանս, ըստ խաբէութեան Մակեդոնացւոյ Աղէկսանդրի։ Դարձեալ ասէր. «Ոչ գայ գունդն Հոնաց առ մեզ ի լերինս, այլ ասեն, թէ աստ ի դաշտիս ած ցո՛յց մեզ զՀայս, եւ ամենայն բանից քոց հաւատամք, զոր քո խօսեալ է ընդ մեզ եւ երդուեալ. եւ այնուհետեւ զոր ինչ եւ հրամայես առնել մեզ՝ զամենայն կատարեմք. ապա թէ ոչ՝ չհաւատամք, թէ Հայք ընդ քեզ միաբան են. բայց թէ արդարեւ զայս տեսանեմք՝ այնուհետեւ զՊարսիկս ի մեզ թողէք, եւ ձեզ փոյթ մի՛ լիցի։ Արդ՝ թէ դուք ի դաշտն չիջանէք, եւ Հոն գունդքն, վասն ինձ չհաւատալոյ, ի վեր ի յաշխարհէն չշարժին ուրեք, եւ Միհրան դառնայ եւ զՎիրս աւերէ՝ ինձ ձեր եկք զի՞նչ օգուտ է»։

Եւ Հայոց գունդն, վասն զի ուխտադիր էր ընդ թագաւորին Վրաց՝ զոր ինչ զամ մի ասէր ստոյգ կամ սուտ՝ ջանային վասն Աւետարանին երկիւղի զամենայն կատարել։ Զի թէպէտ եւ տօթ էր ժամանակն, հարկաւորեցան իջանել ի դաշտն Ճարմանայնու։ Եւ յիշխանացն Հայոց ոմանք ոչ յաջող համարէին զէջս գնդին Հայոց ի Վիրս. զոր թէպէտ եւ բազում անգամ ասացին՝ չհաւատացեալ բանի աստղացն՝ լռեցին։

Եւ իջեալ գունդն Հայոց ի Վիրս եւ բանակեալք յառաջագրեալ տեղւոջն, եւ չեւ եւս անցեալ աւուրք երեք կամ չորք՝ գայր հասանէր Միհրան եւ բանակէր դէմ յանդիման բանակին Հայոց, մօտ ի բանակն յայնկոյս գետոյն, զոր Կուր գետն անուանեն. եւ բանակն Հայոց չուեալ յայլ տեղի հեռագոյն ի բանակէն Պարսից, եւ առնէին զիւրեանց օթեւանին տեղին։ Եւ բազմաց ի գնդէն Հայոց ի գիշերին յայնմիկ, մոռացեալ զերկիւղ ուխտին Աստուծոյ, եւ զահաւոր երդումն Աւետարանին առ ոտն հարեալ՝ պատգամագնացութեամբ գաղտ խօսեցան ընդ իւրաքանչիւր ոք սիրելիս զօրացն Պարսից, թէ «Մեք ի բռնութենէ զօրավարիս Հայոց Վահանայ եւ ոչ սրտի կամաւ անկեալ եմք յիրս յայս, արք թուով. բայց միտք մեր եւ խորհուրդք առ ձեզ են. եւ գիտեմք, եթէ ի ձերմէ ծառայութենէ չեմք ելանելոց, այլ վասն անձանց մերոց որսացեալ աճեցուցաք ցայժմ զմնասս ի մեզ։ Բայց արդ՝ եթէ չյիշիցէք զայս բանս մեր երբէք, եւ առնիցէք մեզ թողութիւն՝ դուք իշխեցէք։ Այլ մեք վաղիւն, յորժամ ի կռուոյն տեղին գամք՝ զմեր անձինս եւ զբազումս եւ այլս ընդ մեզ փախուցանեմք ի գնդէս»։ Եւ ընկալեալ երդմամբ ուխտի Պարսկացն՝ հաստատեցին զբանսն։

Եւ հասեալ ի վաղիւն ի տեղի պատերազմին՝ խօսէր եւ յայն ժամու արքայն Վրաց ընդ զօրավարին Հայոց Վահանայ եւ ընդ այլ աւագ տանուտեարս եւ ընդ սեպուհս Հայոց եւ ասէ. «Լաւ եղեւ մեզ կռուելս այսօր ընդ զօրս Պարսից. քանզի մեք իսկ բաւական եմք սոցա, եւ չկարեն կալ առաջի. բայց թէ այսօր եւս հեզգացեալ էր մեր՝ գալոց էին Հոնք եւ զանուն յաղթութեանն եւ զօգուտ աւարիս նոքա տանելոց էին»։ Եւ մինչեւ ցայն ժամ եւս յերկարեալ խաբէր պատիր բանիւք։

ՀԴ. Ապա սրտմտեալ ընդ սուտ եւ անպիտան խօսս արքային Վրաց

3 Զ. մակեդոնացւոյ
3 ԲԳց. Ալէքսանդրի
13 Զ. ստոյք
17 ԶԱց. բան աստղացն։ Այսպէս ըստ ուղղագր. ԲԳց.
19 ՑՑ. աւուրս

զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան, ծանուցեալ և զԹուլութիւն գնդին Հայոց, զոր տեսանէր լքեալս և մեղկեալս և ոչ ինչ բնաւ նմանս այլոց ժամանակաց փութոյն և յօժարութեան, սակայն զգունդն զօրացն կազմէր Մամիկոնեանն Վահան ըստ օրինի ճակատուն պատրաստութեան. և տուեալ զկողմն աջոյ ի ձեռս Բարշղի Վահևունւոյ և Սատոնի Գաբեղինի, և զողմն ահեակ տայր Վախթանգայ արքային Վրաց, և զմիջոյ կողմն կազմէր զինքն երեքումբք արամբքն որդւովք երանելւոյն Արշաւրայ, և երանելեաւ տերամբն Գնունեաց. և զերանելին ասպետն Սահակ և զՍիւնին Բաբգէն ընդ մէջ իւր և Բարշլի կացուցանէր։

Եւ մինչ չև դիմեալք ի կռիւն, այլ կային ճակատեալք երկոքեան կողմանքն դէմ ընդդէմ միմեանց, Պարսից և Հայոց, և որ զնահատակութեան պսակն ընդունելոց էին յաւուրն՝ եցոյց վերին զօրութիւնն հայեցող աչօք մտացն. և յառաջ քան զկատարումն՝ յայտնապէս անծածուկ զահագնափոխութիւն երեւացն ի մահկանացու բնական տեսչութենէս ի լուսափայլութիւն վերին զօրութեանցն կերպարանի, և մանաւանդ զքաջութիւնն առնն զՎասակայ Մամիկոնէի, զեղբօր զօրավարին Հայոց Վահանայ. որոյ փառաւորեալ երեսքն լուսով փառացն Աստուծոյ, մինչև բազումք յընկերակցացն որք նիզակակիցք սորոյն էին՝ հայել յերեսսն փայլակնացայտ, ըստ փառաւորելոյ երեսացն մեծի մարգարէին Մովսէսի, ոչ հանդարտէին։ Զոր և իւր իսկ եղբօրն մեծի զօրավարին Հայոց Վահանայ տեսեալ և մեծապէս զարհուրեալ՝ անդէն և անդ գիտաց, թէ սա յինէն և ի զազրալի կենցաղոյս այսօր առաւ և փոխեցաւ յայն բանակ զուարթնոցն, որոյ բանակի զօրացն տեսիլ և կերպարան այս է։

Եւ յարձակեալք ի վերայ միմեանց Հայք և Պարսիկք, թէպէտ և զօրավարն Հայոց Վահան երիւք Կամսարական եղբարբք հարեալ ի դիմի իւրոյ թշնամւոյն կողմանն, դիր և տար արարեալ դարձուցանէին ի փախուստ, մինչև տարեալ անցուցանէին զբազումս ի զօրացն Պարսից յայնկոյս Կուրն գետոյն, և զբազումս ի զօրացն Պարսից յերևելի արանց զօրուն կոտորէին քաջաբար։ Անդ քաջի սեպհին Մամիկոնէից Վասակայ հարեալ նիզակաւ ուժեղապէս զայր ոմն հզօր ի գնդէն Պարսից յերկիր կործանէր. որ և բեկանէր նիզակն իւր յանկարծակի. և քաջին Մամիկոնենի Վասակայ ելեալ ի խնդիր այլում նիզակի և գտեալ՝ դառնայր անդրէն փութանակի ուրախալից։ Եւ պատահեալ նմա Կամսարականին Ներսեհի տեառն Շիրակայ, որոյ և նորա բեկեալ նիզակն՝ ի խնդիր էր այլում նիզակի. և քաջի Մամիկոնենին Վասակայ ձայն ի վերայ եդեալ ասէր. «Փութա, Ներսեհ, գտանել նիզակ, և դարձիր եկ արագ. քանզի ոչ երբէք կարեմք գտանել ժամ սքանչելի այսպիսի վաճառու, ուր մահ զանմահութիւն և առժամանակեայս զյաւիտենականն և ապականացուս

5 ԲԳՑ. Բարշղի։ Ձ. բաշղի, վերևից ը
6 ԳՑ. գաբեղինի
7 Ձ. երեքումբ
7 ՑՑ. երանելոյն
11 ՑՑ. կողմունքն
14 Ձ. անծուկ
15 Ձ. տեսչութենէս
15 Ձ. կերպարան
18 ՑՑ. նիզակակից
19 ՑՑ. յերեսն.
20 Թերևս ոչ հանդուրժէին
29 Ձ. գետոյն
29 ՑՑ. երևելի
30 ՑՑ. սեպուհին
38 Ձ. զաքանչելի

զանապականելի կեանսն. վաղվաղեմ, քանզի չիմք կալոց անմահք. գուցէ վրիպեալ յանուանի և ի փառաւորեալ կատարմանէս՝ անանուն և անպիտան մահուամբ ելանիցեմք ի կենցաղոյս»: Եւ զայս լուր ի սրբոյ առնէն Վասակայ Մամիկոնենէ՝ հաւաստի երդմամբ պատմէր մեզ բազում անգամ ինքն տէրն Շիրակայ Ներսեհ Կամսարականն:

Եւ մինչդեռ զօրավարն Հայոց Մամիկոնեանն Վահան այսպէս մրցէր հանդերձ երանելի եղբարբն Վասակաւ և երկոքումբք որդւովքն Կամսարականին Արշաւրայ՝ յանկարծակի փախուցեալք առ հասարակ սրանային գունդքն ամենայն Հայոց և Վրաց. որոց բազումք ի նենգաւորացն աղաղակէին առ միմեանս անհանգիստ, թէ «Փախեան Հայք, անձնապուրք լերուք»: Եւ վասն զի ոչ ըստ փութոյ և յորդոր խնդրոյ շնորհէր ի ժամուն վիճակ մարտիրոսութեան ի վերին զուգակշռող աջոյ ամենագիտին, ըստ ծածուկ և անքնին իւրոյ կանխատեսութեանն՝ քաջի զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնէի և այլոց ընդ նմա ուխտապահ ընկերացն, որ անորժելով տենչէին բաժակի մարտիրոսութեանն, և չգտան արժանիք, դարձուցեալ այնուհետև զերասականս երիվարացն՝ գնային և նոքա զհետ փախստէիցն Հայոց: Եւ զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնէի եկեալ պատահէր Բաբգենայ Սիւնւոյ, անկեալոյ ի զօրացն Պարսից կարէվէր. զոր հեծուցեալ ի վերայ իւրոյ նժուգի և հանեալ ի պատերազմէն ապրեցուցանէր: Բայց որք ընտրութեանն ցանկացողք եղեն և արժանիք ընդ սրբոյ ասպետին Սահակայ և ընդ սրբոյ քաջին Վասակայ Մամիկոնենի, և կատարեցան յաւուրն՝ և անուանքն են այսոքիկ...:

Իսկ զօրքն ամենայն Հայոց, ընդ որս և անպիտան զօրքն Վրաց, հանդերձ թագաւորաւն իւրեանց Վախթանգաւ, վատնեալք ցրուէին. զորոց զկնի հետամուտ եղեալ գունդքն Պարսից՝ զբազումս կոտորէին, և բազումք յայլ և այլ տեղիս զերծեալ ապրէին:

Բայց զՀրահատն Կամսարական, սաստկապէս վազս առեալ երիվարին իւրոյ՝ ընկենոյր, և հասեալ Պարսկացն, մինչդեռ էր հետիոտս՝ կալեալ ածէին առ Միհրան. զոր տեսեալ Միհրանայ՝ մեծապէս ուրախացաւ: Պատուհասէր զնա բանիւք խստութեան, և կապեալ տայր պահել զգուշութեամբ. և ուր երթայր յաշխարհիս Հայոց՝ ընդ իւր շրջեցուցանէր: Ընդ որս կալան և սեպուհ մի Սիւնի, որում անուն էր Ցազդ, և զայլս ոմանս ի Վրաց աշխարհէն:

ՀԶ. Իսկ զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան երթայր առ վայր մի յամրագոյն տեղիսն Տայոց, ուր և սինլքորք փախստէիցն Հայոց առ նա ժողովէին և այլք յաւագ նախարարացն Հայոց. այլ Կամսարականքն երկոքեան ընդ նմա իսկ էին միշտ, և անքակ ի նմանէ և միաբան:

7 Չ. երկոքումբք

11 Չ. նախ շնորհէր, ապա ջնջած եւ ուղղած շնորհիւր: ՑՑ. շնորհիւք

13 Աs. անքննին

15 Բs. տենչին: Գs. տենչային

23 «Ոչ միայն անուանքն պակասին, այլ եւ դէպք մահու Սահակայ ասպետի եւ նորին իսկ Վասակայ Մամիկոնենին» (Տանօր. ԲԳs.)

26 Չ. զորոյ

31 Չ. նախ կալեալ, ապա վերջին ա՛ն ջնջած

33 ՉԱs. ընդ որս և կալան սեպուհ մի

35 Չ. զօրավարին (ի՛ն յետոյ աւելացրած) Հայոց Վահանայ

37 ՑՑ. այլք ի նախարարացն

*Զօրոց զհետ եկեալ Միհրան գնդաւն իւրով և ջանայր կամ սպանանել պատերազմաւ, և կամ ունել հնարիւք, և կամ հաւանեցուցանել և նուաճել։*

*Եւ էր բանակ սաստկութեան զօրուն Արեաց ի գեօղն որ անուանի Դու, ի սահմանակցութեան Պարսից և Հոռոմոց. և զօրավարն Հայոց Մամիկոնեանն Վահան մերձ ի նա իբրև երկուք հրասախօք, ի գեօղ մի որ կոչի Մկնառինճ, արամբք որպէս թէ հարիւրովք և թերևս սակաւուք և կամ յոլովիւք։ Եւ Միհրան այնչափ հազարօքն առ նա բանակեալ էր մօտ, և տեղին ուր զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան էր՝ յիշխանութեանն Պարսից թագաւորին էր։ Եւ այնչափ սաստկապէս գիղեալ էր Աստուծոյ զմեծ շնորհ զօրութեան իւրոյ ի վերայ քաջի առն Վահանայ Մամիկոնէի, զի ի մէջ այնչափ բազմութեան գնդի և ի զօրաւոր քաջորերոյ՝ դողացեալ սարսեալ կայր Միհրան գնդաւն, փակեալ ընդ երկիւղագին ահիւ վերնոյն, և չիշխէր դիմել ի վերայ և սպանանել զորս կամէր, և հալածել և կորուսանել զմնացեալ փախստեայսն. այլ բանիւ ողոքանաց պատգամաւորէր ընդ նմա հանապազօր ի խաղաղութիւն, ասելով, թէ «Մի՛ կորնչիր, և յարքայից արքայի ի ծառայութենէ մի՛ ելաներ, և զաշխարհս Հայոց մի՛ տար ի վատնումն. ի հնազանդութիւն եկ թագաւորին, և ես միջնորդ լինիմ. քանզի վասն իւրոյ բարերարութեան սիրէ զիս, և բանից իմոց լսէ. և ես աղաչեմ զթագաւորն, և հաշտեցուցանեմ ընդ քեզ, և ինչ որ արժան է տալ քեզ՝ ջանամ զի տայ»։*

*Եւ սպարապետին Հայոց Վահանայ Մամիկոնէի պատասխանի արարեալ ասէր ցՄիհրան, եթէ «Արեաց տէր որ լինի՝ արդար աչօք պիտի նայել յամենայն մարդ իբրև զթագաւոր, և արդարապէս տեսանել և արդարապէս լսել, ըստ արժանի թագաւորի։ Բայց այր թագաւոր, որ ուղիղ աչօք չհայի ի ծառայս և ուղիղ լսողութեամբ չլսէ ուրուք զբանս, այլ համակ ըստ իշխանութեան վարի, և ոչ ըստ արժանի իրաւանց քննութեան, այլ առաւել ևս որ կարի դժնդակագոյն է և աշխարհի կորստեան պատճառ, և հանապազ դայն առնէ, և կամի տեսանել այլոյ աչօք և լսել այլոյ ականջօք՝ ծանր է ծառայութիւնն այն և դառն, և վտանգ՝ որում ոչ ոք կարէ կալ առաջի։ Վասն զի տէր, որ յիւր ի ծառայից զլաւ և զվատթար չգիտէ ընտրել, և ըստ արժանի իւրաքանչիւր ումեք մատակարարել զպիտոյսն ոչ կամի՝ այնպիսին լաւ ծառայի տէր դժուարաւ կարէ լինել։ Արդ՝ Հայոց աշխարհս ո՛րպիսի մեծ և պիտոյի աշխարհ է. և արդ ցո՛յց ինձ այր մի յայսպիսի աշխարհի, որ թէ առաւելաւ թագաւորութեամբ արժանաւորապէս հասեալ է ի տանուտէրութիւն. այլ որեար աւազակ և անպիտան, հացկատակք և վատոհմիկք, որ զան զայնպիսի մեծ թագաւորութիւն խաբեն, և ընդ կրակի փառս գնեն և տէրութիւն. և ի ձէնջ ըստ կողմն ելեալ սակաւ մի՝ միգեն ի կրակն, և յանթեղ զաղբ իւրեանց արկանեն, և զվաճառականն և զվաճառն ի միասին թշնամանեն։ Եւ այլ լաւութիւն և քաջութիւն և*

5 Աs. Հռոմոց։ Չ. Հոռովմոց
14 ՑՑ. զոր կամէր
15 Չ. կորուսել
17 Չ. յարքայից արքայէ
29 Չ. կորստի
36 ՑՑ. Հասեալ ի տանուտէրութիւն
37 ՑՑ. վատոհմիկ
38 ՉԱs. փառս գնեն. Այսպ. ըստ ԲԳs.
40 Չ. անթեղ

մխտք և գիտութիւն, որով աշխարհ շինի և միջի լինի՝ այն չխնդրի և արհամարհեալ է. այլ անպիտան և վատտոհմակ մարդկան պատրողութիւնն ի մէջ անցեալ յարգի, և դուք առ ճանաչողս ունիք զձեզ։ Լուեալ է քո, որ Միհրանդ ես, և ամենայն Պարսից՝ զբանս զայս յԱրեաց տեառնէն ի Պերոզէ առաջի ամենեցունց յատենի, թէ «Այր վատ և գունդ անպիտան Ասորի է. բայց քան զԱսորի այր՝ Հայ մարդ շատ վատթար է և անպիտան»։ Եւ ո՞չ արդեօք լաւ էր մահ քան զայն լուր յայնպիսի Թագաւորէ։ Եւ արդ՝ իմ երկուս կռիւս արարեալ է ընդ Արի մարդկան, և երրորդն այս է որ ընդ քեզ արարաք. և ընդ որս զերկուս կռիւսն արարաք՝ ընդ այնպիսի երևելի և քաջ մարդկան կռուեցաք, զոր ինքն Արեաց տէրն և ամենայն Արիք ճանաչէին, թէ որպիսի որեար էին։ Եւ օտար մարդոյ մեզ չէր օգնեալ, Հոնի կամ Հոռոմի և կամ այլ ազգի ուստեք մարդոյ. բայց միայն այս Հայոց, զոր դուք գիտէք, սոցա վըճարեալ է զայնպիսի մեծ գործ, զոր դուք ամենայն Արիք լուայք և տեսէք. և ոչ բազում այրուձիոյ, այլ հարիւր արամբ և կամ ևս նուազիւ ղհազար և զերկուս հազարս այր փախուցեալ է սոքօք։ Եւ յայսմ կռուի մի՞ զայս զմտաւ ածիալ պարծիք, թէ աւելի ինչ քաջութեամբ յաղթեցէք մեզ. այլ ի մեր երկպառակութենէ և ի նենգելոյ եղև մեզ վնաս։ Զի թէ էր այս հայ գունդ, յորոյ վերայ ահ և երկիւղ էր, որպէս Արեաց տեառն յիւր ծառայի վերայ, և յիմում ձեռին այնպէս էին, որպէս ընդ իմ նախնեացն ձեռամբ, և համարձակապէս իշխէի զվատացեալսն ի կռուի տամբ և կենօք հարցանել և գլխով պատիժ առնել, և քաջացելոցն կարէի բարի առնել և պատիւ տալ՝ ցուցանէի Այրեաց տեառն և ձեզ ամենեցուն, թէ ո՞ր կարի գունդ յԱրիս յանուանի էր և լաւ. բայց եթէ լաւագոյնք ևս և քաջք չերևէին՝ այլ ի խոնարհ սակաւ մի և նուազ չտայի երևել։ Բայց արդ՝ զոր ձեր ի վատ տոհմէ և յանպիտան ի մարդկանէ աշխարհիս Հայոց իշխան կարգեալ էք՝ դոքա ըստ իւրեանց յետնութեան կորուսին յաշխարհէս Հայոց զքաջութիւն և զանուն բարի և զլաւութիւն։ Զի գնդի, որոյ զօրագլուխն վատ է՝ գնդին լաւ լինել չէ հնար, և աշխարհի, որոյ իշխանքն յետին են՝ աշխարհին այնմ անհնար է յառաջադէմ և անուանի լինել։

«Իսկ յաղագս իմ դուք ամենեքեան գիտէք, զի ի հարցն իմոց ես տղայ մնացի. ոչ զվաստակս նոցա որ առ Արեաց աշխարհն լեալ է՝ գիտեմ, և ոչ յանցման նոցա հաղորդ ինչ էի։ Բայց մինչ ես յանձինս զգացի, և ձեզ Արեաց տեառնն արբանեկութեան արժանի եղէ՝ ի մտի եդի առաջի Աստուծոյ և մարդկան՝ արդար մտօք տեառն և ձեզ ծառայութիւն առնել և արդար վաստակս վաստակել։ Եւ որչափ ես զլաւն հոգայի և ի լաւ վաստակսն յաւելուի՝ և վատ անարժան իշխանքդ Հայոց զինչպէտ բանսարկութիւնս առնէին, և դուք անքնին մտօք լսէիք և ընդ իս չհայէիք ուղիղ. ածի զմտաւ, թէ զի՞նչ արդեօք այլ հնար գոյր,

| | | |
|---|---|---|
| 1 Զ. մտք և գիտութիւնն.... չէ խնդրի | 11 Զ. որար | 20 ԶՑՑ. այսպէս |
| 3 ՑՑ. առ ճանաչող | 12 ՑՑ. Հռոմի | 25 ԶՑՑ. քաջք երևէին |
| 5 Զ. ի պերոզէ։ Աց. իպերօզէ։ Այսպ. ըստ ԲԳց. | 17 Զ. զմտաւ ածել | 34 Զ. հաղորդել չէի |
| | 17 ԲԳց. պարծիս | 39 ՑՑ. ինքնին մտօք |
| | 19 Զ. որպէս և | 40 Զ. ուղեղ |

*որով ես կարող լինէի զԱրեաց տեառն և զաւագացն զմիտսն ուղղել ընդ իս. եթէ գտանէի ինչ ոչ պարգևս՝ գոնեա լոկ աչօք ուղիղ հայէին ընդ իս, և շատ էր ինձ։ Եւ իբր ի վաստակսն, զոր վաստակէի ըստ իմում գիտելոյ, թերութիւն ինչ ոչ տեսանէի, և առաւելս ինչ յաւելուլ և վաստակել չգտանէի հնարս, և զթշնամեացն բերանս ի բանսարկութենէ խնուլ ոչ կարէի, և տեառն և ձեր ականջք ի բաց էին ի լսել զստութիւն և չխորհել վասն իմ ուղղակի, և իբրև ոչ ինչ գտի պատճառանս ծանր տրտմութեանն որ կրէր յանձին իմում ի սպառ, և փախչել յաշխարհէս չկարէի՝ խորհուրդ չար ի մտի արկի, և անձամբ զանձն սպանի. և երանի՛ եթէ լոկ զմարմինս էր սպանեալ. այլ ես զհոգիս և զմարմինս ի միասին կորուսի։ Քանզի ուրացայ զճշմարտութիւնն զոր դիտէի, թէ ստոյգ Աստուած է արարիչ և տէր ամենայնի, և երկիր պագի ստութեան և մոլորութեան. զոր այսօր առաջի ձեր և առաջի ամենայն աշխարհիս խոստովանիմ, թէ ստութիւն է և աղտեղի խաբէութիւն։ Եւ յետ կործանմանն յորում կործանեցայ՝ մաշէի յերկիւղէ զամենայն օր, թէ գուցէ մեռանիցիմ. սովին մեղօք և կորնչիցիմ գյաւիտենական կորուստն. կալեալ ի բուին զոգի իմ՝ ի բաց մերժեցի զերկիւղ թագաւորաց, ընկեցեալ յանձնէ կոխեցի զուրացութեանն խիղճ և լուսաւորեցայ։ Այսուհետև ուրախ եմ և պատրաստ հալածանաց, աղքատութեան, վշտի և մահուան. զի որում և դիպիմ քրիստոնէութեամբ՝ ուրախ եմ և անահ։*

*«Բայց դու զոր խօսիս՝ և արդարև կարես առնել, և հաւանի թագաւորն նուաճել զմեզ՝ և նախ քան զամենայն՝ զքրիստոնէութիւն շնորհէ աշխարհիս Հայոց, և զաղտեղի վաճառդ հատանէ յաշխարհէս մերմէ, զոր անպիտան և վատ մարդիկ գնեն ի ձէնջ խաբէութեամբ, և ընկալեալ ծաղր առնեն և զձեզ և զմոխիրն. և զմարդ ճանաչէք զլաւն և զանպիտան, և գործ խնդրէք յիւրաքանչիւր ումեքէ, և ոչ կատակաբանութիւն. և ի գործ հայիք՝ տալ ըստ վաստակոց զհատուցումն, և ոչ ի լկտէբանութեան խաբէութիւն. և կարէք գրել և կնքել, թէ ի մերմէ բռնութենէ եղև ձեր յանցումն, և ոչ ի ձեր ստահակելոյ և յանդգնութենէ, և թողուք. և զտոհմիկն առ տոհմիկս ունիք և զվատտոհմակսն առ անտոհմակս. և թէ այդպէս նուաճէք զմեզ՝ մեր բնիկ տեարք էք և հարցն մերոց և նախնեաց, և մեք ծառայութիւն առնեմք և հպատակ լինիմք։ Ապա եթէ նոյնպէս զյետինսն առ լաւսն ունիք և զլաւսն յետս տանիք, և աղտեղի մեղաց վաճառէք զիշխանութիւն աշխարհիս, և ոչ ըստ իրաւանց հայել յարժանաւորսն և ի պիտանիսն տայք՝ մեք որ ապստամբեցաքն՝ ոչ եթէ գիտէաք, եթէ մեք Արեաց առաջի ինչ կարեմք կալ, զի և զմեր տառապանացս ոյժ գիտեմք և զԱրեաց այնպիսի մեծ և անհամար գնդի և ուժոյ զաստկութիւն. բայց միայն զմեռանելն եդաք առաջի, և նմին պատրաստ եմք. և առաւել ևս ուրախ եմք, զի զանուանի*

2 Ձ. պարգև
4 ՑՑ. թերութիւն ոչ տեսանէի
8 Ձ. ծաղր տրտմութեանն
10 ՑՑ. երանի թէ
16 ԱՑ. կորնչիցեմ
21 Ձ. և անմահ
26 ՑՑ. ծաղր առնեն զձեզ
27 Ձ. յումեքէ
27 ԲԳՑ. ումեքէ, ոչ կատակաբանութիւն
28 ԳՑ. զհատուցումն, ոչ ի լկտեբանութեան
37 Ձ. առաջի չկարեմք կալ
39 Ձ. զանհամար

և զլաւ մահ մեռանիմք քրիստոնէութեամբ, քան թէ ուրացութեամբ գնել զանցաւոր փառս, և զյաւիտենից կորուստն ժառանգել»։

ՀՁ. Եւ մինչդեռ Միհրան և զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան զայսպիսի բանս ընդ միմեանս խօսէին՝ յանկարծակի դեսպան հասանէր ի դրանէ և ստիպով զՄիհրան ի դուռն կոչէին։ Եւ նորա չուեալ ամենայն բազմութեամբն գնայր ճեպով ի դուռն, առեալ ընդ իւր զկապեալն Հրահատ և զերանելին Ցաղդ և զայլ կապեալսն։ Զորոց զհետ երթայր տրտմութեամբ և բազում փութով սիրելի եղբայր նորուն, տէրն Շիրակայ Ներսեհ, արամբք ընտրելովք, որոց տեսեալ զանհնարին անսպառ ողբումն Ներսեհի, սիրով խանդաղատեալ, զբարիս նոցա յիշելով՝ երթային ընդ նմա։ Որոյ յօրէ ունելոյ զՀրահատն Պարսկացն՝ ոչ էր եղբօր նորա Ներսեհի տեառն Շիրակայ դադարեալ ի լալոյ, և ոչ էր հանգուցեալ ի վերայ անկողնոյ, և ոչ ճաշակեալ հաց առանց արտասուաց. այլ և զոր ճաշակէրն՝ առ չարի դառնացեալ լինէր բերան նորա։ Եւ երթայր զհետ զնդին Պարսկաց, ածելով զմտաւ, թէ ո՞ գիտէ, լրտեսեալ ուրեք ի զատագոյն թեւի զնդին՝ անկեալ ի վերայ կարասցէ զնա զերծուցանել. և կամ թէ ոչ՝ գոնեայ ես դիպեալ մահու՝ հանգեայց յանմխիթար տրտմութիւնէս։ Եւ երթեալ բազում անգամ օթս զհետ, և ոչ ինչ կարացեալ գտանել հնարս, և մերձեալք որպէս թէ օթեվանաւ միով ի սուրբ տեղի տան նահատակին Գրիգորի ի գեօղն որ անուանեալ կոչի Բագաւան, և տեսեալ Կամսարականին Ներսեհի զտեղին նահատակին Գրիգորի, և յիշելով զտրտմակցութիւն սրբոց ընդ վշտացեալս, և զհամարձակութիւն սրբոյ առն Գրիգորի առ Աստուած՝ ձայն սաստիկ բարբառոյ հանդերձ արտասուօք արձակեալ առ այրն Աստուծոյ՝ աղաղակեաց ասելով. «Տէր Գրիգոր, որ զսաստիկ մեզ ամբարշտութեանն մեղաց մերոց մերժեալ փարատեցեր յաշխարհէս Հայոց, փարատեա և զիմ սաստիկ մեզս տրտմութեանս ի սրտէս, և շնորհեա ինձ զանձկալի զեղբայրն իմ տեսանել առողջ առ իս. քանզի հնարաւոր է Աստուծոյ ամենայն, և զքո խնդիր քաջ ախորժելով կամի լսել և կատարէ»։ Եւ այսպէս մեծաձայն բարբառով և ողբալով աղաղակեաց Կամսարականն Ներսեհ առ այրն Աստուծոյ Գրիգորիոս. ոչ թէ բերանով բարբառէր, այլ սրտիւն աղաղակէր։ Եւ նորա լուեալ վաղվաղակի ասաց ցՔրիստոս. և փրկչին Աստուծոյ անդ և անգ հանեալ զկապեալն Հրահատ ի շրջափակ զգուշութենէ պահապանացն, արձակէր խաղաղութեամբ առ սիրելի եղբայրն իւր և յաշխարհ։

Ցայնժամ տեսեալ զաներկիւղապէս և զքաջաբար ելս Կամսարականին Հրահատայ՝ զօրագլխին Արեաց Միհրանայ և այլ աւագանւոյն որ ընդ նմա էին՝ հրաման տային ածել զերանելի սեպուհն Սիւնեաց զՑաղդ ի նմին աւուր զառաջեաւ իւրեանց։ Եւ սկսան սաստիւ խօսել

2 Ձ. անցաւոր
6 ՑՑ. բազմութեամբ ճեպով
11 Ձ. զՀրատն
17 Ձ. հանգեայց
20 Թերեւս ի սուրբ տեղի մատրան
20 ՑՑ. չիք ի գեօղն որ անուանեալ կոչի.... զտեղին նահատակին Գրիգորի (տող 22)
25 Ձ. որ զսաստիկ ամբարշտութեան մեղաց մեզ մերժեալ
26 Ձ. փարատեայ
27 Ձ. շնորհեայ ինձ զանձկալի
39 ՑՑ. չիք սաստիւ

ընդ նմա և պատուհասել. «Ոչ է, ասեն, հնար կեալ մարդոյ, որ բազում վնասս և չարիս առ իւր իսկ նմանի մարդիկ գործեալ իցէ, թող թէ առ տէրն Արեաց, որ աստուածանման է և իշխանութիւն ունի ի վերայ ամենայն մարդոյ սպանանել և կեցուցանել։ Արդ՝ զմիասակարն Հրահատ և զարժանին բազում մահուց, զոր ըստ նորա չար գործոցն պաշարեալ մեծ փառացն արքայից արքայի՝ հա ի ձեռս մեր, զոր և մեք թէպէտ և խնայել կամիցաք և ապրեցուցանել, սակայն իւր մահապարտութեան գործոցն որսացեալ զայրն՝ չետուն լինել նմա արժանի թողութեան, այլ վաղ և կամ անագան կորուսանեն զնա. քանզի ի մեծ և ի հզօր իշխանէ ոք փախուցեալ՝ հազիւ կարէ զանձն թաքուցանել, թող թէ փախուցեալն յաստուածոցն ուր կարէ թաքչել և ապրել։ Արդ՝ և դու ընկեր նորին չար գործովք մահապարտութեամբ՝ ոչ ուրեք կարես գտանել հնարս փրկութեան անձինդ և ապրել, բայց թէ ապաւինեալ ի կրակ՝ պագանիցես երկիր արեգական, և նոցա բարեխօսութեամբ գտանիցես թողութիւն ի թագաւորէն, և կեցցես։ Եւ մեք խնայելով ի քեզ՝ տամք զայսպիսի խրատ քեզ. վասն զի կամիմք զկեանս քո և ոչ մեռանել»։ Ի սոյն միտս յօժարեցուցեալ գրգռէր բազում անգամ պատգամաւորօք և թղթովք, էր երբէք և յորժամ ինքն առ աւագսն Պարսից լինէր ի բանակի, անօրէն իշխանն Սիւնի Գդիհոն, ի վերայ երանելի Սիւնւոյն սեպհին Յազդայ, իբրև զչարկամ և զնախանձոտ եղբարց, և ոչ զի ուրացեալ ապրեսցի, այլ զի ուրացութեամբ մեռցի վատանուն։

Եւ լուեալ զայս ամենայն բանս երանելւոյն Յազդայ ի Միհրանայ և յայլ ամենայն աւագանւոյն Պարսից, ծանուցեալ զկամս և զխորհուրդս զանօրէն զեղբարց նոյն իւրոյ Գդիհոնի՝ պատասխանի տուեալ ասաց, թէ «Զժամանակաւոր զմարմնոյ կեանսս թէ վաճառէր ոք, և հասանէր ինձ գնել և կեալ, յաղագս ցաւոց մարմնոյ և սիրոյ կենցաղոյս՝ տայի արդեօք զամենայն ինչ ըստ աղքատութեան իմոյ գիւտի և գնէի. բայց զյաւիտենից պատուհասն և զանշէջ գեհենին սպառնալիսն գնել ընդ կարասւոյ՝ յոյժ անմտութիւն է. մանաւանդ զի անյայտ է երևումն վաճառուն. քանզի ոչ ոք գիտէ զկեալն իւր, զհեռին և զմօտեալն ի դուրս. գուցէ կնիալ խնդայցէ, և ի վաղիւն վախճանեալ յուղարկիցի ի խաւարն արտաքին։ Այլ զայսպիսի աղտեղի և կորստական վաճառ, թէ ուրացեալ էր իմ, ընդէ՞ր այժմ գնէի զդա վասն կելոյ, այլ վաղ իսկ առնուի հանդերձ փառօք և մեծամեծ պատուովք. այլ զայս ընտրեցի յորում եմս, և զսոյն համարեալ լաւ և պատուական՝ ասէ, ուրախ եմ և խնդամ վախճանել քրիստոնէութեամբ, քան թէ զհազար հազարս ամաց կեալ ուրացութեամբ, և յաւիտենից անվախճան պատուհասին լինել ժառանգաւոր»։

Եւ լուեալ զայսպիսի բանս անօրէն դատաւորացն ի սրբոյն Յազ-դայ՝ սրով կտրել զգլուխ երանելւոյն հրամայեցին, մերձ ի տեղի սուրբ

2 ՁԱց. մարդիկք
10 Աց. թագուցանել
14 Ձ. գտանես
19 ՑՑ. Սիւնոյն
20 Գց. Յազդայ
22 ՑՑ. չառ յամախ երա-նելոյն... աւագանոյն
25 Աց. հանէր ինձ գնել. Ձ. հանէր գնել ինձ
26 ՑՑ. ցաւոյ
35 ՑՑ. լաւ պատուական
36 Ձ. զհազար հազար
40 Ձ. կտրեալ

մատրանն առաքելանման նահատակին սրբոյն Գրիգորի, ի գեօղն որ կոչի Բագաւան, ի նահանգին Բագրեւանդայ, ի լանջակողման լերինն որ անուանի Նպատ. մօտ ի սուրբ տեղի մատրանն որպէս երկու քարընկեցօք։ Եւ կատարեալ սրբոյ Սիւնի սեպհին Ցազդայ զընթացս նահատակութեան իւրոյ յամսեանն հոռի, որ օր վեշտասան էր ամսոյն, և ամփոփեալ նշխարք նորա եդան անդէն ի սուրբ մատրանն Գրիգորի։

ՀԸ. Եւ զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան չուեալ գայր հասանէր յԱյրարատ գաւառ, և կատարեալ զուխտ պատարագաց ի Վաղարշապատ քաղաքին, հանդերձ ընդ իւր ուխտապահ նախարարօքն և այլ զօրօքն Հայոց, ի տանն Աստուծոյ և ի վկայարանս նահատակեալ կուսանացն, զուխտս պատարագաց և զսովորական նուէրս ընծայիցն Աստուծոյ. և նախ հոգացեալ զաղքատաց դարմանս՝ ապա մեծաւ ցընծութեամբ ուրախանային և ինքեանք, փառաւորելով զԱստուած։ Եւ չուեալք անտի երթեալք հանգչէին ի բնական ոստանին Հայոց ի Դուինի, մինչ զաւուրս ցրտաշունչ ձմերայնւոյն սառնամանեացն անցուցանէին։

Եւ մինչդեռ կամէին հանգչել առ սակաւ մի և ոգի առնուլ յաշխատութենէն՝ գային յանկարծակի ի կողմանց Վրաց արք դիւազգեցիկք և խիլաշուրջք, խօսելով բանս սուտս և տխիլս խաբէութեան, զոր ոչ էր տեսեալ, ի կործանումն և յիրկպառակութիւն զօրաց նորին՝ առ զօրավարին Հայոց Վահանայ յոստանին. և ասէին ցամենեսեան, թէ «Ողջ եմ և կենդանի սքանչելի ասպետն Սահակ և քաջ սեպուհն Մամիկոնեան Վասակ. և զմեզ յղեցին առ ձեզ, թէ «Ի փախչելն ձեր ի կռուոյն Վրաց՝ մնացաք մեք ի կռուատեղն, խոցեալք կարէվէրք. և ըստ Աստուծոյ ազդեցութեանն, ի սաստկութենէ և ի կարեւոր վիրացն, զոր ունէաք ի մարմնի մերում՝ մերթ ի սող և մերթ անձնքարշութեամբ հասաք առ միմեանս, և հոլովեալք անկաք ի խիստ թաւուտ թուփս դժնկաց. և կացեալ ի վերայ մեր ըստ Աստուծոյ ցուցակութեանն առն միոյ քահանայի հոգեւորի ի Տեղացն անապատէ, և ի նմին ժամու բարձեալ ի մէնջ զմի մի ըստ անձին՝ տարաւ հեռի ի տեղեացն որպէս պարսկաւ միով հրասախաչափաւ. չև ես գիտելով, թէ ո՛ ոք իցեմք և կամ յորմէ զաւառէ, այլ ըստ առաքինութեան իւրոյ՝ իբրև զարս յազագս Աստուծոյ վիրաւորեալս՝ ապրեցուցանել զմեզ կամեցեալ, և կամ դիպեալս վախճանի՝ ամփոփել զոսկերս մեր յօգուտ հոգւոյ իւրոյ տենչացեալ. և ապա որպէս յանկասկած տեղի հեռացուցեալ զմեզ ի տեղւոջէն առն՝ և լինէր անհոգացեալ։ Երթեալ այնուհետև ի վանկունան իւր՝ բերէր մեզ կերակուր ինչ դուզնաքեայ և ջուր, ածեալ ընդ իւր և մանուկ մի միւս ես այլ, և մատուցեալ մեզ աղաչէր ճաշակել. և մեր ընկալեալ ըստ կարի զկերակուրն ի ձեռանէ սրբոյն ջամբելով՝ զօրացաք սակաւ մի։

1 Ջ. մատրանեն
1 Ջ. սրբւոյն
8 Ջ. յարայրատ
11 ԶԶ. ընծայիցն իւր. և
15 ԶԶ. ձմերայնոյն
17 Ջ. դիւազգեցիկ
24 Գs. ունեաք
25 ԶԶ. ի յանձն քարշու-թեամբ
26 ԶԶ. հոլովեալ
26 Ջ. խիստ'ի ս'Ն յետոյ աւելացրած
26 Թուփս'ի մասին ԲԳs. ունին ծանօթ. «Այլ օր. տեղիս»։
26 ԶԶ. դժնըկաց։ Ջ. դըժընկաց
29 ԶԶ. չիք ի տեղեացն
30 Ջ. հրասախաչափաւ։ ԶԶ. հրասախաչափու
30 ԶԶ. ո՛վ ոք
34 Ջ. ապայ
34 Ջ. հեռացուցանել

Եւ նորա գիտացեալ, թէ սակաւ մի բերեալ ոգի բացաք զաչս՝ սկսաւ նա այնուհետեւ հարցանել զմեզ, թէ ուստի՞ էք և կամ յորմէ՞ գաւառէ. քանզի ձեղ ձեր և կերպարան ազատս կարծեցուցանէ զձեզ։ Եւ մեր զառաքինութիւն զառնն տեսեալ՝ զստոյգ իսկ ինչ պատմեալ ասացաք նմա զմէնջ յանուանէ. և նորա լուեալ՝ ետ փառս Աստուծոյ. և թողեալ առ մեզ զմանուկն, գնայր ի մէնջ ի վանկունամ իւր։ Եւ ի միւսում ևս գիշերին ածեալ գրաստ, միւս ևս այլ մանկամբ՝ հանէին զմեզ ի գրաստն, և օժանդակելով մեզ երիքեան տանէին յանապատն, ուր ինքեանք բնակեալ էին. և թագուցեալ զմեզ անդ առ իւր աւուրս բազումս՝ բժշկեալ ողջացաք զօրութեամբն Աստուծոյ։ Եւ որպէս սովորութիւն է հակառակորդ դիւին՝ շնչեալ յականջս ոմանց աստուածատեաց մարդոց՝ որսալ զմեզ սկսեալ են անձանձրոյթ և կամին սպանանել, և անձանց փառս գտանել ի Պարսկաց և պատիւս։ Եւ սուրբ վանականս ընդ բազում անապատ տեղիս և ընդ բազում խորաձորս քարանձաւաց շրջեցուցանէ զմեզ ի ծածուկ. բայց ածել այդր առ ձեզ երկնչի. գուցէ, ասէ, քննեալ ուրուք զհետս՝ գտանիցէ զմեզ և սպանանիցէ։ Բայց արդ՝ փութացարո՛ւք արձակել այտի գունդ սաստիկ և զօրագլուխ հաւատարիմ, և տանել զմեզ առ ձեզ, որպէս զի հասեալք առ ձեզ՝ լիցուք ի միասին վրէժխնդիրք հաւատոցն ճշմարտութեանն»։

Եւ լուեալ զայսպիսի սատանայական խօսս արանց անմտաց՝ իսկոյն հաւատացեալ ասէին, թէ «Արդ փութալ ևեթ պիտի. զի յորժամ նոքա ողջամբ ի Հայս գան, և Պարսիկք զայն լսեն, թէ արդարև նոքա ողջ են՝ խորտակին ամենայն զօրութիւնք նոցա, և լքանին»։ Այլ մանաւանդ յորժամ յականջս կանանց ևս եհաս բան արանցն իւրեանց, և լուան թէ ողջ են, — քանզի և զխօսս անգամ ի գիշերի զառն և զկնոջ խօսէին նշանաւ դիւազգեցիկ արքն և հաւատալի առնէին,— չառնէին այնուհետև դուլ կանայքն ի տուէ և ի գիշերի, ըստ սայթաք և անհաստատ բնութեան կանանց, այլ գրգռէին զսիրելիս իւրեանց և ղազգականս, զդայեակս նոցա և զծառայս՝ փութալ ճեպել հասանել վաղվաղակի և ածել զնոսա։

Եւ զայս ամենայն բանս դիւազգեցիկ արանցն եկելոց ի Վրաց, և զկամս և զհաւանութիւն բազում արանցն ի Հայ մարդկանէ, ևս առաւել զանդլութիւն կանանց և զճեպս և ղանձուժկալութիւն, որ նման բոցոյ տոչորէին ի խորհուրդս նոցա, և ոչ ոք զօրէր ցածուցանել, լուեալ ամենիմաստի և զգայուն մտաց Մամիկոնեանն Վահանայ զօրավարին Հայոց՝ ասէր. «Այդ բանք և խորհուրդք՝ արանց վատախորհրդաց են և որք չարաչար են իմաստիւք։ Քանզի գիտացեալ զեկս պարսիկ գումար-

1 Զ. սակայն այնուհետև | 11 Զ. մարդոյ | վարդան վարդապետ
2 ԶԱց. և հարցանել | 14 Զ. շրջեցուցանէր | ծնողացն և ինձ մեղա-
3 ՑՑ. ձեւս ձեր և կեր- | 15 Զ. քննել | պարտ գրեցոր գրչիս և
պարանս։ Զ. ձեւղ ձեր | 17 ՑՑ. այդի | ձեզ ամէն։
և կերպարանս | 23 ԶԱց. խորտակի | 34 ԶԱց. ամէնիմաստի
4 Զ. զստոյգ իսկ ինձ | 27 ԶԱց. և կամ ի գիշերի | 36 ԶԱց. գումարտակէ
8 Գց. օժանդակելով զմեզ | 31 ՑՑ. զհաւանութիւնս | ղատնեան ի յերկերս։
9 ՑՑ. թաքուցեալ զմեզ առ իւր | 33 Զ. ցածուցանել՝ից յե- | Այսպ. ըստ ուղղագր.
11 ՑՑ. շնչել | սոյ ուեր. որոց աղօ- | ԲԳց.
| թիւքն ողորմի քրիստոս |

տակի գաւռնանի յերկիրս Հայոց՝ խորհեալ իմացան զայլ, թէ քայքայել կարեմք և պառակտել զժողովուրդս զօրաց Հայոց որ յոստանին էին, և այսր և անդր ցրուել. ապա թէ կարի սակաւ գունդ կայ ի Պարսից՝ թէպէտ և ձերբակալ արարեալ կորուսանեն զնոսա։ Այլ թէ ընդդէմ ումանց բանքս իմ ոչ թուին՝ ես աշխարհակործոտ արանցն ողջ ոչ տայի գնալ յաշխարհէս Հայոց։ Վասն զի զերանելի զեղբօրն իմոյ զնահատակութիւն յաւուր կատարման իւրոյ, և յառաջ քան զպսակելն նորա տեսի զպսակն. և նախ քան զվախճանն՝ ցուցաւ ինձ գոյնն և կերպարան բանակի այնր և զօրու, յոր բանակ նախադնելոց և վերանալոց էր. քանզի վաղագոյն քան զյարձակելն մեր և հասանելն առ միմեանս՝ լուսաւորեցան երեսք նորա լուսով, զորոյ զնմանութիւն լուսոյն ոչ կարեմ ասել. և զարմացեալ ընդ նորա տեսիլն՝ կամեցայ միւսանգամ հայել ընդ նա, և յես առաւել ճառագայթարձակ լուսոյ երեսացն զարհուրեալ՝ ոչ ևս կարացի հայել։ Որ թուի թէ և այլոց երևեցաւ նոյն տեսիլ սքանչելութեան գունոյ նորա ի ժամուն. և ես անդէն և անդ գիտացի, թէ նա առաւ յինէն և յայլ զօրս խառնեցաւ, որոյ զօրաց այն կերպարան է և լուսաւորութիւն։ Եւ ես ասեմ, թէ զնա մի խնդրէք և վասն ապստի մի աշխատիք։ Ապա թէ որպէս զորդիս մարգարէիցն կամիք թարթափել յընդունայնս, որք զԵղիայն խնդրէին ապշեալք, որոց բողոքէր Եղիշայ՝ չաշխատել, և չլսէին՝ դառնայք ամօթով նոյնպէս և դուք, որպէս և նոքա դարձան ամօթալից և ունայնք։ Բայց զի մի երևիցայց ումեք բարենախանձ՝ առաջի ձեր են արք զօրուդ Հայոց և նախարարքդ. և որ ոք կամի երթալ՝ չարգելում. բայց յիշեսջիք և գիտասջիք, թէ որքան կորուստ յանօգուտ երթիցդ յայդոցիկ հասանէ աշխարհիս Հայոց»։

Յայնժամ հաւանեցուցեալ անխորհուրդ և թեթևամիտ մարդոց, և մանաւանդ կանանց նահատակելոցն և նոցունց ընտանեաց և դայեկաց, զսեպուհն Մամիկոնէից զՄուշեղ՝ բազում այրընտիր գնդաւ արձակէին ընդ արսն շաղաւաշուրթս և խաբեբայս յիրս անօգուտս և ի ճանապարհս զոր ոչ գիտէին։ Որոց տարեալ զնոսա ի սահմանս Վրաց՝ յածեցուցանէին զկնի սատանայի, որոյ և ինքեանք արբանեկեալք իսկ էին. և բազում պատրողական կարկատելով պատճառս՝ ասէին ցնոսա. «Փախուցեալք ի սպանողացն՝ ի թաքստոց էին, փոփոխելով յայլ և այլ խորաձորս քարանձաւաց և ի ծառախիտ կատարս բարձր լերանց»։ Եւ այսպէս ի բազում աւուրս խելացնորեցուցեալ յածեցուցանէին զսեպուհն Մամիկոնէից զՄուշեղ և զգունդն որ ընդ նմա, մինչև ցվախճանել ցրտաշունչ հողմոց ձմերանւոյն սառնամանեաց։

ՀԸ. Եւ եկեալ ժամանակ ծաղկոցաց գարնանւոյն օդոյն շնչմանց, աւետաւոր ջերմութեանց մերկոցն չքաւորաց՝ եկեալ հասանէր յանկար-

1 Ձ. խորհել։ Թերեւս խոր-հեալ իմացան զայս

5 Գց. բանքս իմ Թուին

7 Ձ. զպսակէլն, ի՛Ն բեր-ուածի վրայ 88. զպսա-կէլն

14 Աց. և Թուի Թէ այլոց։ ԲԳց. Եւ Թուի Թէ և այլոց

16 Ձ. Նայ առաւ.

22 Գց. չիՆ զի

29 Ձ. շաղաւաշուրԹս՛ի ւա՛Ն վերեւից գրուած

31 Աց. արբանեկեալք։ ԲԳց. ուղղագրել ենՆ այսպէս։ Այսպէս եւ Ձ.

37 88. ձմերայնոյն

38 Ձ. օդւոյն

ծակի յերկիրս Հայոց Ջառմիհր Հազարաւուխտ, սաստիկ և բազում այրընտիր զօրօք. դիմեալ անցանէր ստիպով ընդ կամուրջ գետոյն Երասխայ, և ի գիւղաքաղաքին որ կոչի Արտաշատ՝ բանակէր այն օր։ Քանզի զգացուցեալ էր նմա քաջ տեղեկութեամբ ուխտանենգացն յաշխարհէս Հայոց՝ զերթն կիսոյ գնդին Հայոց ի Վիրս, և թէ սպարապետն Հայոց Վահան Մամիկոնեան լոկ թուով նախարարօք և սակաւ այրուձիով ի յոստանիդ. «Յորոց վերայ հասեալ քո այսչափ ընտիր բազմութեամբ, թէպէտ և եղեալ նոցա զանձինս ի մահ, չկարիցես առնել ձերբակալս այդչափ բազմութեամբ այրուձիոյ՝ այլ երեքկնակի և չորեքկնակի պատեալ պաշարեալ զնոսա՝ հանես ընդ սուր զամենեսեան. և կատարեալ տանիս ի գլուխ զիրս գործոյս աշխատութեան, և դու պատուեալ փառաւորիս ի թագաւորէն, և մեք հանդչիմք յերերագին աշխատութենէս յայսմանէ»։ Եւ լուեալ զայսպիսի բանս Հազարաւուխտոյ և այլ աւագացն որ ընդ նմայն էին՝ առաւել ևս ուրախանային, և ճեպով ի վաղիւն դիմէր ի վերայ զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնէի և զօրացն որ ընդ նմայն էին ի ժամուն։ Եւ հասեալք մօտ ի քաղաքն Դուին՝ յօրինէր Հազարաւուխտ զճակատն ըստ օրինի գործոյ պատերազմին, և կարգեալ զռազմն ի միջոցէ մայրւոյն, որում Խոսրովակերտն ասեն՝ անցուցանէր ի վերայ գաստակերտին, մինչև ի լեռնակողմն զոր Ջրվէժն կոչեն։

Եւ տեսեալ սպարապետին Հայոց Վահանայ զայսչափ բազմութիւն զօրացն Պարսից, և այլ նախարարացն Հայոց որ ընդ նմա էին, և այլ ռամիկ այրուձիոյն Հայոց, թէպէտ և զանընդդիմակայ չափաւորութիւն իւրեանց գիտէին, տեսանելով ծովացեալ գնդաւն Պարսից զամենայն գաշտն առհասարակ՝ այլ սակայն և ոչ կարի զարհուրեալք փախչել փութային. այլ ըստ բաւականի զօրուն իւրեանց բաժանեալ ի մի մի և յերկուս նախարարս՝ յարձակէին ի վերայ։ Եւ առեալ քաջասրտաբար մասն ի գնդէն Պարսից՝ բազում արս ընտիրս դիաթաւալ յերկիր կործանէին, և իւրեանց դարձուցեալ զերասանակս երիվարացն՝ գնացին ի բաց քաջաբար։ Վասն զի և քաջաբար փախուստ առն հզօրի՝ սաստիկ ահ երկիւղի գուշակէ առ միւսանգամ գործ թշնամեացն գնդի. որ եղեալ առ յապա հրեշտակաւ բազմաց, և ճաշակեալ առին զհամ և զարմացան. մանաւանդ առաւել էր քան զայլսն. զոր և գիտաց քաջազոյն սնապարծ իշխանն Սիւնեաց Գդիհոն։

Բայց անդէն ի տեղւոջն որք ընտրեցին կամաւոր յօժարութեամբ զմահ անձանց և նահատակեցան՝ երկուք արք ի նախարարացն Հայոց կոռւեալք լաւաբար, և զքաջութիւն գործոյ ցուցեալ՝ երանելին Որդի ի տոհմէն Դիմաքսենից, և երանելին Քաջաջ ի տոհմէն Սահառունեաց, եդեալ զանձինս ի վերայ ուխտին սրբոյ՝ պսակեցան։ Անդ չարաչար խոցոտին և փախչին զօրքն Պարսից։ Եւ զուրբ հայրապետն Հայոց տէր

1 ՏՏ. չիք Հայոց
2 Զ. գետոյն
3 Զ. ի գեղաքաղաքին
18 Զ. և կարգել
19 Զ. գաստակերտին
25 Զ. դաշտն
38 «Թուի հատուած ինչ բանի պակաս»: (Ծան. ԲԳՑ.)
39 «Անդ չարաչար խոցոտին և փախչին զօրքն Պարսից» թուում է անհարազատ յաւելուած: Սրա մասին ԲԳՑ. ունին ծանօթ. «Այսպէս անյարիր դնի աստ բանս այս»

Ցոհան ընկեցեալ ի ձիոյն՝ թողին կիսամահ։ Վասն զի այնպէս ճեպով հասուցին սադրիչքն անօրէնութեանն զՀազարաւուխտ ի վերայ Հայոց, զի և ոչ աւուրբ միով յառաջ ժամանեցին խոյս տալ ի քաղաքէն և անձին հոգալ, և ոչ ինքն կաթողիկոսն Ցոհան։ Այլ ամենազօր գթութիւն Փրկչին Քրիստոսի ողորմեալ խնայեաց յուխտասէր հօտն իւր, և ածեալ ողջ զհայրն սուրբ՝ եցոյց խաղաղութեամբ ժողովրդեան իւրում և ուրախացոյց։

Եւ ի նմին աւուր, յետ վճարելոյ գործոյ պատերազմին, գայր հասանէր սեպուհն Մամիկոնէից Մուշեղ հանդերձ այրուձիովն որ էին ընդ նմա. և իբրև ոչ ինչ ժամանեալ յանբաւէ գործոյ պատերազմին պիտոյից՝ դարձեալ ընդ այլ փախստէիցն գնային ի բաց։

ՀԺ. Եւ այսպէս ցրուեալ այսր և անդր զօրքն Հայոց իւրաքանչիւր սփռէին։ Եւ գնայր զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան ինքն և նախարարքն Հայոց որք ընդ նմա էին, հանդերձ իւրաքանչիւր ուրուք դայեկօք և սիրելի ծառայիւք, ուշ եդեալ իրթալ դադարել առ վայր մի յամուր տեղիս սահմանացն Տայոց, ուր առնուլ և հանգչել առ վայր մի, և մնալ յուսով և սպասել փրկութեան Տեառն։ Զորոց զկնի հետամտեալ ճեպով անհանգիստն Հազարաւուխտ՝ երթայր դիմեալ ամենայն զօրօքն հանդերձ. և զբազում տեղիս ամրոցացն Հայոց ընդ իրթալն առեալ հարկանէր, քակէր աւերէր և անցանէր. և զբազումս կոտորեալ՝ հանէր արեանց ճապաղիս. խնդրէր հնարս, փքալով մեծամեծս, կամ առնել ձերբակալս զքաջ Մամիկոնեանն Վահան և կամ սպանանել պատերազմաւ, և ապա հանգչել։

Եւ երթեալ յՈքաղն՝ բանակէր մօտ ի գեօղն, որում անուն էր միումն Գիւղիկ և միւսումն Վարդաշէն. և բանակեալ անդ զօրն զայն՝ լսէր ի վաղիւն, թէ Մամիկոնեանն Վահան մօտ է ի նա ի Վարայրվարոյն ի Հոռոմ տան, ի գաւառին որ կոչի Շաղագոմ։ Եւ կարծեցեալ անդ լինել զիմաստախորհուրդ Մամիկոնեանն յանհոգս, որպէս ի Հոռոմ տուն անկեալ՝ պնդեալ յանկասկածս զցայգ ի տեղին՝ տեղեակ առաջնորդօք հասանէր ընդ առաւօտուն ծագել։ Եւ գտեալ անդ բազմութիւն այլ մարդկան, ընդ որս դիպեցան և կանայք երկուց Կամսարականացն, տեառնն Շիրակայ Ներսեհի և Հրահատայ, յորոց վերայ անկեալ յանդգաստս զօրացն Պարսից՝ զբազումս ի ռամիկ մարդկանէն Հայոց սպանանէին. և զկանայս երկուց Կամսարականացն եղբարց, զՆերսեհի և զՀրահատայ, ըմբռնեալ տանէին ի բանակն Պարսից։

Բայց զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնենի և այլ ումեք ի նախարարացն որք ընդ նմայն էին, ոչ պատահեալ՝ դառնայր ոչ ևս քաջ դիւրասրտութեամբ, յաղագս ոչ կատարելոյ խնդրոյն՝ որում հասանելն ցանկայր, և վրիպեցաւ։ Ստուգեալ վասն կանանցն Կամսարականաց, թէ արդարև նոցա կանայքն են՝ զուարճացեալ ուրախանայր ընդ միտս իւր. խորհելով այսպէս, թէ արդ նոքօք հաստատ կարեմ որ-

9 ՁԱց. որք էին
10 ՁԱց. յանբաւ։ Այսպ. ըստ ուղղագր. ԲԳց.
12 ԲԳց. չիք այսպէս
12 Զ. անտր... յիւրաքանչիւր
24 Զ. որում անուն է
25 ՁԱց. գեւղէկ
26 Զ. ի վար այր վարոյն։ Գց. ի նա Վարայրվարոյն
28 ՑՑ. ի Հւոմ տան
29 Զ. պնդել

տալ և ըմբռնեմ զՎահան. քանզի նոքա են նորա սիրտ և հաւաստապէս միանձնապէս միութիւն. և թէ քակտեալ նոքա ի նմանէ լինին զամ մի, և նա միայն մնայ առանց այն արանց՝ կամ նուաճեալ հնազանդի մեզ, որպէս և կամիմք, և կամ փախուցեալ յօտար երկիր՝ կորնչի միայն առանձինն։ Բայց զկանայս նոցա, երկուց Կամսարականացն, հրամայէր ըստ օրինացն քրիստոնէիցն, որպէս լուեալ էր հաստատապէս, պահել սրբութեամբ և ամենայն զգուշութեամբ։ Եւ ինքն չուեալ յՈքաղայ՝ իջանէր ի գաւառն Բասեան և բանակէր մօտ ի գեօղն որ անուանի Դու, ի դաշտին աղբերականց, զոր Արծաթաղբերսն կոչեն։ Եւ կացեալ անդ օր մի՝ դեսպան ի դրանէ հասանէր առ նա հրովարտակաւ. յորում գրեալ էր թագաւորին Պերոզի՝ տալ գիտել նոցա գիւր ամենայն Արեաց ուժով ի վերայ Հեփթաղին զդիմեցումն. և նմա հրամայէր երթալ ի Վիրս, և զթագաւորն Վրաց զՎախթանգ կամ ունել և կամ սպանանել և կամ ի բաց փախուցանել յաշխարհէն, և զՇապուհն ի Միհրան տոհմէն անդէն յաշխարհին Հայոց թողուլ պնդաւ մարզպան։

Ձ. Եւ Հազարաւուխտոյ ընկալեալ զհրովարտակն, և լուեալ զհրամանն թագաւորին՝ թողոյր աստէն զՇապուհն պարսիկ այրուձիով, այրընտիր գնդաւ, զտէրն Սիւնեաց զԳդիհոն առ նմա ամենայն գաւառին Սիւնեաց գնդաւ, և ինքն փութով գնայր ի Վիրս։ Եւ երթեալ անդ՝ ժողովէր առ ինքն զուխտանենգաց դասս, որոց նենգեալ թագաւորին Վախթանգայ և երդման Աւետարանին ստեալ՝ առ Հազարաւուխտ գային. ժողովէին առ նա և այնք ևս որք ընդ արքայից արքայի միաբանութեամբ էին։ Եւ նա ումեմն թագաւորութիւն խոստանայր, և ումեմն գահ և պատիւ և պարգև բազում, և այլոց բազմաց զպէտս իւրաքանչիւր, և միաբանեցուցեալ զշատս յաշխարհէն Վրաց՝ գունդ կազմէր։ Եւ զայն տեսեալ թագաւորին Վախթանգայ, թէ իւրոցն ստեալ՝ թողին զնա և գնացին առ Հազարաւուխտ, և Հայք դեռ ևս ինքեանք անձեռնհաս են և վտանգեալք՝ խոյս տուեալ յաշխարհէն Վրաց՝ ի կողմանս Եգեր աշխարհին հասանէր առ վայր մի։

Իսկ Շապհոյ տարեալ զկանայս Կամսարականացն յամուր բերդն Բասենոյ, զոր Բողբերդն կոչեն՝ անդ թողոյր. և յանձն արարեալ Յըզատ-Վշնասպայ բերդակալի զկանայս Կամսարականաց՝ պատուիրէր նմա բազում զգուշութեամբ պահել ըստ օրինացն քրիստոնէից զնոսա, սրբութեամբ։ Քանզի կանայքն իսկ Կամսարականացն զնոյն ասէին բազում անգամ համարձակապէս բողոքով. «Թէ զարսն մեր արդարև կամիք նուաճել՝ զայդ և եթ տուք լսել նոցա, թէ մեք խաղաղութեամբ եմք, ապա զոր ինչ հրամայէք նոցա՝ լսեն և կատարեն։ Քանզի ամենայն Հայոց գիտելով ասեմք զայս, և վկայեն որ աստ առ ձեզ հայ մարդիկ են, զի քան զմեզ զայլ կին նոքա ոչ գիտեն. ապա թէ այլ ինչ լսեն վասն մեր՝ ի նախատանաց իսկ և յամօթոյ, թող ի մեղաց և ի զարշութենէ՝ ըստ մերոց օրինացն, առաւել դնեն զանձինս ի մահ, կորնչին»։

2 Ձ. զամ մի
3 Ձ. հնազանդեսն
4 Ձ. փախուցեալք
7 ԲԳՑ. յՈղոքայ
9 ՏՏ. Աղբերականաց
11 Ձ. տալը գիտել
13 ՁՏՏ. այսպէս զՎախտանկ
20 ՏՏ. դասն
32 ՁԱՑ. յըզատ վշնասպայ։ Այսպ. ըստ ԲԳՑ.
40 Ձ. յամօթէց

Քանզի և ինքն իսկ Շապուհ ոչ միայն ի լրոյ ևեթ գիտէր զնոցա պնդութիւն յաղագս քրիստոնէութեան, այլ ինքն իսկ որպէս իսկ ձեռնասուն որդւոյ՝ տեղեակ էր նոցա ամենայն իրաց, և քրիստոնէութեան պնդութեան, և յայլս ամենայն ի հրահանգս և ի միտս։ Որ վասն առաւել սուրբ պահելոյ զկանայսն՝ բազում անգամ յանձն առնէր բերդակալին, և զնոյն համբաւ և պատուէր ստէպ տայր լսել Կամսարականացն. առ որս յղէր հանապազ, թէ «Մի՛ կորնչիք, և արքայից արքայի ի ծառայութենէ մի՛ ելանէք. այլ եկա՛յք նուաճեցարո՛ւք, և զկանայս ձեր առ ձեզ առէք, և իմով միջնորդութեամբ զվնասդ թողուլ տամ արքայից արքայի. զոր ինչ արժանն է՝ շնորհել տամ ձեզ, և զքրիստոնէութիւնդ զոր սիրէքդ, որպէս ցայժմ կալեալ էք հաստատութեամբ՝ ես առաւել յայսմ հետէ կալարուք, և մի՛ երկնչիք. և ես վասն զի սիրեմ զձեզ իբրև զորդիս՝ զաւակաբար խրատ տամ ձեզ, որով կեալ կարէք և ի միջի լինել։ Ապա թէ խորհել կամիք, և կարէք ինչ լաւ սպաս ցուցանել արքայից արքայի, և հնարէք զՎահան սպանանել՝ գտանիցէք ի թագաւորէն պարգևս և պատիւս, զոր ոչ է գտեալ ձեր ուրուք ի նախնեաց ի թագաւորաց. յորում վայելեալ ուրախանայք խաղաղութեամբ, դուք և ձեր որդիքն մինչև յաւիտեան»։

Եւ լուեալ զայսպիսի պատգամս երկոցունց Կամսարականացն ի զօրագլխէն Պարսից Շապհոյ, թէպէտ այլ և այլ պատասխանիս առնէին բանիցն, խաբելով զՇապուհ ի բազում աւուրս, ապա գլուխ հաստատապէս պատգամին Շապհոյ, երկոքեան անշարժ հաստատեալք ի հաւատս, տէրն Շիրակայ Ներսեհ և Հրահատ, զայս յղէին, թէ «Մեր գործ և աշխատութիւն չէ վասն երկրաւոր ինչ վայելից, և ոչ վասն կնոջ և որդւոյ, որ ձեզ ծանր թուի և կարևոր. բայց խորհուրդ է հաւատոյս մերոյ մեծ և պատուական։ Մեզ, առ ահաւոր այնպիսի խորհրդոյն սիրով՝ ամենայն ինչ կենցաղոյս վայելչութիւնք փոքր թուին և ոչինչ, աշխարհ և կին և ստացուածք և մեծութիւն։ Զի եթէ ոչ հաւաստեաւ տեսանէաք, եթէ երկինք և երկիր և ամենայն որ ի նոսա է, չէ համեմատ այնմ պատուականութեան, որում մեք ցանկամք՝ չէաք այնքան անգգայք, թէ ոչ կարէաք խաբել զձեզ, որպէս և այլ հացկատակեանդ որ առ ձեզ են, և առնուլ կապիճ մի մոխիր և տալ ցաղախին մի մեր, որպէս նա զայն կամէր՝ պղծել. և մեք սնոտի փառօք ի ձէնջ առ վայր մի վայելէաք և պայծառք երևէաք, և ապա զյաւիտենից կորուստն կորնչէաք չարաչար։ Այլ վասն կանանցդ մերոց տամք ձեզ նշան ինչ, և ձեր փորձեալ քաջ քննեցէք. զի եթէ արդարև մեք յաղագս հաւատոյն, զոր սիրեմք և ունիմք հաստատապէս, և վասն այնր տենչալի յուսոյն և փառացն կրեմք զայս վիշտս, և հաճոյ է գործս մեր ճշմարտին Աստուծոյ և ընդունելի՝ զմեզ փրկէ ի նեղութենէս, և զկանայսդ մեր պահէ ամենայն սրբութեամբ և տայ ցմեզ. ապա թէ ոչ այդպէս լինի՝ մերում թերահաւատութեան մեղադրեսցուք, և մի՛ ինչ ձերում բռնութեանդ և սաստից»։

1 Զ. ոչ միայն լրոյ
2 Զ. ինք իսկ... որդւոյ
4 Զ. պնդութիւն
4 Զ. վասն որ
6 ԲԳՏ. չիք լսել
9 Զ. զվնասս
11 ԶԱՏ. որպէս և ցայժմ
13 Զ. զաւկաբեր (աւ՚ի վրայ օ)։ Թերեւս զաւգտաբեր։ (Գ. Տ.-Մ.)
23 Զ. Հրատ
26 Զ. խորհրդւոյն

Եւ զայս բանս այսպէս յղեալ երկոցուն Կամսարական եղբարցն առ Հազարաւուխտ՝ ինքեանք ևս առաւել քան զառաջինն, անձամբ և զայլս յորդորելով, փոյթք և պատրաստք էին արքաննեկութեան զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնենի՝ զամենայն գործ, զոր և հրամայէր նոցա։

ՁԱ. Եւ զհետ գնացիցն Հազարաւուխտոյ ի Վիրս՝ Միայր Շապուհ յՈքաղս, և ջանայր կատարել զհրամանն Հազարաւուխտոյ, և որսայր զՄամիկոնեանն Վահան՝ գտանել զնա ի զեղծի և սպանանել. և ոչ ինչ լինէր ձեռնհաս. քանզի ամրութիւն վերնոյն շուրջ զնովաւ պարսպեալ պահէր զնա։ Բայց Մամիկոնեանն Վահան զամենայն օր ոչ տայր դուլ առնուլ զօրօք իւրովք Պարսկաց ի դակչին. այլ զցայգ ամենայն նետաձիգ լինելով ի ներքս՝ էր զոր ինքեանց Հայոց խոցոտեալ նետիւ սպանանէին, և էր զոր ինքեանք Պարսիկքն զինքեանս ի վերայ միմեանց կոտտակելով հեղձամղձուկս առնէին։ Եւ երթեալ զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեանն հանդերձ արամբքն որ ընդ նմա էին՝ բանակէր ի գիւղ մի մերձ, որ էր ընդ իշխանութեամբն Մամիկոնէից, որում անուն էր Ծաղիկ. կամեցեալ անցանել ի կողմն սահմանակցութեանն Հաշտենից, յաղագս գտանելոյ ի նոցանէ օգնութիւն։

Ազդ եղև Շապհոյ զօրավարին Պարսից, եթէ ահաւասիկ Մամիկոնեանն Վահան բանակեալ է ի գիւղ մի, և արք են ընդ նմա թուով յոյժ սակաւք։ Եւ կանխեալ վաղագոյն ընդ առաւօտն զօրագլուխն Պարսից Շապուհ, ամենայն բազմութեամբն որ ընդ նմա՝ յանկարծակի ի վերայ եւանէր զնդին Հայոց։ Եւ գունդն Հայոց իբրև հանապազազգոյշ, վասն ցանգ անծոյլս յօրինելոյ զնոսա զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնենի, լինելով պատրաստք՝ գնային ի տեղւոյն անվնասք. սակայն գունդք զօրացն Պարսից ոչ ինչ փոյթ առնէին այլոցն, զկնի զօրավարին Հայոց Վահանայ անցանէին. քանզի ասէին. «Թէ նմա միայն գտանեմք հնարս՝ ամենայն իրք մեր վճարեալ են և յանգ»։ Եւ զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան երթայր ընդ կողմն արևելից ծովուն Կարնոյ, և գունդք զօրաւորացն Պարսից զկնի նորա երթային անհասութեամբ։ Եւ Մուշեղ ի տոհմէն Մամիկոնէից և Ներսեհ Կամսարական տէրն Շիրակայ, ընդ կողմանն հիւսիսոյ ծովուն, վրիպեալք առ փոյթ ժամուն ի զօրավարէն Հայոց Վահանայ Մամիկոնենէ, սակաւ արամբք երթային խռովեալք. և մերձեալք ի գիւղ մի Կարնոյ, որում անուն էր Արծաթի, և հասեալք ի հեղեղատ մի որ մերձ էր ի գիւղ մի, և կամեցեալք յեզեր հեղեղատին առ վայր մի հանգչել, ուր և հնձողքն արտորայոցն շուրջ *զտեղօքն գործէին։ Եւ իբրև գիտացին Պարսիկքն, թէ ոչ եղեն նոցա հասու՝ կամեցան մշակացն տեղեացն վնասել, թէ «Ընդէ՞ր ընաւ ծառայից արքայից արքայի տայք շրջել յաշխարհի ձերում»։

1 88. երկոցունց
3 2. առքաննեկութեան
4 88. որ և
10 2. ի պարսկաց
10 88. զամենայն
11 2. զորոց ինքեանց հայ-ոց խոցոտել
11 88. չիք 'նետիւ
15 2. այսեղ եւ յետոյ ի գեօղ
23 2. վասն զցանգ
23 2. զօրավարն
27 2. հանգ առանց վերջակետի. բայց յուսանցում նոր գծի նշանով §
30 2. մամիկոնենից
31 2. հիւսիւսոյ
32 2. մամիկոնենի
37 2. տեղացն
38 2. տայք առէ շրջել: Տես ներքեւը, եր. 149, տ. 6

Եւ տեսեալ Խուրսայ, որ էր ի գաւառէն Արշամունեաց, ի գեղջէն Շիրմաց, դայեակորդի տեառնն Շիրակայ Կամսարականին, զոմն ի Պարսից զօրացն, զի կամէր սպանանել զայր մի կարնացի ի մշակացն. և մշակն շուրջ գալով զբարդիւ միով՝ խուսափէր ի սպանողէն. և տեսեալ զայն Խուրսայ դայեակորդւոյն Կամսարականին Ներսեհի, զայրացեալ ընդ սեպհին Մամիկոնէից Մուշեղի և ընդ Կամսարականին Ներսեհի՝ ասէ աներկիւղապէս. «Ո՞չ ապաքէն մահ այլ աշխարհաց առնն, թէ մեռանի ի Պարսկէն՝ ի մէնջ պահանջէ վրէժխնդիրն Աստուած»։ Եւ յարձակեալ նիզակաւ Խուրսն ի վերայ Պարսկին՝ անդէն ի տեղւոջն սատակէր, և զերծուցեալ ապրեցուցանէր զկարնացին ի սպանողէն։ Եւ գրգռեալք ընդ բանսն Խուրսայ սեպուհն Մամիկոնէից Մուշեղ և Կամսարականն տէրն Շիրակայ Ներսեհ, և ընդ գործն հայեցեալ ընդ Խուրսայ, զոր գործեաց քաջաբար, տեսեալ և զհետամուտն զկնի նոցա, թէ չեն կարի բազումք՝ յարձակեցան ի վերայ Պարսկացն սակաւ արամբք որ ընդ նոսա էին, և զօրացեալ օգնականութեամբն Աստուծոյ՝ բազում արեանց ճապաղիս ի տեղւոջն հանէին, և զայլսն փախստականս արարեալ՝ դարձուցանէին ընդ կրունկն ամօթով։ Եւ եղև թիւ մեռելոց ի տեղւոջն եօթանասուն և երկուց արանց։ Եւ լուեալ զայսպիսի յաջողութեան գործ զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնէի՝ետ փառս Աստուծոյ, որ և առանց նորա կորացուցեալ խորտակէր Աստուած զզօրութիւն թշնամւոյն։ Եւ ինքն գնայր ի սահմանս Հաշտենից, ըստ յառաջադրեալ խորհրդոյն իւրոյ, և հասեալ բանակէր ի դաւառին Արշամունեաց, ի գիւղն որ կոչի Երէզ. կամեցեալ հանգչել աւուրս երկուս։

ՁԲ. Եւ զօրավարն Սիւնեաց Գդիհոն փութացուցանէր ստիպով զզօրագլուխն Պարսից գնդին զՇապուհն ասելով, թէ «Առնն Վահանայ Մամիկոնէից փորձ քաջութեանն և դու առեր և ամենայն աշխարհն Արեաց. և ես իրաց և գործոց առնն իմանալ ինչ ես ոչ կարեմ. զի թերևս գունդն ամենայն ի Դունի առ նմա միաբանեալ էր՝ նա մեզ անդէն զիւր քաջութեանն գործ ցուցանէր. բայց աքքայից արքայի թագն և Արեաց փառքն մեզ այնպէս յաջողեցին, զի նորա իրք այնպէս դիպեցան, որպէս տեսաքն, և մեզ բարի վճարումն եղև։ Եւ արդ՝ տեսէք, այդչափ սակաւ արամբք զի՞նչ գործ գործէ այրն, և օր քան զօր նուաճեցուցեալ զգունդս մեր և վատնէ։ Արդ՝ թէ ուստեք ևս այլուստ կարէ գտանել օգնական՝ տեսջիք, զի նա ամօթով զմեզ դարձուցէ և սակաւաւորս. այլ և դառնալոյ իսկ մեզ անդէն անվստահ եմ շատ։ Բայց փութա՛ և մի՛ տար առն հանգիստ առնուլ. դուցէ թէ մեք ծուլանամք, և նա առնիցէ զմեզ աշխատ, և ամաչիցեմք։ Եւ եթէ յիս միայն թողուք զնա՝ ցուցանեմ ձեզ յաւուրս հինգ իմով իսկ գնդաւս, թէ ո՛րպիսի մատնեալ վատի կորուսանեմ զնա և որք ընդ նմայն են»։

1 Զ. արշակունեաց
6 Զ. այսեղ եւ յետոյ Մամիկոնենից
6 ԶԱs. չիք առէ։ ԲԳs. ըր-ագրել են այսպէս: Այստեղ պէտք է ընթեր Զ. ի ուելյուղ առէ՛ն, եր. 148, ծան. 38
7 ՏՏ. չիք առնն
15 Զ. օգնութեամբն
23 ԶԱs. որ կոչի Երէզ
23 ՏՏ. կամեցաւ
29 ՏՏ. իւր
32 ՏՏ. արամբ
36 Զ. ծուլանամք'ի լ'ն յուսանցքում ուղղած վ
37 ԶՏՏ. առնիցէ զմեզ աշխատել ամաչիցեմք

Եւ վասն զի ոչ էին գործք առնն Գդիհոնի մաքուր հոգւոյ արժանի, այլ այսն պիղծ որ էր ի նմա՝ գուշակէր նմին զանձնէ իւրմէ, թէ յետ հինգ աւուր չար մահուամբ սատակելոց ես ի յարանցն, որք են ընդ Մամիկոնենին Վահանայ. քանզի թափուր դտեալ ամենեւիմբ դիւին յԱստուծոյ խնամոցն զայրն՝ այնուհետեւ նման Սաւուղայ ուր կամէր սպանանէր զնա։ Եւ լուեալ զայս ամենայն բանս զօրագլխին Պարսից Շապհոյ՝ ոչ տայր դուլ անձինն և ոչ զօրացն որ ընդ նմայն էին, այլ փութով զհետ առնն երթայր սրտմտեալ, և հասեալ ի տեղիս բանակէր. կարծէր ի տեղիսն ուրեք անյայտս գետառուին թաքչել։

Եւ զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնէի և իւր ևս զօրուն որ ընդ նմա, գտեալ զայն գիշեր հանգստիւ յագեալ քնով, և հաւանեցուցեալ զարսն ի գեղջ Երիզայ. քանզի ամենայն անձն երկիւղիւ և կամաւ լսէր հրամանի նորա, իբրև թագաւորի, որ կարգեալ իցէ յԱստուծոյ ի վերայ երկրի. և ինքն Աստուած ընդ նմա էր յամենայն ի գործ՝ ուր և ուղղէր զկամս իւր։ Եւ առեալ ընդ իւր զարս զօրուն իւրոյ և զշինականսն զԵրիզացիսն՝ գայր հասանէր ի վերայ ղակշին ի գիշերի. և սպարափակ արարեալ Երիզացօքն զտեղի կռուոյն իւրեանց, և ինքեանք ըստ նմանութեան տեղատարափ շառաչման՝ նետաձիգ սաստկութեամբ զգունդս Պարսկացն ահաբեկէին։ Եւ խառնեալ ընդ միմեանս զամբոխն զօրացն որ ի ղակշին էին՝ այլ ևս առաւել ինքեանք զինքեանս Պարսիկք առաթուր հարեալ կոտորէին. և լինէր ձայն լալոյ և ձայն գուժի ի բանակէ անօրինացն։ Բայց ի Հայոց գնդէն Գարագ միայն, սեպուհն Գաբեղեան, կամաւորութեամբ կռուեալ և մեծ արութիւն ցուցեալ՝ խոցեցաւ. յորոյ վիրաց և կատարելութեան պսակի յետ սակաւ ինչ աւուրց արժանի եղև ընդունել յԱստուծոյ։

ՁԳ. Եւ զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան դարձեալ ի կոտորածէ թշնամեացն՝ երթեալ հանգչէր զմնացեալ մասն ի գիշերոյն յՈղին գեղջն, զոր Շտեայ անուանեն, ի գոմս տեգեացն, մինչև յառաւօտուն ծագել. և ի ծագել լուսոյն՝ երթեալ բանակէր ի գիւղն Շտէոյ։ Եւ մինչ կամեցեալ հանգչել առ վայր մի զօրացն Հայոց Վահանայ Մամիկոնէի ի ծանրութենէ գիշերոյն աշխատութեանց՝ զաչս ի վեր առեալ տեսանէին, և ահա հասեալ կայր ի վերայ նոցա զօրագլուխն Պարսից Շապուհ. զայրագնեալ սրտիւ մոմռայր իբրև զգազան։ Վասն զի առաւել քան զամենայն աւուրց՝ այն գիշերոյն վնասք չարութեան առաւել թուէր նմա և կարեւոր. որ եղեն իսկ արդարև այնպէս, այլ ոչ ինչ նման առաջինկայ մեծ բեկմանն, զոր առժամայն էր տեսանելոց և ի սպառ բեկանելոց։ Եւ տեսեալ զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնէի զյանկարծահաս դիմեցմունս զօրագլխին Պարսկաց Շապհոյ ամենայն բազմութեամբ զօրուն ի վերայ նոցա, թէպէտ և անպատրաստ տեսանէր զիւր գունդն ի ժամուն և կամ ի նուազս, ըստ սաստկութեան թշնամեաց զօրուն՝

8 ԲԳՑ. ունին ծանօթ. «Թուի պակաս անուն ցեղոյն»
9 Զ. գետառ
11 Զ. յագել
12 Թերեւս ի գեղջէ Երիզայ
13 ՑՑ. զհրաման
13 Զ. զոր կարգեալ
16 ԶԸՑ. ղակիշին
27 Զ. այսեղ եւ յեսոյ գեշերոյն
29 ՑՑ. բնակէր
36 Զ. բեկանելոյ
40 ԲԳՑ. առ սաստկութեամբ

սակայն զանգիտէր և բնաւ իսկ ոչ. այլ հրաման տուեալ՝ փութանակի կազմէր որքան իսկ էին. ի ձայն բարձր գոչէր առիւծաբար, ասելով, թէ «Մարդոյ հաւատացելոյ միում յերկուց վրիպել անհնար է, և դիպմունք երկոքեան մեծարգոյ են և պատուական. այլ սակայն մինն յերկոսեան առաւել ես մեծ ի վեր է և բաղձալի քան զմիւսն. և ոչ անյօժարք և անխորհուրդ դիպմունք, որում և պատահեմք յերկոցունց. և որ ցանկացայք կեալ ժուժկալութեամբ և մեռանել յուսով, այլ կեալն և մեռանելն մասն է պարծանաց. և մեռանել ի վերայ ուխտի սրբոյ՝ վիճակ է մարտիրոսութեան։ Արդ՝ յաղթութեան մասամբն բազում անգամ պայծառացոյց զմեզ Աստուած, և գոհ եմք. իսկ որ առաւել մեծն է և քան զամենայն ի վեր՝ զայն ևս պարգեւեալ շնորհեսցէ մեզ հզօրն և պսակեսցէ։ Բայց և այժմ մի՛ զանգիտեալ ոք զարհուրեսցի թերահաւատութեամբ. վասն զի սուրբ Հոգին որ ասաց, թէ «Զորս տէր Աստուած հարկանէ և ի ձեռս իւրոց սիրելեացն ցուցանէ՝ մին զհազարս հալածէ, և երկուս զբիւրս շարժէ», արդ՝ և մեք Աստուծոյ, և Աստուած հայի ի մեզ օգնել։ Եմք մեք թուով սակաւ, բազում հարիւր առաւել, թէ ես յոլովք և կամ նուազք. և եթէ խոստմունս ասացելոցն կատարել ի մեզ կամի հզօրն՝ ապա նոցա յերեք հարիւր հազարս զօրուցն շատ մարդկան բազմութիւնք պիտին. քանզի ոչ գոյ ի նոսա, ըստ կշռելոյ ական, աւելի քան զչորս հազար արանց։ Բայց մեք Աստուծով պարծեսցուք զօրհանապազ, և անուան նորա խոստովան եղիցուք յաւիտեան»։

Եւ ասացեալ զայս ամենայն բանս զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնենի, բաժանեալ որքան իսկ էին արք զօրուն ընդ նմա՝ տայ իւրաքանչիւր զօրագլխացն, զորոց կարծէր եթէ ի դէպ է և պատշաճս։ Եւ մինչ դեռ ևս նա կազմէր յարձակմանն, և զօրքն Պարսից ճակատեալք կարգմամբ գային սաստկապէս ի պատերազմ՝ հայեցեալ տեսանէ, զի գունդն ամենայն Հայոց, դարձուցեալ զերեսս յուխտէն երդմանն Աւետարանին և ի խրատուէ զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնէի՝ երթային փախստեայք ամենեքեան։ Եւ մնաց ինքն և յուխտապահացն Մուշեղ ի տոհմէն Մամիկոնէից և երեքեան Կամսարականքն, որդիք երանելւոյն Արշաւրայ, ինքեանց երկուք կամ երեք դայեկօք, և այլ թուով արք, որք ի յազատաց և որ իւր իսկ ի Մամիկոնէից տանէն,

2 ՏՏ. ձայն բարձեալ: Ձ. ի ձայն բարձեալ
3 Ձ. որում յերկուց: Թերեւս ուղղելի մարդոյ հաւատացելոյ որումն (ուրումն)
3 ԲԳՏ. ունին ձեռօր. «Պակաս թուի»
5 Ձ. ես մեծ ի վերէ
12 Ձ. զանգիտել
15 Բ. Օր. ԼԲ, 30
17 ԲԳՏ. ունին ձեռօր. «Չըրփոր եւ պակաս երեւի ի բանդ»: Թուի ուղղելի. «սակաւ, գ. հարիւր առ. աւել, թէ ես (կամ թերեւս) յոլովք և կամ նուազք. և եթէ զխոստմունս» ևն. այսինքն՝ մենք քչուոր ենք, առ առաւելն երեք հարիւր մարդ. կամ զուգե՞ք աւելի կամ պակաս. եւ եթէ Աստուած կամենայ իւր խոստմունքը կատարել (այսինքն՝ որ մեզանից մէկը բշնամիներից հազարին հալածէ)՝ ապա բշնամիներին շատ բազմութիւն է պակասում, որ երեք հարիւր հազար դառնան (մեր երեք հարիւրին դէմ)
20 Ձ. չորս հազարի՛ց յետոյ դնում է ա
21 Սաղմ. ԽԳ. 9
22 Ձ. յուսանցում նոր գիրի նշան §
22 ԱՏ. չիք Վահանայ
23 ԲԳՏ. Մամիկոնէի
25 ՏՏ. մինչ դեռ նա
32 Ձ. Մամիկոնենից

ընդ ընաւ որպէս թէ քառասնիւք կամ նուազիւք ես։ Որոց ես տեսեալ զփախուստն ամենայն գնդին Հայոց առհասարակ և զարհուրեալք՝ ասէր ումն ցզօրավարն Հայոց ցՎահան Մամիկոնեան, թէ «Յուշ, տէր, յուշ». այսինքն թէ հնար ինչ է ի ժամուս տեղի տալ և անձին զգուշանալ։ Եւ զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնէի տեառնագրեալ զինքն՝ բարձր ձայնիւ ասէր, թէ «Յիս արդ ոք յուշ մի ասէք. զի ինձ յուսալ ի մարդ և կամ պարծիլ մարդով՝ քաւ լիցի, բայց միայն ի խաչն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի»։

Եւ քաջաբար ի մէջ ամենայն զօրացն Պարսից յարձակէր հանդերձ լաւ ուխտապահ արամբքն սակաւուք, որ միայն առ նմա։ Եւ ապշեալ ընդ անհաւոր աներկիւղ ուժին զօրավարին Հայոց Վահանայ և ընդ այլ սակաւ այնքան արանցն որ ընդ նմա, զօրագլխին Պարսից Շապհոյ՝ ճեպով ցիշխանն Սիւնեաց առ Գդիհոն յղէր, ասէ. «Ձեռն տուր յիս կողմն, վասն զի իրս անպատումն իմն և նորոգս ցուցաւ. զի թէ արդարև զօրութիւն իմն աներևոյթ այլ է, որ օգնէ նոցա և մեզ չերևի՝ զայն ես ոչ գիտեմ. բայց եթէ անմտութեամբ ցանկան անձնամահք լինել՝ ապա ի մէջ արարեալ զամենեսեան զնոսա այսօր ձերբակալս առնեմք»։ Եւ իշխանն Սիւնեաց Գդիհոնն խնդալից եղեալ ընդ կոչն Շապհոյ՝ նշկահելով փութանակի ի տեղին արշաւէր։ Եւ զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան, հանդերձ ընդ իւր միասիրտ սակաւ արամբք, օգնութեամբ աջոյ հզօրին յարձակեալ՝ հերձանէր զբովանդակ գունդն Պարսից, որպէս յորդահոսանք բազմութիւնք ջրոց, որ հեղեղատեն զերկիր և անցանեն։ Եւ ինքն հզօրաբար քաջ ուխտակցօքն նման առիւծու ընդ մէջ ամենեցուն յայնկոյս ելանէր. և սպանեալ իւր և արանցն որ ընդ նմա բազում արս հզօրս պատերազմողս ի զօրացն Պարսից՝ հարեալ խոցէին նիզակաւ ընդ անութ կարէվէր և զհպարտ իշխանն Սիւնեաց զԳդիհոն, և զահաւորալուր ամրութիւնն զինուն, յոր պանծացեալ յուսայր անօրէնն՝ ցելեալ վեր ի վայր թափ ընդ լեարդն զնիզակատէգն հասուցանէին։ Որոյ դառնակոծոչ չարալլուկ հեծմամբ յաւուրս սակաւս վճարեալ զոգին՝ սատակէր անխոստովան. որ պարծէրն ամբարտաւանութեամբ և ասէր, թէ «Ես ընդ Վահանայ և ընդ այլ Հայերդ ոչ եթէ նետիւ կռուիմ, այլ գդգըկով պուղեալ զբոլորս ցնդեմ, ծն և անդր ցիր և ցան արկից ձորոյդ և դաշտացդ»։ Եւ եղև բան հպարտութեան նորա բեկումն նմին. զոր մատնեալ Աստուծոյ ի ձեռս արանց զօրուն Վահանայ Մամիկոնէի մի անգամ և երկիցս զիշխանն Սիւնեաց զԳդիհոն,

1 ՁԱs. ընդ ընաւորապէս
1 Ձ. որոց տեսեալ
3 ՑՑ. Վահան
4 Աs. ի ժամուս
6 ԲԳs. յիս
11 ՑՑ. աներկիւղած։ Ձ. նախ աներկիւղած, ապա ած՝ը ջնջուած
12 ՁՑՑ. որ ընդ նմա, զհետ զօրագլխին
14 ՑՑ. չիք և
16 Գs. անձնամահ
22 Աs. բազմութիւն։ ԲԳs. բազմութեան։ Այսպ. բաց Ձ. — Թուի յորդահոսան բազմութիւնք
22 Ձ. նախ հեղեղատեցեն, ապա եց՝ը ջնջուած
23 ՑՑ. առիւծոյ
29 Աs. դառնակոծոչ
30 Ձ. վճարեալ՝ի ճ՝ն վերևից աւելացրած
30 ՑՑ. անբարտաւանութեամբ
31 ՑՑ. և այլ Հայերդ
32 ՑՑ. պողեալ։ Ձ. նախ պողեալ, ապա ու՝ վերևից աւելացրած
32 Ձ. աղաւաղութեամբ զբոլորսյն զեմուն և անդր
33 Ձ. ձորոյտ

և դարձեալ երկայնամտեալ ի նա Աստուծոյ իբրև զմարդասէր՝ ներէր խնայելով, զի Թերևս զղջացեալ պտղէ ժամ դարձի և ապաշխարութեան, և կեցցէ։ Եւ իբրև ոչ զգաստացաւ, այլ ընաւ ամենևիմբ արհամարհեաց զճշմարտութիւն և եղեալ անպատասխանի յաստուածային հարցմանն՝ ընկալաւ զստատկումն ամօԹոյ իւրոյ զաստիս և զհանդերձելոյն։ Եւ զօրքն Պարսից զկնի փախստէիցն Հայոց անցեալ երԹայմն, յորոց և արս բազումս սպանին ի Թուլացեալ մեղկացելոյն։

Բայց զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնենի հանդերձ իւրովք գործակցօքն զգործ քաջութեանն վճարեալ Աստուծոյ զօրութեամբն՝ երԹայր այնուհետև յանհոգս, որպէս Թևակից զօրուն Պարսից. և գունդք ամենայն զօրացն Շապհոյ և հայել ի նոսա լոկ ոչ իշխէին։ Քանզի այնպէս արկեալ էր Աստուծոյ զահ և զերկիւղ զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնէի ի վերայ զօրացն Պարսից, զի կարծէին, Թէ ի հայեցուածէ լոկ առն Մամիկոնենի և յարանցն որ ընդ նմայն էին՝ չզերծանիցին առանց վտանգի։ Բայց ուխտապահ զօրացելոց արանցն, որք ընդ զօրավարին Հայոց Վահանայ յարձակեալք նահատակեցան ի ժամուն՝ երանելին Քոնթ Առաւենեան, և երանելին Ներս Յովսեփեան, և երանելին Ատղէն ռեպուհն Վանանդացի, և երանելին Ղերպարգոս որ էր ազգաւ յոյն։

ՁԴ. Իսկ Սիւնեաց զօրուն Թափեալ զփոքրոտի իշխանին իւրեանց յերկիր, վասն կարի զազրապէս հոտելոյն, և պատեալ եղեգամբ՝ առեալ գնացին ազգականք իւր և ծառայք յաշխարհն Սիւնեաց։ Եւ զայն տեսեալ Սիւնեաց այրուձիոյն բովանդակի, քամակակոտոր խորտակմամբ ցրուեալք և քայքայեալք՝ ընդ այլ և այլ ճանապարհս գնացին յիւրաքանչիւր տեղիս։

Եւ Շապուհ պարսիկ գնդին զօրագլուխն իբրև տեսանէր զքակտումն Սիւնի գնդին և զահաւոր զօրութիւն հակառակորդին Վահանայ Մամիկոնենի՝ զմտաւ ածեալ յիշէր զանընդդիմակայ զօրութիւնն, սրտմտեալ զարհուրէր, և Թէ զի՞նչ առնիցէ՝ չիմանայր. զի ասէր. «Թէ ի կենդանութեանն այնպիսւոյ առն, որպէս Գդիհոն էր, և այրընտիր գնդաւ յաղԹեալ զտաւ նա և որ ընդ նմայն էին, յաւելուածով և այսոցիկ ևս որ աստ են առ իս, և համարեալ առ ոչինչ Վահանայ, երեսուն միայն արամբք ի վերայ երից և չորից հազարաց յարձակեալ՝ խորտակեաց զամենեցունց զմիրտս, և պատառեալ վեր և ի վայր զայնչափ զօրաց բազմութիւն՝ զայնպիսի մեծամեծ գործեաց վնասս. իսկ այժմ ո՞րպիսի վստահութեամբ կարասցուք զայնպիսի քաջորերոյ ունել դդէմ սակաւացեալքս։ Այլ և զայս զմտաւ ածեալ երկնչիմ, մի՛ գուցէ ըստ բազմահնար իւրոյ իմաստութեանն, առաքեալ ի մերձակայ սահմանակից տեղեացս

2 Զ. խնաելով
3 88. արհամարհեալ
4 Զ. ի յաստուածային
5 Ա8. չիք և։ 88. զհանդերձելոյ
7 ԶԱ8. ի Թուլացեալ
8 Զ. Մամիկոնէի
8 88. իւրօք
10 88. անհոգս
12 Զ. չիք էր
12 ԶԱ8. չիք Վահանայ
13 Զ. նախ ի հայեցածէ, ապա վերևից աւելագրած ու
16 Գ8. ի ժամուն, Քոնթ Առաւենեան
22 Պակ բաց Զ. գնային
23 Զ. նախ քամակակոր, ապա վերևից յաւգրած այսպ.
25 88. զքակումն
26 Գ8. Մամիկոնէի
27 88. սրտմտեալ զարհուրէր. եԹէ
29 88. այնպիսի
34 88. մեծամեծս

առ հայ մարդիկդ գաւառին Անձատայ և կամ Ծոփաց և Հաշտենից, և առեալ ի նոցանէ օգնականս, որպէս յիւրոց ազգականաց՝ չկարիցեմք և զապրուստ անձանց, որ մնացեալքս եմք՝ գտանել այնուհետև։ Այլ եկայք փութացուք երթալ յոստանին Հայոց ի տեղիս, և ճեպաւ դեսպանօք զգացուսցուք արքայից արքայի։ Վասն զի և նորա, թէ աստուածոց օգնութեամբն վճարեալ է զիւր գործն՝ ժամ է յոստանն դառնալոյ։ Եւ այնուհետև թէ բուռն գնդաւ, և կամ իւր իսկ գլխով՝ նա իշխէ որպէս և գտանէ առնել զլուխ Հայոց գործոյս։ Այլ ես զեռանդի դործոյն տեսչութիւնն իբրև զմտաւ ածեալ յիշեմ՝ ոչ զօրեմ բնաւ խորհել ինչ և կամ իմանալ. զի թէպէտ և ոչ ինչ աւագ եմ ժամանակաւ, սակայն և ոչ երբէք յԱրեաց լուայ ի զօրագլխաց, և կամ ես այժմու ժամանակաւս և կամ յանցեալ դարս նախ ի պատերազմողաց, եթէ տասն արամբ ոք ի վերայ երից հազարաց այրընտիր արանց յարձակեալ և զայնպիսի գործեալ գործ՝ գնաց ինքն զերծեալ անվնաս»։

ՁԵ. Եւ զայս ամենայն զմտաւ ածեալ այսպէս Շապհոյ՝ չուէր վաղվաղակի ի գաւառն Բասենոյ, և եկեալ ի գիւղն, զոր Ալուարն կոչեն։ Եւ մինչդեռ տարակուսեալ տանջէին խորհուրդք գնա յերկիւղէ զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնենի՝ եկեալ հասանէր յանկարծակի դեսպան ի Պարսից, ունելով գոյժ չարաչար և նամականի բազում անողջոյն, զոր գրէր առ Շապուհ ի Պարսից աւագորերոյ, և յայլ իւրաքանչիւր ազգականաց և սիրելեաց, որք յանթիւ սաստիկ կոտորածէ Հեփթաղին զերծեալք էին։ Եւ ընկալեալ Շապհոյ զնամականին, և հասեալ ի վերայ ծանր և կարևոր չարեաց, և զայնպիսի ահաւոր զրեկումն զաշխարհին Արեաց ծանուցեալ ի գրելոցն՝ ի մեծ տրտմութիւն ապշութեան ընկղմեալ զարհուրէր։ Եւ կացեալ ժամանակս ինչ անխօսս, իբրև թալկացեալ՝ ոչ ինչ բան կարէր հարցանել զայրն թղթաբեր, և ոչ անձին զգալ։ Եւ զգացեալ յետ բազում ժամուց, որպէս յապշութենէ և ի թմրութեանց, և կոչեցեալ զայրն՝ առանձինն հարցանէր, թէ ո՞րպէս և կամ զի՞արդ սպառսպուռ եհաս այնպիսի վախճան և կործանումն Արեաց աշխարհին. և կամ ո՞ կարացեալ զերծանել երեր զհամբաւ կոտորածին զայնչափ անթիւ բազմութեան զօրացն բովանդակի, և կամ թէ զի՞արդ արդեօք մեռաւ աստուածանման տէրն Պերոզ, և կամ ո՞րպիսի մահու։

Եւ դեսպանին պատասխանի արարեալ ասէր, թէ «Քո հարցանելդ պատշաճ և ի դէպ է, որպէս ամենայն մարդ, որ կամի լսել ի պատգամաւորացն վիրս պիտոյիցն և զանցեկութիւնն. բայց ինձ կարի ծանր է խօսել զվատ բանս, և տալ զրոյց զայնպիսի չար աղէտից ի զերծելոց փախստէիցն. և մանաւանդ որում ոք այնչափ վնասուց և բեկման չէ պատճառ՝ բայց ինքն աստուածանման տէրն Արեաց Պերոզ. և իբրև

1 Աշ. մարդիկք: ԲԳՇ. մարդիկ
1 ՏՏ. չիք կամ
2 Զ. յիւրոց'ի փոխանակ յիւրոց (պաշտօնով): Թերևս՝ յիւրայնոց
16 ՏՏ. Ալվարն
17 Զ. զօրավարէն Հայոց *Վահանայ
18 ԶԱշ. և եկեալ հասանէր
19 Աշ. գում
20 ՏՏ. և հայիւրաքանչիւր
26 ՏՏ. անխօս
27 Զ. զգալ և զգացեալ
28 Զ. առանձինն զայրն
31 ՏՏ. և երեր
31 Գշ. կոտորածից
38 ՏՏ. յորում

ոչինչ առն ծառայի զաստուածոց ասել վատ ինչ՝ մահ է և կորուստ։ Բայց վասն զի ի ժամուս յաստուածոցն ցասմանէ վատ պատահումն եղև տէառնն Արեաց և բնաւի աշխարհին, և պատճառ ոչ ոք եղև այլ, բայց ինքն տէրն իւրում անձինն և Արեաց՝ ասել զոխակալն և զըլւեալն հարկ է, և չվճարի առանց ասելոյ։ Նախ մինչդեռ այդրէն իսկ էր ի Վրկանի Պերոզ, և զօրաժողով արարեալ յամենայն կողմանց, կամէր խաղալ ի վերայ Հեփթաղին, խորհեալ առանձին միայն, և ոչ զոք հարցանէր ի մարդկանէ զարժանն և զանարժանն. բայց զայս ևեթ գիտէր ամենայն գնդին մարդ, եթէ ընդ Հեփթաղին կամի կռուել։ Լքեալ և սրտաբեկեալ ամենայն մարդ՝ տեսանել լոկ սիրով չկարէր զայրն Հեփթաղ և կամ զանունն լոկ լսել, թող թէ կռուով ընդդէմ Հեփթաղի երթալ և կամ յայտնի ելանել, յիշելով զահ և զպաշարումն, զոր անցին ընդ տէրն Արեաց և ընդ Պարսիկս։ Եւ յայտնի ազաղակէր ամենայն բերան. «Եթէ մահապարտ եմք, և արքայից արքայ զմեզ սպանանել կամի՝ ինքն իսկ աստէն սուր ի վերայ եդեալ հրամայեսցէ սպանանել, քան եթէ սրով Հեփթաղին տայ կորուսանել զԱրիս, որ գործ մինչև ցյաւիտեանս զանձն և զԱրեաց աշխարհ վատանուն առնէ»։ Զայսն բանս և ամենայն աւագանի դրանն խօսէին առ միմեանս հանապազ, և մանաւանդ սպարապետն Արեաց առաւել Վահրամ. զոր և համարձակապէս յականջս Պերոզի բազում անգամ հասուցեալ՝ և հրապարակաւ բողոքէր. և նա ոչ լսէր ումեք, և ոչ զգայր և ոչ յիշէր բնաւ զառաջին թշնամանս խայտառականաց իւրոց, զոր եգիտ անձամբ և ամենայն Արեօք ի Հեփթաղէն։ Դիմեալ ի վերայ այնչափ բազմութեամբ Արեօք և անարեօք՝ գնաց. որք իբրև զմահապարտ ի մահ, և ոչ իբրև զպատերազմողս ի կռուել երթային։ Տային զրոյց ապրեալքն անտի և զայս ևս, թէ յորժամ մօտն հասաք անդր՝ առաքեաց առ Պերոզ Հեփթաղն, թէ «Քո ընդ իս ուխտ է երդմամբ, գրով և կնքով, թէ չկռուիմ ընդ քեզ. և սահմանս կարգեցաք, զորովք չիշխեսցուք թշնամութեամբ անցանել առ միմեանս. արդ՝ յիշեա զուխտն և զնեզութեան պաշարումն, յորմանէ ողորմեալ իմ արձակեցի զքեզ, և ոչ սպանի, և ի բաց դարձիր խաղաղութեամբ, և մի՛ մեռանիր. ապա թէ ոչ լսես բանից իմոց՝ գիտա՛, զի կորուսանեմ զքեզ և զամենայն զանպիտան բազմութիւնդ, յոր դու յուսացեալ ես։ Քանզի ես և արդարութիւն ուխտապահութեան ի միասին կռուիմք, և դու և ուխտազանցութեանն ստութիւն ի միասին էք. և արդ՝ դու ինձ զիա՞րդ կարես յաղթել»։ Եւ լուեալ Արեաց զբանսն Հեփթաղին՝ ասէին ցՊերոզ, թէ «Նա արդար է, և մեք սուտ կռուիմք»։ Եւ Պերոզի սաստկապէս զայրացեալ Արեաց աւագանւոյն՝ պատասխանի արար հպարտութեամբ Հեփթաղին և ասէ, թէ «Զայս բազմութիւն գնդին, զոր դուք

3 Ձ. պատճառի
4 ԲԳՑ. գլուխալն
6 ԲԳՑ. յամենայն կողմանս
7 Ձ. խորհել
8 Աց. զայս ևեթ գիտէր
12 Թերեւս ուղղելի զոր անցուցին
16 Ձ. յուսանցքում ունի «Հեփթաղի» մասին ծանօթութիւն «Թուրքի է բառս»
16 Ձ. կորուսել
18 ՁԱց. ուագ. ի դրանն
19 ԲԳՑ. չիք առաւել
21 ԲԳՑ. և ոչ գայր
29 Ձ. յիշեայ
31 ՑՑ. արդ գիտես: Ձ. գիտես, և՛ի վրայ ջնջման նշանով
33 Ձ. քանզի և ես արդարութիւն
33 Աց. կռուեմք
38 Ձ. դու

տեսանէք՝ կիսովս ընդ ձեզ կռուիմ և կորուսանեմ, և կիսովս զհող տեղեացդ, ուր դու լինիս՝ կրել տամ, ո՛ր ի ծովն և որ ի փոսն, զոր հատին՝ լնուլ»։ Եւ առ անզգայութեան սրտին ոչ իմանայր, թէ դիակամբ ծառայից իւրոց լնլոց է զփոսն, զոր փորեաց ի կորուստ անձին իւրոյ և ամենայն Արեաց աշխարհին։ Եւ հասեալք առ միմեանս և հարեալք ի դիմի՝ կորեաւ ինքն ամենայն որդւովք իւրովք և աշխարհաւ։ Եւ զեր֊ ծեալք ի կործանմանէն արք սակաւ, և հասեալք ի Վրկան՝ պատմեցին ամենեցուն զամենայն անցս չարեացս այսոցիկ, և զամենայն արս աւագս և զայլ մարդիկն որ ի Վրկանին էին՝ փախուցին յԱսորեստան։ Դեսպան արարին ի Վիրս առ Հազարաւուխտ, և զիս այսր առ ձեզ արձակեցին, փութալ ժողովել զձեզ առ միմեանս, և գտանել զհնարս, որով լինիցին ի միջի և՛ ձեր անձինք և Արեաց աշխարհն»։

ՁԶ. Եւ լուեալ զայս ամենայն բանս Շապհոյ ի դեսպանէն՝ պատասխանի տուեալ ասաց, թէ «Իմ և զգունդս զոր այժմ դու ընդ իս տեսանես, թէպէտ և այդ լուր չարեաց չէր հասեալ, խնդրէաք պատճառս զերծանելոյ ի գործոյս յորում եմք։ Վասն զի այնպէս զարհուրեցուցեալ ապշեցոյց և վատնեզեալ աշխատեաց զմեզ ապստամբն Վահան, որոյ իւր իրք և արարածք՝ չեն որպէս զայսր ժամանակի մարդկան, զոր մեր տեսեալ և գիտեմք, այլ իբրև զառաջին քաջացն, զոր ի վէպսն պատմեն և լսեմք։ Բանզի թո՛ղ զայլ ժամանակաց զնորա և զարանցն որ ընդ նմա են յիշել զգործս և զաներկիւղութիւն, զոր իմ և կամ այլ աւագ֊ օրերոյ որ տեսեալ է, այլ յառաջ քան զաւուրս տասն՝ թուով երեսուն արամբ ոչ միայն ի վերայ այսր բազմութեան, որ այժմ աստ են և տեսանես, յարձակեալ կռուեցաւ, այլ աւելի ևս գնդաւ իշխանն Սիւնեաց Գդիհոնն իւր գաւառին այրընտիր ձիով աստ էր. և Վահան դէմ յան֊ դիման այն երեսուն արամբ յարձակեալ ի վերայ, և նման արծուոյ, յորում ժամու ի կաքաւուց երամ սլանայցէ, իցէ զոր սպանանիցէ և զայլ զամենեսեան ընդ ծերպս և ընդ սորս վիմաց տեղեաց ցրուիցէ՝ ըստ նմին օրինակի այսր անդր զայնչափ բազմութիւն զօրացն արկեալ վեր ի վայր ցրուեցին. սպանին և զսկայանման զայրն զԳդիհոնն, և այլ բազումս կոտորեալ ի գնդէն՝ զնային ինքեանք անվնասք, չերկուցեալք բնաւ յումեքէ։ Եւ արդ՝ ո՞չ անճանաչող և արհամարհոտ հպարտութեան Պերոզի համեալ զայնպիսի որեար և զայսպիսի մեծ և զօգտակար զաշխարհ յԱրեաց ի ծառայութենէ. զոր թէ այժմ զայնպիսի զայր, որպէս և յառաջագոյն զՎահանն գիտէի և այժմ քաջագոյն ևս դիտացի, և զնորուն զընկերսն որ առ նմա են, և մանաւանդ զերիս եղբարսն որ ի Կամսարականն տոհմէն են, և հնարէի նուաճել և մեր առնել՝ որպէս մեծ մասն մխիթարութեան համարէի հասելոյ ծանր բեկմանն ի վերայ Արեաց աշխարհին»։

Եւ խօսեցեալ զայս Միհրանեանն Շապհոյ և դեսպանին ընդ միմեանս՝ հրաման տային զօրուն, և ըստ կարի օր ըստ օրէ չուոցն

2 ԲԴՑ. ո՛ր ի ծովն ո՛ր ի փոսն
4 ՁԱՑ. ընելոց է
5 ՁԱՑ. և հեծեալք առ
7 Ձ. ի Վիկան
21 Ձ. աւագաւրերոյ
26 ԲԴՑ. արծուոյ
30 Ձ. ցրեցին
34 ՑՑ. զայնպիսի այր
35 ՑՑ. չիք զՎահանն
35 Ձ. գիտէին

ճեպեալք՝ հասանէին յաշխարհն Պարսից։ Բայց զկանայս Կամսարականացն թողեալ Շապհոյ անդէն ի Բողբերդի՝ յանձն առնէր բերդակալին, ստէպ պատուիրելով՝ բազում զգուշութեամբ պահել և առաւելապէս սրբութեամբ, ըստ օրինի քրիստոնէից կարգի։ Եւ զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնենի լուեալ զայս ամենայն բանս և զհամբաւս՝ յԱստուծոյ այցելութիւն ընկենոյր և՛ զիւրս համբաւոյն և զիւր զաշխարհիս Հայոց զպէտս և զհոգողութիւն, որ գիտէն զիւրաքանչիւր ուրուք զպատուհաս և զօգուտ, և մատակարարէ ողորմութեամբ իւրով ըստ ողջախոհութեան խնդրողացն։ Եւ եկեալ հասանէր այնուհետև ի Վաղարշապատ քաղաք հանդերձ ողջախորհուրդ և աննենգ ուխտապահ նախարարօքն Հայոց. կատարէր զսովորական ուխտս և զպատարագս ի սուրբ եկեղեցւոջն կաթողիկէի, զոր հիմնարկեալ նորոգեաց մեծապայծառ շքեղութեամբ զհնացեալ գործ նախնեացն իւրոց, քաջ զօրավարն Հայոց Մամիկոնեանն Վահան։ Եւ ի տեղիս վկայարանացն նախ հատուցանելով զաղքատացն զպէտս՝ և ապա ինքեանք ուրախացեալք զուարճանային խնդութեամբ։ Եւ անտի չուեալ՝ յոստանն ի Դուին մտանէին, և դադարեալ անդ աւուրս՝ սպասէին և ակն ունէին հրամանի առաջնորդութեանն Քրիստոսի։

ՁԷ. Եւ լուեալ Հազարաւուխտոյ յաշխարհին Վրաց զսպանումն Պերոզի և զանթիւ կոտորած բազմութեանն Պարսից՝ զարհուրեալ տարակուսէր յանձն իւր, գնալ վաղվաղակի երթալ հասանել յերկիրն Պարսից։ Եւ հասեալ ի դուռն՝ ժողովէին առ նմա մնացորդք Արեաց աւագանւոյն, ուրումն որդի և այլոյ եղբայր, ըստ գիւտից ապրելոց ի ժամուն։ Խորհուրդ ի մէջ առեալ, թէ զո՞ արժանի թագաւորութեան նմանեցուցանել կարասցեն. և խորհեալ զայս ի բազում աւուրս՝ հաստատէին միաբանութեամբ զիրսն ի վերայ Վաղարշու, որ էր եղբայր թագաւորին Պերոզի, որպէս ի վերայ առն բարերարի և հեզոյ։ Եւ ժողովեալք ամենեքեան առ Վաղարշ՝ սկսանէր խօսել Հազարաւուխտ և յայտնել նմա զխորհեալսն ամենեցուն, յիշեցուցանելով նմա զանձնահաճութիւն և կամակորութիւն զթագաւորին Պերոզի։ «Որ բռնութեամբ միայն, ասէր, ըստ կամի, և թէ բնաւ համարելով ինչ զոք և կամ խորհելով ընդ ումեք առնէր՝ զոր ինչ և կամէր առնէր, և բռնաւոր կամաւորութեամբ գործէր զինչ և կամէր։ Որոց ելք անհարց զոք նորա իմաստիցն՝ ոչ միայն նորա անձինն, այլ ընդհանուր աշխարհիս Արեաց բերին զկործանումն և զբեկումն։ Եւ արդ՝ կամաւ յօժարեալ ամենեքեան մեք ընտրեցաք զքեզ, որպէս զայր քաղցր և աշխարհաշէն, կանգնել քև և հաստատել զգահ թագաւորութեան աշխարհիս Արեաց, ունել քև շէն զմասն մնացեալ Արեաց աշխարհիս, և զայլ ևս աշխարհս, որ ընդ թագաւորութեամբս այսուիկ հնազանդեալ են. քաղցրաբանութեամբ և սիրով ածել ի հաւան զազգս, որ ընդդէմ

14 Զ. վահան մամիկոնեանն
19 Զ. ունի վերնագիր մահըն պերոզի պղծոյ
22 ԶՑ. ժողովքին
23 Զ. որումն
27 ՑՑ. ժողովեալք (առանց և՛ի)։ Զ. միայն և
28 ԲԳՑ. բաց են թողել զխորհեալսն ամենեցուն, յիշեցուցանելով նմա
29 Զ. կամակարութիւն
30 Զ. ասեն
34 Զ. ընթհանուր
35 Զ. կամաւք
38 Զ. թագաւորութեանս
39 Զ. քաղցրանութեամբ

և ապստամբ. ճանաչել զիւրաքանչիւր ոք յԱրեաց և յանարեաց ըստ իւրում արժանաւորութեան. գիտել ընտրել զպիտանին և զանպիտանն. խորհել ընդ իմաստունս, սիրել զընկերասէրս, ատել և կորուսանել զնախանձոտս և զբանսարկուս. հայել յամենեսեան, ճանաչել զբարեգործս, հատուցանել վաստակաւորաց զարժանի հատուցումն վաստակոց իւրեանց»։ Զայս ամենայն և զսոցին նման խրատս խօսեցեալ ընդ նմա և եդեալ վկայութիւնս՝ բազմեցուցանէին զնա ի գահու թագաւորութեանն Պարսից։

ՁԸ. Խորհուրդ ի մէջ առեալ այնուհետև Հազարաւուխտոյ միաբանութեամբ աւագանւոյն յերկրորդումն աւուր թագաւորութեանն Վաղարշու՝ խօսէր առաջի թագաւորին Վաղարշու և ասէր. «Պերոզ արքայից արքայ ձեր եղբայր, որպէս և դուք իսկ գիտէք, զի բուռն և անձնակամ և անհաւան, և բազումք յարհամարհոտ նորա կամակորութենէն փախուցեալք են յԱրեաց թագաւորութենէ, որք շատ և ոչ սակաւ մասամբ վնասեցին Արեաց աշխարհին։ Եւ նախ առաջին, որպէս մեծ աշխարհս Հայոց, որ և այսօր ի ձեր ծառայութենէ ի բաց կացեալ են. և այրն որ զաշխարհն ի բաց ունի ի ձէնջ՝ ի չճանաչելոյ զայր և զպիտանութիւն նորա, Պերոզ կորուսեալ եհան յԱրեաց ծառայութենէ զայր լաւ և զայնպիսի աշխարհ. և թէ որքան ինչ յայնմ առնէ վնասք և հարուածք Արեաց աշխարհիս եղև՝ գիտեն ամենեքեան. բայց թուի թէ և ձեր լուեալ է զամենայն և տեղեակ էք։ Բայց աւելի Շապուհ-Միհրան, զոր դուք կարդեցէք՝ առ զնորա քաջութեան փորձ և զխրատու. և թէ հարցանէք և լսել կամիք՝ դոյն ինքն ասէ ձեզ»։

Եւ թագաւորին Վաղարշու հարցեալ զՄիհրան-Շապուհ զգործոյն Հայոց, թէ «Զի՞նչ կարացեր գործել գործ յաշխարհին Հայոց, և Վահանայ զի՞նչ միտք են և ոյժ, և ո՞րպէս կարաց այսքան ամս զդէմ ունել Արեացս»։ [Աստուծոյ զօրութեամբն]։ Եւ Միհրանայ պատասխանի տուեալ ասաց, թէ «Արանց քաջ, զկռիւն զոր Հազարաւուխտ մեօք հանդերձ ընդ Վահանայ արար, և թէ Վահանայ իւր զօրքն բովանդակ անդ եղեալ էին՝ թուի թէ տանէր զյաղթութիւնն. այլ թէպէտ և յաղթէաք մեք՝ զայս գիտեմ, զի անթիւ բազմութեան ի մէնջ կոտորած առնէին։ Այլ ձեր թագ այնպէս արարին, զի զնդին Հայոց կէս, այրընտիր որեարն այլուր դիպեցան ի գործ։ Սակայն սակաւ արամբք որպիսի ինչ վնաս արար՝ գիտէ ինքն Հազարաւուխտ և այլ պարսիկ որեար որ անդ էին աւագք։ Իսկ յորժամ Հազարաւուխտ ի Վիրս գնաց և զիս անդէն զօրականօք եթող զնդին, և յայնմ հետէ զի՞նչ Վահան զմեզ աշխատ կալաւ կարի սակաւ արամբք,—զոր երբեմն թէ հարիւրօք ասեմ՝ չատեմ, և վկայեն ինձ զնդիս մերոյ աւագորեար որ անդ էին և այժմ աստ են, —կարի ծանր է ասել և անհաւատալի բանք, թէ այնքան սակաւուք

1 ՏՏ. Արեաց և Անարեաց
11 ՁԱՏ. չիք ասէր։ Այսպ. ըստ ուղղագր. ԲԳՏ.
21 Չ. շապուհ զոր դուք միհրան
23 ՏՏ. դոյն իսկ ասէ
26 ՁԱՏ. զդէմ ունել արեացս աստուծոյ զօրութեամբն։ ԲԳՏ. ուղղագրել են՝ աստուծոյ։ —«Աստուծոյ զօրութեամբն» դրեմ անկիւնաւորների մէջ՝ իբրեւ ընդմիջարկութիւն
28 Չ. զկռուին
31 Չ. կոտորածի
32 Չ. որէարն
38 Չ. աւագօրեար

դէմ յանդիման կռուել աներկիւղութեամբ, և զօր ամենայն ի ղակշի վերայ գալ և մեծամեծ վնաս առնել։ Բայց զմիոյ աւուր գործն ես իսկ յիշեմ որ անդ էի. սակայն նոր համարիմ և ի վեր քան զմարդկան իրս, թող թէ որ լսէ՝ զիա՞րդ կարէ հաւատալ։ Քանզի թուով երեսուն արամբք ի վերայ երից հազարաց առն յաներկիւղս յարձակեալ, և զայնպիսի գործ վճարեալ, զոր ամենայն որ անդէն էին տեսողքն այսօր յիշեն. թուի թէ երկիւղ գործոյն չելանէ ի մտաց։ Զի և ոչ ինչ այլ իմիք նման չէին այն նոլոգ իրք, բայց եթէ յորժամ ժիր մշակք քաջ սուր մանգաղաւ և գերանդեաւ զխոտ հարկանիցեն, և բազում որայս մօտ ի մօտ առ միմեանս կուտեալ թողուցուն, և ինքեանք ուրախալից ցնծութեամբ անհոգ յիւրաքանչիւր տունս գնայցեն. ստոյգ ըստ այնմ օրինակի յարձակեալք ի վերայ Միհրանայ այնքան արամբք՝ հերձին վեր ի վայր զբովանդակ գունդն, և շատ լաւ որեար կոտորեցին։ Եւ զահաւոր այրն զԳդիհոն զՍիւնեաց տէրն սպանին. զոր յիմ միտս այսպէս ասէի, թէ լոկ Գդիհոն միայն ինքն տասն արամբ յիւր գնդէն պատահէր այնչափ առն՝ այն միայն առնէր. և զայնպիսի այր և զայլ ականաւոր և քաջ արս ի պարսիկ մարդկանէ հանին ընդ սուր. և ինքեանք ոչ ինչ խոյս տուեալ ի բաց վարեցին զձիանս իւրեանց, այլ մօտ ի մեզ թեակից երթային յանհոգս ի բազում ժամս։ Եւ ի մեր գնդէն ոչ ուրուք իշխեցեալ հայել ի նոսա. վասն զի աստուածք, և ո՛չ մարդիկ կարծեցեալ ամենեցուն թուէին մեզ։ Վասն որոյ թէպէտ և առաջի ձեր յանդգնութիւն թուին բանքս իմ՝ սակայն յաղագս կարծեաց ժամուս համարձակիմ ասել, զի զաշխարհին Հայոց զմեծութիւն և զօգուտն զայն դուք իսկ քաջ գիտէք. բայց այրն Վահան և այլ որեարն որ ընդ նմա են, և այսօր խաղաղութեամբ ի ձեր ծառայութեան էին՝ մեծ մասն բարւոյ և մխիթարութեան կարևոր հասելոյ տէրութեանս մերոյ համարէի զիրսն զայն։ Զի յորժամ Հայք այնպիսի որերով մեր էին՝ Վիրք և Աղուանք չիշխէին բնաւ թիւրել զանձինս և այլազգագոյնս ինչ խորհել»։

Եւ լուեալ զայսպիսի կարգեալ բանս թագաւորին Վաղարշու ի Միհրանայ և Հազարաւուխտոյ, և այլ ամենայն Արեաց աւագանւոյն՝ միաբան ամենեքեան զասացեալսն ի Միհրանայ գովէին, թէ արդարև որպէս են իսկ՝ նոյնպէս ասացեր լաւարար իմաստութեամբ զարդարն։ Եւ վաղվաղակի և փութով զՆիխոր զՎշնասպդատ, զայր հեզ և զմտացի և աշխարհաշէն, բազում այրընտիր արամբք ի Հայս արձակէին։ Պատուիրէր նմա ինքն իսկ թագաւորն, այլ ևս առաւել հոգաբարձութեամբ Հազարաւուխտ և այլ դրանն աւագանին, թէ «Ե՛րթ ի Հայս, և որ ինչ օրինակաւ և է՝ ամենայն քաղցրութեամբ և սիրով ըստ կամացն Վահանայ և նորուն ընկերակցացն՝ նուաճեալ զորեարն և յԱրեաց ի ծառայութիւն ա՛ծ։ Բայց զգոյշ լեր նախ ժողովել առ քեզ զայրուձին Ատրպատականի որ մօտ ի Հայս իցեն, և զայրուձին Հեր և Զարաւանդ գաւառի. մի՛ գուցէ

2 Զ. առնէր
8 Զ. մանկազաւ
10 Զ. թողուցու.
16 Զ. յականաւոր
18 Զ. յայլ մօտ
21 ՑՑ. և թէպէտ առաջի ձեր
22 ՑՑ. չէր թուէին
27 Զ. աւրերով։ ՑՑ. որեարով
33 ԶՍՑ. և Նիխոր։ Այսպ. ըստ ուղղագր. ԲԳց
33 ՑՑ. մտացի
38 ՑՑ. յարեաց ծառայութիւն

յղեալ քո առ Վահան, և նա պատճառանօք քաղցր խօսելով ընդ քեզ՝ խաբիցէ զքեզ և վնաս ինչ առնիցէ։ Վասն զի այրն ինքն քաջ է և բազմամիտ է. քանզի և ցայժմ ոչ այնքան զայնպիսի գործեան վճարեաց նա և որք ընդ նմա էին՝ լոկ քաջութեամբ. այլ դու քաջ պատրաստեսջիր։ Բայց թուի թէ արդ Վահան չխորհի զայդպիսի ինչ. զի զայդ գործ, զոր համարձակեցաւ Վահան գործել և որք ընդ նմայն էին՝ յանճանաչողութենէ Պերոզի զմարդկութիւնն, ըստ հպարտ և անձնակամ բարուցն իւրոց, և չկարացեալ Վահանայ և մարդկանն որ միաբանեցան ընդ նմա, տանել արհամարհանաց, դնելով զանձինս ի մահ՝ դիմեցին առնել զայսպիսի իրս առ հարկի»։ Եւ խօսեալ զայս ամենայն բանս տեառն Արեաց Վաղարշու և ամենայն աւագանւոյն ընդ Վշնասպդատայ Նիխորոյ, և հրաժարեալ զնա արձակեցին ի Հայս։

ՁԹ. Եւ եկեալ Նիխոր յաշխարհն Հայոց՝ ոչ իշխեաց միջամխել ի Հայոց տեղիսս, այլ դադարեալ ի գաւառին որ կոչէր Հեր, ի գեօղն որում անուն էր Նուարսակ, առաքեաց նա պատգամաւորս առ Մամիկոնեանն Վահան զՇապուհ խորհրդեան դպիր և զՄիհր-Վշնասպ Ծուարշացի, որովք տայր գիտել նմա զիրս գալոյն իւրոյ ի Հայս, և թէ «Հրովարտակ ունիմ առ ձեզ ի թագաւորէն Վաղարշու՝ նուաճել զձեզ խաղաղութեամբ, և զամենայն աւագորերոյ որ յԱրիս են՝ պատգամ ունիմ առ ձեզ. արդ՝ արի՛ք եկա՛յք և լուարո՛ւք. և որպէս է ձեզ հաճոյ և խորհիք՝ ընտրեցէ՛ք որ բարին է»։

Եւ տեսեալ Վահանայ Մամիկոնէի զպատգամաւորսն Նիխորոյ, և լուեալ զայս ամենայն բանս պատգամին ի նոցանէն՝ ժողովէր առ ինքն զամենայն հաւատարիմ ուխտապահացն գունդ, զնախարարս և զազատս և զամենայն այրեձիոյ. և հրամայէր Մամիկոնեանն Վահան եկելոցն ի Նիխորոյ՝ ասել առաջի ամենեցուն զբանս թագաւորին Վաղարշու և զբանս ամենայն Արեաց աւագանւոյն։ Եւ տուեալ լսել Մամիկոնենին Վահանայ ամենայն Հայորերոյն միահամուռ զպատգամն Նիխորոյ՝ ասէր ցպատգամաւորսն Պարսից՝ առ վաղիւն առնել նոցա պատասխանի։

Եւ ժողովեալ ի վաղիւն ամենայն Հայորերոյն առ Մամիկոնեանն Վահան, և խորհեալ նախ ընդ միմեանս զվաղնջուց զպէտս և զխնդիր իրացն, եկեալ և պատգամաւորացն Նիխորոյ յատեանն՝ սկսաւ խօսել Մամիկոնեանն և առնել պատասխանի բանիցն Նիխորոյ. «Եւ մեր ապստամբութեան իրացն, և յայսպիսի կարևոր և մահաբեր գործ տալ զանձինս՝ բազում են բանք և կարևոր. և չէ հնար գրով վճարել և կամ պատգամաւ, բայց եթէ յանդիման խօսել ընդ նմա՝ որ Արեաց տէրն է, և ընդ ձեզ՝ որ դրանն աւագանի էք։ Բայց երիս բանս ասեմ ձեզ, որ թէ այս երից բանիցս պատասխանի առնէ ինձ, որպէս ես կամիմ և ամենեքեան սոքա որ աստէն իսկ են, և կարէ զայս երիս խնդիրս տալ մեզ գրով և կնքով թագաւորին՝ զամենայն զոր ինչ ասէք, զպատեհն

3 ՑՑ. այնպիսի
5 ՑՑ. այդպիսի ինչ
13 Զ. միջամխաղ՝ (զ՛ն փըշիկով)
15 ՑՑ. Նըւարսակ
17 Աց. զգիրս
21 Զ. որ բարին է։ Օրհնեալ է աստուած
33 Զ. ապստամբութեամբ
35 Զ. ի գրով, ե՛ի վրայ ջնջման նշանով

և զարժանն՝ առնեմք, և բանի ձերոյ լսեմք՝ որպէս և Նախնիքն մեր լուան։ Քանզի ոչ իմ բանքս, զոր խօսիմս ես ընդ ձեզ այժմս, այլ Նոցա ամենեցուն, աւագի և կրտսերոյ, որ այժմ ձեր առաջի են. և ոչ եթէ այսօր ինչ խորհեալ և կամ իմացեալ է մեր զբանս զայս, այլ յաւուր, յորում տուաք զանձինս ի մահ՝ Նախ զայս երիս ընտրութիւնս խորհեալ եդաք այր ամենայն առաջի։ Եթէ յանձն առցեն Պարսիկք թողացուցանել մեզ զայս երիս իրս՝ ծառայեսցուք Նոցա որպէս զընիկ և զհաւատարիմ ծառայս. և եթէ ոչ հաւանին յանձն առնուլ, և խստանան՝ ելցուք ըստ աշխարհ և կորիցուք և խնդութեամբ մեռցուք, այլ Պարսկի առն երկիր ոչ պագցուք։

«Եւ է մին յերիցն՝ Նախ և առաջին խնդիրս այս կարևոր և պիտանի. եթէ զհայրենի և զբնիկ օրէնս մեր ի մեզ թողուք, և զՀայ այր զօք մի՝ մոգ ոչ առնէք, և ումեք յաղագս մոգութեան գահ և պատիւ չտայք, և զկրակարանն յաշխարհէս Հայոց ի բաց տանիք, և զեկեղեցւոյ թշնամանս յազտեղի և յանպիտան մարդկանէ, որ ցայժմ լինէր, յայսմ հետէ մեզ չտայք տեսանել. և քրիստոնեայ մարդկան և քահանայից զկարգ և զպաշտօնն քրիստոնէութեան համարձակութեամբ և աներկիւղ տայք պաշտել՝ ուր և կամին. ապա բարի է, և առաջին խնդիրն մեր այդ է։

«Եւ երկրորդ խնդիրն այս է, թէ զմարդ ոչ իշխանաբար ճանաչէք, այլ իրաւարար գիտել զլաւն և զվատթարն, ընտրել զպիտանին և զանպիտանն, իմանալ զտոհմիկն և զանտոհմիկն, ունել առ լաւսն և պատուականս՝ զքաջն և զօգտակարն, արհամարհել և առ ոչինչ համարել զվատն և զանպիտանն. սիրել զվաստակաւորսն և ատել զանվաստակն, ունել ի մօտ զիմաստունս և խորհուրդս առնել, և զանմիտն ոչ մօտեցուցանել, այլ և ի հրապարակէ ևս հալածել։ Եւ յորժամ այս ամենայն այսպէս լինի՝ ամենայն իրք Արեաց աշխարհիս աջող լինի և անսխալ. ապա եթէ զընդդէմն սիրէք, որպէս և ցայժմ, և ոչ զդէպսն՝ և գործքն այդպէս ընդդէմ լինին, որպէս և եղենդ իսկ, և տեսէք։

«Եւ երրորդ խնդիր մեր այս է. որ տէրն է Արեաց և աշխարհի թագաւոր՝ կամիմք, զի ինքն տեսցէ իւրովք աչօք, և ինքն լուիցէ իւրովք ականջօք, և ինքն գիտասցէ և ինքն խօսեսցի իւրով բերանով. և մի այլոյ աչօք տեսցէ և այլոյ ականջօք լուիցէ և այլովք հանապազ գիտասցէ զմարդ լաւ և զանլաւ, և այլոյ բերանով խօսեսցի զպէտսն։ Ցազագս որոյ չլինի ուղիղ հայեցուածն, և ոչ արդար լսողութիւնն. այլ յոլով սուտ խօսքն ճանաչին և հրամանքն ընդունայնք, և բնաւ այլ ընդ այլոյ լինի իմաստն ամենայն։ Եւ յորժամ այս ամենայն այսպէս լինի՝ կործանեալ ամենայն վաստակք՝ ծառայիցքն կորնչին, և ոչ կարէ կալ աշխարհ և ի նմա բնակեալք անշարժ և հաստատուն։ Բայց թագաւոր, որ իւրովք առողջ աչօքն հայի և աննախանձ լսողութեամբ լսէ և արդար

3 Ձ. կրսերոյ
3 Ձ. և ոչ [Թէ
4 ՑՑ. խորհեալ կամ
11 Ձ. յուսանցում ա
14 Ձ. զկրական
19 Ձ. յուսանցում բ
22 ՑՑ. զպատուականն և զքաջն։ Ձ. և զպատուականն զքաջն
24 ՁԱս. և ի խորհուրդս
28 ՑՑ. տեսէք
29 Ձ. յուսանցում գ
29 ԲԳս. աշխարհի (չիք և)
31 Ձ. ականջովք
31 ՑՑ. չիք և ինքն խօսեսցի իւրով բերանով... հանապազ գիտասցէ
33 ԲԳս. ուղղագրել են և ոչ այլոյ բերանով
34 Ձ. հայեցածն
37 ՑՑ. և ծառայիւքն

բանիւ խօսի ընդ իւր ծառայս՝ կենդանացեալ ծառայքն՝ չյագին վաստակով, այլ յաւելեալ ի վաստակն՝ օր քան զօր աճեցուցանել ջանան զբարին։ Այսպէս աշխարհ շինի, և տէրն շքեղացեալ պայծառանայ հանապազ։

«Արդ՝ եթէ զայդ այդպէս կարէք խոստանալ, զխոստացեալսն գրով և կնքով հաստատեալ տայք ցմեզ՝ ապա կոչեա՛, և գամք կամաւ և լսեմք բանից ձերոց, և հրամանի Թագաւորին հաւանիմք զոր ինչ ասէ։ Ապա եթէ զայս երիս խնդիրս ոչ կարէք տալ մեզ, և գիտէք թէ չէ հնար՝ որպէս եղեալ մեզ մահ առաջի՝ պատրաստ եմք մեռանել, այլ ծառայութիւն առնել Արեաց տեառն չկարեմք։ Եւ այլ բանք, որ ինչ են, թէ ինձ լինի գալ՝ ինձէն իսկ խօսիմ ընդ նմա, ապա թէ ոչ լինի դէպ գալ՝ մնասցէ բանն և իրքն»։

Ղ. Եւ խօսեցեալ զայս ամենայն բանս Մամիկոնենին Վահանայ ընդ Շապհոյ խորհրդեան դպրի և ընդ Միհր-Վշնասպայ Ծուարշացւոյ՝ յուզարկեաց զնոսա. առաքեաց և Մամիկոնեանն Վահան ընդ պատգամաւորսն Նիխորոյ և յիւր ուխտակցացն զՑաշկուր Արծրունի և զՍահակ Կամսարականն, զերանելւոյ զԱրշաւրայ զորդի, և զՎասաւուրտ Հարքային, և զԱռաւան Աղբեւրկացի և զՊաճոկ ի Մարդպետական գնդէն։ Եւ հրաժարեալ զամենեսեան զնոսա Մամիկոնենին Վահանայ՝ արձակէր խաղաղութեամբ առ Նիխոր։

Եւ երթեալ նոցա առ Նիխոր ի գաւառն ի Հեր, և տեսեալ Նիխորոյ զՀայերն, որ չոգան առ նա ի Մամիկոնենէն Վահանայ՝ ամենայօժար սրտիւ խնդութեամբ ուրախացաւ։ Եւ հրաման տուեալ ընթրեացն՝ ընկալաւ զնոսա բազում գոհութեամբ և յոյժ սիրով, յիշելով հանապազ ըստ ամենայն բաժակի զքաջ Մամիկոնեանն Վահան. և կատարեալ զուրախալից ընթրիսն՝ գնային յիւրաքանչիւր վանս։ Եւ ընդ առաւօտն ժողովեցան ամենայն ատեանն Պարսկաց առաջի Նիխորոյ, և աստուածուրաց մարդիկն որ անդ էին. եկեալ և պատգամաւորքն որ ի Նիխորոյ առ Մամիկոնեանն Վահան երթեալ էին. Շապուհ և Միհր-Վշնասպն, և հայ նախարարքն և այլ արքն ի Մամիկոնենէն Վահանայ որ ընդ նոսա էին։ Եւ տուեալ զպատգամն Մամիկոնեանն Վահանայ՝ Շապհոյ և Միհր-Վշնասպայ առաջի ամենայն ատենին յայտնապէս։ Եւ լուեալ Նիխորոյ զամենայն զբանսն և զխօսս Մամիկոնենին Վահանայ, և խնդալից եղեալ՝ ասաց առաջի ամենեցուն, թէ «Ամենայն բանքդ այդ և պատգամդ զոր յղեալ է Վահանայ՝ արդարև աստուածոց արժանի. քանզի որպէս անմեղ են մարդիկն այն, զորս բռնի տարաւ Պերոզն և Հեփթաղին կոտորել ետ, և զամենայն զարիւնն զայն աստուածքն ի Պերոզի գլխոյն խնդրելոց են՝ նոյնպէս անմնաս է Վահանն յամենայն իւր իրքս, զոր խորհեցաւ և գործեաց. զի ի բռնութենէ չարութեանն Պերոզի գործեաց, և ոչ իւրով կամաւ։ Եւ ես մինչև ցայսօր չէի մխիթարեալ ի մեծ

3 ԶԱց. որպէս աշխարհ
8 Զ. մեռանել, ել՛ը ետ գրչով
11 Զ. բանն և իրքն։ Օրհ-նեալ է աստուած
14 ՑՑ. ուզարկեաց
16 ՑՑ. վասավուրտ
16 ԲԳց. ուղղագրեալ են Հար-քայն
17 Աց. զառաւան
18 ՑՑ. արձակեալ
20 ԶԱց. ի Հէր
25 ՑՑ. զայեն
27 ԶՑՑ. որ անդ էին եկեալ, և պատգամաւորքն որ ի Նիխորոյ որ առ…
29 Զ. ի Մամիկոնէն
33 ՑՑ. չարութենէն

բեկմանէն որ եհաս Արեաց աշխարհին. բայց այդ լուր ուրախացուցեալ մխիթարեաց զիս այսօր։ Բայց տացեն աստուածքն և զօրն տեսանել, որ Վահան յիմ ձեռն նուաճեալ՝ Արեաց ի ծառայութիւն հնազանդի»։

Եւ խօսեցեալ զայս այսպէս Նիխորոյ առաջի ամենայն ատենին, և լուեալ զայս ուխտապահ նախարարացն Հայոց և այլ արանց, որ եկեալ էին ի Վահանայ Մամիկոնենէ՝ տային փառս Աստուծոյ, յորոյ ձեռս են սիրտք իշխանաց, և որպէս ինքն կամի՝ տայ բարբառել նոցա։ Կոչէր այնուհետև վաղվաղակի Նիխոր զնոյն պատգամաւորս, զՇապուհ խորհրդեան դպիր և զՄիհր-Վշնասպ Ծուարշացի, և գրէր նամակ առ Մամիկոնեանն Վահան օրինակ զայս.

«Լուայ, ասէ, զամենայն զխօսեցեալսն քո ի պատգամաւորացն, զոր ես առաքեցի առ քեզ. և գրեցի բովանդակ զնոյն բանս քո ի նամակիդ, ծանուցանել քեզ, թէ արդարև խօսեցան ընդ իս զամենայն, և լուայ։ Արդ՝ արի եկ առ իս վստահութեամբ, և զամենայն խնդիրս քո, զոր ի ձեռն դոցա յղեցեր առ իս, և այլ ինչ զոր դու ասես՝ ուխտեալ է Արեաց տեառնն և ամենայն Արեաց ազգանւոյն՝ տալ լիով և կատարել. և զքեզ և որ ընդ քեզ են, որպէս քո կամք են՝ Արեաց տէրն շքեղ առնէ և արձակէ ի Հայս»։

Եւ զնախարարսն որ եկեալ էին ի Մամիկոնենէն Վահանայ՝ սիրով ընկալեալ Նիխորայ և պատուեալ՝ արձակէր ընդ պատգամաւորս իւր առ Մամիկոնեանն Վահան. մեծաւ պատուիրելով յանձնէր նոցա՝ վաղվաղակի և անյապաղ ածել զՄամիկոնեանն Վահան. և հրաժարեալ զնոսա Նիխորոյ՝ արձակէր սիրով։ Եւ տեսեալ զայն աստուածուրաց խաբեբայիցն, որք ի միաբանութեան Պարսկացն էին, թէ ո՛րպէս յապստամբացն եկեալ Հայք ի Նիխորոյ պատուեալք և մեծարեցան ի Պարսկացն, և ինքեանք արհամարհեալք են իբրև զանպիտանս՝ դարձեալք լի ամօթով յերկիր կործանէին։ Եւ տեսեալ զայն ուխտապահ նախարարացն Հայոց և այլոցն որ ընդ նոսա էին՝ ակն արկեալ ցուցանէին միմեանց զկորանս նոցա։ Իսկ մի ոմն ի յուխտապահացն ասէ ցնոսա. «Ջի եթէ լոկ ի բանիցն խօսելոյ ընդ մեզ սիրով Նիխորոյ զձեօք այդպէս ամպ մթագին և շափառուկ անկաւ, և չերևիք ի գետնոյդ, իսկ յորժամ շնորհեսցէ Քրիստոս, և տեսանիցէք փառաւորեալ զՄամիկոնեանն Վահան և զայլ ուխտապահսն որ ընդ նմա են փառօքն, զոր տալոց է Քրիստոս՝ խորտակիցիք իսկ արդեօք և հեղձանիցիք. այլ ի մեծի աւուր յանշէջ գեհենին զի՞նչ արդեօք գործիցէք հէքքդ և թշուառականքդ»։

Եւ զայս ասացեալ առն՝ գնային ընդ պատգամաւորսն Նիխորոյ առ Մամիկոնեանն Վահան։ Եւ հասեալ պատգամաւորացն Նիխորոյ առ Մամիկոնեանն Վահան և մատուցեալ զնամակն Նիխորոյ, և յայնմանէ գիտաց ի գրելոցն, թէ լուեալ տեղեկացաւ Նիխոր ի պատգամաւորացն զամենայն յղեալսն իւր առ նա, և ոչ էր բան յամենայն խօսիցն Մամի-

1 ՁԱս. արեաց իշխանին
1 Զ. այտ լուր
11 Գս. քո՝ պատգամաւորացն
14 ՏՏ. որ ի ձեռն
19 Զ. ի Մամիկոնէն
22 Զ. ածեալ
24 Զ. խաբէբէյին։ Աս. խաբէբայիցն
24 ՁՏՏ. էին՝ յապստամբիցն եկեալ Հայք, թէ ո՛րպէս ի Նիխորոյ
31 Զ. չերևէք
38 Զ. յայմանէ

կոնենին Վահանայ՝ զոր թէ չէր թուեալ Նիխորոյ։ Ի պատգամաւորացն տեղեկացեալ ծանեաւ և զայն, թէ որպէս խնդութեամբ և սիրով ընկալեալ զնախարարսն մեծարեաց Նիխոր. պատմեցին և զչարաչար կորանս ուրացողացն Ջոկոյ, և թէ որպէս կարի և փութով դերթս քո խնդրէ փափաքելով. զոր և պատգամաւորացն Նիխորոյ ստիպով հաւանեցուցանէին զնա երթալ։

ՂԱ. Եւ չուեալ այնուհետև զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնենի ամենայն ուխտապահ նախարարօք հանդերձ և այլ բազում և կազմ գնդաւ. որոց լուեալ զուխտիք զխնդիրն ի Նիխորոյ Մամիկոնեանն Վահանայ՝ կամաւ և ցնծալից սրտիւ երթային առ նմա։ Եւ եկեալ Մամիկոնեանն Վահան ի գաւառն որ կոչի Արտազ, ի գեօղն որ անուանեն Եղինդ՝ դադարէր անդ ինքն և ամենայն գունդքն որ էին ընդ նմա. և առաքէր առ Նիխոր և զիւր եկն տայր գիտել նմա։ Եւ ասէր ցՆիխոր Մամիկոնեանն Վահան. «Արդ՝ եթէ թուի քեզ գալ իմ և տեսանել զքեզ՝ տուր ածել առ իս արս աւագս Արիս և յականաւոր տոհմաց, որ եկեալ կացցեն աստ առ իմ որեար, մինչև եկեալ ես տեսից զքեզ, և խօսեցեալ իմ և քո ընդ միմեանս՝ լուիցուք ի միմեանց՝ զոր ինչ ի դէպն թուի մեզ առնել»։ Եւ Նիխորոյ լուեալ զեկն և զկամս խնդրոյն Մամիկոնենին Վահանայ՝ վաղվաղակի տայր տանել ցԿամսարականն տէրն Շիրակայ Ներսեհն զԲազէ զԱտրպայական շահապ և զՎեհ-Վեհնամ զՀայոց հազարապետ, և զՆերսշապուհ զՄիհրանայ զեղբայր, և հինգ ևս այր այլ աւագ Պարսիկս։ Եւ Մամիկոնենին Վահանայ տեսեալ զաւագորեարն զոր առաքեալ էր Նիխորոյ՝ ընդունէր զնոսա խնդութեամբ. և ի միասին ուրախացեալք այն օր՝ ի վաղիւն թողոյր զութեսեան զնոսա առ իւր հաւատարիմ արս. որոց հրաման տայր՝ պատուել զնոսա արժանաւորապէս և զգուշանալ. և ինքն չուեալ գնդաւ և կազմութեամբ գնայր առ Նիխոր։ Մերձեալք ի գիւղն ուր Նիխոր էր՝ հրամայէր զօրուն որ ընդ նմա էին՝ վառել ըստ օրինի պատրաստութեան պատերազմի. որք ընդ լսել ի Մամիկոնենէն Վահանայ զհրամանն՝ պատրաստեալք յամենայնի կազմ ցուցանէին նմա զանձինս։ Տայր հրաման Մամիկոնեանն Վահան հնչեցուցանել զփողսն պատերազմականս. և ի սաստկութենէ փողոցն ձայնից հնչեալ երկիրն թնդէր. յորմանէ զարհուրեալք արք զօրուն Նիխորոյ՝ կարծեցին, թէ խաբէութեամբ ի մեռանել զնոսա եկն Մամիկոնեանն Վահան, և ոչ սիրով ի նուաճումն խաղաղութեան։

Եւ Նիխոր առաքեալ ընդ յառաջ նորա արս աւագս՝ տայր ասել ցՄամիկոնեանն Վահան, եթէ «Ոչ ըստ կարգի Արեաց առնես դու պայդ, այլ նորոգ իրօք այլ իմն ձևանաս. յորում յայամ հետէ քեզ կարի զԱրեաց զկարգն պարտ է ունել և հաւանել. քանզի ի չուէ՝ փողով յԱրեաց բանակ սպարապետն միայն Արեաց իշխէ մտանել, և այլ ոք

1 ՏՏ. չէր լուեալ։ ԲԳՑ. չէր լուեալ Նիխորոյ ի պատգամաւորացն։ Տեղեկացեալ ծանեաւ և զայն։ Կեսարուբիւնն այսպէս բաց ՁԱՑ.
6 ՏՏ. նմա
7 ՁԱՑ. մամիկոնեանն
9 ՏՏ. ուխտիւք
20 ՁԱՑ. բազէ... շահապայ
20 ԲԳՑ. և զՎեհնամ
21 ՏՏ. զհինգ
24 ՏՏ. զութեսեան
26 Ձ. չուել
28 Ձ. վառեալ
29 Ձ. ի մամիկոնէն
29 Գամ բաց Ձ. ամենայնի
31 Ձ. պատերազմողականս
33 ՏՏ. կարծէին խաբէութեամբ.
39 Ձ. արեաց բանակ

զայդ համարձակութիւն ի Պարսիկս ոչ ոք իշխէ առնել»։ Եւ Մամիկոնենին Վահանայ պատասխանի տուեալ Նիխորոյ՝ ասէր. «Նախ արա զիս Արեաց տեառն ծառայ, ապա և առանց ի քէն իսկ ուսանելոյ՝ թուի թէ և ես իսկ գիտեմ զԱրեաց աշխարհի զկարգ և զարժանն. մի՛ թուեսցի քեզ հաշուել զիս կարի մոռացկոտ. քանզի և ոչ բազում ինչ ամօք գնացեալ եմ ի ձէնջ»։

Եւ զայս բանս այսպէս ի ձեռն պատգամաւորի խօսեցեալ Մամիկոնենին Վահանայ ընդ Նիխորոյ՝ ապա ինքն իսկ եկեալ տեսանէր զնա յատենի ժամու. վասն զի ընդ ծագել արևուն եկն Մամիկոնեանն առ Նիխոր։ Եւ Նիխորոյ տեսեալ զՄամիկոնեանն Վահան և զայլ Նախարարսն զուխտակիցսն ընդ նմա՝ ցնծալից ուրախութեամբ բազում ժամս ընկալեալ ի գիրկս իւր՝ ողջունէր զնա. տայր և զողջոյն զԱրեաց տեառնն Վաղարշու և զամենայն աւագանւոյն. մի ըստ միոջէ յանուանէ ողջունէր և զեկեալ Նախարարսն Մամիկոնենին Վահանայ՝ յոյժ սիրով, նոյնպէս զամենայն արս գնդին, զաւագս և զկրսերս։ Եւ լուեալ Մամիկոնենին Վահանայ զողջոյն Արեաց տեառնն և զողջոյն ամենեցունց դրանն աւագանւոյն՝ շնորհակալութեամբ գոհանայր երկրպագելով և խնդալից ուրախութեամբ ընդունէր։ Եւ հրաման տուեալ Նիխորոյ՝ զամենայն արս զօրուն Վահանայ Մամիկոնենի ի ներքս թողուլ, նոյնպէս և աւագ Պարսիկ որելոյ ի ներքս կալ յատենին հրամայէր։ Եւ կատարեալ *զամենայն ասացեալք Նիխորոյ, և լցեալ ամենայն ատեանն արամբք որ ընդ Մամիկոնենին Վահանայ էին, և այլ Պարսիկ որերով՝ սկսանէր խօսել Նիխոր ընդ Մամիկոնենին Վահանայ և ասէր.

«Թէպէտ և աշխարհակցութեան բնութեամբ չես կեցեալ ընդ իս, այլ ըստ բազում անգամ տեսանելոյ զքեզ ի դրան և լսելոյ յաշխարհի մարդկանէ, ի Հայոց և ի Պարսկէ, ոչ յանճանաչող և յանպիտան մարդկանէ, այլ ի լաւ և ի հայեցող և յիմաստուն որերոյ, զոր այժմ յայտնապէս փորձիւ ի միտ առեալ գիտացաք ամենեքեան. զի գործ պատերազմի որպէս քաջութեամբ՝ նոյնպէս ես առաւել խոհականութեամբ և իմաստիւք վճարի. որպէս և դու զերկոսեանն զայդ ի քում անձին լիով եսուր տեսանել ամենայն Արեաց աշխարհի և ճանաչել։ Քանզի զքաջութիւն ցուցեր սակաւ արամբք. քանզի ցանկ կաս կռուելով սակաւուք ընդ բազումս, և մեծամեծ զայդպիսի վնասանի առնելով և աշխատ ունելով։ Եւ զիմաստութիւն յայտ արարեր՝ գիտելով զժամ կռուոյն և զտեղի տալոյ, և անվնաս զգունդն ի միջի ունելոյ, և միւսում ես ժամու գործոյ պատրաստ լինել և չերկնչել։ Զի եթէ ոչ երկու այդ իրք ի քեզ լի եղեալ էին՝ զի՞արդ հնար լինէր քեզ այդչափ կարի սակաւ և թուով արամբք կալ ընդդէմ այնչափ անթիւ բազմութեան պատերազմող որերոյ, և երբեմն մեծապէս յաղթել, և երբեմն զարհուրեցուցանել և աշխատել։ Ցաղագս որոյ զմտաւ ածեալ իմ զքո այդպիսի արարուած և զմտաւորութիւն՝ կարի քաջ ճանաչեմ զամենայն պատասխանիս, զոր առնելոց ես դու մեզ ամենայն բանի, զոր լսես ի մէնջ։ Վասն զի թէ զապստամ-

15 Ձ. զողջուոյն... զողջւոյն
19 ՁԱՑ. որեարոյ
25 ԱՑ. ի Հայոց
25 ՑՑ. և ոչ յանպիտան
27 ՑՑ. գործ պատերազմի ունի քաջութեամբ։ Ձ. գործ պատերազմի ո ս (?, ջերուած, վրան պացիւ) քաջութեամբ
31 ՁՑՑ. ցանկաս կռուելով։ Այսպէս ըստ Ն. Բ.
39 Ձ. ածել

բութենէդ քումմէ հարցանեմք, թէ զիա՞րդ իշխեցեր խորհել, թող թէ և առնել՝ պատասխանի տուեալ ասես, թէ չճանաչողութիւնն Պերոզի և ի յետսահարութիւն բռնադատեաց զիս մեռանել. որ զծառայութիւնն և զվաստակ որպէս զաստուած խնդրէր, և զվաստակոյն զհատուցումն առնել՝ և ոչ իբրև զմի յանմիտ մարդկանէ խորհէր հատուցանել։ Զի քաջի առն քան զբազում ժամս հարանօք կեցեալ՝ շատ լաւ է մի օր ծանուցանել զքաջութիւն անձին և մեռանել։ Եւ ոչ ոք յԱրեաց կարէ քեզ մեղադիր լինել՝ խորհել քեզ այդպէս խորհուրդ և առնել, ո՛չ որ այժմ Արեաց տէրն է, և ոչ աւագանի դրանն, որ զամ մի ի միջի են, և դու գիտես։ Վասն զի Պերոզ արքայից արքայ իբրև իւրում անձինն և որդւոց չմարթաց հոգ տանել՝ բարի ծառայի առ նա լաւ ինչ զիա՞րդ կարէր խորհել և առնել։ Զի զայդ գործ, զոր դու գործեցեր՝ բայց զի չկարէր ոք և զի չիշխէր գործել յայնժամ. այլ ամենայն ծառայ այր, տեսանելով զնորա ստամբակութեանն զանչափութիւն՝ զամենայն օր խորհէր առնել, և չկարացեալ մեռանել՝ կասէր»։

«Բայց քո և արանց որ ընդ քեզ եղեն միաբան, առ ոչինչ համարեալ զմահ անձին՝ դիմեցին յիրսդ քաջարար. և որ մեռան ի ձէնջ՝ ի Պերոզի յամբարտաւանութենէն խնդրեն աստուածք զարիւնն զայն, և որք ապրելդ կարացայք և ի միջի լինել՝ անպարտ էք և անվնաս էք։ Վասն զի որ այժմ Արեաց տէրն է և ամենայն աւագանին՝ զայդ եւեթ խօսին հանապազ, և անմխիթար ողբան և տրտմին, յիշելով զՊերոզի զանհաւան և զամբարհաւաճ զբարսն, զոր ոչ ունէր նման մարդոյ, այլ նման չար և վայրենի գազանի։ Որ կորոյս զինքն և զամենայն Արեաց աշխարհի զոյժ և զզօրութիւն, և զթագաւորութիւն մի մեծ և ղազատ ի ծառայութիւն ետ Հեփթաղին. յորմէ ի դառն ծառայութենէ, մինչ կենդանի է Արեաց աշխարհն՝ զերծանել ոչ կարէ։ Բայց դու թէ հաւանեալ նուաճիս, և բնիկ քո նախնեացն տեառն ծառայութիւն առնես, և որ ինչ վատթարն եղև ի մէնջ և ի ձէնջ՝ մոռանաս և ի բաց թողուս, զայս առնես իմով միջնորդութեամբ՝ դու աստէն ի Հայս կաս, մինչև թագաւորն կնքէ և տայ բերել առ քեզ. և եկեալ բարեաւ առ տէրն Արեաց, զամենայն որ ինչ բարի և արժան է, և՛ քում անձինդ և որում դու կամիս՝ տայ սիրով և կամաւ և կատարէ»։

ՂԲ. Եւ խօսեցեալ զայս ամենայն բանս Նիխորոյ յատենին ընդ Մամիկոնենին Վահանայ և ընդ ուխտակից նախարարսն Հայոց որ ընդ նմա էին, և լուեալ Մամիկոնենին Վահանայ՝ տայր պատասխանի բանիցն Նիխորոյ և ասէր. «Աստուծոյ հաշտութիւն յորժամ է ընդ աշխարհի՝ յառաջահայեաց և իմացող մտաց դիւրին է անաշխատ ճանաչել։ Յորժամ զիշխանս բարեսէրս տայ և լաւածանօթս և աշխարհաշէնս՝ անդէն և անդ արժան է նուազամտին գիտել զբարերարութեանն Աստուծոյ այցելութիւն, զոր սփռեալ է յաշխարհ և նորոգելոց, որպէս

1 ՏՏ. Թող Թէ առնել | 3 ՁԱՏ. ի յետս աչառութիւն: Այսպէս ըստ ուղղագր. ԲԳՏ. | 12 ՁԱՏ. բայց զինչ կարէր որ: Այսպէս ըստ ուղղագր. ԲԳՏ | 15 ՁՏՏ. չկարացեալ՝ մեռանէր կասէր | 18 ՏՏ. ամբարտաւանութ. | 19 Ձ. կարացայքք | 22 ԱՏ. անհաւան | 22 ՏՏ. զանբարհաւան | 39 Ձ. զբարերարութիւն | 40 ՁԱՏ. զորս

*և այժմս ինձ երևի և ամենեցուն։ Զի զոէրն Արեայ իմ չև ևս է տեսեալ. բայց կամիմ տեսանել, եթէ տայ ինձ Աստուած միջնորդութեամբ քո, տեսանել այնպէս՝ որպէս և ամենայն քրիստոնեայ անձն կամի և ախորժայ։ Սակայն զքեզ տեսանելով, զոր նոր խաղաղարար և առիթ բարւոյ այնպիսւոյ աշխարհի միոյ առաքեալ է, որպիսի Հայքն, և մեզ որ աշխարհին մարդիկ եմք՝ կարի հայեցող ակամբ տեսանել, և ամենեցուն զխնամսն և զբարիսն, զոր տալոց է աշխարհին և մարդկան որ յաշխարհին են. քանզի տեսանեմք զքեզ կամաւոր բարւոյ և սիրիչ, անձին համարելով զբարի գիւտն և զաշխարհին։ Իսկ վասն Պերոզի արքայից արքայի բարուցն և անձնահաճութեանն զոր ասացեր, անընտրող մտօք ունելով զծառայս, չընտրել զլաւն ի վատթարէն, զքաջն ի վատէն, զիմաստունն յանմտէն, զվաստակաւորն յանվաստակէն՝ շատ իսկ և բաւական լիցի քո տեսոյն բանն և լիով ասացածն։ Եւ ես գոհանամ զԱստուծոյ, զի կիս անաշխատ պահեցէք յառնելոյ զըստ հարցման քո զպատասխանիսն։ Բայց իմ թէպէտ էր այդ ամենայն տրտունջ զՊերոզէ, որպէս համապազ խաբէին զնա և զամենայն Արիս արք անպիտանք, ատեցեալք յամենայն սրբասէր մարդկանէ, փախստականք յաշխարհէն ըստ աղտեղի գործոց իւրեանց, լեառնախոյսք, աւազակապետք, արիւնապարտք, հացկատակք, բանսրսողք, խաբեբայք, շաղակրատք, անյարուչք, վատատոհմակք, ճանաչելով զանձինս թէ ոչինչ են, և կալ իւիք չկարեն, կասեալք յիրէ, լքեալք յորսոյ՝ գային անկանէին ի մոխիրն. և ձեռ տուեալ զխնդիրն՝ խնդալով յուղարկէիք, պարգևելով զահ և պատիւ և ղայլոց զտունս և զկեանս և զմեծութիւնս. և նոցա սակաւ մի խոյս եղեալ ի ձէնջ, լռեցից զայլ մեծամեծ թշնամանսն, որով թշնամանէին զկրակն յիւրաքանչիւր ի տունս՝ այլ դատս և նախատինս աւելորդ աղտոյ իւրեանց զկրակն առնէին։ Եւ վասն զի զայս գիտէ ամենայն ոք, և յայտնի է, զի ամենայն արուեստաւոր, որ զիւր արուեստն ինքն գիտէ և օգտեալ է յարուեստէն՝ զնոյն և որդւոց իւրոց կամի ուսուցանել, զի կեցցեն. և այնպիսի խաբեբայ մարդկան ծանուցեալ, թէ ոչ իմաստիւ և քաջութեամբ կեցեալ և մեծացեալ, այլ սուտ վաճառականութեանն մոխրով՝ զնոյն փութային և որդւոյն իւրեանց ուսուցանել։ Վասն որոյ բարձեալ էր յաշխարհէն Հայոց և կորուսեալ վաստակք, միտք, քաջութիւն, տոհմակութիւն և արդարութիւն. և ի մէջ անցեալ փերևերտին դէմքն այդր ամենայնի. և ձեռ Արեաց տեսանելով զայն ամենայն, և չծանուցեալ, թէ մեր զայն հրահանգ եղեալ նոցա, և թէ չեն ուսեալ ինչ և չգիտեն՝ չեն մեղադրելի, այլ և յատենի ես այպանելով՝ ամենայն վատաց և ի կռուոյ յետնելոց զՀայս ածէիք օրինակ, նախ Ասորւոց, ապա լքելոց, ապա լուծելոց, ապա անդամալուծաց։ Եւ բայց թէ ապա*

3 ՏՏ. *որպէս ամենայն քրիստոնեայ կամի*
4 Չ. *ախորժս*
7 Չ. *և մարդկան և որ*
18 ՏՏ. *լեռնախոյսք*
19 Չ. *հացկատաք*
22 ՏՏ. *ուղարկէիք*
23 ՏՏ. *այլոց*
25 Չ. *դատս և նախատինս*։ «Թուի այլազգ ինչ ընթեռնլի»։ (Տաշօր. ՅԳց.)
27 ՉԱց. *ամենայն արուեստաւորք զիւր*։ ՅԳց. ուղղագրել են *ամենայն արուեստաւոր ոք զիւր*
32 ՏՏ. *և միտք*
33 ՏՏ. *տոհմականութիւն*
33 ՉԱց. *տոհմակութիւն, արդարութիւն*
33 Չ. *ի մէջ անցեալ*
34 Թուեւս *ընդդէմքն այդըր ամենայնի* (Ն.Յ.)
35 ՏՏ. *չեն ուսեալ ինչ՝ չգիտեն*

*և որ նոցա խոկ նման մարդ էր, որ ձեր խարող հացկատակաց ջոկն էր՝ և ոչ կորացեալ մտանէր ընդ գետին. վասն նոցա և խնդութիւն ևս թուէր այնպիսի լուրն։ Այլ որ մարդ էր, և ամօթ կայր ի սրտի, և զայնպիսի բանս յԱրեաց տեառնէն լսէր՝ ոչ միայն միանգամ և երկիցս ևեթ ի դէպ էր մեռանել, այլ թէ և տասն անգամ կեայր, և հանապազ զնոյն լսէր՝ տասն անգամ արժանի էր մեռանել։*

*«Վասն որոյ և մեք իբրև զխորհուրդս զայս ի միտ արկեալ իշխեցաք խորհել, և զայդպիսի ձաղանաց բանս, որ ի վերայ աշխարհիս եդեալ էր Արեաց տեառնն և կայր ի նմին հաստատեալ. և թէպէտ ածաք զմտաւ երթալ ընդ աշխարհ ելանել և կորնչել, ճանաչելով զԱրեաց ոյժ և զբազմութիւն,—քանզի չէաք այնքան յիմարք և խելացնորք, թէ մեք Արեաց առաջի, թուով տառապեալ մարդիկ, այնչափ անթիւ բազմութեան զօրաց, ոչ կարեմք կալ ընդդէմ և կորնչիմք, քաջ տեղեկութեամբ գիտէաք.—բայց ապա զայս ածաք զմտաւ, թէ գաղտ ընաւ յանզգաստից զարհուրեալ գնամք՝ առաւել ևս առուգապէս հաստատեալ ժառանգեմք զանուն վատութեանն որ կայր ի վերայ մեր, թէ մարդիկ, որ այնպէս յետին և անպիտան էին՝ յիրաւի կորեան, և անհետ եղեալ չերևին ուրեք. արդ նոցա լինել ի միջի, աւէրք, և չլինել՝ զնոյն վճարէ։ Ապա ընտրեցաք՝ նախ ծանուցանել զանձինս, և ապա կամ մեռանել և կամ կորնչել։ Եւ եթէ էաք կացեալ միաբանք, և չէաք պառակտեալք և քայքայեալք՝ ծանուցանէաք եկելոցն ի վերայ մեր, թէ արդարև որպէս զԱրի՞ այր եմք, և կամ թէ որպէս զԱսորի։ Բայց զայս նշան մի տամ ձեզ, և փորձեցէք. զի զօրեարն զայն, որ զամ մի Պերոզի յիւրում թագաւորութեանն մոգութեամբ տէր է արարեալ, և այժմ գահ ունին և պատիւ, և յիւրաքանչիւր գաւառի իշխան են, և ձիոյ տէր են և զինու և գնդի՝ հրաման տուք, զի ժողովեսցին միաբան ամենայն իւրեանց այրուձիով. և մեք այս սոյն արք թուով, զոր դուք գիտէք, որոց ոչ գոյ ո՛չ տուն և ոչ ծառայ, ո՛չ գունդ և ոչ տանուտէրութիւն. և դուք որ Արիք էք՝ զձեր օգնութիւն վայր մի ի բաց կալայք, և զաշխարհս Հայոց ի մեզ և ի նոսա թողէք. և որ ոք կարասցէ ի միւսմէն հանել՝ նմա տաջիք, և ձեզ ծառայութիւն արասցէ։*

*«Եւ արդ՝ զի մի բազմաբանութեամբ ձերագալուր ձեր միտս ձանձրացուցից, այլ լսել զօգուտն բազմաց և չասել անհնար է. քանզի յաղագս մեծի աշխարհի են բանքս իմ՝ գիւտի և կամ կորստեան, և հարկ է լիով ասել։ Զի մեք, որ զանձինս ի մահ եդաք և յԱրեաց տեառնէն ի բաց կացաք՝ զայդ երիս ինչ ի ձեռն պատգամաւորացն գրեցի առ քեզ, և դու նոյնպէս գրով երկրորդեալ ի թագաւորէն. մեզ այդ խնդիրք միայն պիտին, և շնորհեցէք մեզ գրով և կնքով ի թագաւորէն։ Զայլ ինչ պարգև, զշքեղութիւն, որ ոք վաստակել մարթասցէ, և տեսանիցէք՝ հայեսջիք և ըստ իւրաքանչիւր արժանաւորութեան հատուսջիք. և մեր*

1 Խարող՝ի մասին ԲԳՑ. ունին ծանօթ. «Գուցէ խորող կամ խարող»։ Թերեւս ուղղելու է (եր. 167, տ. 38) անդամալուծաց, և ապա և որ նոցա խոկ նման մարդ էր։ Բայց (ԼԺ) որ ձեր խարող (?) հացկատակաց ջոկն էր՝ ոչ կորացեալ մտանէր ևւն

13 ԱՑ. կորնչեմք

29 Զ. և դու որ

33 ՏՏ. և քանզի

39 ՏՏ. պարգևի շքեղութ.

ընիկ տեարք էք, և մեք ձեր ընիկ ծառայք եմք. ընկալջիք զմեզ սիրով, և ծառայեցուցէք խնայելով. և զյանցումն, զոր ի բռնութենէ յանցանել ետուք՝ թողութիւն արարեալ շնորհեցէք մեզ»։

ՂԳ. Եւ Նիխորոյ լուեալ զայսպիսի կարգումն բանիցն ի Մամիկոնենէն Վահանայ՝ մեծապէս խնդալից սրտիւ ուրախացեալ ասաց առաջի ատենին, թէ «Զտրտմութիւն մեծ բեկման Արեաց աշխարհին որ եհաս, և զթանձրամած խաւարն որ եհաս և մածեալ նստէր ի վերայ սրտիս իմոյ՝ համարձակապէս և արդար խօսք Վահանայ և նուաճմանս աւետիք փարատեալ զամենայն՝ մխիթարեալ ուրախացուցին զիս»։ Հրամայէր արձակել զատեանն։ «Եւ որ ինչ, ասէ, պէտք են ինձ և Վահանայ այլ ևս բանից՝ խօսիմք օր ըստ օրէ, և աւուրս քանի մի ուրախանամք առ միմեանս»։ Եւ այն օր հրամայէր Նիխոր Վահանայ՝ առ նմա ուրախանալ ամենայն նախարարօքն ուխտակցօքն և բովանդակ գնդաւն որ ընդ նմա էին. բայց զուխտանենգսն ի Հայոց և զուրացողսն հանին արտաքոյ ընթրեացն ամօթալիցս։ Եւ ուրախացեալք այն օր ըստ օրինի մեծապէս ընթրեաց, և հրաժարեալք ի Նիխորոյ՝ գնացին հանգչել ի վանս իւրաքանչիւր։

Եւ ի վաղիւն ժողովեալ ամենայն բազմութիւն մարդկան ի հրապարակն՝ հրաման տայր Նիխոր, մինչդեռ ինքն առանձինն էր, զՄամիկոնեանն Վահան տանել ի ներքս ի սենեակ։ Եւ խօսեցեալ ըստ ժամուն ընդ նմա միայն ընդ միայն զբազում ժամս զպէտս կարևոր իրաց աշխարհի, ըստ իշխանաց հոգողութեան՝ գային երկոքեան ի միասին ի տուն ատենին։ Հրաման տայր Նիխոր ամենայն եկելոցն ընդ Մամիկոնենին Վահանայ, նախարարաց և ռամկաց, մտանել յատեանն առ նոսա, և արանց Պարսիկ աւագաց գալ առ նոսա յատեանն։ Բայց զարսն, որ զինքեանս հաւատարիմս Պարսկացն կացուցանէին, հրաման առեալ նուիրակացն՝ և ոչ ի դուռն մտել տային, ասելով, թէ «Գործոյ ինչ ’դուք չէք իմաստուն բանից, և լսել իսկ չգիտէք. արդ՝ զտեղի ատենին յարժանաւոր առնէ ընդէ՞ր խափանէք. զի թող նստի անդ մարդ այն՝ որ զխօսս աւագացն և զբանս իմաստնոցն լսել գիտէ և օգտել»։

Եւ էր այնուհետև տեսանել յայտնի Աստուծոյ արդարաքննին հատուցումն, սիրելի ուխտակատարացն իւրոց տալ զպարծանս և զհամարձակութիւն, և խաբեբայ ուրացողացն դասու զգեցուցանել զամօթ և զանարգանս. և դայր ի յատկութիւն բան Գրոյն ճշմարտապէս, թէ «Աստուած լոյս է»։ Վասն որոյ ըստ նմին լուսաւորեալ ծագէին և երեսք աստուածասէր պաշտօնէիցն իւրոց ըստ նմանութեան լուսոյն, զոր ընտրեցին ինքեանք և լուսաւորեցան։ Իսկ ի վերայ երեսաց մոխրապաշտացն նոյն կերպարան մոխրոյն իջեալ՝ նստէր ի վերայ ամբարշտացն, որով մերկացեալ դիմօք՝ պատրողական հացկատակացն երևեցան կերպարանք, ցուցակ ստոյգ լի ամօթալից ձաղանօք։ Եւ էին գոյնք ամենեցուն արդարև, ըստ ասացածի եկեղեցական հռետորին, ծիւրեալք, ծնկեալք,

10 ՁԱՑ. պէտք են ինչ և վահանայ | 30 Չ. զխօս | 40 ԲԳՑ. գոյն
11 ՑՑ. յաւուրս | 31 ԱՑ. արդարաքննեն | 41 «ծուխբիւռ, յեկեղ. Պաշ, զուրացողաց ոմանց»: (Ծանօթ. ԲԳՑ.)
21 Դամ ըստ Չ. ի բազում | 35 Ա. Յովհ. Ա, 5
| 40 Չ. ստոյք

երիթացեալք, պատկերի նմանեալք. զորս արդարև յայտ յանդիման առաջի երբեմն գերչացն խայտառակեալ նշաւակեաց խաչելութիւնն Քրիստոսի։ Եւ կատարեալ առ նոսա ելանէր ի գլուխ բան սաղմոսերգին. «Ոչ այսպէս են ամբարիշտք և ոչ այնպէս», որպէս էին թշուառացեալք և ողորմելի մարդիկն այն, որոց ատրուշանն շնորհ չունէր, և յեկեղեցւոյ սրբոյ անձամբ մերժեալ արտաքս ընկեցան։ Ժողովեալ նստէին առ միմեանս ապշեալք, քամակարեկք, զարթուցեալք որպէս յերազոյ ցնորից գիշերոյ։ Եւ ընդ Աստուծոյ զօրութեան գործ զարհուրեալ ապշէին՝ փութանակի և յանկարծ առնել զնոսա այնպէս դժմիտս և ձաղադէմս առաջի սիրելեացն իւրեանց. ցանկային բազում գնոց առնուլ, թէ գոյր հնար, զապստամբութեանն անուն, և ոչ ոք տայր նոցա։ Վասն զի որ ոք յայնպիսի անծանօթիցն կամէր երբէք մտանել յատեանն՝ ի բազմութեան ասէր ցնուիրակսն, թէ «Ցապստամբացն գնդէն եմ», և վաղվաղակի թողուին ի ներքս. այլ ոչ ոք տայր մօտել ի դուրս ատենին, և ոչ լսել զխօսս իշխանացն որ զինչ խօսէին։ Ցայնժամ յայտնի տեսանէր յստակ ակն խորհրդոյ ճշմարտասիրացն զպայծառարար յաջողութեան ճախրումն զսրբոյն Գրիգորի, ամենայն ճգնազգեցիկ ընկերովքն իւրովք, ի վերայ յերկարահամբեր ուխտապահացն բանակին, որ զամենայն երեսս Պարսիկ մարդկանն և զայլսն՝ ահիւ և խնդութեամբ հայեցուցանէր ի Մամիկոնեանն Վահան. որում տայր Քրիստոս իմաստ շնորհալից պատրաստաբան, աջողակ ի գիւտ խոհականութեան, ձայնարձակութիւն պատուեալ խօսիւք. և կատարեալ ելանէր ի գլուխ բան Փրկչին Քրիստոսի, գրեալն յԱւետարանն. «Ոչ եթէ դուք լիցէք որ խօսիցիք, ասէ, այլ Հոգին Հօր ձերոյ, որ խօսիցի ի ձեզ»։

Եւ երկրորդեալ յատենին զնոյն բանս Մամիկոնենին Վահանայ՝ սկսանէր միւսանգամ խօսել ընդ Նիխորոյ և ասէր. «Ցաղագս իւրաքանչիւր ուրուք խնդրոյ և օգտի, որ այժմ աստ են առաջի ձեր նախարարք և ազատք և այլք յոստանիկ մարդկանէ և յայրուձիոյ որերոյ՝ ճանաչող էք և կարող, և գիտէք հաստուցանել զարժանն. բայց ես և որ ընդ իս ուխտապահ նախարարքն են, զոր ինչ խնդրեցաք ի քէն պատգամաւորօք և գրելովքն, զոր և երէկ և այսօր դէմ յանդիման խօսեցայ ընդ քեզ, և դու հրամանաւ Արեաց տեառնն և հրամանաւ ամենայն աւագանւոյ դրանն գրով և կնքով խոստացար տալ մեզ, առանց որոյ անհնար է կեալ մեզ և ծառայութիւն առնել ձեզ.— հաւատոյ քրիստոնէութեան հաստատութիւն, մոգութեան և ատրուշանաց յաշխարհէս Հայոց բարձումն, զեկեղեցւոյ ըստ մեր կամաց զպայծառութիւն և զպաշտօն,— այդ որ կարևոր է մեզ և հարկաւորապէս պիտոյի՝ կնքով թագաւորին հաստատեա մեզ. և այլ զոր ինչ գրեալ է ի նամակին՝ գիտես զամենայն, և ոչ ինչ է պիտոյ բազմաբանել առաջի քո։ Բայց յաղագս գահու և պատուոյ և շքեղութեան, հայելով յիւրաքանչիւր ուրուք վաստակս՝ տաջիք անհոգութեամբ և մի զրկիցէք»։

2 Չ. գերչայց իւրեանց
Չ. սրբոյն զԳրիգորի
4 Սաղմ. Ա, 4
5 ՑՑ. չիք այն
17 ՑՑ. սրբոյն Գրիգորի։
17 Չ. ընկերքն իւրովք
23 ԲԳՑ. չիք ասէ
24 Մատթ. Ժ, 20
31 ՁԱՑ. էրէկ
35 Չ. հոգութեան և
37 Չ. զպաշտօնայդ
38 Չ. զայլ որ ինչ

*ՂԴ. Եւ զայս ամենայն խօսեցեալ Մամիկոնենին Վահանայ՝ սիրով լսէր զամենայն Նիխոր, և ախորժելով յանձն առնոյր։ Խնդրէր Նիխոր ի Վահանայ զընիկ Հայոց զայրուձին. «Կազմեա, ասէ, փութով և արձակեա ի դուռն. քանզի Զարեհ որդի Պերոզի, ընդդիմացեալ Արեաց արարուածի՝ գունդ դեռ կազմէր ի կորուստ անձին իւրոյ և հաւանելոցն ընդ իւր. և դու փութա արձակել զՀայ այրեձի, որ նախ քան զքո երթալն ի դուռն՝ և սպաս մի քո մեծ ծանուցանի արալուածքդ առաջի թագաւորին և ամենայն Արեաց։ Վասն զի և ինձ հրաման եւտ թագաւորն՝ վաղվաղակի մտանել ի դուռն. վասն զի ասաուածք զայս իրս յաջող և բարեբարութեամբ վճարեցին, զի ևս առաւել վաղագոյն երթամ անդր, ի դէպ է և պատշաճ»։ Եւ ուրախացեալ Նիխորոյ և Մամիկոնեանն Վահանայ առ միմեանս ոչ բազում ինչ աւուրս՝ կազմէր ստիպով գործոյն պիտոյից։ Հրաժարեալք ի միմեանց՝ չուէին խաղաղութեամբ, Նիխոր առ թագաւորն ի դուռն, և զօրավարն Հայոց Մամիկոնեանն Վահան ի Դուին։*

*Եւ հասեալք յեզր գետոյն սաստկապէս ըստ ժամանակի իւրոյ պղտորութեանն, և զկամուրջն Արտաշատու գտին աւերեալ. և էր ինչ որ ի տեղեացն բնակչացն, և էր ինչ որ ի սաստկութեննէն ջուրցն դիմեցմանց. և տարակուսեալ զօրքն՝ խնդրէին տեղիս անցի, և ոչ գտանէին. և փորձելով ոմանց զբազում տեղիս՝ ընկղմեալք ի ջուրսն, և հազիւ գտեալ անդրէն ելս ապրէին։ Իսկ քաջ զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան մերձեալ ի տեղի մի յեզր գետոյն, և տեառնագրեալ զինքն նշանաւ խաչին սրբոյ կենսատուի՝ իջանէր ի գետն, և որպէս ընդ յոյժ տեղի ծանծաղ՝ անցանէր խաղաղութեամբ ընդ ջուրսն, որ և տեղին ամենայն գնդին լինէր ճանապարհ անցից անհոգութեամբ։ Եւ լինէր այս նշան մեծ յայտնի, որ և առ ոյժ կացաձի արանց լինէր անցանել դիւրաւ ըստ կամի և ամենայն այրեձիոյն. ի ճշմարիտ հիմնացեալ հաւատոյն քաջ զօրավարին Հայոց Վահանայ՝ լինէր նշան որպէս Իսրայէլեան ժողովրդոցն՝ յանցանելն իւրեանց ընդ Յորդանան։ Եւ ապա մտեալ յոստանն ի Դուին, և զշնորհակալութեան զպատարագն մատուցեալ Աստուծոյ արժանաւորապէս, և նախ զաղքատացն ողորմածութեամբ ըստ սովորութեան կատարեալ զտուրս՝ ուրախանային և ինքեանք ըստ Աստուծոյ հաճոյիցն խնդալից սրտիւ։*

*Եւ կազմեալ Մամիկոնենին Վահանայ զայրեձին Հայոց՝ արձակէր ի դուռն, կարգեալ զգունդն ի ձեռն Վրենայ Վանանդացւոյ. ընդ որս կազմեալ արձակէր և զիւր եղբօրորդի մի, զորդին Նահատակին Վասակայ զԳրիգոր։ Որոց հասեալ ի դուռն ժամանք՝ երթային պատրաստութեան գործոյ պատերազմին, և հարեալք ի դիմի միմեանց գունդքն երկոքեան, և մատնեալ ի պարտութիւն գունդն Զարեհի՝ փախստական լինէին, և բազում վիրաւորք անկեալ յերկիր կործանէին։ Անդ քաջացեալ հայրա-*

11 Գտ. պատշաճ։ Ուրախ...
11 Զ. վահան
12 ԶԱտ. կամէր ստիպով։ Այսպ. ըստ ուղղագր. ԲԳտ.
14 ԶԱտ. այստեղ են զետեղում «Եւ կազմեալ Մամիկոնենին Վահանայ... փողոտէին յանխնայ» հատուածը (տ. 33—էջ 172, տ. 6)։ Այսպ. ըստ դասաւորութեան ԲԳտ.
16 Զ. գետին
18 Զ. *տարակուսեալ
25 Զ. որ և առ յոյժ կացայցէ արանց? ԲԳտ. առ ոյժ'ի մասին ունին ծանօթ. «զուցէ անոյժ»
25 Զ. *անցանել

նման սեպուհն Մամիկոնէից Գրիգոր, ցուցեալ մեծ քաջութիւն՝ յայտնի լինէր զօրավարին և զօրացն ամենեցուն, և հաչակեալ նորա լաւութեան անուն՝ հասանէր մինչ ի թագաւորն Վաղարշ։ Լաւացեալ և սեպուհն Վանանդացի Վրէն, գործ երևեցուցեալ քաջանայր։ Իսկ Զարեհն փախուցեալ ի լեռնակողմն տեղիս ամրանայր. զոր ձերբակալ արարին և ածին ի հրապարակն արքունի, և անդ նման անսանոյ փողոտէին յանխնայ։

ՂԸ. Եւ յետ սակաւ աւուրց ստիպով ժողովեալ Մամիկոնենին Վահանայ զայրուձին Հայոց, և ինքն և ամենայն ուխտակից նախարարքն ընդ նմա՝ չուեալ գնայր առ թագաւորն Վաղարշ. և գնացեալք ըստ պատեհի աւուրց օթևանաց ճանապարհին՝ երթեալ հասանէր ի դուռն։ Եւ լուեալ թագաւորին և ամենայն Արեաց աւագանւոյն զերթմն Վահանայ ի դուռն, փափագակի և ճեպով ժամ արարեալ՝ յանդիման լինէր թագաւորին և ամենայն Արեաց աւագանւոյն։ Եւ ածեալ զմտաւ զճանապարհորդութեանն աշխատութիւն թագաւորին Վաղարշու զՄամիկոնենին Վահանայ՝ միայն ստէպ սիրով հարցեալ զողջոյն ուրախանայր, այլ ոչ ինչ աւելի քան զայն հարցանէր զնա այն օր։ Եւ ի վաղիւն ժողովեալ ամենայն աւագանի դրանն արքունի և այլ ամենայն բազմութիւն Արեացն՝ և լինէր խորան մեծ, լցեալ սաստիկ որերով։

Սկսանէր խօսել թագաւորն Վաղարշ ընդ Մամիկոնենին Վահանայ. «Լուաք, ասէ, լիով զամենայն խօսեցեալսն ընդ Նիխորոյ, զոր ինչ պատգամաւորօք էիր ասացեալ, և զոր ինչ նամակաւ, և զոր ինչ դէմ յանդիման քո և նորա խօսեցեալ էր ընդ միմեանս՝ պատմեաց մեզ. և ոչ էր քո ստեալ ի բանիցն զոր խօսեցեալ էր՝ և ոչ բան մի։ Վասն զի Պերոզի իմ եղբօրն անձնահաճութիւն կամացն և անհաւանութիւն խորհրդոյն և անլսողութիւն ումեք և ամբարտաւանութիւն եթէ զքեզ միայն էր կորուսեալ յԱրեաց՝ թեթև ինչ էր վնասն. ծառայ մի կորնչէիր, որում թերևս փոխանակ գտանէր. բայց նա իւրով հպարտութեամբն այնչափ անթիւ բազմութիւն լաւ որերոյ կորոյս, որոց այսօր փոխանակ չիք. յետոյ ապա և զինքն կորոյս և զորդիս իւր և զկանայս։ Արդ՝ եթէ դու եղեալ ես պատճառ քո կորստեանդ և այնչափ բազմութեանն որ կորեան ընդ քո ձեռն՝ դու այսօր հարցման արժանի էիր, և պատուհասի և չարաչար մահու. բայց իբրև այլ է պատճառ ամենայն գործոյդ այդմ և կորստեան, զոր դու գործեցեր՝ զքեզ ընդ այլոյ բռնութեան և վնասու պատուհասել կարի ծանր է, և օրէնք մեր չհրամայեն։ Քանզի այդ գործ, զոր դուդ կարացեր գործել՝ առ Պերոզի արհամարհոտ և կամակոր բարուցն՝ բազումք խորհէին յԱրիս գործել, բայց չեղեն ձեռնհաս. զի չկարացին զանձինս ի մահ տալ այդպէս աներկիւղ՝ որպէս դուքդ եւոուք, քաղցր համարելով զկենցաղոյս տեսիլ. բայց դուք ընաւ առ ոչինչ համարելով զայս աշխարհ՝ քաջաբար մեռանել որք մեռանն, և ես առաւել քաջարար կեցայք, որ ապրեցայքդ և ի միջի էք։ Այլ երանի

1 Զ. մամիկոնենից | 18 Զ. աւերով | 31 Զ. պատուհասի
4 Գամ գործ երևելի ցուցեալ (ըստ Բ. Ն.) | 21 Զ. զոր դէմ յանդիման | 32 ԶԱՑ. գործեցդ։ Այսպէս ըստ ուղղագր. ԲԳՑ.
8 ՏՏ. զայրեւզձին | 25 ԱՑ. ամբարտաւանու-թիւն | 36 Զ. ձեռնհաս
16 ՏՏ. և վաղիւն | 29 ՏՏ. չիք իւր |

թէ և այլ որերոյն, զորս ի զուրն տարաւ կորոյս Պերոզ՝ կարացեալ էր առնել զայդպիսի քաջասրտութիւն, զոր դուքդ արարէք, և թերևս այսօր կենդանի էին իբրև զձեզդ և ի միջի և առ մեզ»։

Եւ պատասխանի տուեալ Մամիկոնենին Վահանայ թագաւորին Վաղարշու, առաջի ամենայն բազմութեանն՝ ասէ. «Խօսել առաջի Աստուծոյ և առաջի ձեր թագաւորաց երկայն բանիւք՝ չէ արժան։ Քանզի ես զամենայն զխօսս մեր և զխնդիր և զհամարձակութիւն գործոյն, դնել զանձինս ի մահ, ցուցի ձեզ և ամենայն դրանն աւագանւոյ ի ձեռն Նիխորոյ գրով և կնքով. զնոյն բազում անգամ ասել՝ յերկարումն է խօսից և ձանձրութիւն։ Վասն զի զկամս և զանհաւան բնութիւն, զոր ասացէք դուք զեղբօրէն ձերմէ զՊերոզէ՝ շատ էր և առն թագաւորի անպատշաճ։ Բայց ի յայլ ոք արդեօք, յոր լինէր ի նմանէ բնութիւն՝ տամբ էր արդեօք և կամ կենօք և կամ պատուհասիւ ինչ այլով. իսկ զմեզ՝ հոգւովք հարկանէիք. որում կարեաց և վտանգի ոչ մեր նախնիքն և ոչ մեք առաջի չկարացաք կալ։ Եւ հանապազ բողոքեալք և բողոքեմք, եթէ սուտ թուին մեզ օրէնքդ ձեր, և մարդոց անմտաց բարբանջմունք են. և մի բռնադատէք զմեզ թշնամանել՝ զոր կամաւ և խորհրդով պատուել ոչ կարեմք և ոչ սիրել, զի ծաղր թուին մեզ և չհաւատամք. և իշխանաբար և ըստ բռնութեան չլսեալ բողոքոյն մերոյ՝ և կամէիք կորուսանել զմեզ, և կորուսաք։ Քանզի օրէնք մեր զսրբութիւն խնդրեն, և զամենայն աղտեղութիւն, որով հոգիք մարդոյ կորնչին՝ չառնուն յանձն և չկամին. և տերանց հրամայեն ծառայել և հնազանդ լինել, որպէս Աստուծոյ։ Եւ արդ ա՛ղէ ցուցէք այր մի որ ի Պերոզէ արքայից արքայէ, որ զձեր օրէնս կատարեալ է և պատուեալ են, թէ վասն պիտոյութեան և կամ ի կռուի վաստակ և գործ ցուցանելոյ գտեալ է։ Վասն զի ձեր Արեաց զօրագլուխք բազում եղեալ ի տեղիս տեղիս, ասասցեն զմիոյ ուրուք ի դոցանէ զերևելի գործ ինչ, զոր նոցա արարեալ է և ձեր զօրագլխաց տեսեալ, և վասն այնպիսի վաստակոյ նոցա՝ ձեր հատուցումն արարեալ է։ Իսկ զաղտեղի գործս նոցա և զմահապարտութիւն յայտնապէս գիտեն զաւառակիցք նոցա և այլ մարդիկ աշխարհին Հայոց, թէ ո՛րպիսի մարդիկ են, լի ամենայն աղտեղութեամբք, սուտք, անպիտանք, աղտեզագործք, գազտաշուրջք, գողք, լեառնախոյզք, գերեզմանակրկիտք, խաբեբայք. և ընդ որս կրսեր շինականք մարդիկ աշխարհին Հայոց հաց գարշէին ուտել ընդ նոսա, և կամ բնաւ ի մօտ իսկ երթալ առ նոսա, զի մի՛ պղծիցին զուցէ ըստ հրամանի օրինաց մերոց՝ զայրն ի ձէնջ խարէութեամբ զձեր օրէնսդ ունէին, և ըստ կամի աղտեղեալ զկրակն՝ զձեզ առ անմիտս ունէին։

«Ցաղագս որոյ համարձակապէս ձայնիւ բարբառով առաջի ձեր ասեմ այսօր. ի բա՛ց բարձէք զխաբէութեան զվաճառդ զայդ յաշխարհէն

2 ՏՏ. զորս դուք
11 Զ. բանութիւն
11 Զ. զեղբօրէն ձեր մեզ պերոզէ
12 Զ. և անպատշաճ
16 Զ. մարդոյ
18 ՏՏ. կամաւ խորհրդով
19 Զ. չլսել
23 Տես Եփես. Զ, 5
23 ՏՏ. որ Պերոզէ արքայից արքայէ։ Զ. ի պերոզէ։ Թուի ուղղելի ցուցէք այր մի, որ զձեր օրէնս կատարեալ է և (որ) ի Պերոզէ արքայից արքայէ պատուեալ՝ եթէ
31 Աs. մարդիկք.. մարդիկք
33 ՏՏ. լեռնախոյզք

Հայոց, զոր չունիմք առ արդարս, և չպատուէ ոք իբրև Աստուած։ Այլ յետինն զառաջինն, վատքն զլաւն, և անպիտանն զպիտանին, և որդի ստամբակ զհայր, և ծառայ չարագործ զտէր իւր, յորժամ ի յետս տանել (կամի) կամ կորուսանել՝ զձեր սուտ օրէնսդ ի ձեռն առեալ՝ զամենայն չարիս զոր և կամի գործել՝ դովաւ վճարէ։ Բայց ա՛ղէ, դո՛ւք ի մէնջ որպէս ի ծառայից զձեր տերանց զպատիւն խնդրեցէք, զգործ և զվաստակ և զհպատակութիւն, զօգուտ, զարդարմտութիւն, և աստուածաբար անզրկող մտօք զիւրաքանչիւր մարդոյ ըստ իւրաքանչիւր վաստակոյ զարժանն հատուցէք։ Մեր ամենեցուն այդ բանք են և այդ խնդիր. եթէ շնորհեալ հաստատէք զխնդիրդ զայդ մեզ, և ի ծառայութենէ ձերմէ զմեզ ի բաց չկամիք հանել՝ որպէս օրէնքն են Թագաւորաց՝ գրով և կնքով զայդ մեզ հաստատուն արարէք, և ի մէնջ որպէս ի ծառայ որերոյ գործ խնդրեցէք և հպատակութիւն. և ձեր մտացի և ամենահայեաց ակամբ հայեցարո՛ւք յայր և ի գործ նորուն և հատուցէ՛ք զարժանն»։

Եւ խօսեցեալ զայս ամենայն բանս Մամիկոնենին Վահանայ առաջի Թագաւորին Վազարշու և առաջի ամենայն աւագանւոյ դրանն՝ և բարձր ձայնիւ գովեցին ամենեքեան և առ լաւս կալան, զարմացեալ ամենեքեան ընդ իմաստութիւնն Մամիկոնենին և ընդ շնորհ աջողութեանն բանիցն որ ելանէին ի բերանոյ նորա։ Քանզի ոչ միայն հաւատացելոցն, այլ և անհաւատիցն երևէր բղխումն պարգևեալ յԱստուծոյ բանիցն առն Մամիկոնենի, որ ախորժակ քաղցրութեամբ լսելի լինէր յականջս ամենեցուն։

Որում պատասխանի տուեալ Թագաւորին Վաղարշու՝ ասէր զՄամիկոնեանն Վահան և զամենայն հայ նախարարսն ուխտակիցս Մամիկոնենին. «Եւ զամենայն զոր ինչ խորհեալ է ձեր և իմացեալ, և խօսեցաւ առաջի մեր ձեր Վահանն՝ տուեալ եղիցի ձեզ մեր գրով և կնքով զամենայն խնդիրդ ձեր այսօր մինչև ցյաւիտեանս։ Եւ զգործս ապստամբութեանդ, զոր ի բռնութենէն Պերոզի, և ոչ ի ձեր կամաց գործեցէք՝ թողեալ լիցի ձեզ այսօր, և մի՛ ոք իշխեսցէ ի Թագաւորաց որ զայս գահ ունին, և կամ Արի այր՝ յիշել զայդ կամ առանձինն յիւրեանց խօսս և կամ առաջի առն Հայոյ յայսմ հետէ մինչև յաւիտեան։ Բայց դուք հպատակութիւն, զոր արժան է ծառայից առ տեարս առնել՝ հատուցէք առ մեզ լիով և կատարեցէք»։ Եւ զայս ասացեալ արձակեցին զատեանն։

ՂԶ. Իսկ ի վաղիւն խորհեալ աւագանւոյ դրանն Թագաւորին Վաղարշու, զոր գիտէին թէ և նա ինքն կարի սիրով ախորժէ և կամի լսել և առնել, տալ Մամիկոնենին Վահանայ զտէրութիւն Մամիկոնենից և զսպարապետութիւնն Հայոց՛. և Թագաւորն կամաւ և սիրով յանձն առեալ՝ ծանուցանէին Մամիկոնենին Վահանայ զկամս Թագաւորին Վաղարշու, միաբանութեամբ դրանն աւագանւոյ։ Եւ Մամիկոնենին

1 Թերեւս և չպատուեմք իբրև.
4 288. ի յետս տանել կամ կորուսանել
4 88. և զձեր սուտ
6 ԲԳ8. խնդրէ՛ք
8 2. և անզրկող
10 88. հաստատեալ
17 2. ամենեքին
24 2. յամենայն
26 2. մեր ձեզ գրով
29 88. Թողեալ եղէ
30 2Ա8. իշխել զայդ։ Այսպէս ըստ ուղղագր. ԲԳ8.
37 2. զսպարապետութիւնն Հայոց տոհմին կալեալ էր մամիկոնենից զաշխարհին Հայոց

Վահանայ պատասխանի արարեալ ասէր. «Ընդդիմանալ կամացն ձերոց և հրամանին՝ չունիմ իշխանութիւն, և յիս կողմն կամք ձեր և արարուած կարի մեծ է և առաւել։ Բայց կամէի այսպէս, թէ սակաւ մի գործ ցուցանէի և սպաս, որով ձեզ ըստ արժանի հաճոյ եղեալ՝ հայէիք ի վերայ, և ապա որ ինչ թուէր ձեզ և կամէիք առնել՝ առնէիք. բայց առ այս նուազ՝ կամէի թէ ներէիք ինձ»։

Եւ թագաւորին և ամենայն Արեաց աւագանւոյն լռեցուցեալ զբանս Մամիկոնենին Վահանայ՝ բազմեցուցանէին զնա ի գահու տէրութեանն Մամիկոնէից, տուեալ ցնա, ըստ օրինի նախնեաց իւրոց, և զսպարապետութիւն Հայոց աշխարհին։ Շնորհէին և այլոց ուխտապահ նախարարացն Հայոց, որք ի միաբանութեանն էին ընդ տեառն Մամիկոնենից և սպարապետին Հայոց Վահանայ, իւրաքանչիւր ումեք ի ժամուն՝ որ ինչ պէտք էին պատշաճ ըստ անձին արժանաւորութեան։ Եւ ընկալեալ զամենեսին թագաւորին Վաղարշու և ամենայն աւագանւոյն լի սիրով և կամաւոր պատուով ի հրաժեշտի կացուցանէին երթալ խաղաղութեամբ յաշխարհն Հայոց։

Եւ եկեալ տէրն Մամիկոնենից և սպարապետն Հայոց Վահան հրաժարել ի թագաւորէն Արեաց Վաղարշու և յամենայն դրանն աւագանւոյն՝ հարցանէր թագաւորն Վաղարշ զնա և ասէր. «Վահան սպարապետ Հայոց, զո՞հ ես զմէնջ, քա՞ջ կալաք, թէ պիտի և այլ ևս ինչ. ասա»։ Եւ զօրավարին Հայոց տեառն Մամիկոնենից Վահանայ պատասխանի տուեալ՝ ասէր ցթագաւորն Վաղարշ. «Զոր ինչ ձեր բարերարութիւնդ առ մեզ արար՝ բայց Աստուածն, որ ամենեցուն արարիչն է և զամենայն մարդոյ կամի զբարի և զօգուտ, նմա միայն հնար և վայելուչ էր առնել զայդ առ մարդ, զոր և դուք առ մեզ անարժան ծառայիցս արարէք. այլ մարդոյ մահկանացուի անհնար էր։ Քանզի զմեղսն թողէք, զահ և պատիւ տուեալ մեծարեցէք, մեռելութեան յարուցիչ եղայք, զգլորեալ և ղկորուսեալ աշխարհ մի գտեալ կանգնեցէք։ Բայց որովհետև հարցէք և համարձակեցուցէք զարդարն ասել՝ որպէս եղէք աստուածաբար կենդանացուցիչ մեռելութեանս իմոյ, և յարուցեալ ի միջի արարէք՝ կամէի, թէ զբովանդակ անձնս յարուցեալ էր, և ոչ զկէսս. վասն զի զկէսս մեռեալ տեսանեմ դեռ»։ Եւ թագաւորին Վաղարշու հարցեալ ասէր. «Աղէ, յայտնապէս ծանո՛ մեզ զպէտս բանիդ, զի գիտասցուք»։ Եւ սպարապետին Հայոց տեառն Վահանայ Մամիկոնէից ասացեալ. «Զի թէ էր և հնար էր շնորհել ձեզ զտանուտէրութիւնն Կամսարականին՝ ապա բովանդակապէս շնորհեալ ի ձէնջ՝ տեսանէի զմեռելութիւն ամենայն անդամոցս կենդանացեալ։

Եւ թագաւորին Վաղարշու պատասխանի արարեալ սպարապետին Հայոց տեառն Մամիկոնենից Վահանայ՝ ասէր. «Յաղագս ոչ կարի տրտմեցուցանելոյ զքեզ ի ժամուս, և դարձեալ՝ վասն զի նախ և առաջին դայդ պարգև խնդրեցեր ի մէնջ՝ եղիցի վասն քո տուեալ զտէրութիւն

15 ՁԱց. ի հրաժեշտ
18 ՁՑՑ. հրաժարեալ։ Այսպէս ըստ Ն. Բ.
20 Ձ. քաջ կալոք..., ասայ. և զօրավարն
27 Ձ. եղաք
30 ՁՑՑ. և յարուցեալ իմ ի միջի արարէք։ Այսպէս ըստ Ն. Բ.
33 Ձ. ծանոյ
34 Ձ. մամիկոնենից
39 ՑՑ. չիք Վահանայ

Կամսարականին։ Իսկ յաղագս տէրութեանն Արծրունեաց թող վայր մի, զի գիտասցեն մարդիկն [թէ] որ ի տոհմէն են, սպաս ինչ արժանաւորապէս ցուցանել առ մեզ և վաստակս ինչ յօգուտ Արեաց աշխարհիս վաստակել. հայեսցուք ապա և մեք յարժանն։ Բայց դու այժմու ի մէնջ պարգևիդ գոհ լեր, և ջանա ամենայն ուժով տիրասէր լինել յայսմ հետէ և արդարամիտ և աշխարհաշէն. և երթ բարեաւ ի քո ընտանիս և յաշխարհն. և հասելոյ երբէք ի մէնջ հրամանի կազմ կաց և պատրաստ»։

ՂՀ. Եւ հրաժարեալ Թագաւորին Վազարշու զսպարապետն Հայոց զտէրն Մամիկոնէից զՎահան և զամենայն նախարարս Հայոց՝ արձակէր խաղաղութեամբ։ Եւ եկեալ զօրավարն Հայոց տէրն Մամիկոնենից Վահան յաշխարհս Հայոց, ամենայն ուխտապահ նախարարօքն Հայոց. որում ընդ առաջ ելանէր սուրբ այրն Աստուծոյ կաթողիկոսն Հայոց Յոհան, պատուական նշանաւ խաչին և սուրբ նշխարօք ճգնազգեաց նահատակին Գրիգորի, որովք և յուղարկեացն իսկ ի դուռն զամենեսեան։ Եւ պատահեալ սրբոյն Յոհաննու կաթողիկոսին զօրավարին Հայոց տեառն Մամիկոնենից Վահանայ և այլ նախարարացն Հայոց որ ընդ նմա և ամենայն զօրուն բազմութեանն՝ ողջունէր զնոսա օրհնութեան համբուրիւ, և ասէր ուրախալից սրտիւ. «Ծնծասցէ անձն իմ ի Տէր, զի զճգնեալ որդւոց եկեղեցւոյ իւրոյ ջնջեաց զքիրտն, որ վասն անուանն Քրիստոսի քրտնեցան. հանգոյց զաշխատութիւնն, մաքրեաց զաղտ զինուցն, լուայ զոգիսն հաւատարմացդ ուխտապահութեան ջրովն, և զգեցոյց ամենեցուն հանդերձ փրկութեան և պատմուճան ուրախութեան. և որպէս փեսայից եդ պսակս, և որպէս հարսն արքայութեան իւրոյ զարդարեաց զձեզ զարդու։ Շնորհեսցէ բարեխօսութեամբ սրբոց իւրոց՝ զարգարել զձեզ և այնու զարդու, որով զարդարին առաքեալքն և մարգարէքն յաւուրն Քրիստոսի. զորոյ զարդու պայծառութեան տեսչութիւն, զոր ակն ոչ ետես, և ունկն ոչ լուաւ, և ի սիրտ մարդոյ ոչ անկաւ, զոր պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց»։

Եւ ասացեալ զայս ամենայն սրբոյ կաթողիկոսին, և օրհնեալ զամենեսեան՝ նախ գային ի քաղաքն Վաղարշապատ որ այժմ անուանի Նոր քաղաք։ Եւ ըստ սովորութեան իւրում սպարապետն Հայոց Վահան, ուխտակից նախարարօքն Հայոց որ ընդ նմա էին՝ կային անդ աւուրս, և կատարէին զուխտս և զնուէրս ի սուրբ եկեղեցւոջն Կաթողիկէի, և ապա յիւրաքանչիւր տեղիս նահատակելոց կուսանաց, և հոգացեալ նախ զպէտս դարմանոյ աղքատացն՝ լցեալք կատարէին։ Գային միաբան ամենայն նախարարքն Հայոց և այլ բազմութիւն՝ զամենայն օր մեծապէս ցնծութեամբ, սաղմոսիւք և ճառիւք հոգևոր վարդապետաց եկեղեցւոյ սրբոյ. ուրախ լինէին զուարճացեալք առ զօրավարին Հայոց տեառնն Մամիկոնէից Վահանայ և առ միմեանս։ Եւ կացեալ անդ աւուրս՝ ապա չուեալ զօրավարին Հայոց տեառն Մամիկոնէից Վահանայ՝ գայր մտանէր ամենայն Հայոց բազմութեամբն ի բուն ոստանն Հայոց ի Դուին, օրհնելով և փառաւորելով զսուրբ Երրորդութեանն զօրութիւնն։

5 Հ. ջանայ

8 Հ. յուսանցում ունի վահան Թագաւորէ

24 Տես Ես. ԿԱ, 10

28 Ա. Կորնթ. Բ. 8

31 Հ. Նոր քաղաք։ Օրհնեալ է աստուած

41 ՀԱց. ոստանն ի Դուին (Աց. ի դուին) Հայոց

ՂԸ. Ցայնժամ գայ յերկիրս Հայոց մարզպան, որում անուն էր Անդեկան, այր խելացի, մտադիր, իմաստահայեաց, որ գիտէր ճանաչողութեամբ որոշել զիմաստունն յանմտէն և զլաւն ի վատթարէն։ Որոյ տեսեալ օր ըստ օրէ զօրավարին Հայոց զտեառնն Մամիկոնենից Վահանայ զիմաստից զառաջատեսութիւն, զարդարախոհութիւն, զաշխարհահոգութիւն, զքաջութիւն սրտի, զդիպողութիւն պատշաճ յամենայն իրս, ի բնաւի զյառաջադիմութիւն, տեսանէր և զայն, թէ յոր գործ և յօժարեցուցանէր զինքն, թէպէտ և կարի ի դժուարինսն՝ Տէր յաջողէր ի ձեռս նորա, և ամենայն դիւրաւ վճարի և անաշխատութեամբ։ Եւ ընդ այսչափ աստուածատուր իմաստուն աջողութիւնս, որ բնակեալ էին ի զօրավարին Հայոց տեառնն Մամիկոնենից Վահանայ, զամենայն օր ըստ օրէ տեսանելով Անդեկանն և զմտաւ ածելով՝ զարմանայր ի միտս իւր ի ծածուկ և ըստ բարեսէր մտաց իւրոց ուրախանայր։

Սիրէր զնոյն Անդեկանն, և ի դուռն ամենայն աւագանւոյն դրանն ստէպ և իւրոց սիրելեաց զիմաստալից միտսն առնն ծանուցանէր, տայր գիտել և Թագաւորին Վաղարշու լիով զամենայն։ Ճանապարհորդեալ յաշխարհէս Հայոց և ինքն Անդեկանն ի դուռնն՝ զամենայն աջողութիւնս զօրավարին Հայոց զտեառնն Մամիկոնէից Վահանայ (խօսէր) ընդ Թագաւորին Վաղարշու, առաջի ամենայն դրանն աւագանւոյն, յոյժ զարմանալով, թէ «Եւ յամենայն այդպիսի լաւ իմաստունս, զոր իմ առ ձեզ բազում անգամ գրեալ էր և այժմ ինձէն ասացի, առաւելապէս և օր քան զօր լինէր տեսանել աճեցեալ, և ոչ փոքր ինչ երբէք նուազեալ ի նմանէ զնոյն յառաջադիմութիւն։ Ցաղագս որոյ համարձակիմ առաջի ձեր ասել յայտնապէս, թէ աւելի ձեզ և անդէպ՝ այլ մարզպան կացուցանել։ Քանզի այլ մարզպան որ երթայ յաշխարհն Հայոց՝ նախ և առաջին զայն խրատ չունի՝ զոր այրն այն ունի. զի յիմ անձին այնչափ շնորհ և աջողակ խորհրդականութիւն բնակեալ, բայց ի ձէնջ, որ աստուածանմանքդ էք և քան զմարդկային բնութիւնս ի վեր. այլ ոք ի մարդկանէ, համարձակապէս ասեմ, թէ սակաւ ոք է որ համեմատ է նմա։

«Եւ դարձեալ՝ օտար մարզպանն որ երթայ յաշխարհն Հայոց՝ աշխարհն մեծ է, յամս երկուս և երիս հազիւ կարէ ճանաչել նախ զիրս աշխարհին, զդիւրն և զդժուարն, ապա զմարդիկ աշխարհին, զլաւսն և զվատթարսն, զապիրատսն և զպիտանիսն, և վարելով ըստ անգիտութեան խառն ի խուռն՝ ոգւոց շատ ծանր լինի։ Իսկ նա, զի բնիկ ի յաշխարհէն է՝ զամենեսեան ի յականէ ճանաչէ, և զլաւսն առ լաւս ունի և զանպիտանս առ յետինս։ Առաւել ևս որ լինի յերացն, զոր ես ասեմ ձեզ. մարզպանն պարսիկ որ երթայ յաշխարհն՝ կնաւ երթայ և որդւովք, զլամբ և սիրելովք, ծառայիւք և աղախնեօք. և այնք ամենեքեան թէ զԱրեաց տեառն զոճիկ ուտեն՝ չէ սակաւ ծախսն, և թէ զաշխարհին

4 Զ. զօրավարն
9 ԶԶ. ի ձեռն
15 ԶԶ. ծանուցանէր։ Տայր գիտել և Թագաւորին Վաղարշու լիով զամենայն, ճանապարհորդ...
18 ԶԶ. տեառնն
18 ԶԶԶ. չիք (խօսէր)
20 Թերևս իմաստս
23 ԶԶ. ի նոյն յառաջադիմութիւն
25 ԶԶ. ի յաշխարհն
26 Զ. զի իմում անձին
27 Զ. բնակել
28 ԶԶ. աստուածանմանդ
35 ԶԶ. զլաւն առ լաւն։ Զ. զլաւսն առ լաւն
39 ԶԶ. արեաց տեառն

ուտեն՝ շատ վտանգ հասանէ աշխարհին մարդկան։ Իսկ նա թէ լինի՝ զիւր տանն համբար ուտէ, և այն ամենայն յարքունի գանձ համարի, և արքունի իրաց օգուտ լինի։ Ես յառն Վահանայ ի լաւութիւն հայելով և յաջողակութիւն, ի բազում ժամուց խորհելով ի միտս իմ և լաւ համարելով աշխարհին իրաց և արքունի՝ համարձակեցայ ասել։ Խորհել զարժանն և առնել՝ դուք գիտէք, եղբարք»։

Եւ լուեալ զայս ամենայն բանս յԱնդեկանայ Թագաւորն Վաղարշ և ամենայն դրանն աւագանւոյն՝ հաճեալ ընդ բանսն ամենայն Անդեկանայ՝ զարմացան ամենեքեան որք լուանն, և մեծաւ գովութեամբ առ լաւսն կալան զԱնդեկան, որպէս զայր տիրասէր և աշխարհաշէն։

ԿԹ. Վաղվաղակի հրամայէր Թագաւորն Վաղարշ, միաբանութեամբ ամենայն աւագանւոյ դրանն և Արեաց՝ հրովարտակ առնել ի Հայս, և զտէրն Մամիկոնենից և զզօրավարն Հայոց Վահան՝ մարզպան ի վերայ աշխարհին Հայոց կարգել։ Եւ բերեալ զհրովարտակ մարզպանութեանն՝ տային ցզօրավարն Հայոց ցտէրն Մամիկոնենից Վահան, և աջով հզօրին Աստուծոյ մարզպան զնա ի վերայ աշխարհին Հայոց կարգեալ հաստատէին։

Իսկ տէրն Մամիկոնենից Վահան, զօրավարն Հայոց և մարզպան, ընկալեալ զհրովարտակն մարզպանութեանն ի ձեռաց դեսպանին, թէպէտ և զխանտածութիւն Հայ մարդկան ճանաչելով ծանրանայր ընդ իրս՝ այլ սակայն և ոչ ընդդիմանալ հրամանի Թագաւորին իշխէր և անհնազանդ լինել։ Առեալ զհրովարտակն՝ խնդրէր վաղվաղակի անդրուվար՝ երթալ ի տունն Աստուծոյ։ Եւ լուեալ զայս մարդկանն որ ի քաղաքին էին, զրոհ տուեալ առ հասարակ ամենայն մարդոյ, նախարարաց և ազատաց, ոստանկաց և ռամկաց, արանց և կանանց, ծերոց և տղայոց, այլ և հարսունք անգամ յառագաստաց, մոռացեալ առ վայր մի առ խնդլին զամօթ հարսնութեան՝ դիմեալ ընթանային յեկեղեցին։ Եւ ոչ բաւեալ ընդունել զամենեսեան տանն Աստուծոյ՝ լնուին արտաքոյ սրահք եկեղեցւոյն և փողոցք և ամենայն տեղիք հրապարակացն շուրջանակի։ Եւ էր այն օր անյագ խնդութիւն և անսպառ ուրախութիւն աստուածասէր բարեսիրացն և ողջախորհուրդ մտաց լաւահայեցաց, և սուգ Թախանձալից և տրտմութիւն անմխիթար՝ խօթամտացն և խարդախաց։

Եւ սրբոյ կաթողիկոսին Հայոց Յովհաննու տեսեալ զանկարծելի աւետաւորութիւնն, շնորհեալ յԱստուծոյ ի ժամանակս երանելւոյն, բերկրեալ ցնծալից սրտիւ՝ տայր սաղմոսել ի ժամուն. «Յեկեղեցիս օրհնեցէք զԱստուած, և զՏէր յաղբերացն Իսրայէլի». և կարդացմունս հրամայէր՝ զտեղի ելիցն Իսրայէլի ի ծառայութենէն Փարաւոնի, և ի Թագաւորութենէն՝ զընթերցուածն՝ ուր Թագաւորեցոյց Դաւիթ զորդին իւր զՍողոմոն։ Եւ եկեալ ինքն ի տեղի լռողութեանն ատենին, և տուեալ զխաղաղութեան ողջոյնն՝ ասէ.

2 ՏՏ. չիք այն
3 ՏՏ. Եւ յառն վահանայ
4 Կամ լուս Չ. ընդ միտս իմ
9 Չ. որ լուանն
13 Չ. ըզօրավարն
15 Չ. տէրն Մամիկոնէնից
16 ՏՏ. չիք զնա
21 Չ. չիշխէր (չ՚ն . նոր գրած, վերեւից)
23 Չ. երթեալ
24 ՏՏ. չիք էին
28 Չ. բաւել
31 Չ. լաւահայեաց
36 Սաղմ. ԿԷ, 27
40 ՏՏ. և ասէր

*Ճ. «Բազում կերպարանօք և ազգի ազգի ցուցակութեամբք Փրկիչն մեր և տէր Յիսուս Քրիստոս զիւրոյ գալստեանն և մարդանալոյն ի սուրբ և յաստուածածին կուսէն ծրագրեալ՝ յայտաբերէր մեզ զօրինակն ի սկզբանէ.—մովսէսեան՝ ղերանելի կոյսն, եգիպտական նշանագործութեամբքն՝ զանազանութիւն հրէական օրինացն, զենմամբ գառինն՝ զազատաբերութիւնն Իսրայէլի, որոյ ճշմարիտ գառինն զենմամբ փրկելոց էին ամենայն արարածք. ծովուն ճանապարհորդութեամբն՝ զաւազանին զնորածնութիւն. հեղձմունս Եգիպտացւոցն՝ զհնոյ մարդոյն մեռելութիւն. ի Յորդանան ճանապարհորդելոյ ժողովրդեանն պատահումն, ըստ գրելոյ ի կարգին, երկոտասան բղխեցելոցն աղբերցն, և եօթանասուն արմաւենեաց ծառոցն, [«Ընտրեաց, ասէ, Փրկիչն այլ ևս եօթանասունս, զորս և առաքեաց ի բժշկութիւն հիւանդաց»]. որոց թէպէտ և պտղոցն ճաշակմունք զհամս քաղցրութեան ունէին յինքեանս, այլ անդէն տնկագործեալ ի տեղւոջն՝ ցուցան աղբեւրս։ Իսկ ելք երկոտասան աղբերացն յորդաբուղխ ականց ի բացարձակ տեղիս ծաւալեալ՝ զբազումս ծաւալեալ անդաստանս ցուցանեն ծաղկալիցս և պտղալիցս և պտղաբերս. որք զերանելի երկոտասանից առաքելոցն ունէին զկերպարանս. զորոց և այսօր սաղմոսերգն յայտնեաց զճշմարտութիւն, ըստ ասելոյն. «Յեկեղեցիս օրհնեցէք զԱստուած, և զՏէր յաղբերացն Իսրայէլի»։ Այս յորդաբուղխ աղբերաց շնորհ, նման Եդեմեան դրախտին աղբեր, զորմանէ ասէ, «Ելանէր յերկրէ և ոռոգանէր զամենայն երեսս երկրի», ծծեալ սուրբ առաքելոցն ի կուսածին աղբերէ Բանին՝ լցեալ յուռթեցին զամենայն երեսս երկրի։ Ի սոցա քարոզութեան ծովուս՝ մեղք մեռանին, արարածք կենդանանան. Փարաւոն ընկղմի, Իսրայէլ ապրի. ծառայութիւնն սպառի, ազատութիւնն հաստատի. գառն բաշխի, ազինք անմահանան. ճաշակողք գառինն երկնաճանապարհորդք լինին, անճաշակողք ծովասոյզք կորնչին. հեթանոսք իսրայէլանան, սատանայ փարաւոնակերպ ի Յորդանանու յորձանսն սուզեալ կիզու։*

*«Ո՜ նոր և անպատումն սքանչելեաց գործ։ Երեք անարատ մանկունքն՝ զբոց հնոցին ցօղացուցին, և վտակք երկոտասան աղբերցս քարոզութեան՝ զջուրսն մկրտութեան աւազանին հրացուցին։ Այլ մի և նոյն բարեձև Բաբելոնի հնոցն և բաբելացի անօրինացն բոցանայր. և աստ զոմանց աւազանին ջուրք լուացեալ զաղտ զօգւոց մկրտելոցն՝ լուսազարդեալ նորոգեն, և զարդարութեան թշնամին հանդերձ գործովք հին մարդոյն՝ յայրիչ հուր անանցական փոխեալ կիզունս։*

1 Յ. Մանդակունու այս ճառի մասին ԲԳՅ. ունին ծանօթ. «Գուցէ ըստ ձեռագրաց եւ յանպատրաստից խօսից հայրապետին գրեալ է ճառդ. յորում ընդ բազում վայելուչ եւ պատշաճ իմաստից՝ են եւ անյարմար բանք, յաւագոյն օրինակաց սրբագրելի»

12 Ղուկ. Ժ, 1,9։ Այս ճառում անկիւնաւորների մէջ եղած դնում այն հատուածները, որ համարում են ընդմիջարկութիւն, իբրեւ մեկնութիւն բնագրի մէջ եղած խօսքերին

14 ԲԳՅ. ունին ծանօթ. «Այլազգ ինչ պիտի»

15 Չ. աղբերցն յորդաբուղխ

16 Թուի ծածկեալ անդաստանս

20 Սաղմ. ԿԷ, 27

22 Ծննդ. Բ, 10

23 ՉՍՑ. ուռթեցին

28 Չ. փարաւոնակերպի յորդանանու

31 Չ. զմի և զնոյն բարեձև բաբելոնի

33 Չ. զաւազանին... ոգւոյ

34 ՉՍՑ. նորոգեն

35 Չ. մարդւոյն

«Եկեղեցւոյ սիրիչք, առաքելոցն որդիք, Քրիստոսի արեան գինք. մի՛ ծառայեցուցանէք զոգիս ձեր երկիւղի մարդկան. «տո՛ւք զկայսերն կայսեր, և զԱստուծոյն Աստուծոյ». «յեկեղեցիս օրհնեցէք զԱստուած, և զՏէր յաղբերացն Իսրայէլի»։ Ահա սիրեցէք զեկեղեցի, և սիրեցայք յեկեղեցւոյ. զթագաւորս քաղցրացոյց եկեղեցի. զգազանս ընտելացոյց, զգայլս գառինս արար. զձեզ պայծառացոյց, զթշնամիս ճշմարտութեան ամաչեցոյց։

«Այլ ես այսօր առ ցնծալ սրտիս և ուրախանալ մտացս, համբարձեալ զձեռս ի յերկինս՝ ընդ ծերոյն Դաւթայ աղաղակեմ առ Աստուած՝ զոր ինչ դրուատեաց գոհութեամբ նա յաղագս որդւոյն իւրոյ Սողոմոնի մատուցանէր Աստուծոյ բարձրելոյ. «Օրհնեալ է տէր Աստուած Իսրայէլի, որ ետ ինձ ի զաւակէ իմմէ նստել յաթոռ իմ, և աչք իմ տեսանեն»։ Զայնակցելով ընդ մարգարէին՝ ասեմ զնոյն և ես. «Օրհնեալ տէր Աստուած Իսրայէլի, որ ետ ինձ տեսանել զորդիս եկեղեցւոյս որ ինձ հաւատացաւ՝ պատուով շքեղութեամբ պայծառացեալ ի Քրիստոսէ։ Հրէայքն պապանձեցին, ուրացողք ամաչեցեն։ Փախեաւ Ադոնիա, որ առանց Աստուծոյ կարծէր թագաւորել. օգնականացն զգեցեալ զամօթ՝ սալարեալք ընդ սեղանովն թագչին։ [«Թագաւորեցին, ասէ, և ոչ ինև, դաշինս կռեցին՝ և ոչ իմով կամաւ»]։ Ո՞ւր են առանց Աստուծոյ գոռոզացեալքն. ո՞ւր են առանց Աստուծոյ իշխանացեալքն. ո՞ւր են արիւնահեղքն. ո՞ւր են պոռնկասէրքն. [«Տո՛ւր ինձ, ասէ, զԱբիսակ Սոմնացի», «և զԱստուած ոչ խնդրեցին, և զՏէր զօրութեանց ոչ ճանաչէին»]. ո՞ւր են եկեղեցւոյ թշնամանիչքն, առատնհարուք օրինացն, սրբութեանն պղծիչք, շինիչք մոխրատանցն, մոռացողք ճշմարտութեանն, հայհոյողք արդարութեան.— փախեա՛ն, կորացի՛ն, ամաչեցի՛ն։

«Ո՞ տայր զգլուխս իմ ի ջուր, և զաչս՝ յաղբերս արտասուաց», և նստեալ լայի զհիգացելոցն կորուստ։ Ահա տեսէք, ահա մեռանի իգատենչն. այլ մի՛ տայք մեռանել։ Սատակի առաջի սեղանոյն արիւնահեղն. այլ օգնել փութացարուք։ Գլխատի Սիմէի, այլ ձեռն տուք գթալով. «չէ՛ աստ», ասացէք Սողոմոնի. և ոչ ի քարեղէն սալս գրեալ անթողութիւնք օրինացն։ Քրիստոս է աստ, [«Ծափս հարէք, ամենայն հեթանոսք»], որ ասէ, թէ «Եկա՛յք առ իս, ամենայն աշխատեալք և որք ունիք բեռինս ծանունս, և ես հանգուցանեմ զձեզ», և դարձեալ՝ թէ «Ոչ եկի կոչել զարդարս, այլ զմեղաւորս յապաշխարութիւն»։

«Այլ և ձեզ պատուիրեաց, հզօրագունիցդ և կարողացդ, թէ «Դուք որ կարողդ էք՝ զտկարութիւն տկարացն բարձէք». կոչեցեալք դուք ի Քրիստոսէ և բազմեալք, պատրաստեալք ուտել զհացն երկնաւոր՝ կոչեցէ՛ք և ընդ ձեզ զկաղսն և զկոյրսն և զհիւանդս. և մի՛ տայք թոյլ նոցա ընդ Ադոնեայ և ընդ Յովաբայ՝ զեղջերաց սեղանոյն բուռն

3 Մատթ. ԻԲ, 21. Մարկ. ԺԲ, 17
4 Սաղմ. ԿԷ, 27
4 ՑՑ. զեկեղեցիս
10 ԲԳՑ. բարձրելոյ՝ բան
10 Չ. օրհնեալ ես տէր Աստուած։ ՑՑ. չիք ես
11 Գ. Թագ. Ա, 48
18 Ովսէէ, Ը, 4. Ես. Լ, 1
20 Գ. Թագ. Բ, 17
21 Ես. Թ, 13
22 Չ. առատնհարու
24 ՉԱՑ. փախեան, կորացան Այսպ. բաս ուղղագր. ԲԳՑ.
25 Երեմ. Թ, 1
31 Սաղմ. ԽԶ, 2
32 ՑՑ. զբեռինս
32 Մատթ. ԺԱ, 29
33 Մատթ. Թ, 13
35 Հռոմ. ԺԵ, 1
35 Չ. կոչեցեալ

հարկանել, [որ է անդամ մարմին, անբեղուն ըստ բուսոյ և աննամ ըստ ճաշակոյ, յուներէն]։ Դիւել կաթն յօժարեցուցէք զոգէտսն ի մանդականութիւն, և յուրախարար բաժակէն ըմպել ուսուցէք, յանուշարար ուրախութիւն ոգւոցն փրկութեանն. յայնմ կաթնէ և ի գինւոյ, զոր յառաջաձայնեալ իմաստնաբանն Սողոմոն շնորհօք սուրբ Հոգւոյն յԵրգս երգոցն ասաց. «Քանզի գեղեցկացան ստինք քո, քոյր իմ հարսն, քանզի գեղեցկացան ստինք քո ի գինւոյ»։ Բայց ի Թմբրական գինւոյն հրաժարեցուցէք զտխեղծսն և զհիւանդացեալսն ոգւով զընկերսն, զոր ի հրէական ժողովրդոցն արբեալ անառակութեամբ՝ Արարած գիրք մեծ մարգարէին յանդիմանեալ յիշատակէ այժմ և մինչ ի վախճանն. «Նստաւ, ասէ, ժողովուրդն յուտել և յըմպել, և յարեան ի խաղալ»։ Եւ մի՛ դարձեալ ի գինւոյն յայնմանէ, զոր Ղովտ և Նոյ արբին։ Եւ մի՛ ընդ Սիմէի ելանել տայք արտաքս քան զԵրուսաղէմ, և մանաւանդ յածել ի խնդիրս որդւոց Հագարու։ Զհասհակայ տուք սերել զզաւակ, և ի Նորա խնդրել ի զաւակէ զմարդացեալն Աստուած։ Քանզի զհարճորդէգիրն ի քարեղէն գրեալ սալսն՝ համակ խստութիւն քարոզէ քարասրտացն և չարաց. զոր և Պօղոս ըստ այլաբանութեանն առակախօսեալ ասաց. «Քանզի Հագար, ասէ, լեառն Սինեա է յԱրաբիա, հաւասար է այսմ Երուսաղէմի, և ծառայէ որդւովքն իւրովք հանդերձ. այլ վերին Երուսաղէմ ազատ է»։ և Թողութեան Քրիստոսի վարդապետութիւնն «գրեալ յընդունողացն և միացեալ ոչ ի քարեղէն սալսն, այլ ի տախտակս սրտի մարմնեղէնս»։

«Բազում են եկեղեցւոյ սրբոյ բժիշկք. եկա՛յք այսր ամենայն աշխատեալք և ոյք ունիք, ըստ յառաջագոյն ասացելոցն, բեռինս ծանունս, և աստ ի բաց ընկեցեալ հանգերո՛ւք։ Իսկ դուք որ այժմդ ի նեղքում էք, լերո՛ւք կոչնականք և հրաւիրակք արտաքոյ անցաւորացն. ելէք ի հրապարակս և ի փողոցս. ժողովեալ զամենայն ախտացեալս ոգւովք և զբեկեալս մեղօք՝ ածէք այսր, և բժշկին ամենեքեան, բերելով ընդ ինքեան զխոստովանութիւն և զարտասուս [պահանջէ]։ Եւ ըստ իւրաքանչիւր ախտից՝ բժիշկքն յայտնի են և պատրաստ։ Զմաքսաւորն առ Մատթէոս աւետարանիչ ածէք և Զաքէոս. զպոռնիկս առ կինն պոռնիկ, որ այսօր դուստր է Քրիստոսի. զաւազակս՝ առ աւազակն դրախտաբաց. զուրացողս՝ առ արքայութեան դռնապանն և փականալ Պետրոս։ Եւ գին աւելի ինչ ոք քան զաղօթս և զարտասուս ոչ պահանջէ. բայց միայն ի գոյաւորացն հայցի ողորմածութիւնն առ զատատանաւն։

«Եւ արդ՝ ո՞վ ոք քան զայնպիսին կայցէ հէք և թշուառական, որ վասն խուն արտասուաց՝ յերկնից արքայութենէն վրիպեալ գտանիցին. և կամ քան զմիւսն ևս հրաշալի և երջանիկ, որ ընդ սակաւ օր ըստ

1 ԲԳՑ. ունին ծանօթ. «Առժամոր պակաս բուի բանն, եւ յետագայդ՝ խառնեալ իմն
2 Չ. դիեցել կաթն
5 ՑՑ. իմաստութեանն
7 Երգ. երգոց Դ, 10
9 Չ. մարգարէն։— Արարած գիրք՝ի մասին ԲԳՑ. ունին ծանօթ. «Այսինքն Գիրք Ծննդոց. բայց ոչ ի նմա՝ այլ յԵլից գիրս (ԼԲ, 6) գրեալ է բանդ»
11 Ել. ԼԲ, 6։ Նոյնը եւ Ա. Կորնթ. Ժ, 7
14 Չ. որդւոյ
18 Չ. արաբիա
19 Գաղատ. Դ, 25-26
21 Բ. Կորնթ. Գ, 3
23 ՉԱՑ. զբեռինս
24 Մատթ. ԺԱ, 29
25 ՉԱՑ. որ ի նեղքում (Չ. ի նեղսում) էք... յանցաւորացն
30 Չ. Մաթէոս
34 ՉԱՑ. հայցի ողորմ...

օրէ արտասուաց՝ զյաւիտենից բարութիւնսն ժառանգիցէ։ Քանզի եթէ զկին սիրելի և կամ զորդի և կամ զայլ ոք ի կարևոր բարեկամաց տեսանէիր մեռեալ, ո՞չ ապաքէն լայիր չարաչար, և լռել երբէք և ոգի առնուլ ոչ կամէիր։ Եւ արդ՝ զքոյին իսկ զհոգիդ տեսանես հանապազ մեռեալ առաջիդ. և անշէջ հրոյն երկիւղ և գեհենին սպառնալեացն յիշումն միշտ զխորհուրդդ խոցոտէ, և դու յորսայս անկեալ հեզգաս. զիա՞րդ հանդարտել իսկ և կամ առ վայր մի կարիցես լռել և ոգի առնուլ։

«Հաւատացէք, զի ես ընդ բանսս իսկ զարհուրեալ դողամ։ Վասն որոյ զձեզ աղաչեմ, իջոկս հաստատնոցդ դեռ ես և անգայթիցդ. մի՛ նմանեցուցանէք զաղօթս ձեր փարիսեցւոյն, թէպէտ և բիւր բարեաց զանձինս գտանիցէք եղեալ պատճառ, այլ ասացէք, եթէ «Ծառայք անպիտանք եմք». և մի՛ առանց իւղ բառնալոյ ընդ անմիտ կուսանսն ճանապարհորդիցէք ի հարսանիսն. գուցէ փակիցի դուռնն, և մնայցէք ամօթալից արտաքոյ։ Եւ մանաւանդ դուք, որ զամենայն ցերեկութեանն աշխատութիւն, զտօթոյ, զքրտան, զվաստակոյ և զտևողութեան յաստուածային այգեգործութեան տնկելոյ յօգւոջ ուրուք՝ յամենայնէ վրիպիցիք, և զբնաւ կորուսանիցէք։

Արդ՝ եղիցի ձեզ ընդ այդպիսի զարդու՝ և զերկնից փափաքելի զգենուլ զզարդն, և ընդ այսպիսի ուրախարար պսակի, որ թուով աւուրս պայծառացուցանէ զստացողս իւր՝ զլուսատեսիկ և զերկնաւոր պսակն, զանապականն և զմշտնջենաւոր ընդունել յաջոյ *Փրկչէն մերոյ և Տեառն Յիսուսի Քրիստոսի, լսել զփառաւորեալ և զերանելի բարբառն, թէ «Եկա՛յք օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք զպատրաստեալ ձեզ արքայութիւնն ի սկզբանէ աշխարհի»։

«Որում լիցի մեզ արժանի լինել և ամենեցուն, շնորհօք և մարդասիրութեամբ Տեառն մերոյ և Փրկչին Յիսուսի Քրիստոսի, ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սրբոյ վայելէ փառք, իշխանութիւն և պատիւ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն»։



2 Հ. կին
2 Գs. չիք և կամ զորդի
4 ՏՏ. զոգիդ
6 Հ. յորսայս անկեալ
9 ՀԱs. չիք իջոկս
12 Ղուկ. ԺԷ, 10
13 ՏՏ. փակ լիցի
15 Լրացնելու է զամենայն ցերեկութեանն աշխատութիւն բարձէք, զտօթոյ եւն
15 ՏՏ. և զքրտան
19 Գs. և ընդ այսպիսի
24 Մատթ. ԻԵ, 34

# ԹՈՒՂԹ

# ՂԱԶԱՐԱՅ ՓԱՐՊԵՑՒՈՅ

---

**ՄԵՂԱԴՐՈՒԹԻՒՆ**

*ՍՏԱԽՕՍ ԱԲԵՂԱՅԻՑ*

## ՅԱՌԱՋԱԲԱՆ ԹՂԹՈՅՆ

## ԱՌԱՔԵԱԼ ՅԱՄԻԹ ՔԱՂԱՔԷ

Լուսաւորէ միշտ շնորհ աստուածային զսիրողս արդարութեան և մանաւանդ զայնոսիկ, որ աստուածային բանին պարապեցին քննութեան. քանզի ուսան ի Քրիստոսէ որ ասէ. «Քննեցէք զգիրս»։ Զի շահ մեծ անձանց համարելով զերկնաւոր բանն, միշտ կիրթ ունելով զնոյնն, զի թևաւորեսցեն զոգիս իւրեանց և զլսողացն՝ այնպիսի մասանց առաքինութեան. քանզի պատճառ զօրութեան և իմաստութեան ընկալան, ուսեալ ի մարգարէէն. «Որ հանէ զպատուականն յանարգէ՝ բերան իմ եղիցի»։ Քանզի բան ճշմարիտ, արդար և օրինաւոր ի խրատաբանութիւն ժողովրդոց՝ ծաղկեալ պտղաբերէ զոգիս լսողացն երկնաւոր լուսովն։ Սոքա զօրէն վաճառականաց ընդ ծով և ընդ ցամաք աշխատասիրեալք՝ վասն յոլով առնելոյ զխորհուրդս մտացն անապական երկնաւոր գանձուն, տալ որոց խնդրէ ի նոցանէ զբանն աստուածային ի գինս փրկութեան անձին։

Յորոց մի յայսպիսեացս երանելին Ղազար, նախանձաւոր և աշխատասէր այսպիսի երկնաւոր արուեստի, անդստին ի մանկական տիոցն սկիզբն արարեալ բանական գիտութեան՝ Յունաց յաշխարհն ճանապարհորդէր, և անդ քաջաց և առաքինի մարդոց պարապեալ՝ լիով զմարգարիտն, զբանն աստուածային, ընկալեալ յինքեան՝ եկեալ հասանէր յիւր աշխարհն։

Եւ քանզի սովորեաց մարդկայինս բնութիւն, զի իմաստունքն և մեծամեծքն գնեն ի վաճառականաց զմարգարիտն և զպատուականս հանդերձիցն, զի երևելիք և պայծառք երևեսցին ամենայն մարդկան յերևելիսն՝ սոյնպէս և զսորա զգիտութիւն բանի լուեալ իմաստուն և գիտուն մարդոց ընթերցուածոց պատուիրանացն Աստուծոյ՝ գովեցին, և խնդացին նովաւ յամենայն ժամ եկեղեցիք և վկայարանք սրբոց և տեղիք վարդապետարանք. ծաղկեալք լինէին հոգիք լսողացն ի շնորհացն որ ելանէին ի բերանոյ նորա. և ի մէջ հայրապետացն և եպիսկոպոսացն իբրև զարուսեակ պայծառացեալ երևէր բանական գիտութեամբն։

1 Չ. ունի վերնագիր. «Ղազարու վարդապետի Փարպեցւոյ աշակերտի ողորմեալ վարդապետին առ Վահան տէրն Մամիկոնէից մեղադրութիւն ստախօս աբեղայից»։— Վ. չունի ամբողջ Յառաջաբանը
2 Չ. ի համիթ
5 Յովհ. Ե, 39
6 ՉԱՑ. զնոյնսն
10 Երեմ. ԺԵ, 19
18 Չ. աշխարհն
22 ՉԱՑ. չիք զի
24 Չ. պայծառ
25 ԲԳՑ. սոյնպէս և սորա գիտութիւն բանի. լուեալ...
26 Չ. ի գիտուն
28 Չ. ծաղկեալ
30 Չ. զարիւսեակ

Կամեցեալ մեծի իմաստութեանն Վահանայ մարզպանին, զօրավարին Հայոց տեառն Մամիկոնէից, զնա իւր առնել մերձաւոր և սիրելի անձն՝ շնորհէր նմա դհոյակապ և զականաւոր տեղին ի Նոր քաղաքի, որում անուն էր սուրբ Կաթողիկէ եկեղեցի, վանօքն. և նորա ընկալեալ զբանն մարզպանին՝ խնամածէր զտեղին։

Պատահեաց նմա կրել տրտմութիւն ի վայրապար մարդկանց, զի ի հրոյ մնասեալ փայտակերտն եկեղեցւոյն։ Վասն որոյ ածեալ զմտաւ և յիշելով զբանն Պօղոսի, զի յամենայն ժամ աստուածասէրքն առանց խղճի մտաց կեցցեն, որպէս աղօթս առնէր ասելով. «Խնդրեմք յԱստուծոյ, զի մի՛ չար ինչ պատահեսցէ ձեզ». յայսմանէ կամ եղև նմա գնալ ի կողմանս Յունաց. հասանէր յԱմիթ քաղաք, և անդ առ ժամանակ մի զտեղի առնոյր։ Տեսանելով զայս չարանախանձ մարդկան՝ յաւելուին բանս սուտս զտեղւոյն և զուամանէն ևս զնորա, զի զբարձր անունն խոնարհեցուցանել կարասցեն։

Լուեալ զայս ամենայն Ղազարու՝ իբրև զքաջ պատերազմող զինեալ զինքն, զի բանիւ զօրութեան զիւր ոգւոյն և զքաջալերութեան և զպատկեր կերպարանաց ի ձեռն գրոյ Թղթոյս այսորիկ ծանուցէ նոցա, զվաստակ բանի իւրոյ որ առ նոսա յառաջագոյն լուսափայլեալ, զի կարճեսցին բերանք չարախօսացն զնմանէ. զի այսպէս, ասէ, ի ձեռն անիմաստ և վայրապար մարդոց եհաս հալածումն լսելոյ և պիտանի մարդկան աշխարհիս Հայոց։ Եւ մանաւանդ զի վստահ եղեալ յամենիմաստ մարզպանն, եթէ գիտէ ճարտարութեան բանի լինել չլսող և գիտել զիրաւունս, զի անմեղադրելի զինքն արասցէ ի ձեռն գրոյս։

Եւ առեալ ի ձեռն զզէն գիտութեան, զի յաղթող երևեսցի. և առաքէ զգլխալս ի ձեռն բարեսէր մեծի և պատուական նախարարին Մամիկոնենին Համազասպայ, որ և պատճառ իսկ եղև նմա այսրէն դարձին. զի յաղբերէն գիտութեան նորա արբցեն միւսանգամ մարդիկ և պտղաբերք լիցին Աստուծոյ զարդարութիւն։

Վասն որոյ և զԵրրորդ Պատմութիւնս Հայոց երանելի իմ Ղազար պատմագրեաց։ Ընդ նմին գրեցաք և զԹուղթս, զի ընթերցասէրքն զՊատմութիւնս կարդալով, ընդ նմին և զԹուղթս ընթերցեալ՝ զփորձ առցեն նորա լաւութեան բանին։

1 Չ. յիմաստութէն (պատառով)։ Աց. յիմաստութեանն
3 Չ. զ յականաւոր
7 Չ. ածել
10 Բ. Կորնթ. ԺԳ, 7
12 ՑՑ. զայն
19 Աց. փակագծում ունի աւել,
24 Չ. ըզէն
25 Չ. բարեսէր
26 ՑՑ. Մամիկոնեէին
32 Չ. Ներքևի լուսանցքում ունի ձգնաւորէր ազան յազգէն արծրունեաց, ընակեալ ի յայլն ազանոյ ի յանբերդ
32 Չ. Ցատաքարանից յետոյ անընդհատաբար շարունակում է Թուղթը. զփորձ առցեն նորա լաւութեան բանին։ փոկչէն տեառնմբ ևւն

Փրկիչն մեր և Տէր Յիսուս Քրիստոս քաջ զգուշացուցանելով պատուիրէր առաքելոցն, թէ «Յորժամ զամենայն արդարութիւնս կատարիցէք՝ ասասջիք, եթէ ծառայք անպիտանք եմք»։ Իսկ ընդէ՞ր և հոգևոր մշակն Աստուծոյ սուրբն Պօղոս, զկծեալ իմն երբեմն վասն արանց խանդացելոց ընդ մեծ շնորհն որ էր ի նմա, և բանս անհանճարս խօսելոյ ընդ նորադարձ աշակերտեալսն, ի կործանումն լսողացն, —զորս անուանադրեալ սուտ մշակս կոչէ,— և չկարացեալ տանել զայթակղութեանն՝ արտաքոյ Քրիստոսի կանոնին վարեցաւ, և անձամբ զանձին լաւութիւնս և զճգունս մեծամեծ պարծանօք գրեալ մի ըստ միոջէ կարգեաց. և ոչ իմն ըստգտեալ խոտեցաւ, այլ կաց մնաց ի նմին առաքելութեան պայծառապէս։ Եւ եթէ ընդէ՞ր այս այսպէս լինէր՝ ծանիցէ քննողն, թէ կարասցէ, ապա թէ ոչ՝ լռեսցէ։

Արդ՝ դու, տէր, այր քաղցր ես և խոնարհամիտ և արդարահայեաց և կշռաքննին, և հաւատոց Աստուծոյ առաւել ընտանի, որպէս և ամենայն նախնիքն քո։ Եւ ես անպիտանս և ամենեցուն կղկղանք, թէպէտ և երևեցիմ առաջի տեառն, առն եղեալ որդի, իբրև զանդգամ, որպէս մեծ առաքեալն Պօղոս՝ այլ քո տեառն, քրիստոսանմանութեամբ տարեալ, ներելով անզգամութեանս իմում՝ ընկա՛լ զիս իբրև զանզգամ։

Զկեալ զիմ ի տղայութեանն՝ զայն տէրդ իսկ ինքնին քաջ գիտէ։ Տարեալ զիս ըստ վարդապետաց իմոց հրամանի ի Հոռոմս՝ ժամանակեցի անդ ամս. և եկեալ անտի կեցի առ Կամսարականսդ յամենայն ամբոխսն, մինչև յամս նուաճման ձերոյ։ Եւ զհետ այնորիկ, որպէս թէ ձանձրացեալ յաշխատութենէ շփոթիցն՝ կամեցայ պարապել աղօթից և հանգչել։ Եւ երթեալ ի Սիւնիս՝ կեցի անդ ամս երկուս, զձմեռն ի քարայրի, առ առն միում հռչակելոյ ի բնակչաց գաւառին յամենայն կրօնաւորութիւնս, որում անուն էր Մովսէս, և տեղին անձուկ. և զամառն, յաղագս տօթոյ տեղւոյն, քահանայապետ աշխարհին տէր Մուշէ տանէր զիս առ ինքն՝ ուր և լինէր ի հովու։

1 Ձ. փրկիչն'ից առաջ խաչանշան, եւ ներքեւ լուսանցքում ծանօթութիւն՝ նոր, շղագիր տառերով. այս է սկիզբն Թղթոյն Ղազարու Փարպեցւոյ։ Վ. այստե՛ղ ունի վերնագիր Թուղթ Ղազարու վարդապետի.... Մեղադրութիւն ստախօս աբեղայից (Տ. եր. 185, ծան. 1), զոր առաքեալ է յամեն քաղաքէ

1 Ձ. նախ փրկչին տեառն մեր, ապա ուղղած փրկիչն մեր

3 Վ. անպիտան եմք

3 Ղուկ. ԺԷ, 10

6 Վ. խօսելոյ

6 Վ. զայսանուանադրեալ

7 Ձ. անուանադրեալ

14 Վ. կշռաքննին

14 ՏՏՏ. ընդանի

16 Վ. երեւեցիմ

16 Ձ. *որդի իբրեւ զանըն-գամ։ Շղագրով ուղղած որդի

18 Ձ. զանսգամ

19 Վ. զկեալ զիս

21 ՏՏ. չիք ամս

21 Ձ. անդի

23 Ձ. կամեցա

23 ՏՏ. պարապել

26 Վ. տօթոյ

27 Վ. քահանայ

Արդ՝ զառաջին կեղոյն իմոյ զվարս տէր Ներսեհ և Հրահատ Կամսարական գիտեն. զՄուշեղ՝ յառաջագրեալ եպիսկոպոսն աշխարհին։ Եւ դու յայց ելեալ խնդրել զիս, և գտեալ յաշխարհին յայնմ՝ ածեր ի տուն, ոչ իբրև զաղքատ զոք ի կազմածէն և ի մանկտւոյն, և ոչ իբրև օտար զոք ի քէն և կամ զծառայ ուրուք. քանզի պարեգօտաւորք ազատեալ են ի Քրիստոս։ Իսկ որ զատոյցն զիս պարեգօտիւք ի ծառայութենէ աշխարհիս և ազատութեան եղև մեզ առիթ, տէր Ազատն՝ քո տեառն քեռի էր։ Ըստ այդմ մասին ի Հայս քեզ տեառն անկ էր։

Դարձեալ՝ երանելի մայրն քո յորժամ առ բղեշխն ած զձեզ, յորում դրան և զմեզ ուսուցանէին, սակայն թէպէտ և ըստ տիոց աւագագոյնք քան զձեզ էաք, այլ սննդակիցք էաք ձեզ և խաղակիցք, կրելով ի խաղու զարկանելիս ձեր զկնի ձեր. սնուցանէ մայրն ձեր օրհնեալ և Անուշ-Վռամ ըստ իւրեանց հոգաբարձութեանն և զմեզ ընդ ձեզ՝ որպէս և զձեզ։ Այլ ըստ այնմ ամենայնի քեզ տեառն անկ էր։ Իսկ ըստ առաւելեալ շնորհիս, զոր ետ ինձ Քրիստոս,—եթէ արժանաւորի կամ անարժանի՝ զայն տուիչն քաջ գիտաց,—ապա արդարև քեզ իսկ և արժանի։

Վասն զի ի դարուս յայսմ ղքո զքաջութիւնդ զօրացուցեալ պայծառացոյց վերին խնամակալութիւնն քան զամենեցունց, որք էին և կամ որ այժմ են ի Հայս, և զիմ շնորհս՝ քան զբազումս պարեգօտաւորաց,—ահա անզգամեցայ և ճառեմ. ներեա՛, աղաչեմ, փոքր մի անզգամութեանս իմոյ,—ապա ստոյգ առաւել քեզ իսկ էր արժանի։

Եւ եմ ես այն Ղազար, ըստ առ ի քէն տեառնէ և այլոց բազմաց ասացածի, որում ոչ ոք գոյ փոխանակ։ Իսկ այժմ, առ նախանձու աղետի, բազումք նկրտէին լինել իմ փոխանակ. բայց եթէ իցեն։

Քանզի ի սկզբանէ արարածոց բազում օճիրս գործեաց նախանձ յաշխարհի։ Անդէն և անդ ի սկզբանն զնախաստեղծն ընկճեալ նախանձու բանսարկուին՝ դարձոյց զնա ի հող. և վկայէ Գիր ի Կաթողիկէսն, եթէ «Նախանձու բանսարկուին եմուտ մահ յաշխարհ»։ Երկուցն միայնոյ դեռ ևս յԱդամայ ծնելոց յաշխարհ, Կայէնի և Հաբելի, որպէս ի փոքրիկ և ի նեղ՝ յանրաւ բնակութիւն տիեզերաց հայեցուցեալ զԿայէն նախանձարկու դիւին՝ եղբայրասպանութեամբ զաւակաց։ Ի ձեռն նախանձու գրգռեալ Եսաւ ի վերայ Յակովբայ՝ մահ խորհէր։ Ի ձեռն նախանձու զանմեղն Յովսէփ մոլեգնութեամբ եղբարքն ի ստրկութիւն վաճառեցին։ Եւ ի ձեռն նախանձու զերկուս հոգեշնորհ անձինս, զԱհարօն

1 ՁՎԱց. Հրատ
3 Վ. հայց եղեալ
4 Վ. և ոչ օտար զոք
6 Աց. ի ծառայութեան
7 Վ. մեզ եղև
7 Զ. տէր Ազատն
7 Վ. քո քեռի էր։ Եւ այդմ
9 Վ. բղեաշխն
10 Վ. անգզագոյն քան զձեզ
12 Վ. Անոյշ Վռամ
13 Վ. հոգեւորութեամբ
13 ՑՑ. որպէս զձեզ
14 Վ. անկ էյր
16 Վ. *առ արդարև
17 Վ. քաջութիւնդ
19 Վ. շնորհս քան զբազում
22 ՑՑ. չիք տեառնէ
24 ՑՑ. աղետի
26 Վ. աշխարհի
26 ՁՎԱց. ընկճեալ զնա։ Այսպէս ըստ ուղղագրութեան ԲԳց.
27 Զ. չիք զնա
27 Զ. ի կաթողիկէն։ Վ. ի կաթուղիկեայց
28 ՑՑ. Թէ
28 Վ. աշխարհս — Իմաստ. Բ, 24
28 Վ. չիք երկուցն միայնոյ ... Սաւուղ ի կորուսանել (եր. 189, տ. 3)
29 Զ. միայնւոյ

և զՄարիամ, յանարժան խորհուրդ յանգգնեցուցեալ՝ բորոտեցուցանէր զմարգարէ կինն։ Ի ձեռն Նախանձու զախոյեանաբեկ և զժողովրդակեցոյց զայրն զԴաւիթ՝ անհանգիստ որսայր Սաւուղ ի կորուսանել։

Եւ արդ՝ զի՞նչ ևս ասեմ զարարածոցս առ միմեանս, ուր և զամենեցուն զարարիչն և զՏէր Յիսուս Քրիստոս առ Նախանձու ժողովուրդք Հրէիցն և քահանայապետք նախ ժամանակօք ձաղեալ այպանէին, կոչելով զնա երբեմն կախարդ, յասելն, թէ «Բէեղզեբուղաւ իշխանաւն դիւաց հանէ դա զդևս». և դարձեալ՝ գինեմոլ անուանէին և զեխասէր, ասելով ցաշակերտսն, թէ «Ընդէ՞ր վարդապետն ձեր խառն ընդ մեղաւորս և ընդ մաքսաւորս ուտէ և ըմպէ»։ Այլ և չպահեցողութեամբ և անժամակերութեամբ եպերէին. ասեն. «Ընդէ՞ր աշակերտքն Յովհաննու և փարիսեցիքն պահեն, և քո աշակերտքդ խառն ուտեն»։ Կոչեցին զնա և դիւահար. «Ո՞չ, ասեն, ստոյգ ասեմք, թէ Սամարացի ես դու, և դև կայ ի քեզ»։ Եւ ժողովեալ սուտ վկայս՝ առ մոլեգնութեան քինուն զինչպէտս տային խօսել, և քրքուէին խրախացեալք առաջի դատողացն. ուր ծանուցեալ Պիղատոսի, ըստ վկայութեան աւետարանչին, թէ «առ Նախանձու մատնեցին զնա», լուացեալ զձեռս՝ ասէ. «Անպարտ եմ ես յարենէ առնդ, զի ոչ ինչ գտի ի դմա վնաս արժանի մահու. դուք առէք, ասէ, և ըստ ձերոց օրինաց դատեցարո՛ւք»։ Եւ ընկեցեալ զնա յօրէնսն և ի ժողովուրդս, որք էին երկոքեանն մահապարտք, և՛ ժողովուրդք Հրէիցն և՛ օրէնքն։ Որոց չհանդուրժեալ դիւամոլ Նախանձուն՝ վիճակեցին մահու, և ոչ ուղղոց, այլ անիծից, իբրև զչարագործ և մարդասպան, այսինքն՝ խաչի, զարարիչն և զնորոգիչ, զկենսատուն և զմահասպան, զերախտաւորն առ ամենեսեան, զքաղցրն և զբազումողորմն։

Եւ զայս ամենայն կարիս կրեալ յանձն իւր յաղագս մեր՝ զսոյն և իւրոց աշակերտացն ստէպ զգուշացուցանէր, թէ և ձեզ դիպելոց է այս ամենայն. յորում մի՛ իբրև զանկազմս և զանպատրաստ գտեալք հասելոց ի վերայ ձեր վշտացն՝ զանգիտիցէք։ «Եթէ զիս սիրեցին՝ ապա և զձեզ սիրեսցեն. եթէ զիս ընկալան՝ ապա և զձեզ ընդունին. ապա թէ զիս հալածեցին՝ և զձեզ հալածեն. եթէ զիս ատեցին՝ և զձեզ ատեն. և եթէ զիս որ տանուտէր էի, Բէեղզեբուղ կարդացին՝ ո՛րչափ ևս առաւել զձեզ և զընտանիս իմ»։

4 Աs. առ միմեանս — Վ. Եւ արդ Թողեց զարարածոց առ միմեանս, և որ
4 ԶԱs. որ և զամեն...
4 ԲԳs. բաց եմ թողել զարարածոցս առ միմեանս, ուր և զամենեցուն
5 Աs. ժողովուրդ
7 ԶԱs. բէղզեբուղաւ — ԲԳs. բեղզեբուղաւ
8 Ղուկ. ԺԱ, 15 եւն
10 Մատթ. Թ, 11. Ղուկ. Ե, 30
10 ՏՏ. չիք և ընդ մաքսաւորս — Վ. և ըմպէ, և որ ի կարգին: Այնուհետեւ չիք մինչեւ ըզքաղցրն և զբազումողորմն (s. 25)
12 Մարկ. Բ, 18
14 Յովհ. Ը, 48
14 Զ. առ մոլեգնութեան
17 Մարկ. ԺԵ, 10
19 ՏՏ. չիք առէ
19 ԲԳs. ըստ ձեր
19 Մատթ. ԻԷ, 24. Ղուկ. ԻԳ, 14. Յովհ. ԺԸ, 38
24 ՏՏ. զբազմողորմն
26 Վ. Այլ զայս ամենայն կրեալ յանձնիւր յաղագս
26 ԲԳs. զնոյն
30 Զ. թէ զիս ընկալան
30 ԶՏՏ. զիս ընկալան՝ և զձեզ
31 Վ. հալածեն, և եթէ
31 Վ. եթէ զիս տանուտէր էի
33 Տես Մատթ. Ժ, 40. Յովհ. ԺԵ, 20. Յովհ. ԺԵ, 18. Մատթ. Ժ, 25

*Դորին նմանեօք ըստ ժամանակի որսացեալ առ նախանձու՝ կուտէին և ի վերայ իմ բազում բանսարկութիւնս, ասելով, եթէ «Ղազար ասէ, թէ պոռնկութիւն մեղք չեն. զսոյն և մարզպանին սաղրէ»։ Եւ եթէ ընդէր այդ այդպէս՝ դու, տէր, քաջ գիտես քան զսուտ կարծողսն։ Եւ ընդունէին զեղխ և անսուրբ անձինք քաղցր ախորժելով զլուր այդպիսի բանից, ի սատարութիւն բունելոց յինքեանս չար գործոցն։*

*Արդ՝ ո՞ր ոք յանօրինաց, թող թէ ի քրիստոնէից, ի միտս իւր խորհել զայսպիսի ինչ բան, թող թէ և առ այլում զայսպիսի շշնջել բանս. ո՞ր անմիտ, ո՞ր տգէտ, ո՞ր Հրեայ, ո՞ր այլազգ։ Եւ Ղազա՞ր զայդ քարոզէր. ո՞ւմ, և կամ ո՞ւր, և կամ ե՞րբ.—որ տգէտն է գրոց, որ անհրահանգն է յուսմունս, որ մովսիսական օրինացն օտա՞ր է և քրիստոսատուր շնորհին անտեղեա՞կ։ Եւ չիցե՞ն արդեօք աքեղեանս Հայոց արժանի ողբոց արտասուաց և բազում սգոյ— համբաւել զանպիտանս, խօսել առ նախանձու զանարժանս։*

*Քանզի ո՞ արդեօք զերկայնամիտն և զանցասումն Աստուած դրդուեալ՝ յայնպիսի ահաւոր շարժեաց ի բարկութիւն,—ածել զջրհեղեղն ի վերայ ամենայն երեսաց երկրի, մինչև զամենայն ծածկել զլերինս. ո՞չ ապաքէն բորբոքեալքն ի պոռնկութիւն։ «Տեսեալ, ասէ, որդւոցն Աստուծոյ զդստերս մարդկան՝ խառնակեցան ընդ նոսա»։ Յաղագս որո՞յ իրիք համարեցաւ այնպէս մեծ արդարութիւն Ահարոնեան Փենեհեզի ազգէ յազգ մինչև յաւիտեան՝ եթէ ոչ յաղագս հարկանելոյ գեղարդեամբն և ցցելոյ ընդ գետինն զԶամբրի՝ հանդերձ Մադիանացի բոզիւն, և ցածուցանելոյ զբարկութիւնն Աստուծոյ։ Յորո՞ւմ պատուհասի քսան և չորք հազարք արանց ի միում աւուր անկան ի ժողովրդենէն Տեառն։ Ամոն ո՞չ ապաքէն վասն անհանճար խօսիցն բազմաժամանակեայ քինակալութեամբ սպանաւ յեղբօրէն։*

*Կամիցի՞ն զսոցուն անդստին ի Մովսիսագիր պատմութենէն և յայլոց մարգարէից լսել զհակառակսն. հայեսցին ընդ առաջին ճանապարհ հարցն ապաշխարութեան։ — Այրն Աստուծոյ Ենովք, ընդ ամուսնացեալսն օրինաւորութեամբ և գտեալ հաճոյ Աստուծոյ՝ յանմահական փոխեցաւ վիճակն։ Նոյ բազմաժամանակեայ պահելով զկուսութիւն մինչև ի հինգ հարիւր ամ, և զկնի այսորիկ յաղագս որդիծնութեան ամուսնացեալ սրբութեամբ՝ երկրորդ աշխարհիս սերելոյ գտաւ պատճառ։ Ըստ սմին և մեծն ի մարգարէս Մովսէս. սոյնպէս և պաշտօնեայ նորին, պարկեշտասէր կուսութեամբ պատուեալն Յեսու։ Իսկ զարմանալի զառնէն զենղխայէ ո՞ ոք բաւական իցէ ասել բանիւ զգովութիւն, որ ի մարմնի*

1 Վ. դորին նմանեօք
2 ՑՑ. չիք և
3 ՁԱՑ. մարզպանին սա զրէ։— Վ. մարզպանին զրէն։ Այսպէս ըստ ուղղագր. ԲԳՑ.
4 Վ. չիք և ընդունէին... չար գործոցն (տող 6)
5 Ձ. զեխղ
6 ՁԱՑ. բունելոյ
8 Վ. չիք թող թէ և առ այլում... շշնջել բանս
9 ՑՑ. բան
13 Վ. չիք համբաւել զանպիտանս...... և զլոկ պատճառս անինչից (եր. 191, տ. 5)
18 ՑՑ. բորբոքեալքն
19 Ծննդ. Զ, 2
20 ԲԳՑ. Փենեհէզի
24 ՑՑ. ի միում պատերազմի։ Տես Ա. Կորնթ. Ժ, 8
25 Ձ. անհանճար խօսիցն
27 ՑՑ. կամիցէ՞ս
28 Ձ. լսել... ընդ յառաջին
31 Ձ. բազում ժամանակեայ
33 Ձ. սէրելոյ
36 ԱՑ. զենղխայէ

զանմարմնոցն բերելով ղքաղաքավարութիւն՝ հրեղէն կառօք ի հոգեղէնսն վերացաւ ի կեանս։ Իսկ եթէ ի Քրիստոսատուր շնորհէն զսոցունց բաղձալցեն զնմանս՝ զխստագոյնս գտցեն և զզարհուրելիս. որ զընաւ գործելոցն մեկուսի ընկեցեալ զմեղանչականութիւնս, և զլոկ ի պատճառս տենչից ՝հայեցմունսն ընդ կատարեալ շնութեանն՝ լծեաց Փրկիչն ասելով, թէ «Որ հայի ի կին մարդ ի պատճառս ցանկութեան՝ անդէն շնացաւ ընդ նմա ի սրտի իւրում»։

Այլ և զհեթանոսաց ևս զվարդապետին յաւելեալ ի սոյնս զքարոզութիւն՝ լուեալ լսեսցեն լիրքն և անամօթքն, որ այլոց բանիւ զիւրեանց կամացն խօսին զախորժս, և չսոսկան արամբն, որով Քրիստոս խօսէր ընդ աշխարհի, որ զմնացորդս չարչարանաց Փրկչին յիւրում ի ճգնափորձալից ի մարմնի կրէր, Տարսոնացի սեռովքն Պօղոս։ Սա զոր ինչ յաղագս պոռնկացելոցն չժառանգելոյ զարքայութիւն գրեաց յամենայն յիւր ի Թուղթսն՝ յոյժ բազում են, և գրել զընաւն մի ըստ միոջէ շատ աշխատութիւն համարիմ և աւելորդս. քանզի ընդ գիտնոյ օրինաց են խօսքս։ Այլ սակաւ բանիւք զոր *յԵրկրորդումն Թղթին գրէ ի Կորնթացւոցն՝ ճանաչի և այլն ամենայն, թէ «Ընդէ՞ր իսկ բնաւ և անուանի ի միջի ձերում պոռնկութիւն»։ Եւ առ Եփեսացիսն՝ թէ «Պոռնկութիւն և ամենայն պղծութիւն և կամ ագահութիւն մի՛ անուանեսցի ի միջի ձերում»։ Եւ անդէն առ նմին՝ թէ «Զայս գիտասջի՛ք, զի ամենայն պոռնիկ կամ պիղծ կամ ագահ, որ է կռապաշտ, ոչ ունի ժառանգութիւն յարքայութեանն Քրիստոսի»։

Արդ՝ ա՛ղէ ասասցեն հէգք և թշուառականք. ընդէ՞ր առ նախանձ արկանիցեն զանձինս ընդ անապաշխար մեղօք, զորոց և Յովհաննէս յիշէ ասելով, թէ «Են մեղք՝ որ մահու չափ են». զոր և յաւետարանչացն կարգան ցանգ և զանց առնեն իբրև զարհամարհոտս, թէ «Որ հայհոյեսցէ զՀոգին սուրբ՝ մի՛ թողցի նմա, մի՛ յայսմ աշխարհի և մի՛ ի հանդերձելումն»։ Այլ գործէ ոք մեղս ըստ թուլութեան մարմնոյ, որպէս և եսս, որ մեղաւորս եմ քան զամենայն կենդանիս. այլ ասել զմեղսն չգոլ մեղս՝ ո՞րպիսի արհամարհոտ և ամբարիշտ հոգի կարիցէ ածել

4 ԲԳՑ. մեղանչականութիւնս
4 ՏՏ. զպատճառս
5 Վ. բաց թողած հատուածից յետոյ ունի Արդ թողեալ զհետն՝ և եկեսցուք ի նոր քրիստոսատուր պատուիրանն. եթէ բաղձանայցեն զխստագոյնս և զզարհուրելիս գտցեն, որ զընաւ գործելոցն հայեցմունս ընդ կատարեալ շնութեան հեն
7 Մատթ. Ե, 28
8 Աց. զհեթանոսաց և զվարդապետին ԲԳՑ. զհեթանոսաց զվարդ...
11 Վ. ի ձգնափորձալից մարմնի
12 Վ. Նա զոր ինչ
14 Վ. համառօտել է յոյժ բազում են. Թողեց գրել մի ըստ միոջէ, քանզի ընդ գիտնոց օրինաց են խօսքս։ Արդ աղէ... (տող 23)
18 Ա. Կորնթ. Ե, 1
20 Եփես. Ե, 3
20 Զ. անդէն և առ
22 Եփես. Ե, 5
23 ՁՏՏ. հէքք
24 ՏՏ. զորոց և յիշէ ասելով։ Զ. զորոց և պօղոս յիշէ ասելով։—պօղոս՝ի վերեւից նոր աւելացրած յետոյ (պատրուով)։ Վ. զորոց և Պաւղոս յիշէ
25 Ա. Յովհ. Ե, 17
26 Աց. զարհամարհոտս
28 Մատթ. ԺԲ, 31—32. Մարկ. Գ, 28. Ղուկ. ԺԲ, 10
28 ԶՎ. Թուլութեան. յետոյ Զ. ուղղել է թուլութեան
29 Վ. բաց է թողել այլ ասել զմեղսն... չդեպէ ոպորմութեան (էր. 192, տ. 3)

զմտաւ։ Իսկ որ ճանաչէ զյանցանսն և զարհուրեալ սրտիւ կարող լինիցի փութալ ի զղջումն՝ վաղվաղակի պատահի թողութեան. իսկ որ կամիցի ապաքինել ըստ ձևոյ անմիտ կուսանացն՝ չդիպի ողորմութեան։

Այլ ասեն. «Աղանդաւոր է»։ Եւ զայս սաէպ ծանուցանել ամենեցունց ճեպէին. զորս հաւատացուցեալ ի տկարամտաց՝ թեր ի վարդապետութիւն շնորհին որ էր ի յիս՝ հայեցուցանէին։ Որ և զանուն անգամ աղանդոյն, որով բամբասէին յանդգնեալքն՝ կարի յոյժ համարիմ աղտեղի՝ նշանակել գրով։ Այլ նկատումն հայհոյանացն զնոցունց իսկ զյառաջագրելոցն բերէ զնմանս,—թեթևս և չնչինս համարել զպոռնկացելոցն զգործս։

Բայց իմ ըստ կարի պարապեալ յունական ուսմանցն, և ըստ զօրելոյ տկարամտութեանս իմոյ կարդացեալ զգիրս արանց սրբոց, որք վառեալք սուրբ Հոգւոյն զինու՝ զսուրս հոգեփողոտս աղանդաւոր ուսմանցն դարձուցանէին անդրէն ի սիրտս նոցունց, և զաղեղունս նոցա փշրեցին, և զփրկագործ վարդապետութիւնն՝ իւրեանց գրով մեզ աւանդեցին, հոգացեալ իբրև զարդարև ոգեսէր հարս՝ զամենայն տգէտխորհուրդ մարդոց զօգուտն. զորոց յերկար ոք և ջերմ սիրով ընթերցեալ զգրեալս՝ անվնաս և դիւրազերծ կարէ լինել հրաբձակ նետից չար ձգողացն. զսրբոցն ասեմ զԱթանասէ Աղեքսանդրացւոյ, և զերկուց միանուն արանցն՝ զԿիւրղէ Աղեքսանդրացւոյ և զԿիւրղէ Երուսաղեմացւոյ, և զԲարսղէ Կեսարացւոյ, և զԳրիգորէ Նազազացւոյ, որ և յաղագս առաւելեալ ի նմա շնորհի ուղղափառ գիտութեան Աստուածաբան յորջորջեցաւ. և զմերոյին առաքելանման նահատակին Գրիգորի, զվարդապետէն Հայոց, և զնոցունց նմանեացն, որք զնոյն շաւիղ առողջմտութեանն հետևեալ վարդապետեցին.... Յաղագս որոյ և զայլսն ամենայն և զորս առ նոսա արանցն՝ ծառայք նորա ունին զամենայն գրեալսն, զԱրիոսի Աղեքսանդրացւոյ և զԱպողինարոսի Լաւոդիկեցւոյ, և զՆեստորի զԱնտիոքացւոյ, և զԵւտիքեայ Կոստանդինուպօլսեցւոյ, և զԿումբրիկայ սորկի, որ և յետոյ Մանի զինքն անուանափոխեաց, ուստի և Մանիքեցիք կոչեցան աշակերտեալքն նմա. և զայլոցն բազմաց զնոյնանման կորստեան ճանապարհին ուղեկցաց, զորս սուրբ կաթողիկէ և առաքելանման եկեղեցւոյ նզովեալ և արտաքս ընկեցեալ՝ յամենայնէ ի բաց և մեկուսացեալք ի յԱստուծոյ ուղղափառ ուխտէն, մինչև ցայսօր վարին ներկեալք իւրաքանչիւր ախտիւ, անծածուկքն միմեանց, և յայտնի են ամենայն ուղղափառ ժողովրդոց։

1 Զ. զանցանեն
3 Զ88. ապաքինել։ Զ. վերջին ե՛ն ներուածի վրայ
5 ԶՎԱs. թերեւ վարդապետութիւն։ ԲԳs. ուղղագրել են թերեւ զվարդապետութիւն
8 Վ. հայհոյողացն
9 Վ. թեթև և չնչինս
10 Վ. չիք բայց իմ ըստ կարի... ուղղափառ ժողովրդոց (s. 34)
15 ԶԱs. զարդար և։ ԲԳs. զարդար
16 Զ. յերկարու ք։ Այսպ. ըստ ուղղագր. Ա(եւ ԲԳ)s.
19 ԶԱs. և զԿիւրղէ Աղեքսանդրացւոյ՝ զերկուց միանուն արանցն, ըզԿիւրղէ (Զ. զԿիւրղի) Երուսաղեմացւոյ։ Այսպ ըստ ուղղագր. ԲԳs.
20 ԲԳs. զԲարսղէ (չիք և)
21 88. չիք ուղղափառ գիտութեան
22 88. զմերոյն
24 Ենթադրում են՝ խօսքի պակասորդ
25 ԲԳs, զամենայն գրեալսն՝ից յետոյ քննել ծանօթ. «Պակասէ կամ խառնակեալ է բանս»
26 ԶԱs. զԱպողինարոսի զԼաւոդիկեցւոյ։ Այսպ. ըստ ուղղագր. ԲԳs.
27 Զ. կոստանդինուպօլսացւոյ
32 Զ. ուղղափառ ... ուղղափ.
33 88. ախտիւ։ Զ. ախտիւ։

Եւ արդ՝ թէպէտ և գթեալ սոքա անբժշկութեամբ կաղան ի հաւատն՝ այլ սակայն բանիւ, և ոչ գործով. զի ըստ մարմնոյ պարկեշտութեան յամենայն ճգնութիւնս մի զմիով ելանելս առնեն, և մանաւանդ ի կերակուրս և յըմպելիս և ի գիջութեան ժուժկալութիւնս. և զայս տեղեակ գիտեն յամեալքն ի Յոյնս։

Իսկ Հայոց աշխարհի ազանդ զոր ասեն՝ անանուն է ըստ վարդապետի և անգիր ըստ բանի։ Ի հաւատոյ և յուսմանէ տգէտք երևին, և ի գործս ծոյլք և անժոյժք. յորոց, ըստ անգիտութեանն որ է ի նոսա, և անկարգ ըստ վարուց՝ այդպիսի իսկ արդարև ազանդոց վայել էր բուսանել, ըստ յօդուածոյ առասպելաբանութեանն, թէ «Ըստ խօզի հարմնացելոյ՝ կոյաջուր բաղանիք»։ «Մի արդարև պատմեցի այս ի Գէթ, ըստ բանի ողբոյն, և մի լուիցի ի դրունս Ասկաղոնի». իսկ որ ընթեռնուն՝ ի միտ առցէ։

Բայց ես թէ և գիտէի զոք յայնպիսեացն՝ ընդ լրոյ դատել զոք և կամ պարտաւորել ամենևիմբ ոչ կամէի. վասն որոյ կարծէին չարաթոյնքն, թէ և ես նմանեցիմ նոցա։ Քանզի ուսեալ էի ի Փրկչէն, որ ոչ հրամայէ ամենեցունց՝ յոխորտ խլել զորոմն ի ցորենոյն մինչև ի ժամանակ հնձոցն, և առաքել զհրեշտակս իւր ի ժամանակի հնձոցն. զորս կամ հրեշտակս իսկ առէ, և կամ ճշմարիտ վարդապետս. որպէս սովոր են զվարդապետս հրեշտակս անուանել աստուածեղէն Գիրք, որպէս և զիշխանս՝ աստուածս ասացին մարգարէքն։ Իսկ ես, ոչ հրեշտակս՝ և վարդապետ և ոչ երբէք իսկ չեմ եղեալ բանիս այս, ըստ երբէք ի հարցողաց ուրուք կամաց գործոյ իշխանութեան, և ոչ երբէք։ Քանզի յաղագս առելոյ զիս, թերևս արդեօք և ըստ անարժանութեան, սուրբքդ և անարատք և յամենայն մեղաց ազատ ուսուցիչքդ Հայոց, թող ի մեծամեծսն ձգտեցուցանել զիս, յեպիսկոպոսութիւն և կամ ի նոցին յառաջին զգաստութիւն, և կամ յեկեղեցւոյ դատաւորութիւնս՝ այլ և քորեպիսկոպոս ոք չարար, զոր Պարսիկք և արք անարժանք գործեն և այսօր։

Ինձ անձամբ զանձն յանդգնեցուցանել ի վարդապետութիւն, որպէս և զբազումս տեսանէի յանպիտանաց՝ այնպէս յահագին առնէն սարսէի, ի Յակովբոսէ, որ բողոքէն ցանկ, թէ «Մի բազում վարդապետս լինիք, եղբարք. գիտասջիք զի մեծ դատաստան ընդունիք». և ոչ

2 Վ. սակի բանիւ
3 ՁՎԱՑ. զմի միով
4 ՑՑ. ըմպելիս
4 ՑՑ. չիք և զայս տեղեակ... ի Յոյնս — Վ. և զայս տեղեակք են յամեալքն ի յոյնս
7 Ձ. ըստ բնի (պակասում)
9 ԲԳՑ. ուղղագրեց են ըստ անկարգ վարուց — Վ. և անկարգս վարուց
10 Ձ. յօղուածոյ
10 Վ. ըստ խօզի՝ հուր, զնաւելոյ *կոծաջուր
11 Այսպ. ըստ ՁՎԲԳՑ. Աց. ուղղագրեց և պատմեցի այս գէթ
12 ՁՎԱՑ. մի լուիցէ։ ՁԱՑ. ի դրունս։ Այսպ. ըստ ԲԳՑ.։ Թերևս լաւագոյն մի լուիցի, որ...
12 Բ. Թագ. Ա, 20
13 Ձ. ընթեռնոյն
14 Վ. չիք բայց ես թէ և գիտէի... և ոչ երբէք (տ. 23)
14 ՑՑ. դատել և կամ
15 Ձ. չարայթոյնքն
16 Ձ. նմանեցիմ ի վերջին ե՛ն ջնջուածի վրայ
18 Մատթ. ԺԳ, 29, 30
23 ԲԳՑ. ունին ծանօթ. «Պակասի ինչ կամ խանգարեալ է. իսկ իմաստն յայտնի, չլինել վաճառող կամ հետամուտ աւագութեան»։
26 ՎՑՑ. ձկտեցուցանել
26 Վ. և կամ նոցին
27 Ձ. զգաստութիւն
30 Վ. որպէս բազումս
31 Վ. ի Յակոբոսէ, որ բողոքէ նա
32 Յակ. Գ, 1

դարձեալ իբրև զլցեալսն պիղծ և վատթար գործովք, որոց չհայեցեալ յիւրեանց գերանն՝ յայլոց մատուցեալ յակնն՝ զնշոյլն հանել շիւղ։ Եւ այսպիսի կեղծեօք հնարեն կարծեցուցանել աշխարհի զանձինս արդարս. և այն ոչ երբեք ծածկի, այլ ևս առաւելեալ յաւելուածովք կուտեն անձանց բարկութիւն յաւուրն բարկութեան. և չլսեն զՊօղոսի բողոքն, եթէ «Զանձինս դատէաք»։ Եւ այլք ագահութեան ախտիւ վարակեալք՝ արկանեն ընդ պարտեօք զարդարս և զոչ արդարս, և կարացեալ ևեթ ըմբռնել զմամոնայն, յաղագս որոյ խուեմն՝ այնուհետև զամենեսեան արդարս անուանեն և անմեղս, և զմարգարէին Ամբակումայ ստունկանեն զաղաղակ, մանաւանդ թէ Նովաւ զսուրբ Հոգւոյն, թէ «Վա՜յ որ պահէ զագահութիւն չար ի տան իւրում»։

1 Վ. չիք Եւ ոչ դարձեալ.... կարէր ումեք հանդոյ լինել (եր. 193, տ. 32— եր. 196, տ. 5)
1 ԲԳՏ. լցեալսն
1 Ձ. վատ գործովք
2 ԲԳՏ. յակնին
3 Ձ. կեղծաւք
6 Հռովմ. ԺԴ, 22
11 Ղ. Փարպեցու Թղթում նաև խոսքի աղաւաղութիւն կայ, որ առաջ է եկել մայր ձեռագրի մէջ թղթերի տեղափոխութիւնից, որից այդ աղաւաղութիւնը անցել է Ձ.ին, Վ.ին եւ ՏՏ.ին: (Տես Յառաջաբանը): ԲԳՏ. մեծ մասամբ ուղղագրել են այս աղաւաղութիւնները՝ տեղափոխուած հատուածները իրանց բնական տեղերում զետեղելով: Այս դասաւորութեան համեմատ է եւ ներկայ տպագրում:
Համեմատութեան համար դնում եմ տեղափոխուած հատուածների դասաւորութիւնը ըստ ՁԱՏ.ի եւ ըստ Վ.ի
ՁԱՏ. 1. Իսկ անձամբ զանձն յանդգնեցուցանել... տառնկանեն զաղաղակ մանաւանդ թէ Նովաւ (եր. 193 տ. 29— եր. 194 տ. 10)
2. Եւ կամաւ են խորհեցեա զյեշելըլ.... և կամ թագեաւ մի զ ուցէ զգացեալ ուրուք (եր. 197 տ. 27— եր. 198 տ. 35)
3. զսուրբ Հոգւոյն, թէ վայ որ պահէ.... ... զպահպանութիւն տեղւոյն հաստուցանելով (եր. 194 տ. 10— եր. 195 տ. 23)
4. Զի արտաքս եմ անմխիթար.... մանաւանդ թէ ըստ ի քեզ հոգաբարձութեանց (եր. 197 տ. 6—27)
5. քանզի յոլով նորա արբանեկեալ էր.... ընդ օձեւոյն և եթ այր անդր (եր. 196 տ. 16— եր. 197 տ. 5)
6 և ուրոյն զիմ պէտս և զկարգաւորութիւն.... առ Անդղյոյ է. նա առաւել գիտէ. (եր. 195 տ. 23 — եր. 196 տ. 16)։
7. և զիս ընդ քեզ թաղեցէ (եր. 198, տ. 35 մինչեւ վերջ:
Վ. 1. Իսկ անձամբ զանձն յանդգնեցուցանել.... զի մեծ զատուտան ընդունէք (եր. 193 տ. 29—32)։ Այնուհետեւ չիք Եւ ոչ դարձեալ իբրեւ զլցեալսն ..կարէր ումեք հանդոյ (եր. 193 տ. 32— եր. 196 տ. 5)
2. Եւ կամաւ են խորհեցեա զյեշելըլ.... և ի մարդոյ չարէ փրկեա զիս (եր. 197 տ. 27— եր. 198 տ. 14)։ Այնուհետեւ չիք որոց հետամտեալ այնուհետև.... վա՜յ վա՜յ, տեսին աչք իմ (եր. 198 տ. 14—24)
3. Եւ զի ոչ լոկ բանից .... և կամ թագեա՛ (եր. 198 տ. 24—34)
4. Արդ՝ դու տէր այր յերկարայոյզ ես և անմոռաց, մանաւանդ թէ, ըստ ի քեզ հոգաբարձութեանց (եր. 197 տ. 26,27)
5. քանզի յղելով (= յոլով) նորա արբանեկեալ էր.... և կամ զայլս լուսաւորեցէն (եր. 195 տ. 16 — 28): Այնուհետեւ չիք Եւ դու տէր.... ի ըեզ հոգաբարձութեանց (եր. 196 տ. 29—եր. 197 տ. 27)
6. Բայց են և այլ նոր իմն բանս....նա առաւել գիտէ (եր. 195 տ. 6—16) և զիս ընդ քեզ թաղեցէ որ աներկիւղութեամբ քաջ հովուէ է, (եր. 198 տ. 35—եր. 199 տ. 1)
7. Եւ արդ եղէ՝ որ ի ժամանակս (եր. 200 տ. 31) մինչեւ վերջ, բաց թողնելով հատուածը Ո՞ւր հոգողութիւն արդար ուսուցչի . . . զդժոխս ժառանգեցուցանէ (եր. 199 տ. 1— եր. 200 տ. 30)
11 ՁԱՏ.ի չար տան
11 Ամբակ. Բ, 9

Դարձեալ ասէին, թէ «Գամ մի պիղծ ոք է և չարագործ՝ Ղազարայ վանք անդ են, և սիրէ զնոսա»։ Եւ զայնպիսի բանից զասացողաց զգործս ես անա լսեմ, զի ոչ ինչ է ինձ հարկ ասել. բայց օր ահագին և անաչառ Քրիստոսի ատենին չլուէ, այլ անշէջ բոցոյն մատնէ։ Եւ անուանէին բարեկամս ինձ եղբարսդ սրբոյ զգին գրուանին զքո տեառն եղբօրորդւով։ Եւ ունին երեքեան արքդ զամենայն սնոդեան և խրատու մասն և զհրահանգ հոգեպէս և մարմնապէս, և զծանօթութիւնս ուղղափառ հաւատոյ՝ յօրհնելոյ ի մօրէն քումմէ և ի քէն ի տեառնէ։ Եւ են արք ոչ թերակատարք ինչ հասակաւ և կամ տխեղծք, այլ յամենայն մտաւորութիւնս և յիրս արիութեան լիք և կատարեալք։ Ընդ նոսին և զԱբեղենից տէր, որ և նա ի քո տեառն սիրոյն և յամենընկալ բարերարութենէդ ունի զամենայն յարգանաց իւրոց և լինելոյ ի միջի զպատճառ, և առ ի Տեառնէ. և են ի Քրիստոսի շնորհէն ամենեքեան ողջ և միջի։ Հարցցին ըստ մարմնոյ զհայրութեան իմոյ խրատս և զըստ հոգւոյ զվարդապետութեան իմոյ զբան, և զոր ինչ լուեալ է յինէն՝ չունելով պարտաւորութիւն յոգիս իւրեանց՝ ասասցեն անսուտ։

Բայց սիրէին երեքեան եղբարքն զվանսն սրբոյ Կաթողիկէի՝ պտղովք և ամենայն պիտոյիւք. որոց իւրաքանչիւր ուրուք տուրն յայտնի էր, և գրով մնաց ի տեղւոջն. որք արդարև քո տեառն կամացդ դոքա երևեցան կամակատարք։ Վասն զի յօրէ, յորմէ հետէ դու, տէր, ըստ քո անարգամեծար խնամոցդ յանձնեցեր զիս քո ընտանեաց՝ դոքա երևեցան յիս հրամանակատարք բանի քում, ուրոյն ըստ կամի զպտղաբերութիւն տեղւոյն հաստուցանելով, և ուրոյն զիմ պէտս և զկարօտութիւն հոգալով. այլ և զբանս իմ յոյժ ախորժիւք և պատուականութեամբ ընդունէին, որպէս և զառողջ վարդապետի, և պատուէին որպէս և զհայր. և մանաւանդ առաւել տէր Համազասպ, որում «տացէ Տէր ողորմութիւն, որպէս և տանն Ոնեսիփորայ», բարեխօսութեամբ ասողի զբանդ. զի բազում անգամ հանգոյց զիս և ի հալածմանն կերակրիչ իմ եղև։

Իսկ ոմանց ի տանդ տեառն ես իբրև զանօթ էի յաւելորդ։ Քանզի յաղագս որոյ արուեստի դու, տէր, զիս սպասաւորեալ մեծարէիր՝ այսմ

4 88. չիք ատենին
5 2. զրուանին
5 ԲԳs. Եղբօրորդւով'ից յեռոյ ունի ծանօթութիւն «Խառնակ և սխալ կայ ի բանիդ. Թերեւս զգին պարտ էցէ ընթեռնուլ զերեսին և եղբօրորդիս զ'եղբօրորդւով»: Այս ուղղագրութեան դէմ նկատողութեան եւ վերոյիշեալ աղաւաղուած հատուածի բացատրութեան տես Գր. Խալաթեանցի «Ղ. Փարպեցի եւ Գործք նորին», եր. 43, ծանօթ.: Թերեւս ուղղելու է. Եւ անուանէին բարեկամս ինձ՝ զեղբարսդ զերկոսին, հանդերձ քո տեառն եղբօրորդւովս. զքո'ի զ'ն դնելով եղբարդ'ի վրայ. սրբոյ զգին'ը — զերկոսին, եւ դրուանին կամ գրուանին'ը հանդերձ կարդալով
6 88. երեքեանքդ զամ...
7 2. և զծանօթութ (պատուով) ուղղափառ... օրհնելոյ ի մօրէն քումմէ և ի քէն տեառնէ։ Աs. օրհնելոյ ... քումմէ։ Գs. քումէ
9 2Աs. տհեղձք
15 88. լուեալ է քո յինէն
16 2. պարաւորութիւն
17 ԲԳs. երեքին
19 Գs. որ Տեառն
23 88. զպտղաբերութիւն
24 ԲԳs. զկարօտութիւնս
27 88. Ոնեսիփորայ
27 Բ. Տիմոթ. Ա, 16
30 ԲԳs. բաց են թողել այս հատուածը. «Իսկ ոմանց ի տանդ տեառն... հանձնոյ լինել» (եր. 196, տ. 5)
30 Աs. իբրև անօթ

ինչ զորս չէին տենչողք. արծաթ և ոսկի, զոր թէ իմ ի շատ ումեքէ զտեալ էր, որում թէ ոք ի խնդիր էր՝ զայն ի պէտս տեղւոյդ ծախէի։ Խոհակերութիւն ունել իսկ չէի, եթէ ձկան աղիս ըստ ուրուք ճաշակելեացն մարթէի յօրինել, և կամ զհաւուց փորոտիս, որովք թերևս կարէի ումեք հաճոյ լինել։

Բայց ես և այլ նոր իմն բանս ասեմ տեառնդ, զոր եթէ թուիցի արդարախնդիր մտացդ՝ նախ քան զամենայն աղաչեմ զտէրդ՝ քննել զայդ. յորոյ ճշգրտիւ հասեալ ի վերայ՝ կամ զարմասջիր և կամ խոտեալ իբրև զոչ արդար՝ անգոսնեսջիր։ Քանզի յորէ, յորմէ հետէ տարար դու, տէր, զիս ի տեղիդ, մինչև յօր հալածման իմոյ, ի մտից տեղւոյդ և կամ յերախայրեաց մինչև ցդրամ մի յանձն իմ ոչ էր յարեալ, և յիրս իմոց պիտոյից ումեք ինչ ոչ էր տուեալ. և գիտեն զայս բնակեալքն ընդ իս, այլ առաւելագոյն այր մի Ակիթ անուն, որ եկեալ ի տեղիդ ի Գարգմանայ վանաց ի նմին աւուր, յորում հիմն արկաւ տեղւոյդ, և մինչև ցգնալն իմ ի տեղւոջդ էր, և արդ լուայ, թէ առ Անգղոյ է. նա առաւել գիտէ, քանզի յոլով նորա արբանեկեալ էր զպէտս տեղւոյդ. հարցցի, թէ կա՞յ ուրեք և ասասցէ։ Այլ կարգեալքն ինձ ըստ տարւոյ ի տեառն Ներսեհէ և Հրահատայ ի պէտս զարմանոյ և հանդերձոյ և ձիոյ՝ յայտնի է, նոյնպէս և ի քո տեառն յեղբօրորդեացդ. և այն իսկ շատ լինէր ինձ և բաւական, այլ երբէք և յաւելորդացն ի պէտս տեղւոյդ ծախէր յիմոցն։ Բայց բերեալքն իմ յԱգուանից և ի Վրաց և ի Սիւնեաց և յԱրշարունեաց, և որ ի դոցունց իսկ ի քո տեառն եղբօրորդեացդ՝ ամենայն իւրաքանչիւր ուրուք տուրն որոշողութեամբ մնաց ի տեղւոջն գրով. և զիս հանեին մերկ և թշնամանօք յամենայն արարելոց իմոց, զոր ի մանկութենէ արարեալ էի։ Զի անգամ և զհոսոմ գրեանդ ոչ ետուն զկնի իմ. որք կան այդր ընկեցեալ ի կերակուր ցեցոյ. բայց արդեօք կարդացեալ լուսաւորիցե՞ն ի դոցանէ բնակեալքդ ի տեղւոջդ, և կամ զայլս լուսաւորիցե՞ն։

Եւ դու, տէր, զայս և մի ինչ ոչ գիտացեր, բայց գիտել արժան էր. քանզի լուայ, եթէ առէին զկնի իմ, եթէ չգոյր ինչ ի տեղւոջն։ Զի ամենայն կահիւ կազմածով եթէ սակաւ մի երևէր նուազեալ քան զայնոսիկ, որք յերկերիւր ամէ շինեալ վանորայքն՝ չհամարէի զանձնս

1 Աճ. ունի յակերտով. «Ի տանէդ Տեառն ես երբեք անօթ էի յաւելորդ, քանզի յաղագս որո՞յ արուեստի՝ դու Տէր, զիս ազատութեամբ մեծարէիր։ Այժմ ի՞նչ զորս չէին ամենչոցը... եր. 195 տ. 30—եր. 196 տ. 1)
3 Աճ. ըստ որում
6 Վ. ուրիշ ձեռք է գրում բայց ես և այլ նոր իմն.... նա առաւել գիտէ (եր. 196 տ. 16) և զիս ընդ քեզ *մ[illegible] որ անէրկիւղութեամբ քաջ հովիւ է։ Տես եր. 194 ծան. 11
6 Վ. թուեսցի
8 ՁՎԱճ. և կամ խոտորեալ իբրև զոչ արդար։ Այսպ. ըստ ուղղագր. ԲԳճ.
9 Աճ. անզոսնեոջիք
11 ՏՏ. երեխայրեայ... ոչ է յարեալ։ Զ. երախայրեաց։ Վ. յերեխայրեայ
16 Վ. քանզի յղեւլով նորա
16 Վ. ուրիշ ձեռք է գրում հաստատեն քանզի յղեւլով նորա արբանեկեալ էր... կամ զայլս լուսաւորիցեն (եր. 196 տ. 28) Տես. եր. 194 ծան. 11
18 Աճ. Հրատայ
21 Զ. նախ ծախէր, յետոյ ուղղած ծախեւր
25 Գճ. արարեալ էր
25 Վ. հոսոմ
26 Վ. ցեցւոյ
28 ՁՏՏ. լուսաւորեսցեն
29 Վ. չիք Եւ դու, տէր, զայս և մի ինչ... և ծախողաց և մթերից տեղւոյն (եր. 197 տ. 25)։ Տես. եր. 194 ծան. 11

արժանի կալոյ։ Զի թէպէտ և միանգամ և երկիցս ջարդեցաւ բոլոր կահն յանհաստատութենէ շինուածոյն, այլ զվերջինն թէ գիտացեալ էր տեառնդ, և պահանջեալ յինէն համարս, դէմ յանդիման զերեսլիս կոլ առաջի քո ընտրութեան, կովութեան և կամ պարսաւանաց էի արժանի։ Բայց ես ընդ օձտելոյն ևեթ այսր անդր . . . . .

Զի տրտում եմ անմխիթար մինչև ի մահ, որ նման գայլոց յարձակեցան յարարս իմ և գիշատեցին յանխնայ, տեսեալ զիս՝ եթէ մերժեցայ յաչաց քոց։ Եւ արդ իմով ընչիւք շրջին պճնեալք, ծաղր առնելով զիս։ Այլ որ ինչ ի տեզւոջդ մնաց իմ՝ ուրախ եմ և ցնծամ, զի ի սուրբ և ի հոգևոր տեղւոջ մնաց։

Դարձեալ այլ շոգմոգ բանիւք զայրացուցանել զքեզ, տէր, ընդ իս փութային, թէ «Մանուկ մի՝ հոգաբարձ տեղւոյն չկարէ առնել»։ Եւ ինձ հրեշտակ ոք ոչ մարմնացաւ, որ թերևս ըստ հոգեղէն բնութեանն տեսեալ զառ ի ծածուկ ձգեալ զորոգայթ թշնամեացն՝ մարթէր զգուշանալ և յանձն առնոյր լինել ինձ երկրորդ։ Մարդ, զոր և առնէի՝ անդէն և անդ հասեալ մօտ անկանէին ի դաւաճանութիւն նենգիչքն, և արբուցեալ հրապոյրս պղտորս՝ ասէին. «Ո՜վ անմիտ մարդիկ, ընդէ՞ր վաստակիք յանօգուտս. հի՞մ լայք ի զուր ի խորշակահար տեղւոջդ, և խօլութեամբ անձնամահք լինիք։ Զի են ի Մամիկոնէից տանէ աւագ ծառայք ոմանք, և այլ քահանայ աւագ որ է ի տանն, որոց ընդ մեզ բանք են երդմամբ, թէ երբ և է՝ Ղազարայ իսկ չտամ հանգչել այդր, թող թէ նորա ումեք»։ Եւ այսպիսի բանիւք թուլացեալ լսողքն՝ այնուհետև ի շալակս իւրեանց առաւել քան ի տեղիդ փութային համբարել։ Սակայն ես նման մեղուի բերելով յամենայն կողմանց՝ բաւական լինէի և՛ ծախողացն և՛ մթերից տեղւոյն։

Բայց դու, տէր, այր յերկարայուշ ես և անմոռաց, մանաւանդ թէ ըստ ի քեզ հոգասիրութեանդ՝ և կամաւ ես խորհիցիս պյիշելդ, զառեալ պատգամն երանելւոյն Յովհաննու, Գիւտայ կաթողիկոսի եղբօրորդւոյն, քեզ տեառն ի Սևկոյ դրախտին՝ յարանց ոմանց, որք խոստանալով քեզ տեառն կարասի՝ խնդրէին զտեղիդ։ Եւ քո տեառն կոչեցեալ զտէր Վարդ, զքո եղբայր, և զՀայրիկ և զիմ անարժանութիւնս՝ հրամայեցեր միւսանգամ երկրորդել տեառն Յովհաննու զպատգամսն. յոր ասացեալ քո տեառն և այլ բազում ինչ բանս՝ գլուխ պատգամի պատասխանւոյն արարեալ, եթէ «Պարտ էր նոցա իսկ ածել զմտաւ, և զայդպիսի ինչ չյղել առ իս. բայց որովհետև նոքա անզգամեցան՝ սակայն ես զայսպիսի

1 ԲԳՑ. թէպէտ միանգամ
2 ԲԳՑ. գիտացեալ էր.... համար
5 ԲԳՑ. այսր անդր'ից յետոյ ունի ծան. «Աստէն թուի թէ անկեալ»
7 ՁԱՑ. թէ մերժեցայ
10 Ձ. զի սուրբ։ ԱՑ. զ'ի սուրբ։ Այսպ. ըստ ԲԳՑ.
11 Ձ. շոգմոք
15 ՑՑ. յանձն առնոյր լինել ինձ երկրորդ մարդ. զոր և առնէի։ Անդէն և անդ հասեալ....
16 Ձ. ի դաւաճանութեան (պատռուած, ըստ վրայ ցեցերան (?) նշանով)։ ԱՑ. ի դաւաճանութեամբ։ Այսպ. ըստ ուղղագր. ԲԳՑ.
17 Ձ. արբուցեալս
18 Թուի ուղղելի հի՛մ կայք
20 ՁԱՑ. քահանայն Աւագ
20 ԳՑ. ուղղել ի որոյ
22 Ձ. նախ թողացեալ, յետոյ ուղղած այսպ.
23 ՁԱԲՑ. համբերել։ ԳՑ. ուղղագրել է այսպէս (ըստ Ն. Բ.)
27 Վ. պյիշեալդ
28 Ձ. յոհաննու
32 Վ. միանգամ
34 Վ. նոցա ածել իսկ

քրտամբ մեծ զվաստակս և բազում աշխատութեամբ գծախս՝ վասն վաճառականութեամբ ընդ թեթև ընչի տալ ոչ կարեմ, և ոչ զհոգևոր և զյաւիտենական գանձ՝ անպիտոյ և անցաւոր կարասւոյ փոխանակել»։ Եւ ընդ տեառն Յովհաննու գայրացար, թէ «Բնաւ իբրև քեզ առն լսել իսկ Է՞ր արժան զայդպիսի բանս, թող թէ առ իս բերել»։

Եւ ես վասն զի տկարամիտ և անզգուշացող այր եմ յերկրաւոր միտս՝ ոչ զգացի ժամոյն դաւոյն. այլ պարտ էր փութով և երագ երագ անկանել ի յոտս արտասուօք և աղաչելով, և ի բաց փախչել ի հոգաբարձութենէ տեղւոյդ։ Եւ ահա լինէր պրծեալ ի չարաթոյն ժանեաց գազանացն, որք յայնմ հետէ դարանամտեալք ի ծածուկ, և ըստ անհամար մեծութեան իւրեանց սաստիկ *կարասաւ զնեալ բազում յեսան՝ «սրեցին որպէս սուսեր զլեզուս իւրեանց, և թոյնք իժից էին ի ներքոյ շրթանց»։ Եւ իմ ոչ մարթացեալ ազօթել իբրև զսաղմոսերգն, թէ «Պահեա՛, Տէր, ի ձեռաց մեղաւորի, և ի մարդոյ չարէ փրկեա՛ զիս». որոց հետամտեալ այնուհետև խափանեցին զգնացս իմ, և հասեալ խոցոտեցին զիս ի մահ։ Այլ խնդամ ցնծացեալ, զի այն վիրօք և որ յառաջագոյն խոցոտեալ իմ հոգիս մեղօք՝ առողջացեալ զօրացաւ։

Եւ այսպէս վճարեալ զամենայն կամաց խնդիր ի վերայ իմ՝ այնուհետև ուրախ լինէին որպէս ի կատարելում տօնի զուարճացեալք։ Որոց պարտն էր լալ զիս իբրև զանցուցեալ, նստեալ շուրջ զինև ի սենեկի, և արտասուել պատել իբրև զվիրաւոր և դեղ դնել. այլ զոցունց հատուցին զհակառակն. այպն առնելով պատեցին շուրջ զինև, ի սիրտս իւրեանց խնդալիցք. «Բացին ի վերայ իմ զբերանս իւրեանց և ասացին. վա՜շ վա՜շ, տեսին աչք մեր»։ Եւ զի ոչ լոկ բանից ընդվայրախօսութիւն է զոր ասեմ, այլ ճշմարտապէս արդիւնաւոր փորձիւ՝ յանդիման կացուցանեմ տեառնդ զբանս։

Զերեկլի սեպուհ մի յականաւոր տոհմէ առաքեցի առ գլխաւորդ Հայոց քահանայութեան, առ հիւանդտեսդ հոգւոց, ասեմ. «Առ ի բժշկութիւն վիրաւորաց փութա՛, հա՛ս յօգնել. խոցոտեցայ ի թշնամւոյն անթիւ նետիւք. կարեվէր եմ մերձ ի մահ. քեզ է այսուհետև հարկ՝ դնել դեղ և բժշկել. կամ թէ մեռանել՝ տանել ի շիրիմ և թաղել»։ Եւ Նորա պատասխանի արարեալ ասաց,—և պատգամաբերն շնորհելով Քրիստոսի ողջ է, և այրն ոչ ինչ թեթև, — եթէ «Ես և տեսանել իսկ չիշխեմ զքեզ առ երկիւղի. դու ասես, եթէ զամ բժշկեմ, և կամ թաղեա. մի՛ զուցէ զգացեալ ուրուք՝ և զիս ընդ քեզ թաղիցէ»։

3 Վ. անպիտոյ
4 ՉՏՏ. յովհաննեայ
4 Ատ. ուղղագրել եր լսել իսկ չէր արժան
7 Վ. առ ժամոյ
7 Վ. չիք փութով և
8 ՏՏ. յոտող
13 ՉՎԱտ. և իմոյ չմարթացեալ։ Այսպ. բատ ԲԳտ.
14 Սաղմ. ՃԼԹ, 5
14 Վ. չիք որոց հետամտեալ այնուհետև... վաշ վաշ տեսին աչք մեր (տ. 24)
20 Չ. ի սենեկի
21 ՏՏ. չիք պատել
24 Սաղմ. ԼԴ, 21
28 Վ. հիւանդատեսող
30 Չ. կարեվէր
31 ԲԳտ. Եւ Նա
32 ՉՎ. ասաց և պատգամաբերն... ողջ լեր։ և այրն... Ատ. ուղղագրել և առ պատգամաբերն։ ԲԳտ. ուղղագրել են առ պատգամաբերն... և այրն ոչ ինչ թեթև։ Այսպ. բատ Յ. Տաշեանի
33 ՏՏ. ի տեսանել
34 Վ. զամ և բժշկեմ
34 Վ. չիք մի զուցէ զգացեալ ուրուք... զղըժախս ժառանգեցուցանէ (եր. 200 տ. 30)

Ո՞ւր աներկիւղութիւն քաջ հովուի է. ո՞ւր հոգողութիւն արդար ուսուցչի. ո՞ւր քրիստոսանմանութիւն առողջ հայրապետի։ Արարածոց արարիչն յաղագս մեղաւորաց գիւտի մարդ եղև. բազում թշնամանաց համբերեաց, կափանաց և թուք *յերես առնլոյ, և փշեղէն պսակի, հանդերձ այլովք ևս մեծամեծօքն. դա և ջուր անգամ սրսկել ընդ երեսս թալկացելոյ վիրաւորի ոչ իշխեաց՝ ի մարդկան երկիւղէ։ Առեալ լիաբուռն զգահեկանս ի Շամարտացի գթածէն, զգինս դարմանոց հիւանդաց՝ ի սապատս համբարէ, և զհիւանդս հանեալ ի պանդոկւոյն՝ ընկենու արտաքս բազում անփութութեամբ։ Փրկիչն Քրիստոս բարձր կոչմամբ զամենայն օր խնդրէ զմեղաւորս. «Եկա՛յք առ իս, ամենայն աշխատեալք և վաստակեալք, և որք ունիք զբեռինս ծանունս, և ես հանգուցանեմ զձեզ». և Պօղոս զանյարական զարկումն զանյայտ դիպեցման յաշխարհիս՝ չև ևս գլորելոցն զգուշացուցանէ, գրելով առ Գաղատացիսն. «Եղբարք, ասէ, եթէ յանկարծ ըմբռնեսցի ոք ի ձէնջ յինչ և իցէ յանցանս՝ դուք որ հոգևորքդ էք՝ հաստատեցէ՛ք զայնպիսին հոգւով հեզութեան. զգոյշ լինիցիք անձանց, զի մի՛ և դուք փորձիցիք. զմիմեանց բեռն բարձէք, և այնպէս կատարեցէք զօրէնսն Քրիստոսի»։ Իսկ դա զնորին հակառակն աղաղակէ, թէ «Յո՞ գաս. չկամիմ, չիշխեմ տեսանել»։ Արդեօք տարա՞ւ զիս ի սենեակ միանգամ և երկիցս, և խօսեցա՞ւ ընդ իս, որպէս հրամայէ Փրկիչն, միայն ընդ միայն, և կամ միով և կամ երկու ընկերօք, և գտեալ անհաւան, համարեալ իբրև զմեղաւոր և զմաքսաւոր՝ հալածէր։

Յիշեալ, ասէ, ուրումն երբեմն առն աւագի զանուն իմ առաջի իմանց պարեգօտաւորաց՝ ասաց տրտմագին հառաչմամբ, եթէ «Ոչ եղև իրաւացի հեռանալ առն յաշխարհէս, քանզի զարդ էր եկեղեցւոյ»։ Եւ ոչ այլ ինչ կարացեալ ասել լսողացն՝ զայս և եթ ետուն պատասխանի, եթէ «Յաղագս հալածման նորա մեք չեմք ինչ պարտաւորք. բայց վասն գիտութեանդ որ ասէքդ՝ արդարև յառաջնում քաջ համեղս ասէր և զօրաւորս, բայց ապա յարդի ժամս բնաւ վատ ասէր»։ Եւ զայս ոչ կարացին գիտել, թէ ի յանդիմանութիւն և յամօթ անձանց իւրեանց խօսէին զայնպիսի բանս։

Այլ ա՛ղէ ասասցեն, յաղագս ո՞յր շնորհեալ պարգևէի վարդապետութեան բանս։ Ասողի՞.— ո՞չ ապաքէն վասն ունկնդրացն ախորժալրութեան և խնդրուածոյ։ Նայեցարո՛ւք ընդ ժողովուրդն Յունաց. յորժամ քարոզն լուեալ աղաղակէ, և որ կամին ասել՝ ի կարգեալ տեղիսն մատչի՝ ամենեցուն զարթուցեալ զսիրտս առ Աստուած վերացուցանեն. տարածեալ ձեռօք խաչանմանք լինին. միաձայն խնդրուածովք և արտասուալից կոչմամբ զՓրկիչն թախանձեցուցանեն. «Տո՛ւր, ասեն, բան. առաքեա՛ շնորհ. դու իսկ ինքն դովաւ, որպէս սրբովն Պօղոսիւ, խօսեա՛ ընդ մեզ. նմա ծանո՛ զհաշտութիւն քո ընդ ծառայս քո։ Մի՛

1 ԶԱց. որ աներկիւղութիւն։ Այսպ. ըստ ԲԳց.
2 Յց. արդար հայրապետի
3 ԶԱց. արարչին
6 ԶԱց. վիրաւոր
12 Մատթ. ԺԱ, 29
17 Գաղատ. Զ, 1
18 Յց. տեսանեմ
19 Զ. հրամայէ արարիչն
22 Զ. որումն
22 ԶՅց. առ աւագի (ԱԲց. առ Աւագի)
25 Զ. և եղ
28 Զ. յարգի։ Այսպ. ըստ ուղղագր. Ա (և ԲԳ)ց.
31 Յց. արդ աղէ
32 ԶՅց. ախորժս լրութեան։ Այսպ. ըստ Ն. Բ.
35 ԶԱց. ամենեցունց
39 Զ. մեզ զի նմա։ Թերևս ի նմա

նմանեսցէ դա յաղագս մերոց մեղաց՝ ստերջ ամրոց. այլ անձրեւահոս բղխմամբ յորդեսցէ յանդաստանս հոգւոց մերոց, որովք ծաղկեալք՝ պտուղք արժանիս հաճութեան կամաց քոց բերեալ մատուսցուք»։

Եւ արդ՝ ո՞յր ուրուք ի տգիտաց, թող թէ սակաւ մի և ի հետևելոց բանի, ոչ զարթնուցու միտք, չվառիցի խոհարանն, չվերաբերիցէ ի գանձուն սուրբ Հոգւոյն զնոր և զհինս. մանաւանդ որ ըստ խոնարհութեան ոք, և ոչ հպարտական գիտութեամբ մատչիցի յասելն, ի լսողացն յաղօթս, և ոչ յանձինն պանծայցէ գիտութիւն։ Զի եթէ ընտիր Աստուծոյ անօթն Պօղոս առ իւր աշակերտեալսն յԵփեսոս գրէր, աղաչելով, «Աղօթս արարէք, ասէ, և վասն իմ, զի ինձ տացի բան ի բանալ բերանոյ իմոյ», և արդ՝ եթէ որ հազարապետն էր խորհրդոցն Աստուծոյ, աղօթից կարօտէր և աղաչէր՝ ո՞րչափ ևս առաւել այժմու մարդիկս, զգածեալ բազում տկարութեամբ։

Իսկ Հայոց արեղէնքս առ դառնաշունչ նախանձու, որ միացեալ է ի սիրտս նոցա՝ զնոցունց հակառակսն երկնեն, և արդարև ըստ ասացածի մարգարէին՝ «Յղանան զցաւս և ծնանին զանօրէնութիւն». աղօթս իսկ չառնեն ի վերայ ասողին. այլ և եթէ յանկարծ շնորհի բան ի մարդասիրէն՝ հեղձնուն ի նախանձու է։ Եթէ զոք տեսանեն ի ժողովրդենէն եթէ գովէ՝ ծաղր առնելով ամաչեցուցանեն. «Արդ լռել ինչ, ասեն, չգիտէ, և ընդ վայր աղաղակէ և քրքուի»։ Իսկ Յունաց ժողովուրդն և տղայքն անգամ ի վերայ ուսոց ծնողացն, շարժեալ զձեռներն ի գովութիւն այլոցն՝ ձայնս անյօղակապս արձակեալ յայթռեն։ Եւ դոքա նստին գլխարկեալք, պատատեալք երեսօք, որպէս առ հոտեալ դիականն, պապանձեալք որպէս համր գեւ։ Եւ եթէ գթացեալ մարդասիրին, կամիցի տալ բան խրատու ի ժողովրդոցն փրկութիւն, հայեցեալ ի դառն խորհրդոցն նոցա որոճմունս՝ յինքն ամփոփեալ արգելու զշնորհն։ Անդիմակայ արդարև, ըստ գրելումն յՕրհնութիւնս օրհնութեանց, երկոքին սոքա, սէր և նախանձ. «Թռիչք նորա թռիչք րոցոյ հրոյ». յորոց իւրաքանչիւր ոք յայսց ի բարի վարողացն՝ արքայութիւն առնէ, և ի չարիս անեցուցչացն՝ զդժոխս ժառանգեցուցանէ։

Եւ արդ՝ իցէ՞ ոք ի ժամանակս նմանող մարգարէին Երեմիայի, որ ասէր ողբալով, թէ «Ո՞ տայր զգլուխս իմ ի ջուր, և զաչս յաղբերս արտասուաց, և թող նստեալ լայի զթշուառութիւն աշխարհիս»։

Եւ ասեն. «Ի նախնումն գիտնաբար խօսէր Ղազար, և այժմ անգիտաբար»։ Մինչ ի դուռս դեռ ևս լռեալ էր նախանձն՝ յաստղս զօրացեալ էր շնորհն. իսկ յորժամ տեսին զրապմութիւն ժողովրդոցն յօժարեալս ի լսել, յորդորեալս ի գովութիւնս, պատմելով միմեանց զշնորհին յորդորմունս, յարգելով և անմռռայ զարմանալով զլուսաւոր և

2 Կամ ըստ Զ. որ(ու)ոց մերոց
3 Զ. հանոյութեան
11 Եփես. Զ, 18, 19
14 Զ. յուսալիցնում ենր ենր գրին նշանի §
14 Զ. արեղջեն (բերեւս յաւագոյն=արեղակն)
16 Աs. ծնանին: Ես. ՄԹ, 4
22 ԲԴs. անյօղակապս
22 ԶԱs. յարձակեալ: Այսպ. ըստ ԲԴs.—Աs. ենթագրում է արձակեալ կայթռեն
28 Թերեւս ուղղելի պատուեալը երեւօք
28 Երգ Ը, 6
32 ՑՏ. չիք թէ
33 Երեմ. Թ, 1
37 Զ. յօժարեալս
37 Վ. ի գովութիւն
38 Աs. յորդորմունք ուղղագրեց եւ յորդորմունս: Վ. յորդորմունս

զանգայթ բանին բղխումն, ի հրապարակս և ի փողոցս յայս ևեթ հաչակելով առ միմեանս խայտացեալք՝ ի կոր կործանեցան, և այնուհետև սկսան յղանալ զոխակալութիւնն և ծնանել զնախանձ։ Իսկ յորժամ ի դոսա այնպիսի առաւելաւ չարակամութիւն՝ լռեալ արգելաւ բանն, և ոչ թէ յառողէն,—քաւ լիցի, քանզի անզեղջ է շնորհն, և անպակաս են պարգեւքն,—այլ ի դոցանէ, զի մի լուիցեն զբան փրկութեան իւրեանց։ Առ որս կատարի բան Հոգւոյն, որ ասէ, թէ «Տաց ձեզ սով, ոչ սով հացի, և ոչ ծարաւ ջրոյ, այլ սով՝ լսել զպատգամս Տեառն»։

Սահեցուցեալ զմտածութիւնս ի բազում յածմունս՝ և զայս ես յօդեալ յայլ չարախորհութիւնս՝ ասէին. «Այդ գիր ոչ կարդայ, և զընթերցուածն այնպէս ասէ անսայթաք՝ որպէս թէ գրոցն»։ Եւ յայս ոչ հայեցան գիտել, թէ որք քաջ գիտեն՝ զսաղմոսն Դաւթի պաշտել միայն պիտոյ է ի ժամուն անսխալ, և ոչ միշտ զգիրսն ի ձեռին ունելով՝ խօսել զայլ-այլս իբրև զբանդագուշեալս։ Իսկ մեր երանելի վարդապետքն զամենայն զկտակարանս եկեղեցւոյ երիցս և չորիցս ուսուցեալ մեզ ի սկզբանէ մինչև ի կատարած գրոցն՝ համարս պահանջէին ի մէնջ զնոյնս, և իբրև զԴաւթի սաղմոսն պաշտել մեզ հարկաւորէին։ Իսկ այժմ յոլովք ի լիրբ մախողաց՝ և զանուանս անգամ և կամ զքանօնութիւնս կանոնեալ եկեղեցական գրենոյ հազիւ կարեն գիտել, և գրգռութեամբ նախանձարկու դիւին, նստեալք առ միմեանս՝ լու ի լու այլոցն զինչպէտս խօսին։

Եւ արդ՝ զի՞նչ ես ասեմ. զի չէ բաւական ժամանակս՝ համարելոյ զանթիւ յիս ի նետաձգութենէ թշնամւոյն զվէրս, զոր աւուր աւուր և ժամու ժամու ընկալեալ վտանգիւ՝ տանէի ամենայնի ի հարկէ։ Քանզի և կծկեալ, որպէս սաստիկ և պինդ կապով, քաղցր և ամենահեշտ քո տեառն ախորժակ սիրովս,—զորոյ եթէ զամ ճաշակեալ ուրուք առցէ զհամ անուշութեան՝—կամէր մեռանել քան թէ յայսմանէ վրիպել։

Բայց այժմ եկեալ յաւարտումն բանիս՝ ի դէպ և ի պատշաճ համարիմ յիշել զզարմանալւոյ և զերիցս երանելւոյ աւագակին զբան, զոր ի խաչին սաստելով ասէր ցեղկելի յիւր ընկերն, թէ «Մեք ըստ արժանի զոր գործեցաքն՝ ընդունիցիմք զհատուցումն». և ի Փրկիչն հայեցուցանելով՝ թէ «Իսկ սա ընդէ՞ր»։ Արդ՝ ես ահա ըստ արժանի որոց գործեցին՝ ընկալայ զպատուհասն, և խոստովանիմ առաջի հրեշտակաց և մարդկան. իսկ այլ առաքելանման մարդիկն ընդէ՞ր այսպիսումն և ևս առաւել քան զսոյնս դիպեալք ի յաշխարհիս ի յայսմ՝ խստագոյն վշտիւ վախճանեցան։

1 Վ. զանգայթ բանիս
7 Վ. չիք ձեզ
7 ՑՑ. չիք ոչ սով հացի, և ոչ ծարաւ ջրոյ, այլ սով
8 Ամովս. Ը, 11
9 ՁԱՑ. յածմունս։ Վ. ածմունս
10 ԲԳՑ. [illegible] այրդ այդ։ [illegible]
14 Զ. զբանդագուշեալս
14 Վ. երանելի հարապետ-քն… զկտակարան
16 Վ. զնոյն, և իբրև ըղ-սաղմոսն Դաւթի
18 ՁՎ. զքանոնութիւն կանոնել։ Աց. [illegible] կանոնել
22 Վ. յիւ'նետաձգութենէ,
24 ՁԱՑ. ի սաստիկ և պինդ կապով։ Վ. կալով։ ԲԳՑ. [illegible] ի սաստիկ և պինդ կապոյ
25 ՁՎՑՑ. ճաշակել
26 ԲԳՑ. կամէի մեռանել։ ՁԱՑ. զմեռանել։ Այսպ. բաց Վ.
26 Վ. յայսմանէ, լռել
28 Վ. զարմանալւոյ
29 Վ. արժանի չարագոր-ծեցաքն
31 Ղուկ. ԻԳ, 41
34 ԲԳՑ. քան զսոյնս։ Վ. զնոյնս

Երանելի փիլիսոփոսն Մովսէս, որ արդարև մինչդեռ էր ի մարմնի՝ ցանկ նրկնային զօրացն էր քաղաքակից. ո՞չ ապաքէն ի տեզւոջէ ի տեղի արեղեանդ Հայոց հալածական արարին։ Ո՞չ զլուսաւորիչն և զոգիտահալած զգրեանն նորա՝ առ անգիտութեան փաթաղ-իկէս կոչէին. և այլ բազում ինչ իրօք թշնամանեալ՝ յետոյ ապա յաղագս այլոց ամօթոյ՝ զխարէական զեպի։ լ։պոսութիւնս նման դեզոց մահու արբուցեալ սրբոյն՝ հեղձուցին։ Որոյ ի ժամ վախճանին զինչպիսի ահաւոր նզովս գրով ի վերայ գլխաւորաց քահանայութեանդ ասացեալ է՝ ձեզէն իսկ գիտէք տեղեկացեալք. . . .

. . . զտեառնէ, զնա կացոյց ի վերայ անչափ անհանգիստ աշխատութեանց և վաստակոյն՝ զցայգ և զցերեկ, ի լուսաւորութիւն աշխարհիս Հայոց։ Զոսկերսն ի գերեզմանէն հանել տային և ի գետ արկանել։ Զհրեշտականման այրն զՏէր՝ նոյն անհանգիստ հալածանօք վախճանեցուցին, որք և այժմ դեռ ևս անյագութեամբ քինով ընդ մեռելոյն կագին։

Անարատ և յամենեցունց յարգելի յոյժ տէր Խոսրովիկ, չև ևս հասեալ ի սահմանս մեր, մինչդեռ գայր ի ճանապարհի, և լուան՝ որպէս ի վերայ թշնամւոյ ընդդէմ զինեցան, ասելով. «Ահա ո՞ւր գայ միւս ևս Թարգմանն»։ Եւ օրհնելոյն ի հեռաստանէ լուեալ զգոնչիւն մահաձայն ազեղանցն՝ աղօթեաց առ Բարձրեալն, և վաղվաղակի ընկալաւ զխնդիրն. որում և տենչալի նշխարացն այլք, և ոչ մեք, արժանի եղեն ընդունակութեան։

Այլ ի դէպ համարիմ ընդ նոսին յիշել և զտէր Աբրահամ զեպիսկոպոսն, որում ըստ ձայնի խորհրդոյն և չհանգուցանէր ի ծերութեանս, և կարող լինէր առ նմա զոնեա սուղ ինչ ժամանակ մնալ. թէպէտ և ոչ Թերակատար զոլով սուրբ և ստոյգ հաւատ, զոր ունեալ ի տղայութեանն յերանելւոյ Աղանայ՝ կեամ նովիմբ ի նմին անփոփոխութեամբ մինչև ի վախճան կենցաղոյս իմոյ. այլ յաղագս իմաստաւոր բանի, ըստ նորա տեառն մեծ հրահանգին, շահեալ ի նմանէն՝ հանգոյն մեծի զանձու ամփոփելոյ հաշուէի զպարապումն զայն։—Յորոյ վերայ տեսեալ պարե-

1 Վ. փիլիսոփան
4 փաթաղ-իկէս՝ բաց ստուգաբանութեան Ն. Մառի
5 Վ. թշնամանեալք
6 Զ. զխարաբէականն։ Վ. զխաբէբայական
7 ԶՎԱՏ. սրոց
9 Զ. տեղեկացեալք՝ից յետոյ բնագրում միևնոյն գրչով մանր գրերով. «մի թուղթ յայս տեղացս է պակաս»։ Նոյնպէս ունին եւ Վ.: ԱՏ. ունին ծանօթ. Որպէս յօրինակին մեր՝ նոյն և ի բուն գրչագրին երկու թերթք պակասին աստէն։ ԲԳՏ. ունին ծանօթ. «Երկու թուղթ ի բնագրէն ի բաց անկեալ (կամ՝ ընկեցեալ) նշանակէ (Ա.) Տպագրին»
12 ԶՎ. հանել
13 Վ. զհրեշտակական
13 ԶՎԱՏ. զտէր նոյն։ (վերջակէտով): Այսպ. բաց ուղղագր. ԲԳՏ.
14 Զ. դեռ և
14 ԱՏ. քինով
16 ԶՎ. և անյամենեցունց արգելի
18 ՏՏ. միւս թարգմանն
19 Վ. օրհնելւոյն
21 Վ. արժանի եղաք
23 Վ. եպիսկոպոսն
24 ՏՏ. ըստ ձայնի։ ԲԳՏ. ներքադրում են ըղձային։ Այսպ. բաց ԶՎ., բայց իմաստը պահանջում է մեր
24 Վ. խորհրդոցն
24 ԶՏՏ. ի ծերութեանս
25 Զ. և առ նմա
25 ԱՏ. զոնեայ
26 Վ. թերակատար փղլով ով (պատուով) և սորոյգ
27 ԶՎԱՏ. ալանեայ
30 ԶԱՏ. զպարապումն զայն։ Վ. զզարարումն

գոտաւորաց զայրագնեալ իմն զօրհնելոյ տիկնոջ աւագի զմիտսն՝ ոչ ծանուցին առ ժամայն, նա աղաչելով զերանելի մայրն՝ հոգացեալ իբրև զեղբարս ի վերայ եղբօր. այլ առաւել զայրացուցեալ գրգռելով՝ զկամացն իւրեանց նովաւ կատարեցին զհաճոյսն։

Եւ այսք այսպէս թշնամանեալք և հայհոյանօք հալածեալք, ոչ յերեկոյս ինչ ժամանակաց զբուցատրութեամբք յումեքէ համբաւուց ծանուցաւ մեզ, այլ առ մեօք իսկ և ի մերում ժամանակի եղեալ տեսաք զայս ամենայն։ Իսկ զյառաջագոյն գրելոցս սուրբ արանցն, զորս ի Պատմութեանն նահատակին Գրիգորի զրուցմեալ յիշատակէ, զի՞նչ ես ասացից,—զարդար և զարժանաւոր բարեպաշտ կաթողիկոսէն՝ զսքրոյն Ներսիսէ, և զկրօնաւոր առաքինոյն և զմեծ լուսաւորչէն Հայոց՝ զտէր Սահակայ, և զայլոց բազմաց, որոց ոչ բացեալ ի բարեբան զբերանս իւրեանց ի վերայ աշխարհիս այսորիկ՝ վախճանեցան։

Ցաղագս որոյ երկնչիմ զարհուրեալ, մի՛ գուցէ և ի դոսա յարիցեն Աւետարանին սպառնալիքն, որ ասէ. «Ահաւասիկ ես առաքեմ առ ձեզ մարգարէս և իմաստունս և դպիրս, և ի նոցանէ սպանանիցէք և խաչիցէք և տանջիցէք ի ժողովուրդս ձեր, և հալածիցէք ի քաղաքէ ի քաղաք. որպէս զի եկեսցէ ի վերայ ձեր ամենայն արիւն արդար հեղեալ յերկիր, յարենէն Աբելի արդարոյ մինչև ցարիւնն Զաքարիայ որդւոյ Բարեքայ, զոր սպանէք ի մէջ տաճարին և սեղանոյն. այո՛ ասեմ ձեզ, զի խնդրեսցի յազգէդ յայդմանէ»։ Այլ մխիթարեցիմք ի տգիտաց՝ առ ժողովուրդն միայն Հրէից կարծեցեալ զբանիդ ասացուածս։ Խոկասցի այնպիսին ուշադրելով. «Ցարենէն, ասաց, Հաբելի արդարոյ», որպէս զի հայեցեալ ի ժամանակ սպանման նորա՝ ծանիցէ երկիւղիւ, թէ առ ամենեսեան է բանդ, որ նոյնպիսի գործոց լինին նմանողք։

Համարձակիմ ասել ի սոյնս յանդգնութեամբ և զայս ևս.—և եթէ ոչ իցեն սուտք կարծեցեալքս յինէն, դու տէր, քաղցրութեամբ զանց արարեալ՝ ներեսջի՛ր ինձ որպէս տկարամտի.—զի քոյում իսկ ամենաաքանչ անձինդ, յորմանէ ամենայն մարդ ի Հայս, յաւագ և ի կրտսեր, հասեալ է մեծապէս օգտակարութիւն և գահ և փառք, իսկ ոմանց՝ և ի մահուանէ ի կեանս, և ի կորստենէ գտանել և ի միջի լինել, դու տէր, եղեալ ես պատճառ։ Եւ արդ՝ տեսանելով զայդպիսի օր ըստ օրէ զքո տեսան յԱստուծոյ փառաւորութեանն լցեալ զհմտութիւն, որ պարգևեալ առ նոսա բերեալ շքեղութիւնս և պարծանս, և թէ էր՝ կամէին գտանել

2 Ձ. նայ աղաչելով։ Թերեւս ոչ ցածուցին առ ժամայն, աղաչելով...
3 Ձ. գոգուելով
6 Ձ. յերեկույս ինչ։ — Վ. յերկար ինչ ժամանակաց
6 Վ. յումեմնէ համբաւուց
11 Վ. և զձեռնաւոր առաքինոյն
13 ՎՏՏ. չիք ի վերայ աշխարհիս այսորիկ
18 ԲԳՑ. չիք ի վերայ ձեր
19 Վ. չիք որդւոյ բարեքայ
19 Ձ. բարեքեայ
20 Ձ. սեղանւոյն
21 Մատթ. ԻԳ, 34
22 ԲԳՑ. զբանից
23 Վ. արելէ
24 ՁՎ. առ երկիւղիւ
24 Ձ. առ ամենեսեան բանից։ Այսպ. ըստ ուղղագր. Ա. (եւ ԲԳ)Տ.
25 ՁՎ. լինի
26 Վ. ի սոյն
26 ՁՎ. և թէ. ՏՏ. եթէ (առանց և՛ի)
27 Վ. կարծեցեալք
29 Թերեւս յամենայն
31 Վ. ի կորստէ
31 Ձ. գտանել
33 Վ. փառաբանութեանն լցեալ
34 Ձ. և կամէին

հնարս՝ շատք էին, որ առ նախանձու չհատուցանէին զբարի փոխարէնս փոխանակ քո տեառնդ բարւոյն, այլ զնոցուն հակառակն։ Իսկ վերին արդարատես ակնարկումն չհայի ի չար կամացն խնդիրս, այլ իւր խնամակալութեանն յաջողութեամբ՝ կատարէ հանապազ անփոփոխութեամբ ի բարիս, ի փառաւորութիւն անուան իւրոյ սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։



1 Վ. չհատուցանէին զեւրէ փոխարէնս
4 Գտ. հանապազ
4 Զ. անփոփոխութեամբ
6 Զ. յաւիտենից ամէն։ Այս սուրբ վարդապետս, զոր ինչ առաջի ձեռնարկեալ է, եւն, տես Յառաջաբանում
6 Վ. ունի այս յիշատակարանս: Աւարտեցաւ գիրքս այս Ղազարու վարդապետի Փարպեցւոյ ձեռամբ բազմամեղ և անարժան դպրի զոր ներեցէ՛ն ի Հարկէ որդոցան և բաշ վարդապետին վարդանայ գետապետ։ Արդ՝ որք ընթերցջիք զգիրս այս ի յիշումն հայոց ազգ. ի բաղեշ ի վանսն յոհաննու կարապետ

# ՑԱՆԿ ՅԱՏՈՒԿ ԱՆՈՒԱՆՑ

# ՑԱՆԿ

## ՎԿԱՅՈՒԹԵԱՆՑ Ի ՍՈՒՐԲ ԳՐՈՑ

| | | | Երես | Տող |
|---|---|---|---|---|
| Ծննդ. | Բ, | 10 | 179 | 22 |
| » | Զ, | 2 | 190 | 19 |
| Ելից | ԼԲ, | 6 [1] | 181 | 11 |
| Բ. Օր. | ԼԲ, | 30 | 125 | 16 |
| » | » | » | 151 | 15 |
| Ա. Թագ. | Բ, | 9 | 65 | 15 |
| Բ. Թագ. | Ա, | 20 | 193 | 12 |
| » | ԺԵ, | 31 | 76 | 22 |
| Գ. Թագ. | Ա, | 48 | 180 | 11 |
| » | Բ, | 17 | 180 | 20 |
| Սաղմ. | Ա, | 4 | 170 | 4 |
| » | ԺԱ, | 7 | 34 | 1 |
| » | ԺԶ, | 14 | 41 | 40 |
| » | ԺԸ, | 11 | 18 | 3 |
| » | » | » | 20 | 21 |
| » | ԺԹ, | 9 | 132 | 1 |
| » | Ի, | 12 | 96 | 8 |
| » | ԻԹ, | 11—13 | 126 | 15 |
| » | ԼԴ, | 21 | 198 | 24 |
| » | ԽԳ, | 9 | 151 | 21 |
| » | ԽԳ, | 22 (?) | 109 | 34 |
| » | ԽԶ, | 2 | 180 | 31 |
| » | ԾԲ, | 6 | 6 | 17 |
| » | ԾԷ, | 8 | 25 | 36 |
| » | ԿԷ, | 27 | 178 | 36 |
| » | » | » | 179 | 20 |
| » | » | » | 180 | 4 |
| » | ՀԴ, | 11 | 132 | 2 |
| » | ՀԸ, | 9—10 | 124 | 10 |
| » | » | 13 | 132 | 5 |
| » | ՂԳ, | 11 | 19 | 7 |
| » | ՃԱ, | 10 | 56 | 13 |
| » | ՃԸ, | 7 | 85 | 20 |
| » | ՃԺԴ, | 7 | 101 | 2 |
| » | ՃԺԵ, | 13 | 71 | 29 |
| » | » | 15 | 70 | 37 |
| » | ՃԼԲ, | 1 | 131 | 38 |
| » | ՃԼԹ, | 5 | 198 | 14 |

| | | | Երես | Տող |
|---|---|---|---|---|
| Առակ. | ԺԳ, | 1 | 2 | 4 |
| Երգ երգ. | Դ, | 10 | 181 | 7 |
| » | Ը, | 6 [2] | 200 | 28 |
| Իմաստ. | Բ, | 24 [3] | 188 | 28 |
| Ես. | Թ, | 13 | 180 | 21 |
| » | ԺԱ, | 9 | 18 | 7 |
| » | Լ, | 1 | 76 | 18 |
| » | » | » | 96 | 2 |
| » | » | » | 180 | 18 |
| » | » | 15 | 57 | 10 |
| » | ԾԹ, | 4 | 200 | 16 |
| » | ԿԱ, | 10 | 176 | 24 |
| Ովսէէ | Ը, | 4 | 180 | 18 |
| Ամովս | Ը, | 11 | 201 | 8 |
| Ամբակ. | Բ, | 9 | 194 | 11 |
| Երեմ. | Թ, | 1 | 180 | 25 |
| » | » | » | 200 | 33 |
| » | » | 23—24 | 65 | 15 |
| » | Ժ, | 11 | 80 | 14 |
| » | ԺԵ, | 19 | 185 | 10 |
| » | ԻԵ, | 27 | 26 | 2 |
| Եզեկ. | ԺԸ, | 23 | 57 | 9 |
| Մատթ. | Ե, | 19 | 80 | 5 |
| » | Ե, | 28 | 191 | 7 |
| » | » | 44 | 27 | 26 |
| » | Է, | 1 | 27 | 30 |
| » | Թ, | 11 | 189 | 10 |
| » | » | 13 | 180 | 33 |
| » | Ժ, | 11—13 | 76 | 36 |
| » | » | 20 | 170 | 24 |
| » | » | 23 | 50 | 23 |
| » | » | 25 | 189 | 33 |
| » | » | 33 | 47 | 29 |
| » | » | 37 | 51 | 29 |

[1] *Բնագրում կոչուած է Աստուած Տէր*

[2] *Բնագրում կոչուած է Օրհնութիւն Օրհնութեանց*

[3] *Բնագրում կոչուած է Կարողիկէ*

| | | | Երես | Տող |
|---|---|---|---|---|
| Մատթ. | Ժ. | 40 | 189 | 33 |
| » | ԺԱ, | 29 | 180 | 32 |
| » | » | » | 181 | 24 |
| » | » | » | 199 | 12 |
| » | ԺԲ, | 31—32 | 191 | 28 |
| » | ԺԳ, | 29—30 | 193 | 18 |
| » | ԺԸ, | 20 | 21 | 26 |
| » | ԻԲ, | 21 | 180 | 3 |
| » | ԻԳ, | 34 | 203 | 21 |
| » | ԻԵ, | 24 | 182 | 24 |
| » | » | 41 | 62 | 28 |
| » | ԻԷ, | 24 | 189 | 19 |
| Մարկ. | Բ, | 18 | 189 | 12 |
| » | Գ, | 28 | 191 | 28 |
| » | Ը, | 36—37 | 59 | 10 |
| » | ԺԲ, | 17 | 180 | 3 |
| » | ԺԵ, | 10 | 189 | 17 |
| Ղուկ. | Ե. | 36 | 189 | 10 |
| » | Ժ, | 1 | 179 | 12 |
| » | » | 9 | 179 | 12 |
| » | ԺԱ, | 15 | 189 | 8 |
| » | ԺԲ, | 9 | 47 | 29 |
| » | » | 12 | 191 | 28 |
| » | ԺԵ, | 21 | 62 | 12 |
| » | ԺԷ, | 10 | 182 | 12 |
| » | » | » | 187 | 3 |
| » | ԻԳ, | 14 | 189 | 19 |
| » | » | 34 | 27 | 25 |
| » | » | 41 | 201 | 31 |
| Յովհ. | Ե, | 39 | 185 | 5 |
| » | Ը, | 48 | 189 | 14 |
| » | Ժ, | 16 | 56 | 19 |
| » | ԺԲ, | 26 | 36 | 22 |
| » | » | » | 89 | 18 |
| » | ԺԳ, | 34 | 33 | 3 |
| » | ԺԳ, | 12 | 93 | 25 |
| » | » | 18 | 91 | 16 |
| » | ԺԵ, | 18 | 189 | 33 |
| » | » | 20 | 189 | 33 |

| | | | Երես | Տող |
|---|---|---|---|---|
| Յովհ. | ԺԶ, | 33 | 109 | 14 |
| » | ԺԸ, | 38 | 189 | 19 |
| Գործք | Է, | 58 | 101 | 15 |
| » | » | 59 | 27 | 25 |
| Յակոբ. | Գ. | 1 | 193 | 32 |
| Ա.Յովհ. | Ա, | 5 | 169 | 35 |
| » | Ե, | 17 | 191 | 25 |
| Հռովմ. | Բ, | 1 | 27 | 30 |
| » | » | 21 | 99 | 32 |
| » | Ե, | 5 | 129 | 6 |
| » | Ը, | 36 | 91 | 19 |
| » | Թ | 3—4 | 53 | 1 |
| » | ԺԲ, | 19 | 27 | 32 |
| » | ԺԳ, | 22 | 194 | 6 |
| » | ԺԵ, | 1 | 27 | 31 |
| » | » | » | 180 | 35 |
| Ա.Կորն. | Ա. | 31 | 65 | 15 |
| » | Գ, | 20 | 19 | 7 |
| » | Ե, | 1 [1] | 191 | 18 |
| » | Զ, | 1—6 | 22 | 13 |
| » | Ժ, | 7 | 181 | 11 |
| » | ԺԲ, | 26 | 21 | 5 |
| Բ.Կորն. | Բ, | 8 | 176 | 28 |
| » | Գ, | 3 | 181 | 21 |
| » | Ե, | 21 | 52 | 35 |
| » | ԺԳ, | 7 | 186 | 10 |
| Գաղատ. | Գ, | 25—26 | 181 | 19 |
| » | Զ, | 1 | 199 | 17 |
| Եփես. | Ե, | 5 | 191 | 22 |
| » | Զ. | 1—3 | 2 | 4 |
| » | Զ, | 5 | 173 | 23 |
| » | » | 10 | 129 | 7 |
| » | » | 16 | 129 | 7 |
| » | » | 18—19 | 200 | 11 |
| Կողոս. | Գ, | 10 | 2 | 4 |
| » | Գ, | 22 | 45 | 20 |
| Ա. Թես. | Գ, | 16 | 32 | 6 |
| Բ. Տիմ. | Ա, | 16 | 195 | 27 |

[1]) Ձեռագրում կոչուած է երկրորդ Թուղթ

# ՆԿԱՏՈՒԱԾ ՎՐԻՊԱԿՆԵՐ

| Եր. | Տող | Տպուած է | Ուղղելի |
|---|---|---|---|
| 53 | 1 | կտկարանքն | կտակարանքն |
| 87 | 32 | Արրահամու | Աբրահամու |
| 96 | 2 | խորհեցան ոչ ենե | խորհեցան, և ոչ ենե<br>(Ծան. մէջ աւելցնել. ԲԳՅ. խորհեցան ոչ ենե) |
| 97 | 32 | սուրբն | սուրբ |
| 106 | 1 | երկրպադութեանդ | երկրպագութեանդ |
| 137 | 23 | Այրեաց | Արեաց |
| » | 24 | յանուանի | անուանի |
| 139 | 8 | տրտմութեամր | տրտմութեամբ |
| 146 | 13 | զթագաւուրն | զթագաւորն |
| 163 | 9 | խորհդեան | խորհրդեան |